


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝* [http://www.armin.am](http://www.armin.am)

*Էլ. փոստ՝* [info@armin.am](mailto:info@armin.am)

АКАДЕМИЯ НАУК СССР—АРМЯНСКИЙ ФИЛИАЛ
ИНСТИТУТ ИСТОРИИ И АРХЕОЛОГИИ

ПРОФ. Х. САМУЭЛЯН

# ИСТОРИЯ ДРЕВНЕГО АРМЯНСКОГО ПРАВА

ТОМ I

ИЗДАТЕЛЬСТВО АРМФАН-а
ЕРЕВАН 1939

ԽՍՀՄ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ—ՀԱՅԿԱԿԱՆ ՖԻԼԻԱԼ

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՀՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ՊՐՈՖ. Խ. ՍԱՄՈՒԵԼՅԱՆ

# ՀԻՆ ՀԱՅ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

## ՀԱՏՈՐ I

ԱՐՄՖԱՆ-ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ՅԵՐԵՎԱՆ 1939

# ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ԿՈՂՄԻՑ

*Պրոֆ. Խաչիկ Սամուելյանի այս աշխատությունը յերկամյա գիտական աշխատանքի արդյունք ե։ Հին հայ իրավունքի պատմությամբ շատերն են զբաղվել թե՛ հայ և թե՛ յեվրոպացի գիտնականներից, բայց մինչև այժմ ամփոփ ձևով գիտականորեն մշակված հայ իրավունքի պատմություն չկա հրապարակի վրա։ Պրոֆ. Խաչիկ Սամուելյանի այս աշխատությունն, իբրև առաջին փորձ, անշուշտ, զերծ չե թերություններից, բայց, այդու հանդերձ, գալիս ե մասամբ մեղմելու այդ պակասը։*

*Հին հայ իրավունքի պատմությունն ունի գիտական մեծ արժեք, վորովհետև առանց այդ իրավունքի պատմության հնարավոր չե գիտականորեն մշակել և շարադրել հայ ժողովրդի պատմությունը, առանձնապես տնտեսական, սոցիալական, ընտանեկան և հողային հարաբերությունների ճշտիվ պարզաբանումն ու վերլուծումը։ Պատմական բազմաթիվ խնդիրներ կան հայ ժողովրդի պատմության մեջ, վորոնց մեկնաբանումը կապված ե միջնադարյան և հին հայ իրավունքի հետ։ Գյուղացիական պարտավորությունների ու իրավական վիճակի մասին հայ պատմիչները տեղեկություններ գրեթե չեն տալիս։ Այդ տեսակետից միակ հավաստի աղբյուրը, առաջին հերթին, հանդիսանում են հայ իրավունքի վերաբերյալ յեղած աշխատությունները, վորոնց մասին հեղինակը հանգամանորեն խոսում ե իր այս աշխատության մեջ, իրավական նորմերը կապելով պատմական յերևույթների փոփոխման և զարգացման հետ։ Հաշվի առնելով այդ հանգամանքները, ԽՍՀՄ Գիտությունների Ակադեմիայի Հայկական Ֆիլիալի Պատմության և Հնագիտության Ինստիտուտը հրատարակության ե հանձնում պրոֆ. Խաչիկ Սամուելյանի «Հին հայ իրավունքի պատմությունը» խորագրով աշխատությունը յերկու հատորով։*

Սակայն կան մի շարք սկզբունքային հարցեր, որոնք հեղինակի կողմից արծարծվել են որպես լուսաբանված խնդիրներ։ Այսպես օրինակ, հայկական ֆեոդալիզմի պատմությունը նա բաժանում է մի շարք էտապների և յենթաէտապների, հողը Բագրատունիների թագավորության ժամանակ համարում է պետական, ինչպես նաև մի շարք այլ կարևոր պրոբլեմներ, որոնք, սակայն, դեռևս վիճելի յեն։

7 դեկտեմբերի 1939 թ.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՏՎԱԾ ԱՌԱՋԻՆ

### *Ներածական*


I. *Հայ իրավունքի պատմության նշանակությունը* . . .
II. *Հայ իրավունքի հետազոտության վիճակը* . . .


## ՀԱՏՎԱԾ ԵՐԿՐՈՐԴ

### *Իրավունքի աղբյուրները*


I. *Ընդհանուր ակնարկ* . . . . . . . . . .
II. *Սովորույթ* . . . . . . . . . . . .
III. *Կանոնական վորոշումներ* . . . . . . . . .
IV. *Օտար ռեցեպցիա* . . . . . . . . . .
1. *Մովսիսական իրավունք* . . . . . . . .
2. *Ասորա-Հռոմեյական Դատաստանագիրք* . . . . .
3. *Հռոմեյական իրավունք* . . . . . . . .
V. *Ազգային դատաստանագրքեր* . . . . . . . .
1. *Դավիթ վարդապետի Ալավկայ վորդու Դատաստանագիրք* .
2. *Մխիթար Գոշի Դատաստանագիրք* . . . . . .
3. *Սմբատ Գունդստաբլի Դատաստանագիրք* . . . . .
VI. *Հայ պատմագիրներ* . . . . . . . . . .
VII. *Վիմական արձանագրություններ* . . . . . . .


## ՀԱՏՎԱԾ ԵՐՐՈՐԴ

### *Հայ իրավունքի համադրությունը*

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

### *Հայ իրավունքի զարգացման շրջանները*


I. *Նախարարական իրավունք* . . . . . . . .
1. *Վաղագույն ֆեոդալիզմ* . . . . . . . .
2. *Արշակունյաց թագավորություն* . . . . . .
3. *Մարզպանական Հայաստան* . . . . . . .

Էջ

4. Բյուզանդական Հայաստան . . . . . . . . 115
5. Եկեղեցական ֆեոդալիզմ . . . . . . . . 120
II. Բագրատունյաց կամ Արաբա-բյուզանդական շրջան . . . 125
1. Արաբական տիրապետություն . . . . . . . 125
2. Բագրատունյաց թագավորություն . . . . . . 128
3. Բյուզանդական տիրապետություն . . . . . . 133
4. Գործող իրավունքն ու օրենքները . . . . . . 135
III. Թյուրք-մոնղոլական տիրապետության շրջան . . . . 140
1. Սելջուկյան տիրապետություն . . . . . . . 140
2. Զաքարյանների իշխանություն . . . . . . . 143
3. Մոնղոլական տիրապետություն . . . . . . . 146
4. Կիլիկիայի հայ թագավորություն . . . . . . 149
5. Գործող իրավունքը . . . . . . . . . 151

## ԳԼՈՒԽ ՅԵՐԿՐՈՐԴ

### Պետական ու վարչական իրավունք

I. Գերագույն իշխանություն . . . . . . . . 157
1. Հողային պետական իրավունք . . . . . . . 157
2. Հողի պետական սեփականությունն Արշակունյաց ժամանակաշրջանում . . . . . . . . . 164
3. Ռեգալիաներ . . . . . . . . . . 170
4. Հողի պետական սեփականությունը Բագրատունյաց ժամանակաշրջանում . . . . . . . . . 173
5. Հողի պետական սեփականությունը Զաքարյանների ժամանակաշրջանում . . . . . . . . . 177
6. Թագավորի սենիորական հողեր . . . . . . . 180
7. Թագավորական իշխանություն . . . . . . . 182
II. Նախարարական իշխանություն . . . . . . . 184
1. Նախարարական հողատիրություն . . . . . . 184
2. Հողատիրության պայմանականությունը . . . . . 191
3. Մայորատ . . . . . . . . . . 193
III. Ջրային իրավունք . . . . . . . . . 197
IV. Ֆեոդալական ծառայություն . . . . . . . . 207
1. Ֆեոդալական հիերարխիա . . . . . . . . 207
2. Նախարարական ծառայություն . . . . . . . 215
3. Ազատներ . . . . . . . . . . 219
4. Նախարարների հարկատվությունը . . . . . . 221
5. Նախարարական իշխանություն . . . . . . . 226
6. Ֆեոդալական հիերարխիան և ծառայությունը Բագրատունյաց ժամանակաշրջանում . . . . . . . . . 229

7. Կառավարչական պաշտոններ Բագրատունյաց ժամանակաշրջանից հետո . . . 237
8. Կանանց իրավունք . . . 246
V. Շինականություն . . . 248
1. Հողային ռենտա և ճորտեր . . . 248
2. Ճորտական ծառայություն . . . 256
3. Շինականների իրավական դրությունը . . . 261
4. Շինականների պայքարը . . . 267
VI. Ստրկություն . . . 272
1. Ընդհանուր ակնարկ . . . 272
2. Հայաստանի ֆեոդալիզմը և ստրկության բնույթը . . . 276
3. Արքունի ստրուկներ . . . 287
4. Ճորտացած ստրուկներ . . . 292
5. Տնային ստրուկներ . . . 302
6. Տաճարական ստրուկներ . . . 304
7. Ստրուկների քանակը . . . 306
8. Ստրուկների սոցիալ-իրավական դրությունը . . . 306
9. Տիրոջ սեփականության իրավունքն ստրուկների վրա . . . 308
10. Ստրկի իրավունքները . . . 316
11. Ստրկության աղբյուրները . . . 319
I. Ծանոթություններ . . . 325
II. Աղբյուրներ . . . 335
III. Գրականություն . . . 336
IV. Անվանացանկ . . . 345
V. Резюме . . . 355

# ԿՐՃԱՏՈՒՄՆԵՐ

ՄԽ—Մովսէսի Խորենացւոյ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1913 թ., Ղուկասյան մատենադարան:

ՓԲ—Փաւստոսի Բուզանդացւոյ՝ Պատմութիւն հայոց. Վենետիկ, 1889 թ.:

ՅԴ—Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1912 թ., Ղուկասյան մատենադարան:

ԹԱ—Թովմայի վարդապետի Արծրունւոյ՝ Պատմութիւն տանն Արծրունեաց. Թիֆլիս, 1917 թ., Ղուկասյան մատենադարան:

ՍՕ—Ստեփաննոսի Օրբելեան արքեպիսկոպոսի Սիւնեաց՝ Պատմութիւն նահանգին Սիսական. Թիֆլիս, 1910 թ., Ղուկասյան մատենադարան:

ԿԳ—Կիրակոս վարդապետի Գանձակեցւոյ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1909 թ., Ղուկասյան մատենադարան:

ԱԳ—Ագաթանգեղայ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1914 թ., Ղուկասյան մատենադարան:

ՂՓ—Ղազարայ Փարպեցւոյ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1917 թ., Ղուկասյան մատենադարան:

ԵՂ—Եղիշէի՝ Պատմութիւն Վարդանանց. Թիֆլիս, 1913 թ., Ղուկասյան մատենադարան:

ՍԳ—Սեբէոսի եպիսկոպոսի՝ Պատմութիւն ի Հերակլն. Թիֆլիս, 1912 թ., Ղուկասյան մատենադարան:

ԱԼ—Արիստակէսի վարդապետի Լաստիվերտցւոյ՝ Պատմութիւն. Թիֆլիս, 1912 թ. Ղուկասյան մատենադարան:

ՄԿ—Մովսէսի Կաղանկատուացւոյ՝ Պատմութիւն Աղուանից աշխարհի. Թիֆլիս, 1912 թ., Ղուկասյան մատենադարան:

ԿՀ—Կանոնագիրք հայոց. խմբեց Ա. Ղլտճյան. Թիֆլիս, 1913 թ., Ղուկասյան մատենադարան:

ՄԳ—Մխիթարայ Գօշի՝ Դատաստանագիրք հայոց. հրատ. Վահան ծ. վ. Բաստամյանցի. Վաղարշապատ, 1880 թ.:

ՍԴ—Դատաստանագիրք Սմբատ իշխանի (Գունդստաբլի). հրատ. Ա. Ղլտճյանի. Վաղարշապատ, 1918 թ.:

ԱՀԴ—Ասորա-Հռոմեական Դատաստանագիրք. հրատ. Ա. Ղլտճյանի, Վաղարշապատ, 1917 թ.:

ԱՇ—Անանիայի վարդապետի Շիրակացւոյ՝ .Յաղագս հարցման և լուծման

*հրատ. Գալուստ Տ.-Մկրտչյանի, «Արարատ», № № 2 և 4, Վաղարշապատ, 1896 թ.։*

*ՎՏ—Վիմական տարեգիր՝ Ցուցակ ժողովածոյ արձանագրութեանց հայոց. կազմեաց Կ. Կոստանեանց, Պետերբուրգ, 1913 թ.։*

*ՀՄ—Մանանդյան Հ.—Ֆեոդալիզմը հին Հայաստանում (Արշակունիների ու մարզպանության շրջան). Երևան, 1934 թ.։*

АЮ—Н. Адонц, Армения в эпоху Юстиниана. С. Петербург, 1908 г.

*ՁԳ—Զենոբ Գլակ՝ Պատմութիւն Տարօնոյ. Վենետիկ, 1899 թ.։*

## ՀԱՏՎԱԾ ԱՌԱՋԻՆ

# Ն Ե Ր Ա Ծ Ա Կ Ա Ն

## I. ՀԱՅ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Հայ իրավունքի պատմությունը փոքրիկ մասնիկն է իրավունքի համաշխարհային պատմության: Հայ իրավունքը մեզ չի հասել, ինչպես հռոմեյական* Corpus juris*-ը, կամ բաբելական օրենքների Համմուրաբիի ժողովածուն, կամ այլ հին ժողովուրդների իրավունքները, պետականորեն օրենսդրված, ազգային ամփոփ մի կոդեքսի վերածված: Մեզ հասել են հայկական մի քանի օրենսգրքեր, վորպես թե ամփոփ ժողովածուներ, որինակ՝ Կանոնագիրքը կամ Մխիթար Գոշի Դատաստանագիրքը, սակայն նրանք իրենց բովանդակությամբ լիակատար ազգային իրավական կոդեքսներ չեն հանդիսանում: Մեկը, ինչպես Կանոնագիրքը, իր միակողմանի իրավաբանական նորմերով, վորոնք վերաբերում են սոսկ կրոնա-յեկեղեցական աշխարհին, պատկանում է կղերական դասին. մյուսը՝ Մխիթար Գոշի Դատաստանագիրքն իր խայտաբղետ, մեծ մասամբ օտար աղբյուրներից քաղված օրենքներով, տալիս է հայ իրավունքի խճողված պատկերը: Մինչդեռ հայ իրավունքը, թեև նա ամբողջովին չի արտացոլել վերոհիշյալ օրենսգրքերում, թեև նա մեզ չի հասել պետականորեն օրենսդրված, գործող իրավաբանական նորմերը կոդիֆիկացիայի յենթարկված, այնուամենայնիվ գոյություն է ունեցել ու դեր է խաղացել Հայաստանի հասարակական հարաբերություններում, ունենալով իր բազմադարյան պատմությունը:*

*Հայ իրավունքն արտացոլել է վո՛չ միայն Կանոնագրքում և Մխիթար Գոշի Դատաստանագրքում, վորոնք հասել են մեզ*

բազմաթիվ ձեռագիր օրինակներով, այլև անվել է այն ժողովուրդներից յուրացրած օրենքներով, որոնց հետ նա քաղաքական և կուլտուր-տնտեսական հարաբերություններ է ունեցել: Այդ օրենքները մասնավոր ռեցեպցիայի կարգով մուտք են գործել հայ իրականության մեջ և կիրարկվել են տեղական իրավաբանական ու դատական պրակտիկայում: Այդպիսի օրենքների ժողովածուներ են Մովսիսական օրենքները, Ասորա-Հռոմեական Դատաստանագիրքը և մի շարք քաղվածական ձեռնարկներ հունա-բյուզանդական օրենսդրական մատյաններից: Այսպիսով, հայ իրավունքը, որ մեզ հասել է գրավոր հուշարձաններում, չի ներկայացնում մի ուրույն ազգային իրավաբանական սիստեմ, կենտրոնական օրենսդրական բովով անցած մի կերտվածք, այլ կոնգլոմերատ է, որի մեջ մտած տեղական կամ օտար օրենսգրքերն այս կամ այն չափով կիրառում են ունեցել իրավական բնագավառում՝ յերկրի սոցիալ-տնտեսական զարգացման զանազան ետապների և մանավանդ մրրկածուփ քաղաքական կյանքի հետևանքով:

Սակայն հայ իրավունքի բովանդակությունն ու ծավալը չի սահմանափակվում միմիայն գրավոր օրենքների մեզ հասած ժողովածուներով: Գոյություն ունեյին իրականում նաև իրավաբանական նորմեր, որոնք անգիր եյին մնացել ու չեն արձանագրվել իր ժամանակին իրավաբանական հուշարձաններում: Այդ վերաբերում է գլխավորապես հայոց պատմության նախարարական շրջանին: Այդ անգիր իրավաբանական նորմերը, որոնք դեր եյին խաղում մի ժամանակ հասարակական փոխադարձ հարաբերությունների սահմանավորման ու կարգավորման մեջ, թերևս հանդիսանում են հայ իրավունքի ազգային ատաղձը: Այդ անգիր մնացած իրավաբանական նորմերը պահպանում եյին իրենց գործնական ուժը համապատասխան հասարակական ձևերում և պարտավորեցուցիչ դառնում սովորութական իրավունքի կարգով:

Այս տեսակետից հայ իրավունքն իր համապատասխան տեղն է գրավում իրավագիտության մեջ:

Սակայն մեզ համար հայ իրավունքի պատմությունն ստանում է ո՛չ միայն իրավագիտական նշանակություն, այլ առա-

վերապես պատմագիտական արժեք: Ինչպես հայտնի է, մեր հին պատմագրական աղբյուրները չափազանց սուղ նյութեր են մատակարարում հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական կյանքի մասին, կենտրոնանալով սոսկ քաղաքական իրադարձությունների վրա, որոնք կապվում են թագավորների ու իշխանական տների փոխհարաբերությունների, սրանց միջև տիրող հարատև պայքարների և արտաքին նվաճողների դեմ վարած պատերազմների հետ: Այս դեպքում հին հայ իրավունքն իր աղբյուրներով հանդերձ հնարավորություն է ընձեռում պատմագրական այդ թերությունները որոշ չափով վերացնելու, ներկայացնելով բավական հարուստ նյութ՝ Հայաստանի սոցիալական, մասամբ նաև տնտեսական պատկերը վերականգնելու համար: Երբ ուսումնասիրում ենք որևէ երկրի ու նրա ժողովրդի պատմությունը մարքսիստական տեսանկյունով, այստեղ հիմնականում ուսումնասիրության առարկան հանդիսանում են տվյալ ժողովրդի հասարակական հարաբերությունները. իսկ հասարակական հարաբերությունները կարգավորվում են որոշ կանոններով, նորմերով, որոնք ստանում են իրավաբանական ձևավորումն և մարմնանում են հատուկ իրավական ինստիտուտների մեջ: Մարքս-լենինյան պատմահայեցողության համեմատ, ամեն մի հասարակության մեջ գործող իրավունքները, իրավական ինստիտուտները հանդիսանում են այն վերնաշենքերից մեկը, որ բարձրանում է արտադրական հարաբերությունների հիմքի վրա:

Ահա թե ինչ է ասում Ֆ. Էնգելսը իրավունքի մասին իբրև վերնաշենքի. «Ամեն մի դեպքում հասարակության տնտեսական կառուցվածքն այն իրական հիմքն է կազմում, որով և վերջին հաշվով պիտի բացատրվի յուրաքանչյուր պատմական ժամանակաշրջանի իրավական ու քաղաքական հաստատությունների, ինչպես նաև կրոնական, փիլիսոփայական և այլ հայացքների բովանդակ վերնաշենքը»[1]: Այդ միտքն ավելի պարզորոշ արտահայտում է Կ. Մարքսը. «Իմ հետազոտություններն ինձ բերին այն եզրակացության, որ իրավական հարաբերությունները, ինչպես և պետության ձևերը չեն կարող ըմբռնվել իրենք իրենց մեջ, և ոչ էլ կարող են բացատրվել այսպես կոչված մարդկա-

յին ոգու ընդհանուր զարգացմամբ, այլ նրանց արմատները ավելի շուտ գտնվում են կյանքի նյութական պայմաններում... Իրենց կյանքի հասարակական արտադրության ժամանակ մարդիկ մտնում են որոշ, անհրաժեշտ, իրենց կամքից անկախ արտադրական հարաբերությունների մեջ, որոնք համապատասխանում են իրենց նյութական արտադրողական ուժերի զարգացման որոշ աստիճանին: Այդ արտադրական հարաբերությունների ամբողջությունը կազմում է հասարակության տնտեսական կառուցվածքը, այն իրական բազիսը, որի վրա հիմնվելով՝ բարձրանում է իրավական ու քաղաքական վերնաշենքը և որին համապատասխանում են հասարակական գիտակցության որոշ ձևերը»[2]:

Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի վերևում բերված խոսքերից հետևում է, որ իրավունքը գոյանում է որպես արտադրական հարաբերությունների իրավաբանական արտահայտում և ըստ այդմ էլ կարող է ստանալ զանազան բովանդակություն՝ արտադրական-հասարակական հարաբերությունների փոփոխումով: Ոչ թե հասարակությունն է հիմնված օրենքների, իրավունքի վրա, այլ, ընդհակառակը, իրավունքը, օրենքները բխում են հասարակության կառույցից, որովհետև «արտադրության յուրաքանչյուր ձևը առաջ է բերում իրեն հատուկ իրավական հարաբերություններ, կառավարության ձևեր և այլն»[3].

Հետևապես իրավունքը, որը, իբրև իրավաբանական նորմերի համակցություն, այնպես պարզորոշ ձևով մարմնանում է օրենքներում, իր ցայտուն արտահայտությունն ստանում է դասակարգային հասարակության մեջ, սրբագործելով ու վավերացնելով տիրող հարաբերությունները, որոնք, իհարկե, ծառայում են տիրապետող դասակարգին:

Ուրեմն հայ իրավունքի պատմությունը կարևոր նշանակություն է ստանում թե՛ իրավագիտության և թե՛ հայ պատմագիտության համար: Մի կողմից՝ հայ իրավունքի ուսումնասիրությունը ձգտում է վերականգնել, մեզ հասած իրավաբանական նյութերի հիման վրա, հայ իրավունքի իսկական բնույթն ու պատկերը: Դրանով նա գալիս է ծառայելու իրավագիտությանը և այլ պատմական ժողովուրդներին կից նաև

Հայ ժողովրդի իրավունքի ուսումնասիրությամբ ավելացնում է մի դրվագ ընդհանրապես իրավունքի ծագման ու զարգացման տեսության մեջ։ Մյուս կողմից՝ հին հայ հասարակության իրավական վերնաշենքը լայն ուղիներ է բաց անում պատմագետի առաջ՝ լուծելու մի շարք պրոբլեմներ Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման պատմության նկատմամբ, որոնք մութ են մնացել կամ անտեսվել են մեր հին մատենագրության մեջ։ Վերջին հանգամանքով կարելի յե բացատրել այն բնորոշ յերևույթը, որ յեթե մեզանում փորձեր են յեղել ուսումնասիրելու հին Հայաստանի իրավական ինստիտուտները, այդ արել են սկզբներում պատմաբաններն ու բանասերները, բայց վոչ իրավագետները։

## II. ՀԱՅ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

Հայ իրավունքի հետազոտության գործը տակավին հետամնաց վիճակում է գտնվում։ Հայ իրավունքի ուսումնասիրության անդրանիկ փորձերը կատարել են վո՛չ թե հայ, այլ օտարազգի յեվրոպական գիտնականները, գլխավորապես գերմանացի իրավագետները։

Հայ իրավունքի մասին առաջին տեղեկությունները յեվրոպական գրականության մեջ յերևում են XIX դարի սկզբներին, շնորհիվ Ռուսական Ակադեմիայի անդամ Ա. Բրոսեյի։ Սա Փարիզում հրապարակում է 1829 թ. տեղեկություններ վրաց օրենսգրքի (Վախթանգի) և իրավունքի մասին, վորի մեջ մտնում եյին նաև «Հայկական» կոչված օրենքները, վորոնք քաղված են գլխավորապես Մխիթար Գոշի Դատաստանագրքից և Ասորա-Հռոմեյական Օրենսգրքի հայկական վարիանտից[4]։ Այդ հրապարակված նյութերի հիման վրա գերմանացի գիտնական Բինեքը հետազոտական մի ակնարկ է լույս ընծայում վրացական ու հայկական օրենսգրքերի մասին[5]։ Այնուհետև հայտնի Ն. Հաքստհաուզենն Անդրկովկասում կատարած իր ճանապարհորդության պատմությունը տալիս՝ հաղորդում է նաև մանրամասն տեղեկություններ վրացական ու հայկական իրավունքների մասին[6]։ Վերոհիշյալ հեղինակների, մանավանդ վերջին յերկուսի, տվյալները հայ իրավունքի մա-

որն չափազանց թերի ու անկատար են: Նրանք օգտվել են ո՛չ թե անմիջական հայ աղբյուրներից, այլ վրաց թագավոր Վախթանգի օրենսգրքից, որի մեջ պարունակվում է նաև հատուկ գլուխ «Հայկական օրենքներ» խորագրով, որոնք այստեղ որոշ փոփոխման են յենթարկվել, հարմարեցվելով Վրաստանի տեղական պայմաններին:

Հայ իրավունքի հետազոտության առաջին փորձն իրավագիտության մեջ պատկանում է Ֆերդինանդ Բիշոֆին, որն զբաղվել է լեհահայոց իրավունքի հարցով, լույս ընծայելով 1857 թ. «Das alte Recht der Armenier in Polen»[1] և ապա 1862 թ. «Das alte Recht der Armenier in Lemвerg»[2] աշխատությունները: Պրոֆեսոր Ֆ. Բիշոֆը ավստրիական քաղաքային իրավունքների իր ժողովածուի համար Լեմբերգի արխիվում նյութեր պրպտելիս՝ անսպասելի հայտաբերում է մի շարք արխիվային վավերագրեր Լեմբերգի հայ գաղութի իրավական հարաբերությունների մասին: Այդ վավերագրերի ուսումնասիրությունը նրան բերում է այն յեզրակացության, որ Լեմբերգի հայ համայնքը ղեկավարվելիս է յեղել սեփական ազգային օրենսգրքով: Հետամուտ լինելով՝ նա իսկապես կարողանում է գտնել նույն արխիվում իր կռահած օրենսգիրքը, գրված լատիներեն և լեհերեն, որը և դառնում է նրա ուսումնասիրության առարկան: Այդ օրենսգրքի լատիներեն օրինակը կրում է հետևյալ խորագիրը. «Հայ իրավունքի օրենքներ՝ լեհաց Սիգիզմունդ Ա. ամենաբարեպաշտ թագավորից քննված ու հաստատված և նորին թագավորական մեծության հրամանով ու կամքով իրենց մայրենի լեզվից լատիներեն թարգմանված և բնագրից հարազատորեն ընդօրինակված»[3]: Այն հաստատված է յեղել լեհաց Սիգիզմունդ Ա. թագավորի կողմից 1519 թ.: Բիշոֆը, վերլուծելով այդ օրենսգրքի բովանդակությունը, այն կարծիքին է հանգում, թե օրենքները մեծ մասամբ վերցված են հին և նոր կտակարանից, իսկ մնացած մասը պարունակում է բարոյագիտական-խրատական աշխարհայացք. «առաջին վեց գլուխը,— շարունակում է Բիշոֆը,— վերագրվում են հայոց թագավորներին, մյուս մի քանիսը պարունակում են անշուշտ շատ հին օրենքներ, իսկ ամ-

բողջ օրենսգրքի հորինվածքը հավանականորեն կատարված է, երբ հայերը գաղթել էին Լեհաստան»։

Պրոֆ. Բիշոֆն, անծանոթ լինելով հայոց գրականության ու պատմության, չի կարողացել ճիշտ վորոշել իր հայատառ լեհահայոց օրենսգրքի աղբյուրների ծագումն և ընդհանրապես հայ իրավունքի մասին գաղափար չի ունեցել։ Մինչդեռ Լեմբերգի հայ օրենսգրքի և Մխիթար Գոշի Դատաստանագրքի հոդվածների հասարակ համեմատությունն իսկ ապացուցում է նրանց սերտ առնչությունը։ Իրոք, Վահան Բաստամյանը, բաղդատելով այս երկու օրենսգրքի հոդվածաշարը, հաստատեց, վոր Լեմբերգի հայ օրենսգրքի հոդվածների մի մասը վերցված է Մխիթար Գոշի Դատաստանագրքից գրեթե բառացի, իսկ մեծագույն մասը ենթարկված է քիչ կամ շատ փոփոխումների[10]։ Անշուշտ, այդ փոփոխությունները կատարված են օրենքները տեղական պայմաններին հարմարեցնելու նպատակով։

Ֆ. Բիշոֆի աշխատությունները լեհահայոց իրավունքի մասին վորոշ հետաքրքրություն առաջացրին իրավագիտության բնագավառում, մանավանդ վոր Ֆ. Բիշոֆից մի փոքր հետո գերմանական մատենադարաններում անցյալ դարի 70-ական թվականների վերջերը հայտաբերվեցին այսպես կոչված «Ասորա-Հռոմեական Դատաստանագրքի» հայկական վարիանտները։ Այդ օրենսգրքի մի ձեռագիրը, վոր գտնվում է Լոնդոնի ազգային թանգարանում, հրատարակել են 1880 թ. Բրունս և Զախաու գերմանացի գիտնականներն իրենց թարգմանությամբ և լուսաբանությամբ, շոշափելով նաև հայ իրավունքը, վորի հետ վորոշ չափով կապում էին հիշյալ Ասորա-Հռոմեական Օրենսգիրքն, իբրև V դարի գործ։

Այս հանգամանքները խթան հանդիսացան մի քանի իրավաբանների համար՝ զբաղվելու հայ իրավունքի հարցով։ Սրանց մեջ հայտնի դարձավ համեմատական իրավագիտության ականավոր մասնագետ պրոֆ. Յ. Կոհլերը։ Յեթե Ֆ. Բիշոֆը զբաղվեց լեհահայոց իրավունքով վորպես հետևանք յուր ձեռնարկած հետազոտական աշխատանքների՝ Ավստրիայի քաղաքային իրավունքների մասին, վորոնց շարքին էր պատ-

կանում նաև լեհահայ իրավունքը, իբրև Լեմբերգ քաղաքի իրավունք, ապա Յ. Կոհլերը մոտեցավ հայ իրավունքի հետազոտությանը համեմատական իրավագիտության տեսանկյունով: Բուրժուական իրավագետ-տեսաբանները, զբաղվելով իրավունքի ծագման ու զարգացման պրոբլեմներով, փորձում էին այդ հարցը լուծել պատմա-համեմատական ու ազգագրական-համեմատական մեթոդներով: Նրանք ամենայն չափերով կանգնում էին իրավունքի յուրացման ու փոխառման, ինչպես և սոսկ ազդեցության թեորիաների վրա: Ահա այդ տեսակետով էլ հայ իրավունքը, թե՛ հին գրավորը և թե՛ սովորութականը, գրավում էր Յ. Կոհլերի և սրա հետևորդների ուշադրությունը, հարստացնելու համար համեմատական իրավագիտության հետազոտական պաշարը: Իր առաջ ունենալով Ֆ. Բիշոֆի գործերը, նաև Ասորա-Հռոմեյական Դատաստանագիրքն ու Հաքստհաուզենի աշխատության մեջ թարգմանաբար առաջ բերված հայ իրավունքի նորմերը, որոնք քաղված էին Վախթանգի Դատաստանագրքից և ուրեմն չէին ներկայացնում Մխիթար Գոշի Դատաստանագրքի հարազատ բովանդակությունը, պրոֆ. Յ. Կոհլերը 1888 թ. հրատարակեց «Das Recht der Armenier» («Հայերի իրավունքը») աշխատությունը, որը հայ հին իրավունքի պատմությունն ու սիստեմը կառուցելու մի փորձ է: Հիշյալ հեղինակը, թեև նույնպես զուրկ էր հայ աղբյուրներից և գրականությունից անմիջորեն օգտվելու հնարավորությունից, այնուամենայնիվ կարողացել էր որոշ չափով գրագետ լինել հայ պատմության ու իրավունքի վերաբերյալ օտար գրականությանն և ըստ այնմ շարահյուսել իր աշխատությունը: Ինչպես սպասելի յեր, նա հայ իրավունքի նորմերը համեմատություն է գտնում զանազան հին ժողովուրդների օրենսգրքերի (Համմուրաբիի, Մովսիսական օրենքների, սասանյանի և այլն) հետ: Անշուշտ, Յ. Կոհլերի աշխատությունը զերծ չէ թերություններից, մանավանդ յերբ հայ օրենսդրության աղբյուրներն և իրավաբանական նորմերը նա համարում է մեծ մասամբ սոսկ փոխառումներ կամ ազդեցություններ օտար իրավունքներից: Այդ նույն փոխառման տեսակետն է նա արծարծում 1906 թ. լույս ընծայած «Altsyrisches und armenisches

Recht» հետազոտության մեջ, քննության առնելով հին ասորական և հայկական իրավունքներն իրենց ունեցած առնչությամբ:

Նույն փոխառումների տեսակետի վրա են կանգնած Դավիդ Մյուլլեր[11] և Վ. Սպոտովիցեր[12] գիտնականները, որոնք Մխիթար Գոշի Դատաստանագրքի հոդվածների մեծ մասը համարում են փոխառած մովսիսական և նույնիսկ թալմուդ-սարքինական իրավունքից:

Ավելի արժեքավոր և ուշագրավ են պրոֆ. Յ. Կարստի հայ իրավագիտության վերաբերյալ ուսումնասիրությունները: Իմանալով հայոց լեզուն բավական, որևէ և անմիջականորեն ծանոթ լինելով հայ մատենագրությանն ու օգտվելով գրչագիր հուշարձաններից, նա գերազանցում է վերոհիշյալ գիտնականներին հենց այդ առավելություններով, որոնք նրա հետազոտություններին ավելի գրական հիմնավորում են տալիս: Իր հայագիտական բանասիրական աշխատությունների շարքում Յ. Կարստը հանդես է գալիս նաև երկու իրավագիտական երկերով: Առաջինը՝ «Sempad'scher Kodex aus dem XIII Jahrhundert», երկու ստվար հատորներից բաղկացած և 1905 թ. լույս տեսած աշխատություն է: Դրա առաջին հատորը Կիլիկյան հայ թագավորության մեջ կիրառվող Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքի հայ բնագրի և գերմաներեն թարգմանության հրատարակությունն է, իսկ երկրորդ հատորը՝ Դատաստանագրքի օրենքների կոմենտարներն, աղբյուրների լուսաբանումը՝ համեմատությամբ Մխիթար Գոշի Դատաստանագրքի: Այդ ծոխ ու մանրակրկիտ աշխատությունը մեր մատենագրական բնագրերի հրապարակման ասպարեզում չեղակի չէ, որպես գիտական հրատարակություն, այն եւ հայ իրավաբանական բնագրերի, որոնց պակասն այնքան զգալի չէ մեր իրականության մեջ: Ի հարկե, Յ. Կարստը հեռու չի մնում, ինչպես և պատահի չեր, բուրժուական իրավագետներից, երբ իր կոմենտարներում հայկական իրավունքի նորմերի մեջ շատ անգամ տեսնում է սոսկ փոխառումներ օտար իրավունքներից, ինչպես օրինակ՝ Ասորականից, Մովսիսականից, Բյուզանդականից և այլն:

Ավելի հետաքրքրական է Յ. Կարստի երկրորդ աշխատությունը՝ «Grundriss der Geschichte des armenischen Rechtes».

1906 թ.—«Հայ իրավունքի պատմության ուրվագծերը»: Հեղինակը փորձում է տալ Հայ իրավունքի պատմությունը, բաժանելով այն յերկու մասի— առաջին պատմություն, վորտեղ տեսություն են անվում նրա աղբյուրները, և ապա ներքին զարգացման պատմություն, վորտեղ տրվում է այդ իրավունքի սիստեմը: Այստեղ Յ. Կարստը, ըստ յերևույթին, մի փոքր մեղմացնում է իր նախորդ աշխատության մեջ արծարծած տեսակետը փոխառման ու ազդեցության մասին, ընդունելով Հայ իրավունքի գոյացման ու զարգացման տեղական յուրահատուկ հանգամանքները: Սակայն նա մնում է սխալների մեջ, ամբողջովին Բագրատունյաց թագավորության շրջանին վերագրելով բյուզանդական օրենքների ռեցեպցիան Հայաստանում: Չնայած վորոշ թերություններին և անընդունելի տեսակետներին, Յ. Կարստի հիշյալ աշխատությունը պետք է համարել վոչ միայն յեվրոպական իրավագիտության, այլև հայ բանասիրական ու իրավաբանական գրականության մեջ անդրանիկ և միակ լուրջ փորձը՝ տալու Հայ իրավունքի պատմության ամփոփ ու հանգամանորեն արծարծած մի ուսումնասիրություն:

Այստեղ կանգ չենք առնում գերմանական իրավագիտական գրականության մեջ հրապարակված մի շարք հին ժողովուրդների իրավունքների պատմությանը նվիրված գործերի վրա, ինչպես՝ B. W. Leist—Graeco-italische Rechtsgeschichte (1884 թ.) կամ՝ L. Mitteis—Reichsrecht und Volksrecht in den östlichen Provinzen des römischen Kaiserreichs (1891 թ.), կամ՝ Zachariae v. Lingenthal—Geschichte des Griechisch-römischen Rechts (1892 թ.) և այլն, վորոնց մեջ հարևանցիորեն շոշափվում է նաև Հայ իրավունքը:

Գերմանականի համեմատությամբ չափազանց աղքատ են Ֆրանսական իրավագիտության մեջ հայ իրավունքի վերաբերյալ աշխատությունները: Սակայն, ինչպես վերը նշել ենք, Հայ իրավունքի մասին առաջին տեղեկությունները, վորոնք հայտնի յեղան յեվրոպական գիտնականներին, յերևացին Ֆրանսիայում, շնորհիվ Ռուսաստանի Գիտությունների Ակադեմիայի անդամ Բրոսսեյի: Սա գլխավորապես ուշադրություն եր դարձրել վրացական իրավունքին, նկատի ունենալով վրաց Վախթանգ Թագավորի օրենսգիրքը, վորի հատվածներից մեկն էլ

կրում է «Հայկական օրենքներ» վերնագիրը: Բրոսեյի աշխատությունները չի կարելի ուսումնասիրություններ անվանել. նրանք ավելի շուտ ինֆորմացիոն և տեղեկատուական հոդվածներ են: Այնուհետև պետք է հիշատակել R. Dareste—Etudes d'histoire de droit (1887 թ.) աշխատությունը, որ հատուկ գլուխ է հատկացված հայ իրավունքի պատմությանը: Սա համառոտ պատմական տեսություն է, շարադրված բացառապես օտար գրական աղբյուրների հիման վրա, այն է՝ Մ. Բրոսեյի, Մ. Կովալևսկու, Թերևս և Յ. Կոհլերի ուսումնասիրությունների: Դարեստի աշխատությունն հայ իրավունքի մասին Յ. Կոհլերի և մանավանդ Յ. Կարստի գործերից հետո միանգամայն զուրկ է արժեքից: Իրավագիտական տեսակետից նույնպես անարժեք գործ է հանդիսանում Կ. Բասմաջյանի «Le droit armenien puis l'origine jusqu'à nos jours» (1901 թ.)—«Հայ իրավունքը սկզբից մինչև մեր օրերը»—թռուցիկ ակնարկը, վորով հեղինակը ցանկացել է ծանոթացնել յեվրոպական արևելագետներին հայ իրավունքի պատմության հետ:

Հայ իրավունքի պատմությանն են վերաբերում Ե. Դյուլորիեյի և Վ. Լանգլուայի աշխատությունները, վորոնք սակայն, ավելի պատմագիտական բնույթ են կրում: Առաջինն իր «Etude sur l'organisation politique, religieuse et administrativ du royaume de la petite Armenie au temps de Croisades» աշխատության մեջ տալիս է Կիլիկյան հայ թագավորության պետական ու վարչական կառուցքի պատկերը, իսկ յերկրորդը՝ «Le trésor des Chartes d'Armenie au Cartoulaire de la chancellerie Royal de Roupeniens» աշխատության մեջ հրապարակել է Կիլիկիայի Ռուբինյանց թագավորության դիվանից դուրս յեկած զանազան վավերագրերի պատճենները, վորոնք մեծ մասամբ առընչություն ունեն միջազգային հարաբերությունների հետ՝ առևտրական ու այլ դաշնագրերի բնագավառում:

Վերջապես հիշենք Հ. Մեղավորյանի իրավագիտական-ազգագրական աշխատությունը՝ «Ընտանիքի և ամուսնության մասին» (1894 թ.)—«Etude ethnographique et juridique sur la famille et le mariage armeniens, pre'cede' dlun aperçue historique».

Նմանապես հարուստ չէ ռուսական իրավագիտությունն հայ

իրավունքի հետազոտություններով: Բնորոշ է, որ, բացի յերկու- յերեք ռուսներից՝ մնացածները յեղել են հայ ուսումնասիրողներ, որոնք հրապարակել են իրենց աշխատությունները ռուսերեն: Անդրանիկ գործն հայ իրավունքի մասին յեղել է Алексеев-ի «Армянский судебник» խորագրով գրքույկը (1870 թ.): Այստեղ տեսություն է տրված Նոր-Նախիջևան քաղաքի հայկական համայնքի օրենսգիրքը, որի օրենքների մեծ մասն, ըստ հիշյալ հեղինակի կարծիքի, թարգմանված է Հուստինիանոսի օրենքներից: Այնուհետև հիշելու յե Մաքսիմ Կովալևսկուն, որը հայտնի յե մի շարք համեմատական իրավագիտական հետազոտություններով: Սա չի տվել հատուկ հետազոտություն հայ իրավունքի մասին, բայց իր մի աշխատության մեջ «Закон и обычай на Кавказе», հատոր I (1890 թ.), IV գլխում, որ կրում է «Влияние армянского и греческого права» խորագիրը, նա փորձում է ապացուցել, թե կովկասյան լեռնցիների իրավունքի վրա վորոշ ազդեցություն է ունեցել նաև հայ իրավունքը: Մ. Կովալևսկին ինքն անձամբ լավ իրազեկ չե հայ իրավունքի պատմության ու հայ օրենսգրքերի բովանդակության, այլ օգտվում է կողմնակի աղբյուրներից, այն է՝ Հուբեյի և գլխավորապես Վախթանգի օրենսգրքերի հայկական մասից:

Աչքի յե ընկնում իր մի քանի աշխատություններով Մ. Կովալևսկու աշակերտ և նրա մեթոդաբանական ուղղության պատկանող պրոֆ. Ս. Յեղիազարյանը: Նրա այն հետազոտությունը, որը հատկապես արծարծում է հայ իրավունքը, լույս է տեսել 1919 թ. «Исследования по истории армянского права публичного и частного» խորագրով: Այդ իրավագիտական աշխատության մեջ, որի միայն առաջին մասն է հրատարակվել, նա տալիս է միջնադարյան (X—XIII դարերի) Հայաստանի պետական, հասարակական, տնտեսական և իրավաբանական կառույցը և ընդ. նմին փորձում է ներկայացնել հայ իրավունքի սիստեմը: Թեև առաջադրված պրոբլեմներն ու արծարծվող հարցերը հետաքրքրություն են շարժում, սակայն հեղինակն իր տրամադրության տակ է ունեցել չափազանց աղքատ նյութ, բավականանալով սոսկ Անիի և Շիրակի վիմական արձանագրություն-

ներով, այն էլ մինչև 1881 թ. հրապարակված բնագրերից, որոնք զետեղված են Ղ. Ալիշանի «Շիրակ» տեղագրական աշխատության մեջ ու թարգմանված են ռուսերեն Մ. Եմինի ձեռքով՝ «Армянские надписи в Карсе, Ани и окрестностях последнего», որն ինքնին անբավարար մի գործ է:

Ս. Յեղիազարյանը, կառուցելով միջնադարյան հայ իրավունքի սխեմը, չի կապում այդ օրգանապես հայ իրավունքի զարգացման նախորդ եռապների հետ. ստացվում է ինչ-որ ինքնամփոփ, ժամանակագրորեն ու տեղագրորեն կղզիացած իրավունք, որ իր պարունակությամբ թերի չէ և չի հանդիսանում գենետիկ զարգացած իրավունքի պատմություն: Նույն հեղինակի մյուս աշխատությունները—«Административно-экономический строй сельской общины в Эриванской губернии», այնուհետև «Исследования по истории учреждений в Закавказье» 2 հատորից և «О водовладении в Закавказском крае»,—թեև անմիջորեն չեն վերաբերում հայ իրավունքի պատմությանը, բայց արծարծված հարուստ նյութը խիստ շահեկան է ուշ միջնադարի և նոր դարերի վաղագույն շրջանի հայ սովորութական իրավունքը պարզաբանելու համար այնպիսի էական հարցերի նկատմամբ, ինչպես են հողատիրության իրավունքը, գյուղական համայնքը, ջրային իրավունքը, հողային ռենտան ֆեոդալիզմի պայմաններում:

Թբիլիսում մի ժամանակ լույս տեսնող «Юридическое обозрение» ամսագրում քանիցս հրապարակվել են հայ իրավունքի վերաբերյալ հոդվածներ: Դրանցից կարևոր է հիշատակել Ս. Արծրունու «Семейственное право по Мхитару Гошу», և Հ. Տեր-Հովհաննիսյանի «Судебник Мхитара Гоша». վերջինը թարգմանական քաղվածք է Մխիթար Գոշի Դատաստանագրքի որենքներից:

Վերջին ժամանակները լույս են ընծայվել յերկու աշխատություններ հայ իրավունքի պատմության առնչությամբ: Առաջինը՝ «Древне-армянская книга канонов», սահմանափակված է հայ կանոնական իրավունքի վերաբերյալ զանազան մատենադարաններում յեղած ձեռագրերի համադրական դասավորումով և նկարագրությամբ, իսկ յերկրորդը՝ «Судебная книга

Мхитара Гоша и книга канонов», վորն զբաղվում է այն հարցով. թե ի՛նչ չափով Հայ Կանոնագիրքը և վո՛ր օրինակն աղբյուր ծառայել Մխ. Գոշի Դատաստանագրքի համար:

Նույն կանոնագիրքը հետազոտության առարկա յե դարձել Լ. Մելիքսեթբեկի «Об источниках древне-армянского права» գործում, վորտեղ հեղինակն զբաղվում է միայն հայ կանոնական իրավունքի աղբյուրների հարցով:

Հետաքրքրություն է ներկայացնում Համաուկրաինական արևելագիտական ընկերության «Східні Світ»—«Արևելյան աշխարհ» պարբերական հանդեսում (1927 թ.) զետեղված հոդվածը՝ «Բյուզանդիոնի ազդեցությունը հայ իրավունքի վրա», վոր պատկանում է պրոֆ. Յա. Ցասսին: Հեղինակը, համակարծիք լինելով գերմանացի գիտնական Միտտայսին, թե Ասորա-Հռոմեական Դատաստանագիրքը հունական հիմք ունի, նշում է, թե Մխիթար Գոշի Դատաստանագրքում լայն չափերով փոխառություններ են կատարված բյուզանդական իրավունքից. այստեղ հեղինակն, անշուշտ, չափազանցությունների մեջ է ընկնում:

Ի վերջո նշենք Խ. Սամուելյանի «Очерки по обычному семейному праву армян» (1901 թ.), վորտեղ ազգագրական ու պատմական նյութերի հիման վրա ուրվագծվում է հայ ընտանեկան սովորութական իրավունքը:

Դառնանք այժմ հայ իրավագիտական աշխարհին: Հայոց պատմությունը հետազոտության առարկա յե յեղել հայ բանասերների ու պատմաբանների կողմից միայն քաղաքական ու բանասիրական, վերջերս նաև սոցիալ-տնտեսական կողմից: Նրանք, ուսումնասիրելով Հայաստանի հասարակական ձևերը, գաղափարախոսական և այլ վերնաշենքերը, միանգամայն աչքաթող են արել այնպիսի մի կարևորագույն վերնաշենք, ինչպիսին է իրավականը, վորով հնարավոր է շատ բան պարզել հայոց պատմության մթին էջերում: Ի հարկե, այդ ասպարեզում անհրաժեշտ եր իրավագետների մասնակցությունը, վոր, ինչպես տեսնում ենք, բացի յերկու—յերեք դեպքից, բնավ չի յեղել: Հայ իրավական ինստիտուտների ուսումնասիրության գործում հանդես են յեկել նաև հայ պատմաբաններն ու բանասերները.

բայց սրանք մոտեցել են առաջադրված պրոբլեմներին զուտ պատմական կամ լեզվագիտական թեքումներով: Կանգնած լինելով հետազոտության ֆորմալիստական յեղանակների վրա՝ նրանք տվել են գլխավորապես Հայաստանի պետական, վարչական ու զինվորական, մասամբ նախարարական կառուցքի արտաքին նկարագիրը կամ տերմինաբանական վերլուծումը, առանց խորանալու նրանց սոցիոլոգիական տեսության մեջ:

Մեր իրականության մեջ հայ իրավունքի ուսումնասիրության անդրանիկությունը պատկանում է Վահան Բաստամյանին: Նրա գլուխ-գործոցը պետք է համարել Մխիթար Գոշի Դատաստանագրքի հրատարակումը (1880 թ.), վորով նա հայ իրավունքի այդ միակ պատմական ժողովածուն հրապարակի վրա յեր դնում հետքրքրվողների և հետազոտողների առաջ: Այդ Դատաստանագրքի գիտական հրատարակության բնույթը վորոշ չափով հնացել է և չի կարող բավարարել արդի գիտական պահանջներին:

Բանն այն է, վոր Վ. Բաստամյանը հրատարակության համար վերցրել է իրոք միայն մի ձեռագիր, իր կարծիքով համեմատաբար լրիվ օրինակը, կցելով իբրև ծանոթություններ մի քանի այլ ձեռագրերի տարբերությունները. մինչդեռ գիտական արժեք կարող է ունենալ այն հրատարակությունը, վոր կազմվում և խմբագրվում է բոլոր ձեռագրերի համեմատությամբ: Բայց և այնպես, նա տակավին մնում է միակ մատչելի աղբյուրը և պահպանում է իր գերազանցությունը վերջին ժամանակներս հայերեն հրապարակված մի քանի այլ օրենսգրքերի վերաբերմամբ, վորոնց հրատարակողները գլացել են նույնիսկ նվազագույն չափով պահպանել այդպիսի պատասխանատու տպագրությունների գիտական ձևավորումը: Կարևոր նշանակություն եր ներկայացնում իր ժամանակին Վ. Բաստամյանցի ընդարձակ «Հառաջաբանությունը», վոր կցված է Մխիթար Գոշի Դատաստանագրքի բնագրի հրատարակությանը, և վորը նախապես «Դատաստանագիրք Մխիթար Գոշի, իրավաբանական հետազոտություն» խորագրով պարբերաբար տպագրվել է Թիֆլիսի «Փորձ» ամսագրում 1879 թ.: Դա հայ իրավունքի պատմության մոնոգրաֆիական մի հետազոտություն է, վոր առաջին անգամ է

յերևան գալիս հայ իրականության մեջ և դրանով պատվավոր տեղ գրավում: Հիշյալ «Հառաջաբանության» մեջ հեղինակը փորձում է ուրվագծել հայ օրենսդրության պատմությունը և ապա մանրամասնորեն կանգ է առնում Մխիթար Գոշի անձնավորության ու նրա կազմած օրենսգրքի վրա, վերհանելով նրա նշանակությունը, վերլուծելով նրա սիստեմը, աղբյուրներն և իրավաբանական տեսական ու գործնական բովանդակությունը:

Նույն Վ. Բաստամյանը, հիմնվելով ձեռագիր օրենսգրքերի ու կանոնագրքերի ուսումնասիրության վրա, տպագրել է (1880 թ.) և մի այլ ստվար աշխատություն— «Ամուսնությունն ըստ հայ յեկեղեցական իրավաբանության»: Չնայած վերնագրի ընդգծված բնույթին՝ այդ հետազոտությունը շահեկան է հայ իրավունքի պատմության համար, ներկայացնելով ամուսնական իրավունքի ուսումնասիրությունը վորոշ չափով նաև քաղաքացիական իրավունքի սահմաններում: Այդ աշխատությունը, վոր տակավին անավարտ է մնացել, պատկերացնում է ամուսնական իրավունքի օրենսդրության ամբողջ զարգացումը, թեև առանց այն կապելու հասարակական-արտադրական հարաբերությունների զարգացման հետ:

Այնուհետև 1905 թ. Շուշում լույս է տեսել «Հայոց յեկեղեցական իրավունք» աշխատությունը, վորը պարունակում է ներածություն և աղբյուրներ: Հեղինակը մոտեցել է իր նյութին խիստ սահմանափակ առումով, կղերական իմաստավորումով, ուստի կանոնական իրավունքն այդտեղ յերևան է գալիս իբրև ինքնամփոփ, ինքն իր մեջ զարգացող յերևույթ, հասարակական հարաբերությունների բովանդակ, իրավական վերնաշենքից անջատ մի կատեգորիա: Այդ աշխատության նշանակությունն այն է, վոր այնտեղ ի մի յեն ամփոփված բոլոր աղբյուրները, այն է՝ յեկեղեցական ժողովների վորոշումները, ժողովական ու անհատական ծագում ունեցող յեկեղեցական կանոններն ու կարգադրությունները, վորոնք, անկասկած, հայ իրավունքի ուսումնասիրության համար կարևոր նյութեր են: Սակայն այդ աղբյուրների արժեքը մի փոքր նսեմանում է, վորովհետև նրանց բովանդակության մշակումն ու խմբագրումը

չի կատարվել դիտական հրատարակության պահանջների համաձայն:

Հայ իրավունքի պատմության վերաբերյալ մի քանի ուսումնասիրություններով հանդես է եկել Արսեն Ղլտճյանը: Նրա վերջին հրատարակած աշխատության մեջ, «Հայոց հին իրավունքը» խորագրով (1913 թ.), նա փորձում է տալ հայ ընտանեկան իրավունքի սիստեմը, ընդ որում նյութը բաժանում է երկու մասի՝ ընտանեկան կազմակերպության հիմունքները և ապա ամուսնական իրավունքը: Այդ աշխատության առավելությունն այն է, որ հեղինակն օգտագործում է, մյուս աղբյուրների շարքում, նաև հայ ազգագրական նյութեր: Սակայն վերոհիշյալ գործն իր վրա նացիոնալիստական բնույթ ունի, իսկ իր գիտական կոնցեպցիայով արծարծում է ռեակցիոն տեսակետ: Ա. Ղլտճյանը մոտենում է իրավունքի պրոբլեմին ռասայական թեորիայով, ճանաչելով միայն արիական ազգերի իրավունքը և սեմական ազգերի իրավունքն իբրև հակոտնյա կատեգորիաներ, որոնք իբր թե տարբերվում են իրարից ուրույն հատկանիշներով, իրավաըմբռնման յուրահատուկ ցեղական-ռասայական դրսևորումով: Ի հարկե, ըստ Ա. Ղլտճյանի, հայ իրավունքը զուտ արիական է, որ հետագայում հայ ցեղի ազգայնացումով ստացել է ազգային բնույթ, պահպանելով արիական նախադրույթի հիմնական գծերը: Անտեսելով պատմական զարգացման օրինաչափությունն և հաջորդական սոցիալ-տնտեսական ֆորմացիաները՝ Ա. Ղլտճյանը վերցնում է հայ իրավական վերնաշենքի երևույթներն ու իրավական ինստիտուտներն իրենց ստատիկայում: Նա հայ իրավունքը համեմատության է ենթարկում այլ արիական ժողովուրդների իրավունքների հետ և, առանց նրանց զարգացման մոմենտները որոշելու, այն հայտարարում է արիական, կանխապես հեռու վանելով սեմական իրավունքը, իբրև միանգամայն այլ իրավաբանական նորմեր և այլ իրավական ինստիտուտներ պարունակող: Մինչդեռ արիական թեորիայով տարված իրավագետները չեն ուզում դիտել, որ «սեմական իրավունքի» շատ ինստիտուտներ նույնն են եղել, ինչ որ «արիական իրավունքի», բայց տվյալ ստադիայում կանգնած են սոցիալ-տնտեսական տարբեր աստիճանի վրա: Հետևա-

պես իրավական շատ ինստիտուտների տարբերությունները առաջացել էին վոչ թե ռասայական տարբերություններից, այլ սոցիալ-տնտեսական զարգացման տարբեր աստիճաններից:

1924 թ. Երևանում լույս տեսավ «Հայ իրավունքի պատմության ներածություն» խորագրով մի աշխատություն, վորը, լինելով միայն առաջին մասը, ի հարկե լրիվ գործ չի հանդիսանում: Այդ հետազոտությունը շատ քիչ բան է տալիս իսկապես հայ իրավունքի պատմության մասին: Հեղինակն այստեղ նախ զբաղվում է իրավունքի և նրա աղբյուրների ընդհանուր տեսությամբ և, ապա, դառնալով բուն հայ իրավունքին, կանգ է առնում գրավոր աղբյուրների վրա մինչև Բագրատունյաց շրջանի վերջը, ըստ վորում գլխավորապես նյութ է առնում կանոնական իրավունքը և մասամբ հնագույն շրջանի մատենագրական ու յերկու վիմագրական հուշարձանները: Այնուհետև անցնելով Բյուզանդական իրավունքի հուշարձաններին, վորոնք աղբյուրի նշանակություն են ունեցել հայ իրավունքի զարգացման մեջ, նա ընդհատում է Ա. պրակի շարադրությունը, վերապահելով այս աղբյուրների մանրամասն պատմական ուսումնասիրությունը հաջորդ՝ Բ. պրակին:

Վերոհիշյալ աշխատության պատմական կոնցեպցիան ամբողջովին իդեալիստական է և տոգորված է մեր նախորդ պատմագիտության մեջ իշխող ազգայնական դրույթներով, իսկ մասնավորապես նրա հեղինակի իրավական տեսաբանությունը դուրս չի գալիս բուրժուական իրավագիտության թեորիաների սահմաններից:

Մեր բանասիրական ու իրավագիտական գրականության մեջ միանգամայն անարդար կերպով անուշադրության է մատնվել մի հետաքրքրական հետազոտություն, վոր հիմնականում վերաբերում է հայ իրավունքի պատմությանը: Դա Ս. Բահաթրյանի «Հողային և անձնական իրավունքը հին Հայաստանում» խորագրով աշխատությունն է (1894 թ.): Թեև նա նյութերի պաշարով աղքատ է, վորովհետև հիմնված է գլխավորապես Մովսես Խորենացու Պատմության տվյալների վրա, սակայն, նկատի առնելով այն ժամանակվա հայ բանասիրության ու պատմագիտության պայմանները, մեծ առաջադիմություն էր ներկայաց-

նում իր արծարծած հարցերով: Այստեղ առաջին անգամ ենք տեսնում Հայաստանի արխայիկ և ֆեոդալական հասարակական ձևերի վորոշ պատկերը, թեև ուրվագծերով, բայց և այնպես պատմագիտորեն արծարծված, վորտեղ հեղինակը նշանակալից տեղ է հատկացրել ճորտատիրության ու ստրկատիրության պրոբլեմներին, կապակցելով հողատիրության հետ: Ս. Բահաթրյանն առաջինն եր հայ պատմագիտության մեջ, վոր փորձում եր ապացուցել ճորտության և ստրկության ինստիտուտների գոյությունը հին Հայաստանում. թեև Լեոն ինքնահավանորեն իրեն է վերագրում այդ պատիվը[13], սակայն նրանցից դեռևս 10 տարի առաջ այդ հարցը դրել է ասպարեզի վրա ու փորձել է ապացուցել Ս. Բահաթրյանը: Ի դեպ՝ հիշատակենք, վոր իրոք Լեոն իր մի հոդվածում՝ «Անցյալի հարցերից»[14] Ծիրակի վիմական արձանագրությունների հիման վրա թռուցիկ տեսություն է տալիս Հայաստանում զարգացած ճորտատիրության մասին:

Հայ իրավունքի ուսումնասիրության գործերի շարքը պետք է դասել Կ. Կոստանյանի յերկու մենագրությունները: Առաջինում— «Պռույգ և տուայր»— հեղինակը քննության է առնում հարսի գնման ու օժիտի պրոբլեմներն ըստ հայ ամուսնական իրավունքի, ուր, ինչպես հայտնի յե, հայկական «պռույգ»-ը և «տուայր»-ը համանիշ են հին հռոմեյական dos և donatio ինստիտուտներին: Յերկրորդում—«Դավիթ Ալավկայ որդի»—փորձում է ապացուցել, վոր Մխիթար Գոշից առաջ հայ օրենքների հավաքածույի կազմող է յեղել Դավիթ Ալավիկը (XII դարի սկզբները) և այդ ժողովածույի ձեռագիր օրինակից, վոր մինչև օրս հրատարակված չէ, քաղվածորեն բնորոշ հոդվածներ է առաջ բերում:

Չհիշատակելով այստեղ զանազան հեղինակների մի շարք մանր հոդվածները հայ իրավունքի մասին, վորոնք լույս են տեսել մեր պարբերականներում, նշենք Խ. Սամուելյանի ուսումնասիրությունները՝ «Մխիթար Գոշի Դատաստանագիրքն և հին հայ քաղաքացիական իրավունքը» (1907 թ.), նմանապես և հայ սովորութական իրավունքին վերաբերող «Արյան վրեժ

և փրկանք» (1953 թ.), «Հայ ժառանգական իրավունքը» (1910 թ.), «Գնմամբ ու առևանգմամբ ամուսնություն» (1905 թ.)։

Բացի վերոհիշյալներից, վորոնք կրում են իրավագիտական հետազոտությունների բնույթ, պետք է ընդգծենք, վոր հայ իրավունքն ու հայ իրավական ինստիտուտները քիչ թե շատ շոշափվել են նաև զուտ պատմագիտական աշխատություններում։ Այդ կողմից ուշադրության արժանի յե Ա. Մ. Գարագաշյանի «Քննական պատմություն հայոց» (Բ. հատոր, էջ 1—21.) աշխատությունը, ուր խոսվում է պետական իշխանության, ֆինանսների, դատարանների, օրենքների ու պատիժների մասին։ Նմանապես նույն բովանդակության նյութեր են պարունակվում Ինճիճյանի՝ «Հնախօսութիւն Հայաստանեայց աշխարհի» աշխատության մեջ, վորն այժմ շատ բանով հնացած է։

Վերևում բերված տեսության մեջ քննության չենթարկեցինք հայ իրավունքի բնագավառում լույս տեսած աշխատությունները, բացի մի յերկու դեպքից, այն էլ թռուցիկ ակնարկով։ Այդ մի կողմից՝ մեզ կշեղեր ներկա աշխատության ծրագրված շրջանակներից և մյուս կողմից՝ կլիներ ավելորդ կրկնություն։ Անշուշտ, վերոհիշյալ աշխատություններում չենք գտնի պատմականության մեթոդաբանության և մատերիալիստական պատմահայեցողության նշույլներն անգամ, թեև կարելի յե նկատել, վոր մի քանի յեզակի գործեր կանգնած են գենետիկ սոցիոլոգիայի դիրքերի վրա։ Դեգերելով պատմագիտության ու իրավագիտության բուրժուական աշխարհահայեցողության վոլորտներում, իդեալիստական դատողաբանության մշուշում, այդ աշխատությունները պարունակում են կոնցեպցիաների և նույնիսկ անորոշ տեսակետների մի խայտաբղետ շարան, սկսած մոլի ազգայնականությունից ու վերջացրած՝ ռեակցիոն ռասայական թեորիայով, վորոնց միջին տեղը գերազանցորեն գրավել է ադլեցության, փոխառության հայեցակետը, սոցիալ-տնտեսական հարաբերությունների, հասարակական ձևերի ծագման ու զարգացման պրոբլեմների բացատրության այդ ամենադյուրին յեղանակը։ Իրավաբանական նորմերն ու իրավական ինստիտուտներն այդ գործերում վո՛չ թե իրավական վերնաշենքեր են արտադրական-հասարակական հարաբերությունների հիմքի վրա կա-

*ուցված, այլ մարդկային բանականությունից բխող ու զարգացող, վորում իրավաբանական նորմերն ու իրավական ինստիտուտները ծագում են հենց ինքնին իրավունքից, վորպես մարդկային բնության մեջ հավիտյանս բովանդակված «արդարության ու ճշմարտության» վոգուց:*

ՀԱՏՎԱԾ ՑԵՐԿՐՈՐԴ

# Ի Ր Ա Վ Ո Ւ Ն Ք Ի   Ա Ղ Բ Յ Ո Ւ Ր Ն Ե Ր Ը

## I. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱԿՆԱՐԿ

Իրավունքն, ինչպես ասացինք, իրավաբանական նորմերի սիստեմ է, հասարակության անդամների համար պարտադիր ու հարկադիր, վորոնք վավերացնում և կարգավորում են հասարակական–արտադրական հարաբերությունները և վորոնք կազմում են հասարակության արտադրական հարաբերությունների բազիսի վրա բարձրացող իրավական վերնաշենքը: Ուրեմն իրավունքի անմիջական աղբյուրները պետք է վորոնել տվյալ հասարակության արտադրական հարաբերություններում: Այս դեպքում իրավունքի աղբյուր ասելով՝ մեզ պատկերացնում ենք այն արտահայտիչ ձևը, վորով իրավաբանական նորմերը մարմնանում ու պարտադիր ուժ են ստանում: Այդպիսի աղբյուրներ են սովորույթը և ապա, հետագայում՝ որենքը, վորոնք հասարակության անդամների հարաբերությունները համակող արտաքին ձևերն են:

Իրավունքի պատմագրի համար այդ աղբյուրների նշանակությունը վո՛չ թե սոսկ այն է, վոր նա ի մի հավաքի և լուսաբանի սովորույթի ու որենքի մեջ խտացած իրավաբանական նորմերն, այսինքն՝ կատարի ֆորմալիստական մի գործ, այլ նա պետք է գլխավորապես ծանրանա նրանց ծագման ու զարգացման հանգամանքների վրա: Ամեն մի հասարակության պատմական զարգացումն, ըստ Մարքս—Լենինի, անցնում է իրար հաջորդող չորս սոցիալ–տնտեսական ֆորմացիաներ—արխայիկ կամ նախադասակարգային, անտիկ կամ ստրկատիրական, ֆեոդալական և, վերջապես, կապիտալիստական: Այստեղից հետևցնում ենք, վոր այդ ամեն մի ֆորմացիայի հասարակական հարաբերություններին հատուկ են բնորոշ իրավական ինստիտուտներ, յուրաքան-

չյուր այդ ֆորմացիայի հասարակական հարաբերությունները ղեկավարվում են համապատասխան իրավաբանական նորմերով, վորոնք բղխում են տվյալ ֆորմացիայի արտադրական հարաբերություններից:

Յերբ խոսքը գալիս է հայ իրավունքին, մեր առաջ ծառանում է մի իրավունք, վորը ներկայումս չունի դրական-գործնական նշանակություն և անցել է արդեն պատմության գիրկը: Այնուամենայնիվ, յեթե զբաղվում ենք հայ իրավունքի հետազոտությամբ, այդ անում ենք սոսկ պատմական տեսակետներով, ինչպես այդ մասին վերը չեշտել ենք:

Հայ իրավունքի, ինչպես և ամեն մի հին իրավունքի պատմությունը հետազոտելիս՝ կանգնած ենք լինում վորոշ դժվարությունների առաջ: Այդ իրավունքի աղբյուրներից շատ բան մեզ չի հասել, իսկ յեղածներն էլ պատառ են մշուշով: Հնում, մանավանդ հայ պատմության սկզբնական շրջանում, գործող իրավունքը հնարավոր չէ մեր մտապատկերներում վերականգնել ամբողջովին. միայն աղոտ ուրվագծեր են նշմարվում, իսկ յեթե վերականգնվում են վորոշ պատկերներ, ապա միայն իրավաբանական կենցաղի մի քանի կողմերի մասին: Մեզ չի հասել նույնիսկ վորոշակի իրավաբանական հայ տերմինաբանություն, վորպիսի պարագան մի ցայտուն ապացույց է իրավաբանական մտքի անկատար զարգացման, թերևս որենսդրական սիստեմատիկ գործունեության բացակայության:

Սակայն ներկա աշխատության բուն առարկան է հին հայ իրավունքի պատմությունը: Այս դեպքում իրավական աղբյուրները կրում են այլ բնույթ: Յեթե իրավունքի աղբյուրները գլխավորապես սովորույթներն ու որենքներն են, ապա իրավունքի պատմության աղբյուրներ դառնում են այն գերազանցորեն գրավոր, հուշարձանները, վորոնց մեջ արտացոլել է տվյալ ժամանակների գործող իրավունքը, այն է՝ դանազան դատաստանագրքեր, որենքների ժողովածուներ, մատենագրական ու վիմագրական վկայություններ և այլն: Սրանք էլ, իրենց հերթին, իբրև իրենց ժամանակի իրավունք, կազմվել ու ձևավորվել են վորոշ աղբյուրների հիման վրա: Ուստի կանգ առնելով այստեղ գլխավորապես իրավունքի պատմության աղբյուրների տեսության վրա, մենք

*ինքնըստինքյան պետք է միաժամանակ հետազոտենք և այն աղ-բյուրները, վորոնք հիմք են դարձել գրավոր իրավաբանական հու-շարձանների: Այդ ուղիով միայն հնարավոր է քիչ թե շատ պար-զորոշ ներկայացնել հայ իրավունքի բովանդակ պատկերը, վե-րականգնել հիմնական գծերով այն իրավունքը, վոր մի ժա-մանակ գործել է Հայաստանում:*

## II. ՍՈՎՈՐՈՒՅԹ

*Իրավունքի ամենասկզբնական ու ամենահին աղբյուրն յեղել է* սովորույթը, *իսկ սրա գործող հետևանքը յեղել է* սովորութական իրավունքը: *Ամեն մի սովորույթ անխտիր չի կարող իրա-վունքի աղբյուր լինել, այլ միայն այն սովորույթները, վորոնք հասարակական համակեցության մեջ գործադրվում և պահպան-վում են իբրև պարտադիր նշանակություն ունեցող վորոշ նորմեր:*

*Սովորույթը, հակառակ որենքի, վոր սահմանվում է հայտնի որենսդիր մարմնի կողմից, անդեմ է, նրա հեղինակն անհայտ է. Նա ծագում է հասարակության մեջ, ինչպես լեզուն, բանահյու-սությունը. Նրա սկիզբն անորոշ է: Նա հայտնի յե դառնում իր գոյությամբ միայն այն ժամանակ, յերբ արդեն կաղապարվել է ու կիրառվում է մարդկանց կողմից: Սովորութական իրավունքը կարող է գոյություն ունենալ, ինչպես նկատում ենք իրավունքի պատմության մեջ, գրեթե բոլոր հասարակական ձևերում, նույ-նիսկ պետականորեն կազմակերպված հասարակություններում, ուր գործում են հատուկ որենսդիր մարմիններ: Սակայն սովորու-թական իրավունքը հասարակական զանազան ձևերում տարբեր դեր է տանում, սկսած ակտիվ գործոնից մինչև վերապրուկի և մնացուկի դերը, վորն իրավաբանական նշանակություն կարող է ունենալ, յեթե այդ ճանաչում են պետական որգանները:*

*Յեթե ասում ենք, վոր իրավունքի ամենասկզբնական ու ամե-նահին աղբյուրն յեղել է սովորույթը, հետևապես և ամենահին իրավունքն յեղել է սովորութականը, ապա այդ կապում ենք սոցիալականորեն ու քաղաքականորեն տակավին անզարգացած հասարակությունների հետ, այդ վերագրում ենք պրիմիտիվ աս-տիճանի վրա կանգնած ժողովուրդների համակենցաղին: Ուրեմն սովորույթի հասարակական նշանակության նախնական աստիճանն*

ու ծագման սկզբնական մոմենտը պետք է վորոնենք սոցիալ-տընտեսական արխայիկ ֆորմացիայում, ուր տիրում էր տոհմային հասարակակարգը: Դա անդասակարգ հասարակություն էր, հիմնված նախնադարյան կոմունիզմի վրա, ուր հասարակական արտադրությունն ու սպառումը համայնական էր: Այդ սոցիալական համայնքի հասարակական ու արտադրական հարաբերությունները եյապես տոհմային կարգեր եյին, վորոնք, անշուշտ, պահպանվում ու ղեկավարվում եյին ամբողջ կոլեկտիվի կողմից սահմանված ու ճանաչված համակյաց կյանքի կանոններով, նորմերով: Այս դեպքում հիշյալ նորմերը պետք է պարտադիր բնույթ ունենային, իսկ այդ պարտադրությունը բղխում էր վո՛չ թե մարդը մարդու վրա բռնանալուց և իշխելուց, վո՛չ թե շահագործման տենդենցներից, ինչպես դասակարգային հասարակության մեջ է, այլ ամբողջ կոլեկտիվի անվթար գոյության, նրա համակենցաղի պահպանության և շրջապատող բնության դեմ պայքարի կազմակերպվածության սոցիալական բնազդներից:

Ահա այդ նորմերը սովորույթներն եյին: Նախնադարյան մարդը, յերկար ու ձիգ հազարամյակներ խմբովին պայքար մղելով յուր գոյության ու կյանքի համար, բնազդորեն ձեռք էր բերում և կատարելագործում գոյության կռվի միջոցներ ու յեղանակներ, մշակում էր համակենցաղի կարգեր: Այդ միջոցները դարավոր կենսական փորձերում սերնդե-սերունդ փոխանցելով, պահպանելով ու ավանդելով հաջորդներին իրենց կատարելագործությունները՝ ի վերջո դառնում եյին գիտակցական գործողություններ ու կարգեր, վորոնք սրբագործվում ու վավերացվում եյին իբրև սովորույթներ: Այդ սովորույթները ունեյին պարտադիր նշանակություն, վոր բեկվում է արխայիկ մարդու գիտակցության մեջ, թե նրանց կիրառումն և անշեղ կատարումն անհրաժեշտ է համայնքի պահպանության ու շահերի համար, վորից դուրս իր գոյությունն ի չիք էր դառնում: Այս տեսակետից սովորույթները նախնադարյան կոմունիստական հասարակության մեջ տակավին իրավաբանական նորմեր չեն, վորովհետև նրանք արտաքին հարկադրանքի, տիրապետողների ուժի ներքո չեն կիրառվում, քանի վոր այդպիսիներ գոյություն չունեն անդասակարգ հասարակության մեջ և քանի վոր հասարակության

զարգացման այդ աստիճանում դեռևս չի կարելի դիտել իրավունք ասած բանը այդ խոսքի իրավաբանական առումով: Այդ սովորությունները, կարելի յե ասել, եթիկական նորմեր են, վորոնք մշակվել են նախնադարյան համայնքի հասարակական ու արտադրական հարաբերություններում զարգացող մտայնության մեջ, իբրև վնասակարի ու օգտավետի արտահայտիչներ, և ըստ այնմ էլ դառնում են բացասական կամ արգելական, դրական կամ գործոն վերաբերմունքի անհրաժեշտություն: Այդ եթիկական նորմերը կրում են ուտիլիտար բնույթ, վոր բղխել է կոլեկտիվի ինքնապահպանման բնազդից և նրանց դարձրել է պարտադիր սովորույթներ:

Տոհմային հասարակությունն իր համայնական կենցաղով, նախնադարյան կոմունիզմին հատուկ արտադրական հարաբերություններով՝, հանգչում է վորոշ կարգերի վրա, վորոնք խստիվ պահպանվում են ավանդաբար ու սրբագործված են սովորույթներով: «Եվ այս տոհմային կառուցքն,—ասում է Ֆ. Ենգելսը, —ի՞նչ զարմանալի կազմակերպություն է իր բովանդակ մանկությամբ ու պարզությամբ: Առանց զինվորների, ժանդարմների, վոստիկանների..., առանց դատավորների, բանտերի, դատավարությունների —ամեն ինչ այնտեղ գնում է իր սահմանված ընթացքով: Ամեն տեսակ վեճերն ու ընդհարումները հարդարում է այն կոլեկտիվը, վորին վերաբերում են այդ հարցերը, այսինքն տոհմը կամ ցեղը, կամ առանձին տոհմեր իրար մեջ. միայն իբրև ծայրահեղ, հազվադեպ կիրառվող միջոց սպառնում է արյան վրեժխնդրությունը... Թեև ավելի շատ ընդհանուր գործեր կան, քան ներկայումս,— տնային տնտեսությունը վարում են մի շարք ընտանիքներ՝ ընդհանուր և կոմունիստական ձևով, հողը պատկանում է ամբողջ ցեղին, — բայց և այնպես նրանց մոտ չկա մեր բազմաճյուղ ու բարդ վարչական ապարատի հետքն անգամ: Շահագրգռված մարդիկ իրենք են վճռում ամեն բան, իսկ մեծ մասամբ բազմադարյան սովորույթն (ընդգծումը մերն է. Խ. Ս.) արդեն ամեն ինչ կարգավորել է: Այնտեղ չեն կարող աղքատներ ու կարիքավորներ լինել—կոմունիստական տնտեսությունն ու տոհմը ճանաչում են իրենց պարտավորությունները (ընդգծումը մերն է. Խ. Ս.) ծերացածների, հիվանդների ու պա-

տերազմների հաշմանդամների համդեպ: Բոլորը հավասար են ու ազատ,— նաև կանայք: Ստրուկների համար դեռևս տեղ չկա, նմանապես և, իբրև ընդհանուր կանոն, սովորություն չի օտարցեղերին իրենց յենթարկել»[15]:

Հիրավի, տոհմային հասարակության համայնական կենցաղը, չնայած իր պարզության, խառացած է այնպիսի ներքին ու արտաքին հարաբերություններով, վորոնց կանոնավոր ընթացքը պայմանավորված է ընդհանուրի կողմից ավանդաբար ճանաչված ու դարերով պարտադիր դարձած կարգերով: Վերցնենք այդ հասարակության հիմնական չենքը՝ արտադրական հարաբերությունները, վորոնք անխզելի կապված են հողի օգտագործման ու մշակության հետ: Այստեղ իշխում է հողի տոհմային համայնական պատկանելությունը, բայց և միևնույն ժամանակ հողի մշակման սպառեցում տոհմի ամբողջ հողային տարածությունը,— բացի հանրային տնտեսության նշանակություն ունեցող մասերից (արոտատեղիներ, անտառներ և այլն), վորոշ մասերով բաշխվում է տոհմի բաղկացուցիչ ընտանեկան համայնքների միջև՝ սահմանված ժամանակով օգտագործելու համար և այդ բաժինները տրվում են մեծ մասամբ վիճակով: Նույնիսկ ընտանեկան համայնքի տնտեսությունն ու կենցաղն ընթանում է իր ներքին կարգերով, ուր մենք կգտնենք աշխատանքի բնական բաժանումն ըստ սեռի ու հասակի, կոլեկտիվ արտադրություն ու սպառում: «Այստեղ ինչ վոր ստեղծվում ու գործ է ածվում ընդհանուրի կողմից, դա ընդհանուրի սեփականություն է, ինչպես տունը, բանջարանոցը, նավը, հետևապես այստեղ և միայն այստեղ իրոք գոյություն ունի քաղաքակիրթ հասարակության իրավաբանների ու տնտեսագետների հնարած «սեփական աշխատանքով ձեռք բերված սեփականությունը»[16]:

Տոհմային ծագման ու զարգացման ներքին շաղկապը յերևել է արյունակցական ազգակցությունը, վորն ունեցել է յերկու հիմնական ձևեր՝ մատրիարխատ ու պատրիարխատ: Այդ յերկու ինստիտուտների հետ են կապված համապատասխան ամուսնական ձևերը (խմբակցական և զուգավոր), ամուսնության յեղանակները, ազգակցության ճյուղերը (մայրական ու հայրական գծերը) և այլն: Վերջապես տոհմերը միանում են յեն ու կազմում ցեղեր,

կային միջտոհմային հարաբերություններ ու միջցեղային հարաբերություններ. կային նաև ցեղի ու իր բաղկացուցիչ տոհմերի, ինչպես և տոհմի ու իր բաղկացուցիչ ընտանեկան համայնքների հարաբերություններ[17]։

Ահա այս տոհմային հասարակության ամբողջ սոցիալ-տնտեսական կառուցքի, ամբողջ համայնական կենցաղի կարգը պահպանվում և ղեկավարվում էր սովորույթներով, որոնք, ինչպես վերը նշել ենք, ունեին ո՛չ թե իրավաբանական, այլ էթիկական նորմերի նշանակություն, այսինքն կանոնների, որոնք ասացել էին պարտադիր վարքի ու գործելակերպի ձևավորում։ Նրանք իրավաբանական նորմեր չէին, որովհետև չկային տիրապետողներ, իշխաններ, հետևապես օրենսդիրներ ու բռնադատ օրենքներ։ Թեև կային տոհմապետներ, ցեղապետներ, պատերազմի առաջնորդներ, արտադրության ղեկավարներ, ընտանիքի դլխավորներ, բայց սրանք բոլորը մյուս տոհմայինների հետ հավասարապես յենթակա էին տիրող սովորույթներին, և հենց իրենք իրենց դերով այդ սովորույթների հետևանք էին։

«Այս պարզ կազմակերպությունը (այսինքն տոհմային),— ասում է Ֆ. Էնգելսը,— միանգամայն համապատասխանում է այն հասարակական պայմաններին, որոնցից նա ծագել է։ Այն ոչ այլ ինչ է, յեթե ոչ այդ պայմանների առանձնահատուկ, բնական խմբավորումը. այն ի վիճակի յե հարթելու այն բոլոր կոնֆլիկտները, որոնք կարող են ծագել այդ ձևով կազմակերպված հասարակության ներսում։ Տոհմային հասարակության վեհությունը, բայց նաև նրա սահմանափակությունը հասարակական տեսակետից այն է, որ նրա մեջ տեղ չկար տիրապետության և ստրկացման համար։ Տոհմի ներսում դեռ ոչ մի տարբերություն չի դրվում իրավունքների և պարտականությունների մեջ (ընդգծումը մերն է. Խ. Ս.). Հնդկացիների համար գոյություն չուներ այն հարցը, թե արդյոք հասարակական գործերին մասնակցելը, արյան վրեժխնդրությունը կամ նրա փրկանքը իրավո՞ւնք է, թե՞ պարտականություն. այդպիսի հարցը նրան նույնքան անհեթեթ կթվար, որքան և այն, թե արդյոք ուտելը, քնելը, որսորդությունը՝ իրավո՞ւնք է, թե՞ պարտականություն»[18]։

Սակայն սովորույթն իր ավանդապահ ու պահպանողական հատկություններով հանդերձ՝ աստիճանաբար փոխվում էր ու նոր հատկանիշ գծեր յուրացնում արտադրական հարաբերությունների ու հասարակական ձևերի փոփոխություններով: Տոհմային կարգի քայքայումով հետզհետե զարգանում է սոցիալական շերտավորումն ու առաջանում են հասարակական դասակարգեր իրենց ներհակ շահերով: Այդ շերտավորման պրոցեսում տոհմային սովորույթները վերափոխվում են նոր ձևերի, որոնք ծառայում են տնտեսապես ուժեղ խմբերի շահերին: Այստեղ ծագում են դասակարգային նորմեր, այսինքն իրավունքի նորմեր: Երբ տնտեսապես ուժեղացող խմբերը միաձուլվում են մի դասակարգի մեջ, վերջինս մի կողմ է շպրտում տոհմային ինստիտուտներն ու սովորույթները, որոնք խոչընդոտ են հանդիսանում նրա տիրապետությանը: Նրա շահերին խանգարող տոհմային սովորույթները հետզհետե վերացվում են և գոյանում են իրավունքի սաղմեր, որոնք վերածվում են իրավական սիստեմի: Այդ իրավական սիստեմի նորմերն արդեն արտահայտում են տիրապետող դասակարգի շահերն ու պաշտպանում են նոր հասարակական հարաբերությունները պետական իշխանությամբ, դասակարգային տիրապետության այդ ապարատով: Մասնավոր սեփականությունն ու մարդը մարդուն շահագործելու սիստեմը դառնում են այն առանցքը, որի շուրջն են աճում իրավաբանական նորմերը, որոնք իրենց սկզբնական շրջանում, թեև արդեն գոյություն ունեն պետական օրգանները, դեռևս կաղապարվում են սովորույթների մեջ և կազմում են այսպես կոչված սովորութական իրավունքը:

Սովորութական իրավունքի նորմերը դեռևս օրենքներ չեն: Նրանք օրենք են դառնում հետագայում, երբ պետական իշխանությունն այդ նորմերին տալիս է յուր սանկցիան և օրենսդրության միջոցով վավերացնում է նրանց իրավաբանական նշանակությունը: Հիրավի, հին պետությունների օրենսդրական ժողովածուները գերազանցորեն կազմված են սովորութական իրավունքի փոխառումներից: Այդպես է հնադարյան Բաբելոնի «Համմուրաբիի Օրենսգիրքը», հին Հռոմի «XII տախտակները», հին Հունաստանի Լիկուրգոսի և Սոլոնի օրենքներն և, մանավանդ, «Գորթինի օրենքը», գերմանական «Sachsenspiegel»-ը և «Lex salica»-ն,

ռուսական «Русская правда»-ն և այլն: Նույնիսկ ռուսերեն закон բառը, վոր որենք է նշանակում, իր սկզբնական առումով սովորույթ եր նշանակում[19] կամ վաղ միջնադարի գերմանացիների մեջ lex— հին հռոմեական որենք բառը գործածվում եր սովորույթի իմաստով:

Սակայն սովորութական իրավունքի նորմերը, չնայած պետության որենսդրական գործունեության, այնուամենայնիվ շատ անգամ կարողանում են պահպանել իրենց գոյությունը գործող որենքներին կից մինչ այն աստիճան, վոր հաճախ չեշտակի սահման չեր գծվում որենքի և սովորույթի միջև: Արևմտյան միջնադարի իրավական հուշարձաններում lex բառի մեջ յենթադրվում եր և՛ որենքը, և՛ սովորութական իրավունքի նորմը. սովորաբար jus (իրավունք), mos (սովորույթ), usus (սովորություն) գործադրվում եյին առանց վորոշակի տարբերության: Այդ հանգամանքը ցույց է տալիս, թե վո՛րքան անզարգացած եր պետական կառուցվածքը, վոր չեշտակի որենսդրական գործունեության կարիք չեր զգում և բավականանում եր գործող սովորութական իրավունքով, իսկ մյուս կողմից՝ վկայում է, թե վո՛րքան արմատացած է յեղել սովորութական իրավունքը հասարակության մեջ, շնորհիվ իր պահպանողական ուժի, ավանդական նշանակության:

Այդ պահպանողականությունն արտահայտվում եր նաև մի այլ հետաքրքիր կողմով: Չնայած, վոր սովորութական իրավունքի նորմերը գոյացել ու ձևավորվել են տոհմային հասարակության քայքայումով և գործում եյին դասակարգային հասարակության մեջ, նրանք այնուհանդերձ իրենց մեջ պահպանել են նախորդ տոհմային կարգի վորոշ կենցաղային վերապրուկներն ու մնացուկները: Այդորինակ բնորոշ յերևույթը պիտի բացատրել վո՛չ թե սովորութական իրավունքի ինքնաբավ պահպանողականությամբ կամ նրա ինչ-վոր բնածին հնավանդականությամբ, այլ պետք է վերագրել այն հասարակական հարաբերություններին, վորոնց իրավական վերնաշենքն է նա հանդիսանում. հասարակական հարաբերությունների, վորոնց մեջ, չնայած դասակարգային շերտավորման, վերապ-

րուկային ձևերով մնացել են տակավին նախընթաց կենցաղային հետքերը։

Սովորութական իրավունքի վերոգրյալ հատկանիշներն առանձին նշանակություն են ստանում իրավագիտական տեսակետից ասիական յերկրների և մասնավորապես Հայաստանի նկատմամբ։

Մեզ հայտնի հայոց պատմությունը բնորոշվում է դասակարգային հասարակական կարգով, ուր տիրում է արտադրության ֆեոդալական ձևը։ Հայկական ֆեոդալիզմը, ինչպես հանգամանորեն կխոսվի ստորև, ունի առանձնահատուկ գծեր, վորոնք վորոշ չափով տարբերում են նրան Արևմտյան Յեվրոպայի միջնադարյան ֆեոդալիզմից։

Այստեղ առայժմ շեշտում ենք յերկու առանձնահատուկ գծերի վրա։ Առաջին՝ այդ ֆեոդալական հասարակության մեջ կանգուն ու անփոփոխ գոյություն եր պահպանում գյուղական համայնքը, վորից իսկապես զարգացել է արևելյան տիպի ֆեոդալիզմը։ Այդ գյուղական համայնքը, ինչպես քանիցս նշել են Կ. Մարքսն ու Ֆ. Ենգելսը[20], ավանդական պահպանողականության դանդաղության, նույնիսկ անշարժության կնիք է դրոշմել ֆեոդալական հասարակության զարգացման վրա։ Այստեղից ել ծագում է ֆեոդալիզմի ասիական տարբերակի մյուս բնորոշ գիծը, այն է՝ ֆեոդալիզմի բազմադարյան գոյությունը գրեթե մինչև XVIII դարը։

Ահա այդ սոցիալ-տնտեսական պայմաններում սովորութական իրավունքը, իբրև իրավաբանական վերնաշենք, ամուր կապված լինելով գյուղական համայնքի հետ,— վորը կարելի յե համարել տոհմային հասարակակարգի վերապրուկային մնացորդ, թեև վորոշ չափով դասակարգայնորեն վերափոխված,— նույն պահպանողականությամբ ու դանդաղաշարժությամբ շարունակել է իր գոյությունը մինչև հայկական ֆեոդալիզմի վերջը։ Ֆեոդալական Հայաստանը չեր ներկայացնում մի ամրակուռ, կենտրոնացած պետություն. Նա չունեցավ զարգացած պետական-վարչական որգաններ։ Իր բազմադարյան գոյության ընթացքում, անդադար յենթակա արտաքին ու ներքին քաղաքական տակնուվրայությունների, մինչև վերջը դեգերելով

քնական տնտեսության շրջանակներում, հայ ֆեոդալական պետականությունն անկարող յեղավ օրենսդրական գործունեություն արծարծելու: Հայոց պատմության ամբողջ ընթացքում մինչև XII դարը չենք գտնում վո՛չ միայն վորևէ պետական կոդիֆիկացիայի նշույլ, այլև չեն յերևացել նույնիսկ մասնավոր ձեռներեցությամբ կազմված ժողովածուներ՝ գործող իրավաբանական նորմերից: Սակայն այդ աչք ծակող բացը դեռևս չի կարող հիմք դառնալ յենթադրելու, թե չի յեղել իրավունք, օրենք: Ֆեոդալական Հայաստանը, իբրև դասակարգային պետություն, իր հասարակական հարաբերությունները, տիրապետող դասակարգի պաշտպանությունը կարգավորում ու ապահովում եր, անշուշտ, վորոշ իրավաբանական նորմերով: Յեվ իրոք, այդպիսի իրավաբանական նորմեր յեղել են և դեր են խաղացել հայ իրավունքի պատմության մեջ: Հայ մատենագրական աղբյուրներն ավանդում են, թե ինչպես մի քանի հայ թագավորներ, օրինակ՝ Վաղարշակը (Մխ. II, է, Ը) սահմանում է օրենքներ, կամ Տրդատը հրատարակում է մի շարք հրովարտակներ, վորոնք օրենքի նշանակություն ունեյին (Ագ. ԺԲ, 73—77, ՃԺԹ, ՃԻ, 423.): Սակայն ավելի գործոն դեր են խաղացել սովորութական իրավունքի նորմերը:

Սովորութական իրավունքի ավանդական դերը հասարակական հարաբերություններում այնքան ուժեղ և արմատացած է յեղել, վոր կարիք չի զգացվել այդ ամենը գրավոր ձևերի վերածելու: Թերևս սովորութական իրավունքի այդ ընդհանրացած բնույթին պետք է վերագրել հայ թագավորների օրենսդրական գործունեության սղությունը:

Գրավոր օրենքների բացակայությունն առիթ է ծառայել մի քանի հարևան պետությունների համար նայել Հայաստանի վրա, վորպես օրենքներից ու իրավունքներից զուրկ մի յերկրի: Բյուզանդական կայսր Հուստինիանոսը, հրատարակելով 534 թ. Արևմտյան Հայաստանի համար ժառանգական իրավունքի վերաբերյալ նոր օրենք, XXI Novella-ն, պատճառաբանում է, վոր Հայաստանը զուրկ է օրենքներից և կիրառում է «բարբարոսական սովորույթ»— τὸ βαρβαρικὸν ἔθος — ժառանգության հարցում: Նմանապես նա իր Ed. 3-ում նշում է հայերի մեջ

տիրող «բարբարոսական սովորույթը»— ναγχος βαρβαριχὸν Ան-
չուչտ, Հուստինիանոս կայսրի այդ կարծիքը պետք է հարաբե-
րական իմաստով ընդունել: Հելլենական կրթությամբ սնված ու
հռոմեական կլասիկ իրավահայեցողությամբ տոգորված, նա
ըստ տիրող սովորության՝ օտար ազգերին ու ժողովուրդներին
անվանում էր «բարբարոսներ», հետևապես և ժխտում էր նրանց
ազգային իրավունքն ու օրենքը, վորպես հռոմեական իրավուն-
քին խորթ և տիրապետող հունա-հռոմեական ժողովրդին ան-
համատեղելի: Ավելի բնորոշ է Սիրիայի Հակոբ Ցեղեսացու
կարծիքը, վորն իր «Sermo adversus Armenos» ճառում գրում
է, թե՝ «Հայաստանի ժողովուրդներն աշխարհի սկզբնավորու-
թյունից ի վեր ապրել են առանց օրենքի»: Նմանապես բյու-
զանդական պատրիարք Ատտիկոսը հայոց կաթողիկոսին գրած իր
նամակում ասում է. «Բազում գոհութիւն Աստուծոյ մատու-
ցանեմք յաղագս քո բարեհամբաւութեանդ ի մէջ այդ-
պիսի բարբարոս ազգի...» (Մխ. III, ժէ, 346):

Զանցնելով Հայաստանում գրավոր օրենքներ, կամ գոնելով
սովորույթներ, վորոնք խորթ են յեղել իրենց մոտ կիրառվող
օրենքներին, օտարներն այն թյուր կարծիքին են հանգել, վոր
հայերը զուրկ են օրենքներից և անկուլտուրական ազգ են:

Այստեղ պակաս դեր չի խաղացել նաև ազգային ու կրոնա-
դավանաբանական ներհակ պայքարը, վոր չարունակ տեղի ու-
ներ մի կողմից՝ հույն-հայկական (Ատտիկոսի նամակը) և
մյուս կողմից՝ հայ-սիրիական (Հակոբ Ցեղեսացու ճառն ընդ-
դեմ հայերի) հարաբերություններում: Մինչդեռ օտարների այդ
յենթադրյալ կարծիքներն ապացուցում են միայն, վոր Հայաս-
տանում գործել է սովորութական իրավունքը, բայց առանց գրի
ձևավորված կամ առանց օրենսդրական կարգի: Սակայն հայ
մատենագրության մեջ հիշատակվում է, վոր հին Հայաստա-
նում, տակավին այն ժամանակները, յերբ հայերեն տառեր դեռ
չկային, զանազան պարտավորական ու իրավաբանական գոր-
ծարքները կատարվում եյին գրավոր կերպով— հունարեն կամ
պարսկերեն: Մովսես Խորենացին ասում է. «Գիր Պարսից և
Յունաց, որովք այժմ գիւղից և գաւառաց եւս և իւրաքանչիւր

*) Այստեղ և հաջորդ բոլոր մեջբերումներում ընդգծումները մերն են: Խ. Ս.

տանց առանձնականութեանց, և հանուրց հակառակութեանց և դաշանց այժմ առ մեզ գտանին անբաւ գրուցաց մատեանք, մանաւանդ որ 'ի սեփական ազատութեան պայազատութիւն» (I, Գ, եջ 13)։ Փավստոս Բուզանդացին վկայում է, որ «Թագաւորքն զմուրհակս գիւղաց կամ գաղարակաց գրեալ և կնքեալ դնէին» (VI, Ժ, եջ 278)։ Ավելի հետաքրքիր է Լարուբնա (Ղերուբնա) Եդեսացու գրքին վերագրված վկայությունը. «Զամենայն ինչ, զոր հրամայեն Թագաւորք, և զամենայն, որ ինչ միանդամ լինի առաջի նոցա, գրի և դնի ի տունս յիշատակաց»[21]։ Այստեղ տեսնում ենք, որ նույնիսկ հատուկ արխիվներ են յեղել այդ տեսակ գրություններ պահելու համար։ Նաև հայ միջնադարում, ինչպես ակներև է Ստեփանոս Օրբելյանի Պատմությունից, հայ Թագավորներն ու իշխանները հողերի ընծայումները, վաճառումները և գնումները կատարում էին գրավոր կերպով (Գլ. ԼԹ., Խ., եջ 201—220 և այլն)։

Այս պարտավորական ակտերն ու իրավաբանական գործարքներն, անտարակույս, կատարվում էին տիրող սովորութական իրավունքի համաձայն։

Սովորութական իրավունքը հիմնական նշանակություն է վայելել հին հայերի իրավաըմբռնման բնագավառում։ Այդ բացահայտ է նրանից, որ վոչ մի խտրություն չեյին դնում օրենքի և սովորութա-իրավաբանական նորմի իմաստավորումների միջև։ Օրենքը—դա նույն պարտադիր սովորույթն եր։ Այդ յերևույթը, ինչպես վերը տեսանք, նկատելի յե մի շարք հին ժողովուրդների իրավահայեցողության մեջ։ Մեր հին մատենագրության մեջ հաճախ «օրէնք նախնեաց», «կարգ նախնեաց», «սահմանք» (վոր իսկապես օրենք և նշանակում) բառերն ունեն միևնույն իմաստը և այն էլ սովորութական իրավունքի նշանակությամբ։ Օրենքի և սովորութական իրավունքի հոմանիշ իմաստավորումը նկատելի յե յերբեմն նույնիսկ Մխիթար Գոշի Դատաստանագրքում։ Մխիթար Գոշն օրենք է համարում գրի առնված իրավաբանական նորմը[22], իսկ այն, վոր չի ձևավորված գրավոր կերպով, դա սովորություն է[23], բայց և միևնույն ժամանակ՝ այն, վոր առանց գրի յե, «բնաւորական օրէնք» է (Մ.Գ., Նախ., եջ 65), այսինքն՝ սովորութական իրավունք։

Մխիթար Գոշի Դատաստանագրքում արտահայտված տե-

սակետն օրենքի մասին— մի կողմից՝ իբրև գրավոր ձևով արձանագրված իրավաբանական նորմի, իսկ մյուս կողմից՝ յուրաքանչյուր նրա նույնացումը սովորութական իրավունքի նորմին,— մի ապացույց է, որ ընդհանրապես հայ իրավունքը, մանավանդ նախարարական շրջանում, բնավ գրի չէր առնված, չէր ներկայացնում կոդիֆիկացիայի ենթարկված կամ ժողովածուի վերածված՝ հայ իրավաբանական նորմերի կոմպլեքս: Իսկ այդպիսի պայմաններում, անտարակույս, ֆեոդալական հասարակության հարաբերությունները կարգավորվում էին սովորութական իրավունքի նորմերով, որոնք իրականում օրենքի ուժ և նշանակություն ունեին:

Որենք բառը, իբրև տերմինաբանական առումն, սկսում է տարբերվել սովորութական իրավունքի նորմից, ինչպես պետք է կռահել, այն ժամանակ, երբ հայ իրականության մեջ մուտք են գործում օտար օրենսդրական ժողովածուներ, այն է՝ Մովսիսական, Ասորա—Հռոմեյական և, մանավանդ, Բյուզանդական: Այդ ժողովածուները, որոնք մասնավոր ռեցեպցիայի կարգով կիրառվում էին Հայաստանում, անշուշտ, հունարեն բնագրեր էին: Հետագայում, երբ նրանք թարգմանվում են հայերենի, հունական Նոմոս— — տերմինն արտահայտվում է հայերեն «օրենք» բառով, որն ստանում է տերմինաբանական նշանակություն և, իբրև գրավոր իրավաբանական նորմ, հակադրվում է սովորութական իրավունքին: Այդ բացահայտ է Ասորա— Հռոմեյական Դատաստանագրքի ԺԲ հոդվածից, ուր ասված է. «և լինի այս ըստ նոմոսի և ըստ սովորութեան երկրի» (էջ 24). այստեղ, ինչպես նկատելի է, նույնիսկ նոմոս բառը մնացել է առանց թարգմանելու: Այդպիսի դեպքեր հանդիպում են ո՛չ միայն թարգմանական մի քանի օրենսգրքերում, այլև յուրաքանչյուր Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում:

«Նոմոս» և «օրենք» բառերի նույնանիշ բնույթը կարելի է բացատրել նրանով, որ հունարեն «նոմոս»-ի մեջ հայ թարգմանիչները տեսնում էին բյուզանդական թագավորների վորոշումներ, սահմանումներ: Իսկ մեր հին մատենագրության մեջ նկատում ենք, որ հայ թագավորների կամ կաթողիկոսների վորոշումներն ու սահմանումները որակվում էին որպես «օ-

*րենք»: Մովսես Խորենացին Վաղարշակ թագավորի մասին պատմում է. «Արդ, նախ և առաջին* օրինադրէ *թագաւորն զինքն և զտուն իւր»* (II, Ը, 103) *կամ՝ «եւ օրէնս խմն հաստատէ ի տան թագաւորութեան իւրոյ»* (II,. Ը, 110): *Աշտիշատի ժողովում Ներսես կաթողիկոսի ձեռներեցությամբ «կարգեցին, կազմեցին, կանոնեցին,* յօրինեցին» (ՓԲ. III, Դ, 76.): *Հետևապես «նոմոսի» տերմինաբանական նշանակությունը՝ թագավորական վորոշումների իմաստով՝ նույնացվում եր հայ միջավայրում գործածվող հոմանիշ իմաստով «որենք»-ին:*

*Ուրեմն հայ իրավունքի պատմության մեջ «որենքը», վորպես սովորութական իրավունքի նորմերից տարբեր մի հասկացողություն, հանդես ե գալիս, յերբ Հայաստանում սկսվում ե ոտար որենսգրքերի ռեցեպցիան և յերբ սրա հետևանքով ել առաջանում ե տեղական ազգային որենսգիրք կամ դատաստանագիրք կազմելու անհրաժեշտությունը: Այդպիսի ազգային կոդեքս կազմողը չեր կարող պարփակվել միմիայն ոտար ռեցեպցիայով յուրացված կամ ոտար տիրապետողների կողմից ներմուծված որենքների սահմաններում, այլ ծանրանալու յեր նաև բնիկ տեղական, ազգային իրավաբանական նորմերի վրա. Հակառակ պարագայում այդ կոդեքսը զուրկ կլիներ ազգային նշանակությունից: Այդ ազգային իրավաբանական նորմերը կարելի յեր քաղել միմիայն տիրող սովորութական իրավունքից և մասամբ հայ յեկեղեցական ժողովների կանոնական վորոշումներից: Մխիթար Գոշի Դատաստանագիրքը և սրա հետևությամբ կազմված՝ Սմբատ Գունդստաբլի Կիլիկյան Հայ Դատաստանագիրքը, չնայած վոր յերկուսն ել մասամբ հորինված են ոտար աղբյուրներից քաղված իրավաբանական նորմերով, այնուամենայնիվ զգալի չափով բովանդակում են նաև հայ սովորութական իրավունքի նորմեր: Մխիթար Գոշի այն վկայությունը, «որ ոչ թուին ի կանոնաց, ի կենդանի առաջ ձայնէ»* (I, *ԾԹ*, 228), *հաստատում ե, թե ի՛նչ մեծ դեր եր կատարում սովորութական իրավունքը հայ իրավաբանական կենցաղում: Այլ կերպ չեր ել կարող լինել այն հասարակության մեջ, վորտեղ չեր զարգացել որենսդրական գործունեյությունը, վորտեղ բացակայում եյին հատուկ որենսդրական մարմիններ:*

Սակայն հայ սովորութական իրավունքը չի արտացոլել ըստ ամենայնի հայ օրենսգրքերում ու դատաստանագրքերում: Հայ սովորութական իրավանորմերը տեղ են գտել մեր իրավաբանական ժողովածուներում այն չափով միայն, ինչ չափով օտար ռեցեպցիայով մուտք գործած օրենքներն անհարիր էին տեղական կենցաղին ու իրավաբանական կազուսներին կամ միանգամայն խորթ համարվում: Այսպիսի դեպքերում սովորութական իրավանորմերը, իբրև հարազատ միջավայրից բխած ու դարերով իր գործոն նշանակությունը պահպանած, յետ էին մղում օտար նորմերը և համապատասխան տեղ գրավում հայկական օրենսգրքերում: Հետևապես, այստեղ հայ սովորութական իրավունքը հանդես է գալիս պատառիկներով և իր մասին ամբողջական պատկեր չի տալիս: Այդ պատկերը կարող են լրացնել այն հարուստ նյութերը, որ մատակարարում է հայ ազգագրությունը:

Հայ ժողովրդական կենցաղում մինչև XIX դարի վերջերը զարմանալի պահպանողականությամբ հասել էին վերապրուկային ձևով ո՛չ միայն միջնադարի, այլև ավելի հին, տոհմային նահապետական կյանքի ու հասարակական-ընտանեկան սովորույթների մնացուկներ, որոնց նյութական առանցքը յեղել է մինչև այդ պահպանված գյուղական համայնքը: Հայ ազգագրական բանահավաքներն ամբողջ XIX դարում կարողացել են իրենց հետախուզական աշխատանքներով ահագին նյութ հավաքել, որ կուտակված է գլխավորապես մեր պարբերական մամուլի էջերում և մասամբ լույս են տեսել նաև առանձին հրատարակություններով: Այդ ազգագրական նյութերի մեջ մեծ տեղ են բռնում ֆոլկլորը, ընտանեկան կենցաղը (ծնունդ, ամուսնություն, հարսանիք, թաղում և այլն) ու հավատալիքները, իսկ զուտ իրավաբանական կենցաղին վերաբերող սովորույթներ համեմատաբար քիչ են հավաքված: Դա պետք է բացատրել նրանով, որ հայ ազգագրական բանահավաքները, զուրկ լինելով իրավաբանական մասնագիտությունից, ո՛չ թե թերագնահատել են սովորութական իրավունքի նշանակությունը, այլ չեն կարողացել նշմարել ու հայտաբերել այն սովորույթները, որոնք բնորոշում են ժողովրդական իրավաըմբռնումը:

*Բայց և այնպես ներկայումս ամբարված հայ ազգագրական նյութերը, վորոնք տակավին կարոտ են գիտական ուսումնասիրության, ի հայտ են բերում այնպիսի կենցաղային պծեր ու սովորույթներ, վորոնք պատմա-համեմատական ու վերապրուկային վերլուծման յեղանակով մեր մտապատկերներում վերականգնում են ժողովրդական իրավահայեցողության հիմունքները, դրսևորում սովորութական իրավունքի նորմերը: Հայ ֆոլկլորի գաղափարախոսության և սյուժետային պատկերների մեջ, ընտանեկան և գյուղական նահապետական կենցաղի ծիսական կարգերում վորոշ չափով արտացոլել են հասարակական-արտադրական հարաբերությունները, վորոնք մեզ կռվաններ են տալիս պատկերելու ամբողջ սովորութական իրավունքը:*

*Սովորութական իրավունքի վերաբերյալ ազգագրական նյութեր գտնում ենք նաև մեր հին ու միջնադարյան մատենագրության մեջ, որինակ՝ Փավստոս Բուզանդացու և Մովսես Խորենացու յերկերում, կամ Մխիթար Գոշի ու Վարդան Այգեկցու առակներում*[24]*:*

## III. ԿԱՆՈՆԱԿԱՆ ՎՈՐՈՇՈՒՄՆԵՐ

*Յեթե մեզ չեն հասել մինչև XII դարը հայերեն կազմված որենսգրքեր, ապա հասել են կանոնագրքեր, այսինքն՝ յեկեղեցական կանոնների ժողովածուներ, վորոնք կազմվել են թերևս սկսած V դարից և հանդիսանում են հայ իրավունքի միակ գրավոր ամենահին աղբյուրները:*

*Հայաստանի քրիստոնեացումը, վորը վերագրվում է Տրդատ թագավորին ու Գրիգոր Լուսավորչին, և քրիստոնեության իբրև պետական կրոն ճանաչվելը, վոր տեղի է ունեցել պաշտոնապես 300-ական թվականների սկզբներին, մեծ ազդեցություն է գործել հայերի հասարակական ու կուլտուրական կյանքի զարգացման, ընդսմին նաև հայ իրավունքի ու իրավաբանական ինստիտուտների վրա:*

*Հայ քրիստոնեական յեկեղեցին և հիերոկրատիան սկզբնավորման որից իր սոցիալ-տնտեսական եյությամբ ֆեոդալական կառույց ստացավ: Ֆեոդալիզմը հին Հայաստանում, նույնիսկ նախարարական ֆեոդալիզմը, գոյացել ու զարգանում եր տա-*

կավին քրիստոնեացումից առաջ: Այդ նախաքրիստոնեական Հայաստանում ֆեոդալացած եր նաև հեթանոսական յեկեղեցին և քրմությունը, վորն, ըստ յերևույթին, իր սոցիալ-տնտեսական ամուր դիրքի շնորհիվ նաև ազդեցիկ քաղաքական գործոն եր հանդիսանում: Բավական է հիշատակել, վոր Հայաստանի գլխավոր քրմապետ Մաժանը, վորի մասին ավանդում է Մովսես Խորենացին, Արտաշես թագավորի վորդին եր (II, ԾԱ., 177, ԾԳ, 180) և քաղաքական դեր եր խաղում:

Հետևապես, քրիստոնեական յեկեղեցական ֆեոդալիզմը մի նոր յերևույթ չեր: Նա վերափոխվել եր նախորդ հեթանոսականից նրանով, վոր քրմական հողային ու տաճարական հարստությունների տեր դարձավ քրիստոնյա հիերոկրատիան, վորին անցավ նաև ֆեոդալական քրմական դասի քաղաքական դերը:

Հայաստանի քրիստոնեացումը տեղի ունեցավ այնպիսի պատմական մոմենտում, յերբ Արշակունյաց թագավորության ուժն զգալապես թուլացել եր: Պետք է կռահել, վոր քրիստոնեությունը մուծելով և այն հռչակելով պետական կրոն՝ Տրդատ թագավորը ծրագրում եր ուժեղացնել Արշակունիների իշխանությունը, հուսալով հենվելու նոր կրոնի կենտրոնաձիգ հիերոկրատական սիստեմին: Սակայն հիերոկրատիայի հետագա դերը միանգամայն այլ ընթացք ստացավ: Ընդհակառակն, հոգևոր ֆեոդալականությունը, տնտեսապես ու քաղաքականապես իրեն ուժեղ զգալով և միշտ հակվելով Բյուզանդիայի կողմը, իր ֆեոդալական եքսպանսիայով մրցակից հանդիսացավ աշխարհիկ ֆեոդալականությանը՝ հանձին թագավորական իշխանության: Այդ պայքարն յուր գագաթնակետին եր հասել վերջին Արշակունիների ժամանակ (Արշակ II և սրա վորդի Պապ թագավորների), յերբ Արշակունիների տապալումով Հայաստանը բաժանվեց Բյուզանդիայի ու Սասանյան Պարսկաստանի միջև (387 թ.):

Այս պատմական մոմենտից սկսած, յերբ Հայաստանում այլևս գոյություն չուներ միասնական կենտրոնական իշխանություն և յերկիրը փաստորեն դարձել եր արևմտյան մասով բյուզանդական կայսրների, իսկ հարավ-արևելյան մասով Սասանյան թագավորների վասալական տերիտորիաների, կղերական ֆեոդալիզմն իր կենտրոնաձիգ հիերոկրատական ապարատով ուժեղ

քաղաքական գործոն ու ազդեցիկ ղեկավար դարձավ ապակենտրոնացած ու սեպարատիստական նախարարների միջավայրում: Եկեղեցական ֆեոդալականության քաղաքական-հասարակական դերն ու նշանակությունն ավելի ևս ուժեղացավ Հայաստանի երկրորդ բաժանումից (428 թ.) հետո, երբ Բյուզանդիան ու Պարսկաստանը հաշվի էին առնում նրա դերն ու ձգտումները և նրա ազդեցությունը ծառայեցնում էին իրենց քաղաքական-նվաճողական շահերին՝ Հայաստանի լիակատար աննեքսիայի գծով: Սասանյան Պարսկաստանն այնքան հեռու է գնում, որ Հայաստանից իրեն հասանելիք տուրքերի և հարկերի գանձումը հանձնարարում է հայոց կաթողիկոսին:

Ահա այդ պատմական դարերից սկսած, եկեղեցական ֆեոդալականությունն իր ազդեցությունն ու դիրքը, փոքր ընդհատումներով, անվթար պահպանեց հայ քաղաքական և հասարակական-կուլտուրական աշխարհում մինչև վերջին ժամանակները:

Քրիստոնեական եկեղեցին իր զարգացման, մանավանդ իր կազմավորման, սկզբնական շրջանում հիերոկրատական ինստիտուտն ամրացնելու և նրան հանրային նշանակություն ու ազդեցություն տալու նպատակով մշակում և հորինում էր իր սոցիալ-քաղաքական տիրապետության դասակարգային գաղափարախոսությունը: Սահմանվում էին հատուկ պարտավորություններ, խրատներ, կարգեր, հրահանգներ, որոնք պարտադիր էին քրիստոնեական համայնքների համար և կոչվում էին **կանոններ**: Կանոն բառը հունարեն է՝ κανών, որ նշանակում է յեղեգի ցողուն և ապա ուղիղ փայտ, ձող, ուղիղ գիծ, սահմանագիծ, այստեղից էլ փոխաբերական իմաստով՝ ձև, օրենք, այն էլ հատկապես եկեղեցական օրենք: Սկզբնական շրջանում այդ կանոնները դավանաբանական թեզերի ու բարոյագիտական նորմերի համախմբումներ էին: Հետագայում նրանք հետզհետե ընդգրկում են նաև հասարակական հարաբերությունների կարգավորման որոշ շրջանակներ և համակվում են իրավաբանական նորմերի բնույթով: Այդ կանոնները սահմանվում էին եկեղեցական աշխարհում գլխավորող ու հեղինակավոր անձերի կողմից, կամ ավելի հաճախ՝ այսպես կոչված եկեղեցական ժողովներում, որոնք լինում էին տիեզերական և տեղական:

Այսպիսով, յեկեղեցին յուրացնում է իրավադիր ֆունկցիաներ, վորոնց չափն ու սահմանը պայմանավորվում եյին տվյալ յերկրի քաղաքական կացությամբ: Հիերոկրատիան իրեն իրավունք եր վերապահում վո՛չ միայն կարգավորելու յեկեղեցու և կղերական դասի ներքին հարաբերությունները, պարտականությունները, տնտեսական-գույքային հարցերը, կազմել սահմանադրություն, այլև միջամտելու աշխարհիկ հասարակական հարաբերություններին ու այդ յենթարկել յեկեղեցու իրավասությանը: Այդ միջամտությունը, վոր հիմնավորվում եր յեկեղեցու կողմից կրոնա-աստվածաբանական դոգմատիկայով, տարածվում եր գլխավորապես ընտանեկան իրավունքի վորոշ կողմերի վրա, այն է՝ ամուսնության, վորդեգրության, ազգակցության աստիճանների, ծնողների ու զավակների փոխհարաբերությունների, նմանապես վորոշ տեսակի հանցագործությունների վրա, ինչպես սպանություն, առևանգում, պոռնկություն, արուագիտություն և այլն: Ահա այդ հարաբերությունները կարգավորող նորմերը կազմում եյին կանոնական իրավունք, այսինքն՝ կանոնների իրավադիր համախմբում, վորով կանոնը հակադրվում եր օրենքին, νόμος -ին, վորպես աշխարհիկ իրավաբանական նորմին:

Կանոնադիր գործունեյությունն և կանոնական վորոշումները, վորպես կանոնական իրավունքի աղբյուրներ, աչքի ընկնող նշանակություն ունեցան ընդհանրապես հայոց պատմության և մասնավորապես հայ իրավունքի պատմության մեջ:

Քանի վոր քրիստոնեյական յեկեղեցին ընդհանրական եր և հայ յեկեղեցին բաժանված չեր նրանից, անշուշտ, Հայաստան եյին մտնում ռեցեպցիայի կարգով տիեզերական ժողովների և առանձին կրոնական պետերի կանոնական վորոշումները: Մովսես Խորենացու և Հովհան Իմաստասերի վկայությունների համաձայն՝ այդ կանոնները մուտք են գործում Հայաստան IV դարի կեսերից: Դրանք, ի հարկե, լինում եյին հունարեն կամ ասորերեն լեզուներով, ուստի և մեծ ծավալում չեյին ստանում: Ավելի հավանական է ու իրականությանը համապատասխան, ինչպես ակներև է Կորյուն պատմագրի տվյալներից և մանավանդ պատմա-հետազոտական ուսումնասիրություններից (Տաշյան, Գա-

Թըրճյան, Որմանյան և այլք), վոր հունարեն ու ասորերեն կանոնները մուտք են գործել Հայաստան ու թարգմանվել են հայերեն V դարից՝ հայերեն տառերի գյուտից հետո, մանավանդ վոր արդեն V դարում Բյուզանդիայում գոյություն ուներ տիեզերական ու տեղական ժողովների վորոշումներից բաղկացած կանոնների մի կոդեքս: Սակայն շուտով ոտար կանոնական հավաքածուների ռեցեպցիայի հետագա զարգացմանը վերջ է տրվում ստեղծված քաղաքական պայմանների շնորհիվ: Արշակունյաց պետության անկումով և Հայաստանի բաժանումով Բյուզանդիայի ու Պարսկաստանի միջև՝ հայ յեկեղեցական ֆեոդալականությունը, վոր հաղթող դուրս յեկավ իր ֆեոդալական եքսպանսիայի պայքարում Արշակունյաց թագավորական իշխանության կենտրոնաձիգ տենդենցների դեմ, սկսեց ակտիվ քաղաքական դեր խաղալ յերկրում: Ոգտվելով յերկու հզոր պետությունների՝ Հայաստանին ամբողջովին տիրելու սրված մրցումից, վորոնք հաշվի եյին առնում հայ հիերոկրատիայի ուժն ու ազդեցությունն իրենց նպատակների համար, վերջինս շահագործում եր ստեղծված քաղաքական կացությունը, և հարում այս կամ այն կողմը, բերան դառնալով ու ներկայացուցիչ հանդիսանալով աշխարհիկ ֆեոդալական տների, նախարարությունների մեծամասնության: Յերբ Հայաստանում վերջիվերջո հաղթանակեց պարսկական կողմնորոշման քաղաքականությունը և դրա հետ միասին հայ յեկեղեցին միանգամայն անջատվեց հունականից, չընդունելով Քաղկեդոնի տիեզերական ժողովի դավանաբանական վորոշումները, հայ հիերոկրատիան իրեն անկախ զգաց: Նա միջամուխ եր լինում նախարարական տների ու արտաքին քաղաքական հարաբերություններում, նաև ազդեցիկ դեր է խաղում յերկրի ներքին կյանքում: Կենտրոնական ազգային իշխանության բացակայումով նա իր ձեռքն առավ դատավարական ու իրավաբանական ամբողջ գործունեյությունը: Հույն և հայ յեկեղեցիների անջատման մոմենտից սկիզբ են առնում Հայաստանում, հայ հիերոկրատիայի ձեռներեցությամբ, այսպես կոչված, ազգային յեկեղեցական ժողովները, վորոնք սահմանում են կանոններ, ստեղծում նորմատիվ կարգեր իրենց իրավասության ու քաղաքական ազդեցության կռվաններն ամրացնելու և ընդհանրապես տիրապետող դասակարգի շահերն ապահովելու

ուղղությամբ։ Ուստի հայ յեկեղեցական ժողովների կանոնական վորոշումները մեծ մասամբ կրում եյին վո՛չ միայն կրոնադավանաբանական բնույթ, այլև վերաբերում եյին ներքին հասարակական հարաբերություններին, կարգավորելով այն հատկապես սահմանված իրավաբանական նորմերով։ Այս տեսակետից հայ յեկեղեցական ժողովների կանոնական վորոշումները մեծապես տարբերվում եյին նախկին տիեզերական յեկեղեցական ժողովների կանոններից, վորոնք ռեցեպցիայով ընդունված եյին Հայաստանում, նաև հետագա հունական յեկեղեցական ժողովների կանոնական վորոշումներից։ Բնորոշ է, վոր հայ յեկեղեցական ժողովներին յերբեմն մասնակից են յեղել նաև աշխարհիկ ֆեոդալները, մանավանդ քաղաքական ճգնաժամային մոմենտներին, որինակ՝ Շահապիվանի (443 թ.), Դվինի Դ. ժողովը (648 թ.)։ Այս հանգամանքը հիմք է տվել մեր կղերամիտ լիբերալ պատմագետներին, նույնիսկ հայ իրավունքի պատմությամբ զբաղված մի-յերկու հայ իրավագետներին, վեր հանել այդ ժողովների նշանակությունն իբրև դեմոկրատական ազգային ինստիտուտներ, դրանք համարել ժողովրդական ներկայացուցչական հաստատություններ, նմանեցնելով յուրատեսակ պառլամենտարիզմի, վոր իբր թե զարգացել է հին Հայաստանի հասարակական-քաղաքական կյանքում։

Ազգային յեկեղեցական ժողովներն իրենց վերապահում եյին որենսդիր կամ իրավադիր ֆունկցիաներ։ Դա բացահայտ է այն բնորոշ դարձվածքներից, վորոնք գործածվում են հայ հին մատենագրության ու կանոնական վորոշումների բնագրերում։ Փավստոս Բուզանդացին, պատմելով Աշտիշատի ժողովի մասին (365 թ.), բնորոշում է նրա գործունեյությունն այս խոսքերով՝ «կարգեցին, կազմեցին, կանոնեցին, յօրինեցին...» (III, գլ Դ., 76). յօրինեցին ծագում է «օրէնք» բառից, հետևապես պետք է հասկանալ՝ «օրէնսդրեցին»։ «Կարգեցաք և սահմանեցաք», ասվում է Կարինի ժողովի կանոնական վորոշումների մեջ (ԿՀ, եջ 108)։ Շահապիվանի ժողովի վորոշումների նախաբանը վերջանում է «ապա կարգեցին և եդին այսպէս» խոսքերով, վորոնք նույնպես նշում են որենսդիր ֆունկցիայի վրա (ԿՀ, եջ 60)։ Հետաքրքիր ձևով են վավերացվում Դվինի 648 թ. ժողովի հո-

քննած 12 կանոնները․ «Ես Ներսէս շնորհիւն Աստուծոյ Նուաստ կաթողիկոս Հայոց վասն վերոգրեալ կանոնիս ամենայն աթոռակցովք մերովք սուրբ եպիսկոպոսօք Հայոց ձեռնարկեալ կնքեցաք ըստ հրամանի և սահմանի Հոգւոյն սրբոյ և ընտրելոց նորա» (Անդ, էջ 129)։ Երբեմն էլ եկեղեցական ժողովների վորոշումներում «կանոն» տերմինը չի հակադրվում «որենք» բառին, աշխարհիկ առումով, այլ գործածվում է վերջինիս հետ համազոր նշանակությամբ (ԿՀ., էջ 111, 127, 115, 57, 59)։ Թեև «օրէնք» տերմինը հայ կանոններում մեծ մասամբ այլ նշանակություն ունի, այն է՝ կրոնապաշտամունքային կարգ, ծես, և կամ Մովսիսական իրավունքի նորմեր, վորպես աստվածային կանոն, որենք (ԿՀ., էջ 87, 88, 71)։

Նմանապես «սահմանք» տերմինը հաճախ կրում է «կանոնի», «որենքի» հոմանիշ իմաստ․ այստեղից էլ կանոնական վորոշումներում հաճախ են պատահում սահմանել, սահմանադրել բայերը՝ որինադրել, կանոնադրել առումով։ «Զգուշութեամբ պահեսցի ի միջի ձերում սահմանքս այս կանոնական» (ԿՀ., 43)․ «սոյնպէս կարգեալ և սահմանեալ եղիցին» (Անդ, էջ 54)․ «ըստ սահմանի սրբոց հարցն և սրբոյն Գրիգորի և բարեպաշտ Թագաւորին Տրդատայ» (ԿՀ., էջ 129)։ «Սահման» տերմինի նշանակությունն որենքի իմաստով գտնում ենք սլավոնական հին իրավունքում։ Հին ռուսական закон — որենք բառը կամ նրա հոմանիշը՝ покон — նշանակում են հին իրավունքում՝ սովորույթ — обычай և ծագում են кон բառից, վոր նշանակում է սկիզբ, նաև սահման, սահմանագիծ, հետևապես за և по նախդիրները ցույց են տալիս «մինչև սահման» թույլատրվող մարդկային գործողություն կամ ազատություն[25]։

Ազգային եկեղեցական ժողովներն իրենց վերապահելով որենսդիր գործոնի նշանակությունը, տրամաբանորեն պետք է կանոնական վորոշումներին տային պարտադիր ուժ։ Դա բացահայտ է հաճախ գործածվող «կանոն այդ կացցէ» դարձվածքից (ԿՀ., էջ 63, 67, 68, 72 և այլն), «կանոնք ոչ հրամայեն» (ԿՀ., էջ 83)։ Կանոնական վորոշումների պարտադիր նշանակությունն ավելի ցայտուն կերպով շեշտվում է Շահապիվանի ժողովի վորոշումների նախաբանում, ուր առաջ են բերված աշխարհիկ

ժողովականների համաձայնության խոսքերը. «Արդ, օրէնք որ Աստուծոյ հաճոյ են և եկեղեցւոյ նորա շինութիւն, դուք զայն կարգեցէք և մեք հնազանդ եմք և հաստատուն պահեմք և եթէ ոք հաստատուն ոչ պահիցէ զկարգս օրինաց կամ եպիսկոպոս կամ երէց կամ ազատ կամ շինական, պատուհաս կրեսցէ և տուգանս տացէ» (ԿՀ., էջ 59—60):

Վերն ակնարկեցինք, վոր հայ յեկեղեցական ժողովների կանոնադրական գործունեությունն սկսվել ե V դարից, Արշակունյաց թագավորության անկումից հետո: Սակայն պետք ե յենթադրել, վոր յեկեղեցական ժողովներ տեղի յեն ունեցել նաև առաջները, Արշակունիների թագավորության շրջանում: Այդ մասին հայ մատենագրության մեջ պահպանվել են աղոտ հիշատակումներ[26]: Ավելի հավաստի տեղեկություն ենք գտնում Փավստոս Բուզանդացու Պատմության մեջ Աշտիշատի ժողովի (365 թ.) մասին, վորի հորինած կանոնների բովանդակությունը նա մեզ ավանդում ե: Ճիշտ ե, վոր այդ ժողովի մասին մեր մյուս մատենագիրները լռություն են պահպանում, բացի Մովսես Խորենացուց, վոր ժողովի վայրը չի հիշատակում: Նմանապես բազմաթիվ կանոնագրքերի ձեռագրերում վոչ մի տեղ չի նշմարվում Աշտիշատի կանոնների վորևե հետք: Մինչդեռ Փավստոս Բուզանդացու առաջ բերած կանոնների բովանդակությունը հետաքրքրական նյութ ե տալիս հին հայ մի քանի սովորությունների մասին:

Սակայն մեզ հասած կանոնական վորոշումները բխում են հենց այն յեկեղեցական ժողովներից, վորոնք տեղի յեն ունեցել մեր նշած ժամանակից: Այդ ժողովների մեջ անդրանիկը համարվելու յե Շահապիվանի ժողովը, վոր կայացել ե 443 թ., յերբ Հայաստանի ներքին ու արտաքին քաղաքական կացությունը խիստ խառնակ ու անկայուն եր, մի ժամանակ, վորի հետ են կապված Վարդանանց պատերազմի հետ առնչող դեպքերը: Տարորինակն այն ե, վոր հայ մատենագիրներն այդ նշանավոր ժողովի մասին վոչինչ չեն ավանդում, մինչդեռ կանոնագրքերի գրեթե բոլոր տարբերակներում այդ ժողովի կանոններն առաջնակարգ տեղ են բռնում:

Բացի յեկեղեցական ժողովների կանոնական վորոշումներից՝

հայ կանոնագրքերում տեղ են գտել նաև առանձին անհատների՝ կաթողիկոսների, հայրապետների, այսպես կոչված «սուրբ հայրերի» հորինած կանոններ: Այստեղ էլ նկատում ենք օտար, գլխավորապես հունական յեկեղեցու «հայրերի» հորինած կանոնների ռեցեպցիան Հայաստանում, վորը հետագայում դադարում է հայ յեկեղեցու անջատումով: Այնուհետև սկսում են նշանակություն ստանալ մի քանի հայ կրոնապետների կազմած կանոնները, վորոնք յերբեմն հորինվում են օտար «հայրերի» կանոնների հետևողությամբ:

Այսպիսով, V դարից սկսած, հայ յեկեղեցական իրավասության բնագավառում կուտակվում են թե՛ օտար աղբյուրներից մուտք գործած և թե՛ ազգային հորինմամբ գոյացած բավականաչափ կանոնադրություններ: Ուստի հետագա դարերում անհրաժեշտություն է զգացվում վորոշ կոդիֆիկացիայի, այն է՝ ի մի ամփոփելու յեկեղեցական ժողովների կողմից ընդունված և հիերոկրատական վարչության մեջ գործող կանոնադրությունները: Այդ կոդիֆիկացիան կատարվեց, ինչպես հավանորեն յենթադրելու յե պատմական, թեև սուղ, տեղեկություններից, VIII դարում Ոհան Իմաստասեր Օձնեցի կաթողիկոսի (717—728 թ. թ.) ձեռքով: Ձեռագիր կանոնագրքերի պատմա-համեմատական հետազոտություններից յերևում է, վոր նախնագույն կանոնական կոդեքսը բաղկացած է 29 կանոնադրություններից, վորոնք վերջանում են Ոհան Իմաստասիրի հորինած կանոններով:

Հաջորդ յերկու դարում վերոհիշյալ կանոնագիրքն սկսում է ստվարանալ: Հետզհետե այդ հավաքածույին ավելացվում են առանց վորևէ սիստեմի ու զանազան ժամանակ մի շարք կանոնադրություններ, վորոնց մի մասը ծագում է VIII դարից առաջ, իսկ մյուս մասը՝ Ոհան Օձնեցուց հետո: Կանոնական հավաքածույի այդ աճումը կանգ է առնում մոտավորապես X—XI դարերի վերջերին, և մեզ հասել են կանոնագրքի բազմաթիվ ձեռագրեր, բաղկացած 40-ից մինչև 65 կանոնադրություններից, վորոնք ժամանակագրորեն հորինված են մինչև VIII դարի վերջը:

Ուրեմն հին Հայաստանում գործող յեկեղեցական կամ կանոնական իրավունքն արդեն VIII դարից արձանագրված եր վորպես կանոնադրությունների մի հավաքածու և լայնորեն ամրաց-

նում էր յուր իրավաբանական նշանակությունն ու կիրառումը, պահպանելով այն մինչև այսօր հայ կղերական աշխարհում «Կանոնագիրք» անունով: Այդ, հատկապես Օհան Օձնեցու կազմած հավաքածուն, որ հանդիսանում է օրգինական կանոնագիրքը, կարելի չէ ասել, առաջին կոդիֆիկացիան է Հայաստանում, հայկական «Corpus juris canonici»-ն, որենքների մի ժողովածու, որ գոյություն է առնում հիերոկրատիայի ղեկավարող կաթողիկոսից և բովանդակում է հայ եկեղեցական ժողովների վավերացրած և ընդունած կանոնադրությունները: Հետևապես, Օհան Օձնեցու հորինած կանոնագիրքը վորոշ չափով պաշտոնական բնույթ է կրում: Սակայն այդ Կանոնագիրքն, աճելով ու ստվարանալով հետագա հավելումներով, վորոնք կատարվել են անհայտ հոգևոր անձերի ձեռքով, թերևս կորցնում է իր պաշտոնական բնույթն և կասկածելի յե դառնում, թե վորքան նա պարտադիր ուժ էր ներկայացնում: Սակայն պատմա-հետազոտական տվյալները և Կանոնագրքի մեզ հասած բազմաթիվ ձեռագիր օրինակներն ու տարբերակները վկայում են, թե ինչ մեծ ծավալով նրանք տարածված են յեղել ու ավանդական դարավոր կիրառում ունեցել, չնայած վոր եկեղեցական մատենագրության և հետագա եկեղեցական ժողովների կանոնական վորոշումների մեջ բնավ չի հիշատակվում վո՛չ Կանոնագրքի հորինման ու պարտադիր կիրառման, վոչ էլ նրա պաշտոնական սանկցիայի մասին: Այստեղից պետք է հետևցնել, վոր Կանոնագրքի հասարակաց կիրառումն ու պարտադիր նշանակությունն ավանդաբար դարձացել է սովորութական իրավունքի շնորհիվ և լռելյայն, e silentio, ընդհանուր համաձայնության ուժով:

Դա բացահայտ է այն խոսքերից, վոր գտնում ենք Գրիգորիս կաթողիկոսի առ Բյուզանդական կայսր Մանուելն հղած գրության մեջ. «զտանին և այլ ժողովոց կանոնադրութիւնք և մէջ մեր և ընդունելի են, որք զզանազան կարգս եկեղեցւոյ հաստատեցին և զպէսպէս հերձուածս հերքեցին...»[27]: Ընդ սմին խիստ բնորոշ է, վոր մեզ հասած հայ կանոնագրքերի ձեռագրերը ծագում են մեծ մասամբ XVI—XVIII դարերից, իսկ ավելի հնագույն օրինակներ, վորոնցից նրանք արտագրվել են, բացակայում են միանգամայն: Վոչ մի կասկած չկա, վոր հին

ձեռագիր կանոնագրքեր, թերևս սկսած VIII—IX դարերից, գոյություն են ունեցել Հայ իրականության մեջ, բայց մեզ չեն հասել այն պատճառով, վոր կամ դարերի ընթացքում քաղաքական խառնաշփոթ իրադարձություններում կորել են, կամ անընդհատ գործածության հետևանքով մաշվել ու բնականորեն վոչնչացել են: Մեզ հասած Կանոնագրքի բազմաթիվ որինակները տարբեր տիպի յեն, այն է՝ ամբողջական հորինվածքով, վոր սովորաբար սկսվում է Ոհան Ոձնեցու 29 կանոնադրություններով, և անկատար հորինվածքով: Ամբողջական տիպի կանոնագրքի մեջ հասած ձեռագրերը լիակատար պարունակում են սովորաբար 70—100 կանոնադրություններ, վորոնք միասին ընդգրկում են 1000—1500 կանոններ:

Հայ Կանոնագրքի կամ կանոնական իրավունքի աղբյուրները բաժանվում են յերկու գլխավոր տեսակների՝ արտաքին ու ազգային: Առաջին տեսակին են պատկանում այն կանոնները, վորոնք հունական ու ասորական ծագում ունեն և ռեցեպցիայի կարգով են մտել Հայաստան, այսինքն՝ այն կանոնական վորոշումները, վորոնք հորինվել են, յերբ հայ յեկեղեցին տակավին մի յեր տիեզերականի հետ, որինակ՝ Նախանիկիական կանոններն[28] և ապա յերեք տիեզերական ժողովների[29] ու արտաքին տեղական ժողովների կանոններն՝ սկսած Անկյուրիայից մինչև Սարդիկիայի[30], նմանապես ոտար հայրապետների կանոնները: Յերկրորդ տեսակին են հարում այն կանոնները, վորոնք հորինվել են Հայաստանում, յերբ հայ յեկեղեցին անջատվել եր հունականից, այն է՝ հայ յեկեղեցական ժողովների կանոնական վորոշումներն և ապա հայ հայրապետների կանոնները:

Այս կանոնները մեծ մասամբ, մանավանդ արտաքին աղբյուրները, կրոնա—դավանաբանական ու յեկեղեցական բնույթ ունեն, ուստի ներկա աշխատության համար այնքան ել արժեք չեն ներկայացնում: Հայ իրավունքի պատմության տեսակետից կարևոր են ազգային կանոնական վորոշումները[31]: Այստեղ հանդիպում է բավականաչափ նյութ, վոր հայ իրավունքի գրավոր աղբյուր է հանդիսանում և բնորոշում է հին Հայաստանում տիրող իրավահայեցողությունը: Ինչպես արդեն ակնարկել ենք, հայ կանոնական վորոշումները հաճախ պատվում են վո՛չ միայն

կրոնա-եկեղեցական առանցքի շուրջը, այլև տարածվում են աշխարհիկ կենցաղի վրա: Այդ կանոնները շատ անգամ իրավաբանական նորմերի նշանակություն են ստանում, որոնք իրականում կարգավորում էին հասարակական հարաբերությունները քաղաքացիական ու քրեական իրավունքների մակարդակով: Այդ տեսակետից հետաքրքրություն են ներկայացնում Աշտիշատի (365 թ.), Շահապիվանի (443 թ.), Աղվանից Վաչագան թագավորի (488 թ.), Դվինի (Բ-րդ 555 թ. և Դ-րդ 648 թ.), Պարտավի (768 թ.), Սսի (1243 թ.), Ձագավանի (1270 թ.) եկեղեցական ժողովների կանոնները, նմանապես առանձին հայրապետների, այն է՝ Ներսես Մեծին (353—363 թ. թ.), մասամբ նաև Սահակ Պարթևին (387—439 թ. թ.) ու Գրիգոր Լուսավորչին (302—325 թ. թ.) վերագրված կանոնները:

Վերոհիշյալ եկեղեցական ժողովների կանոնները, որոնք իբրև իրավաբանական նորմեր վերաբերում են աշխարհիկ կենցաղին և կարգավորում են հասարակական հարաբերությունները, անտարակույս, բխում են սովորութական իրավունքից: Հետևապես, նրանք հայ իրավունքի կարևոր ու հետաքրքրական աղբյուրներ են և իրենց հնությամբ մեծ արժեք են ներկայացնում իրավա- պատմական ուսումնասիրության համար:

Ինչ վերաբերում է Գրիգոր Լուսավորչի, Ներսես (Մեծի) Հայոց Հայրապետի, մասամբ թերևս Սահակ Պարթևի կանոններին, պետք է ասել, որ այդ կանոններն ամենայն հավանականությամբ անվավերական են և չեն բխում անմիջապես վերոհիշյալ անձնավորություններից, ինչպես այդ սովորաբար ընդունված է կարծելու: Նույնը պետք է ասել նաև այսպես կոչված «Առաքելական կանոնների» մասին: Այդ կասկածը մանավանդ ուժեղ է Գրիգոր Լուսավորչին վերագրվող կանոնների նկատմամբ: Մի կողմ թողած Գրիգոր Լուսավորչի անձի պատմականության վերաբերյալ արտահայտված թեր և դեմ կարծիքները՝ նրա կանոնների բովանդակության համեմատությունը ցույց է տալիս, որ նրանք մեծ նմանություն ունեն Բարսեղ Կեսարացու (370 թ.), և ընդհանրապես այսպես կոչված «Հարանց հետևողաց», ինչպես և վերոհիշյալ Ներսես Հայրապետի (Մեծի) կանոնների և, վերջապես, Հովհան Մանդակունու կանոնների հետ, որոնք ժամանա-

կագրորեն Գրիգոր Լուսավորչից հետո են յեղել: Վոչ մի հիմք չկա կարծելու, վոր սրանք, մանավանդ Բարսեղը, իրենց կանոնների բովանդակությունը վերցրած լինեն Գրիգոր Լուսավորչից: Ավելի շուտ կարելի յե յենթադրել, վոր մի անհայտ անձն հետագայում, հավանորեն V դարի վերջերին, քաղվածորեն կազմել է այդ կանոնները ու միտումավոր կերպով վերագրել է Գրիգոր Լուսավորչի անվանը: Այդ անձը կարող եր քաղել վերոհիշյալ հեղինակներից, գուցե և միայն Բարսեղ Կեսարացուց, վորը մեծ հռչակ եր վայելում տիեզերական քրիստոնեյական աշխարհում և վորի կանոնները ռեցեպցիայով անցել եյին ու թարգմանվել նաև Հայաստանում:

Այդպիսի վերագրումներ ու կեղծիքներ, ինչպես ակներև է յեկեղեցական մատենագրությունից, սովորական յերևույթներ եյին, վոր կատարվում եյին կղերի կողմից՝ իրենց շահերի ու միտումավոր նպատակների համար:

Համենայն դեպս, այդ մեզ համար նշանակություն ունի այն չափով, ինչ չափով վերոհիշյալ կանոնների բովանդակությունն, անկախ նրանց հեղինակների անունից և ժամանակից, անհրաժեշտ նյութ է մատակարարում՝ բնորոշելու համար հայ իրավունքի նորմերը:

Հայ կանոնագրքում պարունակվող ազգային-յեկեղեցական ժողովների վորոշումներն ու հայրապետների հորինած կանոնները հնարավորություն են տալիս վորոշ չափով պարզելու նախարարական Հայաստանի գործող իրավունքի աղբյուրները: Այստեղ թերևս սովորութական իրավունքի նորմերն արձանագրվել են, կանոնների ձև ընդունելով և վավերացվելով՝ ստացել են պաշտոնական օրենսդիր նշանակություն: Նույնիսկ շատ կանոնների արգելական բնույթը մեզ տանում է դեպի իրական հասարակական կյանքը, ուր տիրում եյին յեկեղեցուն և քրիստոնեյական կրոնին անհարիր սովորույթներ ու սոցիալական բարքեր, վորոնք, սակայն, հիմնականում բղխում եյին ժողովրդի իրավահայեցողությունից:

Ահա այդ կանոններում արձանագրված հայ աշխարհիկ իրավունքն իր եյությամբ հայ ֆեոդալական հասարակության իրավական վերնաշենքն է հանդիսանում: Նրանք արտացոլում են

նախարարական իրավունքն իր դասակարգային բնորոշ գծերով: Սահմանելով հաստատ կանոնական նորմեր և այն դունավորելով կրոնական գաղափարախոսությամբ, հայ հիերարխիան, իբրև նախարարական սիստեմի բաղկացուցիչ մասը, հետապնդում էր առաջին հերթին իր կրոնա-ֆեոդալական շահերը, ամրացնելով իր սոցիալական ու քաղաքական տիրապետությունը: Միևնույն ժամանակ չէին անտեսվում նաև աշխարհիկ ֆեոդալականության շահերը, որոնք հակադրվում էին, ինչպես հետո կտեսնենք, նրանց տիրապետության ներքո շահագործվող ժողովրդական զանգվածներին:

Հայ կանոնագրքի, որպես ամբողջական մի Corpus-ի, տպագրական հրատարակություն մինչև այժմ չունենք. Այդպիսի տպագրությունը կապված է մեծ դժվարությունների հետ, նկատի ունենալով կանոնագրքի բազմաթիվ օրինակներն ու վարիանտները: Կանոնագրքի գիտական հրատարակությունը կապված է զանազան մատենադարաններում ցրված ձեռագրերի մանրակրկիտ համեմատության հետ, որը մի մարդու և կարճ ժամանակվա գործ չի կարող լինել:

Սակայն հրապարակված են բավականաչափ առանձին կանոնագրություններ, մի քանիսը նույնիսկ համապատասխան ձեռագրերի համեմատությամբ: Այդ կանոնագրություններից շատերը պարունակվում են Ն. Մելիք-Թանգյանի «Հայոց եկեղեցական իրավունքը» աշխատության մեջ, բայց սրա մեծ թերությունն այն է, որ հեղինակը չի հիշատակում, թե ո՛ր ձեռագրերից է քաղել կանոնները: Ա. Ղլտճյանն էլ հրատարակել է «Կանոնագիրք Հայոց» խորագրով ժողովածու, ըստ յերևույթին այդ առաջադրելով իբրև մի ամբողջական Corpus: Այս հրատարակությունը զուրկ է գիտական արժեքից: Նախ՝ այստեղ չեն նշված այն ձեռագրերը, որոնցից օգտվել է հրատարակիչը. երկրորդ՝ այդ տպագրվածի վերնագիրը բնավ չի համապատասխանում բովանդակությանը: Հրատարակիչն ունեցել է բռնազբոսիկ մոտեցումն իր գործին, դուրս է հանել մի շարք կանոնագրություններ, որոնք շատ հաճախ են պատահում կանոնագրքի օրինակներում և, ընդհակառակը, մուծել է այնպիսիները, որոնք բնավ տեղ չունեն կանոնագրքում: Հետևաբար, դա ո՛չ

թե պատմական, վորոշ չափով կոդիֆիկացիա տեսած, իսկական կանոնագիրքն ե, այլ անհատորեն, Ա. Ղլտճյանի «Նոր խմբածո» մի հավաքածու, այլ խոսքով՝ իր «հորինած» կանոնագիրքը:

## IV. ՈՏԱՐ ՌԵՑԵՊՑԻԱ

1. *ՄՈՎՍԻՍԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ*.— Քրիստոնեության հաստատումով Հայաստանում հարդարվել եր այն ճանապարհը, վորով պարզանում եր ոտար, գլխավորապես հունական և ասորական կանոնագրությունների ռեցեպցիան: Նույն ճանապարհով միաժամանակ այդ կանոնների հետ կատարվում եր նաև աշխարհիկ ոտար որենսդրությունների ռեցեպցիան, վորի կարիքը խիստ զգալի յեր: Ինչպես գիտենք, նախարարական Հայաստանում հասարակական հարաբերությունները կարգավորվում եյին սովորութական իրավունքի նորմերով, վորոնք գրի չեյին առնված, իսկ գրավոր որենսդրությունը տեղի ունեցավ VIII դարի վերջերին, այն ել կանոնագրքով, վոր գերազանցորեն հոգևոր-յեկեղեցական բնույթ եր կրում և ձգտում եր որինականացնել հիերոկրատիայի իրավասությունը դատական ու իրավաբանական բնագավառում: Ահա նույն հիերոկրատիան, հիմնվելով իր իրավաբանական գործունեության վրա, ստանձնում ե նաև աշխարհիկ որենսդրական ժողովածուների, այն ե՝ գրավոր ոտար որենքների ռեցեպցիայի գործը: Այս բնորոշ պարագան ունենում ե իր ազդեցիկ նշանակությունն և միակողմանի հետևանքները հայ իրավունքի հետագա զարգացման պատմության մեջ: Հիերոկրատիայի մենաշնորհ իրավաբանական գործունեության առաջին հետևանքը լինում ե այն, վոր աշխարհիկ որենքների անդրանիկ ռեցեպցիան սահմանափակվում ե սկզբնապես այսպես կոչված «Մովսիսական որենքներով»: Դա հրեական ժողովրդի գործող իրավաբանական նորմերի ժողովածուն եր, վոր ահագին դեր եր խաղում Արևելքի, մասնավորապես Առաջավոր Ասիայի ժողովուրդների իրական կյանքում ու իրավահայեցողության զարգացման մեջ, մանավանդ քրիստոնեության առաջին դարերում: Հայաստանի հիերոկրատիան, ձեռնամուխ լինելով ոտար ռեցեպցիային, յուրացնում եր վո՛չ թե հին հռոմեյական իրավունքը, վոր ավելի զարգացած իրա-

վարմունքման ու ավելի նուրբ իրավաբանական նորմերի սխալում էր և վաղուց հետո դրի չէր առնված, այլ հրեական իրավունքը՝ «Մովսիսական օրենքները» իրենց պրիմիտիվ կառուցվածքով ու հայացքներով։ Յեվ այդ քայլն արվում էր այն ժամանակ, յերբ քրիստոնեության մուտքը Հայաստանում հաղթական էր դառնում, սերտ առնչություն ունենալով հունական յեկեղեցու հետ։ Պարզ է, վոր այստեղ գերազանց դեր է խաղացել հայ յեկեղեցու և հիերոկրատիայի սոցիալական ու քաղաքական տիրապետության տենդենցը։

Յեկեղեցին, քրիստոնեության հիմնադիր ընդունելով յենթադրյալ Քրիստոսին, վոր ծագում էր իբրև թե աստուծու ընտրյալ հրեական ժողովրդից, իր համար հեղինակավոր էր համարում այդ ժողովրդի «սուրբ գիրքը»՝ «Աստվածաշունչը», այն է՝ Հին Կտակարանը։ Վերջինի հորինումը վերագրվում էր մարգարեներին, վորոնք սահմանել եյին հրեական ժողովրդի հասարակական հարաբերությունները, սոցիալ-տնտեսական ու հոգևոր կյանքը կարգավորող կանոններ, պատգամներ ու խրատներ։ Այդ մարգարեների մեջ անդրանիկն էր Մովսեսը, վոր իբր ստացել էր աստծուց «օրենքներ» և առաջին անգամ դրի առել։ Հետևապես ամենահին գրավոր օրենքն, ըստ քրիստոնեական յեկեղեցու, յեղել է «Մովսիսական Օրենքը»։ Քրիստոնեական յեկեղեցու և հոգևոր դասի, մասնավորապես և հայերի մեջ գոյություն ունեցող այդ հայացքը պարզորոշ արտահայտվում է Մխիթար Գոշի Դատաստանագրքում։ Մխիթար Գոշն իր կոդեքսի աղբյուրները հիշատակելիս նշում է, վոր քաղել է գրավոր օրենքներ նաև Հին Կտակարանից. «Իսկ ի գրոց—առաջին՝ յԵլից և յԵրկրորդ Օրինացն և յայլ ևս գրոցն, որ է ստոյգ Աստուծոյ օրէնք և դատաստանք. զոր և ասէ իսկ թէ—այս են օրէնք և դատաստանք և վկայութիւնք, զոր պատուիրեաց ձեզ Տէր» (Մ. Գ., Նախ., եջ 65)։ Մի այլ տեղ նույն հեղինակն ավելի է ճշտում այդ տեսակետը. «Եկեսցուք այժմ իսկ ի գործ դատաստանի, գիտելով զի ըստ քաղաքաց դատաւորս հրամայէ լինել Մովսէս և նոցունց դպիրս. յորոց յայտ է, զի ո՛չ զամենայն գրով աւանդեաց Մովսէս գիրս դատաստանի, այլ տեսակս եւս սակաւս ի դատաւորս ապաստան արար 'ի զանազան իրս և ի

ժամանակս: Եւ վասն այն զդպիրս կարգեաց, զի զեղեալ դատաստանս նոցա գրով պահեսցեն. ըստ որում և մեք եղիցի, որպէս յառաջ իսկ ասացաւ»: (I, Ա., 81):

Ուրեմն «Մովսիսական օրենքը» աստվածային օրենք է, սրբագործված ու աստծուց հաստատված: Ընդունելով ռեցեպցիայի կարգով հրեական այդ իրավունքը իբրև աշխարհիկ օրենքներ, հիերոկրատիան դրանով իսկ կրոնական սանկցիա էր տալիս այդ իրավարանական նորմերին, ինչպես և յուր կանոնական նորմերին, և կիրառում էր աշխարհիկ կյանքում յուր իսկ իրավական ինստիտուտների միջոցով: Դրանով նա մի նոր զենք էր ձեռք բերում, որը միացնելով կանոնական իրավունքի նորմերին՝ ավելի ուժեղացնում էր քաղաքական ազդեցությունն և ապահովում էր սոցիալ-տնտեսական տիրապետությունը:

Հիրավի, Մովսիսական օրենքները մեծ ծավալով ներս էին թափանցել հայ իրավունքի մեջ, մանավանդ գրավոր օրենքների ժողովածուներում, և շրջանառվում էին նաև իբրև առանձին, ինքնուրույն հավաքածուներ: Այդ են վկայում թե՛ Մխիթար Գոշի Դատաստանագրքի հոդվածների մեծամասնությունը և թե՛ մեզ հասած Մովսիսական օրենքների բավականաչափ առանձին ձեռագրերը: Կասկած չկա, որ Մովսիսական օրենքների ռեցեպցիան կատարվել է ո՛չ թե անմիջապես հրեականից, այլ գլխավորապես ասորականից՝ Սիրիայից, որտեղ Մովսիսական Օրենքը մեծ չափով թափանցել էր տեղական կանոնական իրավունքի մեջ:

Բայց Մովսիսական օրենքները, ինչպես կարելի է եզրակացնել Մխիթար Գոշի Դատաստանագրքից, քաղված են ո՛չ միայն ասոր ժողովածուներից թարգմանաբար, այլև անմիջապես իրենց հիմնական աղբյուրից, այն է, այսպես կոչված «Աստվածաշնչի կամ «Ս. Գրքի»—«Հին Կտակարանի»—հայերեն թարգմանական բնագրից: Մանավանդ այդ վերաբերում է Աստվածաշնչի «Ելից գրքի» և «Երկրորդ օրենքի» մեջ պարունակված Մովսիսական օրենքներին:

Սակայն հետագայում Մովսիսական իրավունքը Հրեաստանի անկումից և հրեաների արտագաղթից հետո, երբ նրանք իրենց գաղութներում ավելի բարդ ու զարգացած հասարակական-տն-

…տական հարաբերությունների միջավայրի հետ էին չմնում, սկսում է վերամշակման ենթարկվել ռաբբինական դասի ձեռքով: Այդ վերափոխված Մովսիսական իրավունքը հայտնի է «Թալմուդ» անունով, որ կիրառվում էր բոլոր հրեական համայնքներում և ռեցեպցիայով տարածվում էր Առաջավոր Ասիայի ժողովուրդների մեջ: Այսպիսով, առաջ եկան Պաղեստինում «Երուսաղեմի Թալմուդը» (368 թ.) և Բաբելոնում ու Միջագետքում՝ «Բաբելոնի Թալմուդը» (476 թ.): «Թալմուդի» իրավաբանական նորմերը նմանապես մուտք էին գործել Արաբիա, ուր նրանք յուրացվեցին նաև մահմեդական Ղուրանի օրենքների՝ Շարիաթի մեջ:

Այս այդ վերամշակված Մովսիսական, այն է՝ Թալմուդական իրավունքը նույնպես մուտք է գործել Հայաստան: Այդ միանգամայն ճիշտ կարծիքին են հանգում Յ. Կարստ և Յ. Կոհլերն իրենց ուսումնասիրություններում. մի կարծիք, որ ավելի հանգամանորեն ապացուցում են հայտնի սեմիտաբաններ Դ. Մյուլլերը[32] և Վ. Ապտովիցերը[33]. Վերջինս Մխիթար Գոշի Դատաստանագրքի մի շարք հոդվածները համեմատության են առնում Թալմուդական իրավունքի համապատասխան հոդվածների հետ և հայտաբերում են երբեմն նույնիսկ բառացի նմանություններ: Սակայն դժվար է ասել, թե Թալմուդական իրավունքի նորմերն ի՞նչպես և ե՞րբ են մուտք գործել Հայաստան: Պետք է ենթադրել, որ այդ կատարվել է արաբական տիրապետության շրջանում, ոչ վաղ, քան VII դարում, այն էլ ո՛չ թե անմիջորեն, այլ մուսուլմանական իրավունքի միջոցով: Այդ բացահայտ է Մխիթար Գոշի Դատաստանագրքից, ուր, այլ աղբյուրների շարքում հիշատակվում է նաև մահմեդական իրավունքը, որ օգտագործվել է այն չափով, ինչ չափով այնտեղից հնարավոր է եղել քաղել Մովսիսական օրենքները. «Երրորդ [աղբյուր]՝ առնումք և ի մահմեդականաց. ո՛չ որ նոքա ունին ի Մահմետայ զախտաւոր բանս կամ զդատաստանս, այլ զոր առին՝ի Մովսիսի օրինացն՝ մեք զայնս ընտրեմք և առնումք» (ՄԳ., Նախ., Ժ, էջ 65):

Այն փաստը, որ Մխիթար Գոշն իր Դատաստանագիրքը կազմելիս մեծ չափերով օգտվել է Մովսիսական օրենքներից, վկա-

յում է, որ հին Հայաստանում գոյություն են ունեցել Մովսիսական օրենքների ժողովածուներ, որոնց առանձին ձեռագրերը հասել են մեզ: Սրանից պետք է եզրակացնել, թե ի՛նչ մեծ նշանակություն էր վերագրում հայ հիերոկրատիան Մովսիսական իրավունքին: Սակայն հետաքրքիրն այն է, որ տակավին 1196 թ., այսինքն՝ Մխիթար Գոշի Դատաստանագրքի հորինումից հետո (1184 թ.), Կիլիկյան հայ թագավորության մեջ հայտնի եկեղեցական Ներսես Լամբրոնացին, որը թարգմանել է մի շարք օտար օրինագրքեր, անկախ Մխիթար Գոշից, թերևս և անտեղյակ լինելով նրա կազմած Դատաստանագրքին, թարգմանել է հունարենից Մովսիսական Օրենքները տեղական կիրառման համար, որի մասին ինքը հիշատակում է թարգմանության հառաջաբանում. «Ցետ սորա ապա ի հելլենացոց գրոց արարի թարգմանութիւն Մովսիսական աւրինաց»[34]:

Մովսիսական օրենքները մտել են ոչ միայն Մխիթար Գոշի Դատաստանագրքի մեջ, որի ամբողջ քրեական իրավունքը, ստրկատիրական նորմերը և մասամբ պարտավորական ու գույքային իրավաբանական նորմերը նույն հարազատությամբ, երբեմն էլ հայ կենցաղին հարմարեցրած փոքր ինչ փոփոխումներով, առնված են այդ օրենքներից: Մովսիսական օրենքները մտել են նաև հայ կանոնական իրավունքի մեջ Մխիթար Գոշից շատ առաջ՝ եկեղեցական ժողովների կանոնական որոշումներում, օրինակ՝ պատժական իրավունքի, հոգևորականների ժառանգելու իրավունքի, տասանորդային հարկի ու այլ «մուտքերի» հօգուտ եկեղեցու և նման հարցերի նկատմամբ:

Ավելորդ չի լինի նշել մի հետաքրքրական երևույթ: Ականավոր ասորա-բաբելագետներ Բրունո Մայսներ, Հուգո Վինկլերն իրենց հետազոտություններով ապացուցում են, որ բաբելական Համմուրաբիի օրենքները (2067—2025 թ. մեր տարեթվից առաջ), որոնք հայտաբերվել են հնագետ Ժակ Մորգանի պեղումներով Սուզայի ավերակներում, իրենց մի շարք իրավաբանական նորմերով մեծ նմանություն ունեն Մովսիսական օրենքների, որոնք պատմական «Համմուրաբիի կոդեքսից» շատ դարեր հետո են գոյացել: Այստեղից նրանք եզրակացնում են, որ հին հրեաների առաջին օրենսդրական որոշումները բխում

են Համմուրաբիի, ավելի ճիշտ ասած՝ բաբելական օրենքներից: Այդպիսի աղբյուրի հավանական լինելությունը միանգամայն ընդունելի է, քանի որ Հրեաստանը մի ժամանակ նվաճվել էր Բաբելոնի կողմից և հրեության մեծ մասը, երկարատև գերությունից հետո, նորից վերադարձել էր Պաղեստին՝ իր հայրենիքը: Անշուշտ, այս պայմաններում հրեաները շատ բան էին յուրացրել բաբելական կուլտուրայից, ընդ որում նաև նրանց իրավունքի նորմերը: Ահա այս դեպքում Մխիթար Գոշի Դատաստանագրքի մեջ մտած Մովսիսական իրավունքի նորմերով հեռավոր արձագանք են գտնում ալևոր հնության մի իրավունքի, Համմուրաբիի օրենքների բնորոշ հատքերը:

Ի վերջո նշենք, որ Մովսիսական օրենքների հայերեն հավաքածուները տակավին ուսումնասիրված չեն ու չեն ենթարկվել համեմատական վերլուծման, հետևապես չեն էլ հրապարակվել: Իսկ առանց այդ ուսումնասիրությունների՝ շատ կարևոր հարցեր, որոնք կապված են այդ օրենքների ռեցեպցիայի հանգամանքների հետ (ժամանակը, ի՞նչ լեզվով, ո՞րտեղից և այլն), նմանապես այն հարցը, թե այդ հավաքածուներից որո՞նք են հին Մովսիսական և որոնք հետագա Թալմուդական,— մնում են մինչև այժմ չպարզաբանված:

2. ԱՍՈՐԱ-ՀՌՈՄԵՅԱԿԱՆ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ.— Ինչպես կարելի է եզրակացնել մեզ հասած զանազան օրենքների ժողովածու ձեռագրերից, հին Հայաստանում մուտք է գործել նաև այսպես կոչված «Ասորա-Հռոմեական Դատաստանագիրքը»: Առայժմ բացակայում են ամուր կռվաններ որոշելու համար, թե ե՞րբ և ի՞նչ լեզվից է նա թարգմանվել ու մեզ մոտ գործադրվել: Այդ Դատաստանագրքի բացի հայերեն ձեռագրերից, որոնք զանազան վարիանտներով են հանդիպում, Արևմտյան Եվրոպայի թանգարաններում գտնվում են նաև արաբական ու ասորական (սիրիական) ձեռագրերը, նույնպես տարբեր վերսիաներով: Այդ Դատաստանագրքով, մանավանդ երբ նրա հայերեն, ասորերեն ու արաբերեն տարբերակները 1880 թ. հրատարակվեցին Բրունսի և Զախաու գերմանացի գիտնականների ձեռքով, հետաքրքրվեցին մի շարք եվրոպական արևելագետներ ու համեմատական իրավագիտությամբ զբաղվող անձեր, ճգնելով լուսաբանել այդ օրենքների

ծագումն ու բնույթը: Այդ հետազոտողների մի մասը, ինչպես Բրունս և Զախաուն, նմանապես և Լ. Միտտայսը պնդում են, որ դա զուտ հռոմեական, այսինքն բյուզանդական ծագում ունի և հունական աղբյուրներից է բխում: Իսկ մի խումբ այլ գիտնականներ, ինչպես՝ Զ. Լինգենթալը, Ց. Կոհլերը, մանավանդ Դ. Մյուլլերը, որ այդ մասին մի քանի ուշագրավ համեմատական ուսումնասիրություններ են հրապարակել, նմանապես Վ. Սպասովիչը և մասամբ Ց. Կարստը հակառակ տեսակետի վրա են կանգնած: Վերջինները, համեմատության առնելով համապատասխան օրենքներն ու դրանց աղբյուրները, նաև լեզվական ու պատմական տվյալները, ապացուցում են, որ վերոհիշյալ Դատաստանագիրքը ո՛չ թե հունական, այլ հին ասորական է: Նույնիսկ այն հանգամանքը, որ այդ Դատաստանագրքում հիշատակվում են բյուզանդական կայսրներ Կոստանդիանոս, Թեոդոս, և Լևոն, որոնց անունից առաջ են բերված մի քանի օրենքներ, չի կարելի հիմք ընդունել ապացուցելու համար, թե այդ օրենքները հռոմեա-բյուզանդական ծագում ունեն, քանզի՝ հենց այդ օրենքների ներքին բովանդակությունը միանգամայն խորթ է բյուզանդական իրավահայեցողությանը:

Բացի այդ՝ հիշյալ Դատաստանագրքի հոդվածներում նըշմարելի յեն նաև Մովսիսական օրենքների հետքեր: Այդ Դատաստանագիրքը, ուրեմն, հիմնականում ասորական է և հորինվել է Փոքր Ասիայում: Ինչ վերաբերում է Դատաստանագրքի «Ասորա-Հռոմեական» անվանը, այդ, անշուշտ, հետագայում առաջացած մի թյուրիմացություն է, որ ավանդաբար ու անհիմն կերպով, միանգամայն սխալ ձևով պահպանվել է, փոխանակ սոսկ «Ասորական» կոչվելու: Մեր ձեռագրերում այդ Դատաստանագիրքը կրում է մեծ մասամբ այսպիսի վերնագիր՝ «Օրէնք յաղթող թագաւորացն Կոստանդիանոսի, Թէոդոսի և Լևոնի»: Մենք էլ հակված ենք ընդունելու վերջինների տեսակետը:

Վերևում բերված պարագաները կռահել են տալիս, որ Ասորա-Հռոմեական Դատաստանագիրքը Հայաստանում ընդունվելիս՝ թարգմանվել է ասորերենից: Սակայն ե՞րբ է նա մուտք գործել Հայաստան ու թարգմանվել,— այդ հարցը դեմ է ընկնում մեծ դժվարությունների՝ ստույգ տեղեկությունների բացակա-

յության հետևանքով: Կասկածից դուրս է, որ այդ Դատաստանագիրքը ինչպես ամբողջ Առաջավոր Ասիայում, այնպես և Հին Հայաստանում, խիստ տարածված է եղել: Մենք նկատում ենք նրա մի քանի հոդվածների ազդեցությունը Մխիթար Գոշի Դատաստանագրքի վրա: Հետևապես նա մինչև XII դարը հայտնի չի եղել Հայաստանում: Տարօրինակ է, որ Մխիթար Գոշն այն չի հիշատակում իր օգտագործած աղբյուրների շարքում: Ընդ-յած որում՝ գերմանացի հայագետ Պետերմանը կարծիք է հայտնել, թե այդ Դատաստանագրքի թարգմանիչն եղել է Մխիթար Գոշը[35], հիմնվելով այն փաստի վրա, որ հիշյալ Դատաստանագիրքը մի քանի ձեռագրերում զետեղվում է Մխիթար Գոշի Դատաստանագրքից անմիջապես հետո: Թարգմանության լեզուն և բառերի ուղղագրությունը հայ բանասերներից շատերին հիմք են տվել ենթադրելու, թե թարգմանությունը կատարվել է միջին դարերում (АЮ, 191): Սակայն Յ. Կարստը ենթադրում է, որ այդ Դատաստանագրքի հայերեն թարգմանությունը կատարվել է Բագրատունյաց թագավորության շըրջանում (887—1042 թ. թ.), երբ սկսում է զարգանալ հունաբյուզանդական օրենքների մուտքը Հայաստան[36]:

Վերջին ժամանակներս մի քանի հայ բանասերներ Ասորա-Հռոմեական Դատաստանագրքի թարգմանությունը, իբրև ապացուցված փաստ, վերագրում են Կիլիկյան հայ թագավորության ականավոր եպիսկոպոս ու մատենագիր Ներսես Լամբրոնացուն, որն իբր այդ գործը կատարել է 1197 թ.: Իրենց ապացույցը նրանք հիմնավորում են Ներսես Լամբրոնացու հիշատակարանով. «և պատահեալ անդ յասորոց Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ, յայտնեաց տեառն [Հայոց կաթողիկոս Գրիգորին], զի գոյր առ ինքն այս համառօտ աւրինադրութիւնս և հրաման առեալ ինձ տառապեալ իւր ձեռնասուն որդւոյ Ներսէսի յեղաշրջեցաւ ի հայս»[37]: Մեջ բերված խոսքերը քիչ բան են ասում Ասորա-Հռոմեական Դատաստանագրքի թարգմանության կնճռոտ հարցը վերջնականապես լուծելու համար: Նախ՝ չի հիշատակվում է, թե ի՞նչ «օրենսդրություն» է եղել ասորի Թեոդոս քահանայի առաջարկածը. այդ կարող էր լինել դուցե մի ուրիշ ասորերեն օրենքների ժողովածու, որ թարգմանել է

Ներսես Լամբրոնացին։ Երկրորդ՝ եթե նույնիսկ ընդունենք, որ իրոք դա Ասորա-Հռոմեական Դատաստանագիրքն է, ապա այստեղից հետևում է, որ Ներսես Լամբրոնացին 1197 թ. կատարել է մի թարգմանություն, առանց գիտակ լինելու, որ այդպիսի թարգմանություն արդեն շատ առաջ գոյություն ուներ Մեծ Հայքում, որտեղ, մեր ենթադրությամբ, տակավին Մխիթար Գոշից առաջ, հետևապես առ առավելն XI դ., արդեն այդ Դատաստանագիրքը գործածվում էր, քանի որ այդտեղից օգտվել է Մխիթար Գոշն իր Դատաստանագիրքը հորինելիս, այն է՝ 1184 թ.: Ընդսմին բնորոշ է, որ Ներսես Լամբրոնացին միաժամանակ տեղեկություն չունի, որ Մեծ Հայքում, արդեն իրենից 14 տարի առաջ, հորինվել է Մխիթար Գոշի Դատաստանագիրքը։ Վերջապես, ինչպես նախորդ գլխում ակնարկեցինք, նույն Լամբրոնացին թարգմանում է, համաձայն իր հիշատակարանի, Մովսիսական օրենքները, որոնք վաղուց մուտք էին գործել Հայաստան ու թարգմանված էին։

Այս նկատառումներով չի կարելի Ասորա-Հռոմեական Դատաստանագրքի ռեցեպցիան ու թարգմանությունը կապել բացառապես Ներսես Լամբրոնացու անվան հետ։ Լավագույն դեպքում նա կարող է համարվել մի հետագա թարգմանիչ, որը գաղափար չի ունեցել նախորդ, ավելի հին թարգմանության, ինչպես և այդ Դատաստանագրքի ավելի հին ժամանակի ռեցեպցիայի մասին։ Ասորա-Հռոմեական Դատաստանագիրքն ինքնին շատ հին ծագում ունի, հար ու նման Մովսիսական օրենքներին, մանավանդ՝ Թալմուդական իրավունքին։ Նա ավելի հին ծագում ունի, քան հունա-բյուզանդական օրենքները։ Ինչպես ակներև է Լոնդոնի թանգարանում գտնվող այդ Դատաստանագրքի ասորերեն բնագրից, նա գրված է 510—520 թ. թ.: Այդ օրինակը, ըստ Բրունսի կարծիքի, հավանորեն 476—477 թ. թ. գրված կաղապարի պատճենն է։ Ահա այդ հնությունը, որ հասնում է V դարին, ինչպես և նրա հասարակաց տարածումը Փոքր ու Առաջավոր Ասիայում, ենթադրել են տալիս, որ այդ Դատաստանագիրքը համենայն դեպս ո՛չ թե XII դարում, այլ անհամեմատ ավելի վաղ պետք է մուտք գործած լիներ Հայաստան։

Անտարակույս, այս կնճռոտ հարցի լուսաբանությունն և

վերջնական լուծումը հնարավոր է միայն թե՛ հայերեն և թե՛ օտարերեն գրչագիր օրինակների հիմնավոր բաղդատությունից ու համեմատական ուսումնասիրությունից հետո:

3. ՀՌՈՄԵՅԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ.—Զգալի դեր է խաղացել նաև հռոմեյական իրավունքը հին Հայաստանի իրավական հարաբերություններում: Այդ սկիզբ է առնում այն մոմենտից, յերբ Արշակունյաց հարստության անկումով՝ Հայաստանը 387 թ. և ապա 428 թ. բաժանվում է Բյուզանդիայի ու Պարսկաստանի միջև:

Այսպես մասնատված Հայաստանը՝ Բյուզանդական կամ արևմտյան, ու Պարսկական կամ արևելյան, ստանում են հետագայում քաղաքական և կուլտուրական զարգացման տարբեր ուղիներ, վորտեղ իրավունքն ու օրենքը նոր պայմաններին համապատասխան բնույթով են ստեղծվում: Տիրող ընդհանուր նախարարական իրավունքն սկսում է քայքայվել ու այսպես թե այնպես համակերպվել մի կողմում՝ բյուզանդական, իսկ մյուս կողմում՝ իրանական սոցիալ– քաղաքական գործոններին: Բյուզանդիայի կողմից աննեքսիայի յենթարկված արևմտյան Հայաստանը կցվում էր Փոքր Հայքին, վոր շատ հնուց, տակավին Արշակունիներից առաջ, միացված էր կայսրությանը և, կարելի յե ասել, արդեն հռոմեյական էր: Աննեքսիայի միջոցով գրավված Հայաստանն իսկապես Մեծ Հայքն էր, վորի շուրջն էր տեվում բազմադարյան սուր մրցումը յերկու քաղաքական ուժեղ ախոյանների՝ Բյուզանդիայի ու Պարսկաստանի միջև, մինչև վոր նրանք բաժանեցին այդ յերկիրը: Ահա Մեծ Հայքի այն մասը, վոր ընկավ բյուզանդական կայսրների իշխանության ներքո, իր պետական–վարչական կառուցվածքով ու իր վասալական կախումով կայսրներից՝ ներկայացնում էր յերկու տերիտորիալ հատված, վորոնք կոչվում եյին՝ ա) Հռոմեյական Մեծ Հայք— Armenia magna, կամ Ներքին Հայաստան—Armenia interior, դա իսկապես Բարձր Հայքն էր, և բ) Gentes,. կամ հայկական սատրապիաներ, այն է՝ հինգ ինքնավար իշխանություններ (նախարարություններ) — Հանձիթք, Անգեղ տուն, Հաշտյանք, Մեծ Ծոփք, Փոքր Ծոփք, Բալահովիտ: Armenia magna-ն կամ Բարձր Հայքը կառավարվում էր հատուկ կայսերական տեղակալով, վոր կոչվում

էր comes Armeniae, իսկ հինգ սատրապությունների ամիրներն յենթարկվում էյին կայսրներին, իբրև վասսալներ: Այս յերկու յերկրամասերը՝ Մեծ Հայքը — Armenia magna (interior) և սատրապությունները չէյին համդիսանում provincia հռոմեյական իրավարարությամբ, այսինքն պետականության միացրած յերկրներ, բնակիչները չէյին համարվում հռոմեյական քաղաքացիներ, հռոմեյական իրավունքն ու որենքներն այստեղ նշանակություն և ուժ չունեյին: Տեղական յերկրային իրավական ինստիտուտները, բնիկ սովորութական իրավունքը շարունակում էյին տակավին տիրապետել հասարակական-իրավական հարաբերություններում, ուր հայ նախարարներն իրենց ձեռքում կենտրոնացրած ունեյին վարչական ու իրավական - դատական ֆունկցիաներ[38]: Այս իրավական դրությունը շատ քիչ փոփոխումներով տևում է մինչև Հուստինիանոս կայսրի թագավորումը (527—565 թ.թ.):

Բյուզանդիոնի քաղաքական վարքագիծը, այն է՝ ապազգայնացնելու յենթակա Հայաստանն ու համաձուլելու հայությունը հունականության հետ, մի առանձին թափով է յերևան գալիս Հուստինիանոս կայսրի ժամանակ: Բյուզանդիոնի որենսդրական գործունեյությունն սկսում է տարածվել նաև Հայաստանի վերա, հռոմեյական որենքներն ու իրավունքը մտցվում են այստեղ ի կիրառումն՝ տիրող հայ իրավունքի փոխարեն: Այդ նպատակով Հուստինիանոսը հրապարակում է դեկրետային կարգով հատուկ որենքներ: Առաջին հերթին 528 թ. մի դեկրետ՝ c. I. I, 29,5 «Imp. Iustinianus A Zetae viro illustri magistro militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentes», որով արմատական փոփոխման էր յենթարկվում Հայաստանի զինվորական ուժը: Իսպառ վերացվում էր նախարարների ու տեղական հայ իշխանների զինվորական իշխանությունը, որն այնուհետև կենտրոնանում էր կայսրի կողմից նշանակված հատուկ զինվորական հրամանատարի՝ magister militum-ի ձեռքին: Մի փոքր հետո Մեծ Հայքում նաև քաղաքացիական- վարչական իշխանությունը կենտրոնացվում է այսպես կոչված Praeses-ի անձնավորության մեջ: Սակայն 536 թ. Բյուզանդիոնին յենթակա Հայաստանը պետական-վարչական կողմից ամբողջովին յեն-

թարկվում է փոփոխման, վորով տեղական ֆեոդալ իշխանները զրկվում են նաև իրենց քաղաքական-վարչական բոլոր իրավունքներից: Հուստինիանոսի XXI Novella-ով «Περὶ διατυπώσεως τῶν τεσσάρων ἀρχόντων Ἀρμενίας» («Հայաստանում չորս կառավարիչներ հաստատելու մասին») ամբողջ Հայաստանը բաժանվում է չորս անջատ նահանգների, վորոնք, իբրև provincia-ներ, ունենալով կայսրների կողմից նշանակված հատուկ զինվորական ու քաղաքացիական իշխանություններ, միացվում եյին հանուր պետական կազմին: Այս ակտերով Արևմտյան Հայաստանը մտնում եր հռոմեյական իրավունքի ու որենսդրության շրջանակների մեջ և վերացվում եր տեղում գործող դարավոր նախարարական իրավունքը: Այդ քաղաքականությունն իրագործվում եր նաև մի շարք հրապարակված նովելլաներով: Հուստինիանոսը 535 թ. հրապարակում է Edictum III—հայ ժառանգական իրավունքի մասին՝ „De armeniorum successione“—ερὶ τῆς τῶν Ἀρμενίων διαδοχῆς“, իսկ 536 թ. XXI Novella—„De armeniis, ut et illi per omnia Romanorum leges sequantur“ —«Περὶ Ἀρμενίων ὥστε καὶ αὐτοὺς ἐν πᾶσι τοῖς Ῥωμαίων ἀκολουθεῖν νόμοις («Հայերի մասին, վոր նրանք այսուհետև ամեն բանում ղեկավարվեն հռոմեյական որենքներով»), վորով միակ գործող իրավունքը Հայաստանում ճանաչվում եր հռոմեյականը: Անտարակույս, հռոմեյական որենքների այս ձևի տարածումը Հայաստանի վրա չի կարելի ռեցեպցիա համարել: Այստեղ տեղի յե ունենում վոչ թե մի յերկրի ժողովրդի կողմից ոտար որենսդրքի փոխադրումն ու յուրացումն, այլ մի յերկրամասի միացումով ընդհանուր պետական տերիտորիային՝ կատարվում է նաև նրա իրավական կարգերի վերափոխումն ու յենթակայությունն ընդհանուր պետության որենսդրությանը: Մյուս կողմից՝ նկատում ենք մի բնորոշ յերևույթ, վոր նույնպես վկայում է տվյալ դեպքում ռեցեպցիայի բացակայությունը: Այդ հռոմեյական իրավունքը, տարածվելով Արևմտյան Հայաստանի վրա, դուրս չի գալիս նրա սահմաններից, նա չի թափանցում ու փոխադրվում Արևելյան, այսինքն՝ Պարսկական Հայաստան, վոր շարունակում եր ղեկավարվել տեղական նախարարական իրավունքի նորմերով: Հռոմեյական իրավունքի այդ սահմանափակումը Բյուզանդական Հայաստանի

շրջանակներով, և նրա անկախությունը տարածվելու մյուս մասերում՝ պետք է բացատրել հետևյալ հանգամանքներով:

Չնայած, վոր Բյուզանդիոնն ու Պարսկաստանը փոխադարձ համաձայնությամբ բաժանել էյին Հայաստանն իրենց միջև, այնուամենայնիվ այդ յերկու պետությունների մրցումն ու հակամարտությունը հայկական տերիտորիայի շուրջը, վոր իր բուֆերային դիրքով կարևոր առևտրական և մանավանդ ստրատեգիական տարանցիկ կետ էր հանդիսանում, չէյին դադարում և ներքուստ միշտ վառ էյին մնում: Ուստի Սասանյան Պարսկաստանն իր ամբողջ տիրապետության ժամանակաշրջանում (428—654 թ.թ.) ամեն տեսակ խոչընդոտներ ու պատնեշներ էր ծառացնում Հայաստանի յերկու հատվածների փոխադարձ հարաբերություններում: Այդ խզված դրությանը նպաստում էր նաև Մեծ Հայքի արևելյան մասում տիրապետող դասակարգի՝ հայ նախարարների մեծամասնության պարսկական կողմնորոշումը, վոր հետագայում ավելի ուժ ստացավ հայ յեկեղեցու առանձնացումով ու Ֆեոդալական հասարակության մեջ հիերոկրատիայի ձեռք բերած մեծ ազդեցությամբ: Մենք վերը նշել ենք, վոր հենց այս ժամանակաշրջանում Հայաստանի որենսդրական ու դատա-իրավարարական գործունեությունը կենտրոնանում է հիերոկրատիայի ձեռքին, հենց այս շրջանում զարգանում է հայ կանոնական իրավունքը, վորը, բնավ չխախտելով տիրող նախարարական իրավունքի ուժը, վերջինիս հետ միասին խափանում էր ու արգելակում հռոմեյական իրավունքի մուտքը դեպի Արևելյան Հայաստան:

Այստեղ պետք է ավելացնել նաև մի այլ կարևոր հանգամանք: Հռոմեյական իրավունքը, Արևմտյան Հռոմեյական կայսրության անկումից հետո (476 թ.), իր հիմնական դրույթներով վերակենդանում է Արևելյան Հռոմեյական կայսրության մեջ և կաղապարվում է Հուստինիանոս կայսրի ձեռներեցությամբ հորինված Corpus juris civilis-ի հրապարակումով: Այդ հռոմեյական իրավունքը Բյուզանդական կայսրության խայտաբղետ սոցիալ-տնտեսական պայմաններում չէր համապատասխանում իր հիմնական գծերով այնտեղ տիրապետող հելլենական կուլտուրային:

Այդ իրավունքն, որենսդրորեն միակ գործողն ամբողջ կայսրության մեջ, չարմատացավ այստեղ, չխորացավ հասարակության իրավահայեցողության մեջ; մանավանդ ասիական հպատակ երկրներում: Հռոմեական իրավունքը, չնայած վերահիշյալ նովելլաներին ու էդիկտներին, թեև ձևականորեն հաստատվում էր և պարտադիր կիրառումն Բյուզանդական Հայաստանում, այնուամենայնիվ իրականում նա խորթ մնաց այստեղ տիրող սովորութական իրավունքին և ազդեցություն չունեցավ ժողովրդի իրավաըմբռնողության վրա: Այսպիսի պարագաներում ինքնին հասկանալի յե, վոր հռոմեական իրավունքը չեր կարող ներգործություն ունենալ ու ռեցեպցիայի առարկա դառնալ նաև Պարսկական Հայաստանում, վորտեղ իսկապես կենտրոնացած եր ու շարունակում եր իր պատմական դերը խաղալ հայկական ազգային կուլտուրան:

Հետևապես, հուստինիանական շրջանի հռոմեական օրենքները չեն կարող համարվել հայ իրավունքի աղբյուր և այդ տեսակետից նրանք մեզ համար նշանակություն չունեն: Բայց և այնպես, նրանք հայ իրավունքի նկատմամբ ստանում են վորոշ արժեք այն չափով, ինչ չափով Հայաստանի վերաբերյալ Հուստինիանոսի հրապարակած նովելլաներն ու էդիկտներն իրենց բացասական դիրքավորումով դեպի տեղական հայ կենցաղը՝ հիմք են տալիս դուրս բերելու բնիկ հայ իրավունքի բնորոշ գծերը, վորոնց մասին մեզ այլ պատմական տվյալներ չեն հասել:

Պարսկական Սասանյանների անկումով և արաբների տիրապետությամբ Հայաստանում (654—859 թ. թ.) Պարսկաստանի ու Բյուզանդիոնի միջև գոյացած պատնեշները միաժամանակ շարունակում են պահպանվել արաբների կողմից: Սակայն, չնայած զարգացող առևտրա-վաշխառուական կապիտալի ու սրան հարակից տրանզիտային առևտրի, այդ խզող խոչընդոտներն սկսում են թուլանալ և Բագրատունյաց թագավորության շրջանում (887—1045 թ. թ.), յերբ, արդեն վորոշ չափով վերականգնում ե հայ քաղաքական կյանքը, նույն իսկ վերանում են: Ահա այս ժամանակաշրջանում հռոմեական իրավունքը Բյուզանդիայի սահմաններից սկսում ե թափանցել Հայաստան և [illegible] դառնում է

ռեցեպցիայի առարկա: Սակայն այդ հռոմեական իրավունքն այլևս նախկին կլասիկ հուստինիանականը չեր, վոր չկարողացավ խոր հիմքեր գցել հելլենական կուլտուրայով սնված Բյուզանդիայի հասարակության իրավահայեցողության մեջ: Նմանապես Հայաստան մուտք գործող հռոմեական իրավունքը չի հանդիսանում հետագայում Մակեդոնյան կայսրների (867—1042 թ. թ.) վերակենդանացրած հուստինիանական իրավունքը, այսպես կոչված Բազիլիկյան իրավունքը, այլ հանդիսանում է միայն Բյուզանդիոնի Իսավրյան թագավորների (717—867 թ. թ.) որենսդրական գործունեյությամբ առաջացած իրավաբանական կոդեքսները:

Իսավրյան կայսրների որով Բյուզանդիան ապրում է մեծ ռեֆորմների մի շրջան, հարուստ ներքին հասարակական-կուլտուրական պայքարով (պատկերամարտություն և այլն), ուր ցայտուն կերպով յերևան է գալիս նաև հուստինիանական հռոմեական իրավունքի անհամապատասխանությունն ու անկայունությունը և զարկ է տալիս իրավունքի բարեփոխման գործին: Իսավրյան հենց առաջին թագավորներ՝ Լեվոնն ու Կոստանդինը ձեռնամուխ են լինում նոր որենսդրության և կազմում մի նոր կոդեքս, վորը հայտնի յե ᾿Εκλογή կամ Ecloga («Ընտրություն») անունով ու հետագայում հետզհետե լրացվում է զանազան հավելումներով: Այդ վերափոխված բյուզանդական իրավունքի նոր սիստեմը կառուցված եր հունական տեղական սովորույթների ու ժողովրդական իրավահայեցողության վրա, մի բան, վոր վո՛չ միայն համապատասխանում եր Բյուզանդական կայսրության մեջ տիրող հույների կենցաղին ու հասարակական հարաբերություններին, այլև վորոշ չափով համակերպվում եր նաև հարակից ժողովուրդների իրավաբանական կենցաղին, վորոնք իրենց սովորութական իրավունքով այնքան էլ շատ չեյին տարբերվում հույներից: Նույնը կարելի յե ասել նաև հայերի վերաբերմամբ: Իսավրյան կայսրների ժամանակաշրջանի հունա-բյուզանդական իրավունքը, ներկա իրավագիտության մեջ Ecloga կոչվող իրավունքը, հայերին ավելի մոտ եր ու համապատասխանող, քան թե նախորդ, միանգամայն անհարիր հռոմեական իրավունքը՝ Հուստինիանոսի Corpus juris civilis-ը:

Ահա այդ Իսավրյան հունա-բյուզանդական իրավունքն մուտք գործում Հայաստան և վորոշ չափով, ուրեմն, հանդիսանում է նաև հայ իրավունքի աղբյուրը: Որենսդրքերի հայկական ձեռագրերում առայժմ հայտաբերված են հետևյալ հունա-բյուզանդական որենքների քաղվածք-ժողովածուները.

Ա. «Ընտրութիւն համառօտ աւրինացն քաղաքական Լևոնի և Կոստանդեայ իմաստուն և բարեպաշտ Թագաւորացն, զոր և մեծն Յուստինիանոս նորոգեաց զկարգն ուղղեալ 'ի բարեպաշտութիւն»: Սա Իսավրյան Լևոն և Կոստանդին կայսրների կազմած Եկլոգայից քաղվածք է, տեղ-տեղ փոփոխման յենթարկված:

Բ. «Աւրինադրութիւն Եռինեայ Թագուհւոյ, մօր Կոստանդեայ վասն զգուշանալոյ երդմանց ըստ պատուական Տեառն հրամանի»: Սա թարգմանություն է կայսրուհի Իրենեյի (797—802 Թ. Թ.) հրապարակած Novella-ի՝ De testium juramento, վոր վերաբերում է վկաների ու վկայությունների մասին սահմանված կարգերին:

Գ. «Յօրինացն Յուստին [իա] նոսի գլուխ ԲԺ. վասն պատուելոյ Թագաւորացն և իշխանացն զկանոնս եկեղեցւոյ և զորս 'ի նոսա պահմանադրութիւնն». Հոդվածները քաղված են Հուստինիանոսի 83-րդ և 123-րդ Novella-ներից, վորոնք յեկեղեցական բնույթ ունեն և վերաբերում են պետական-յեկեղեցական իրավունքին:

Դ. «Համառօտ ժողովումն աւրինաց վերստին». բաղկացած է հունա-հռոմեյական 85 հոդվածներից, վորոնց համապատասխան բնագիրը տակավին գտնված չէ[39]:

Ե. «Սահման զինուորութեան և ահարկութեան 'ի քաղաքական աւրինացն և կարգէ հաստատութեան», վորի գլուխների ցանկն է ներկայացնում «Վասն զինուորաց սահմանադրութիւն» խորագիրը, զետեղված առաջին վերնագրի սկզբին: Բաղկացած է 56 հոդվածներից, վորոնք թարգմանություն են Νόμος στρατιωτικός խորագրով զինվորական որենսդրությունից, վորը հունա-բյուզանդական որենսդրական ժողովածուներում դրվում է իբրև III հավելված Eklogа-ի[40]:

Զ. «Վասն ստրկանաց ազատութեան». 7 հոդվածներից

է բաղկացած. ըստ Ց. Կարստի կարծիքի՝ դա աղճատված թարգմանություն է Prochiron auctum օրինագրքից[41]:

Հարց է ծագում վերևում բերված օրինագրությունների ռեցեպցիայի ու թարգմանության ժամանակի մասին, քանի վոր այդ հավաքածուների հայերեն ձեռագրերը դրա մասին վոչ մի տեղեկություն չեն տալիս:

Պետք է յենթադրել, ինչպես նաև Ց. Կարստն է կարծում, վոր այդ հունա-բյուզանդական օրենքների ռեցեպցիան սկսվել է Բագրատունյաց թագավորության շրջանում: Այդ հավանական է, յեթե ի նկատի առնենք, վոր հենց այդ ժամանակաշրջանում քաղաքական ու առևտրական հարաբերությունները Բյուզանդիայի և Հայաստանի միջև մեծ աշխուժության եյին հասել և, մանավանդ, հենց այդ ժամանակաշրջանում Բյուզանդիոնը վերստին սկսել եր իր դավերն ու մեքենայությունները հայկական տերիտորիան կլանելու նպատակներով: Այդ տեսակետից բնորոշ է, վոր հայ միջնադարի պատմական մատենագրության, մանավանդ վիմական արձանագրությունների մեջ հանդիպում է հայ իրավական ինստիտուտների և յերևույթների հունա-բյուզանդական տերմինաբանություն: Գոյություն ունեյին մի շարք վարչական ու պետական պաշտոններ ու կոչումներ, վորոնք սովորաբար տիտղոսավորվում եյին համապատասխան հունա-հռոմեյական անուններով, ինչպես օրինակ՝ դուկ, կոմես, մագիստրոս, հիպատոս, ապոհիպատոս, սպատար, կատապան և այլն: Անշուշտ, այդ տերմինաբանությունը կարող եր մուտք գործել Հայաստան վո՛չ թե XII դարից սկսած, յերբ հունա-բյուզանդական քաղաքական էքսպանսիան հայկական տերիտորիայի վրա արդեն դադարել եր, և ինքը՝ Բյուզանդիոնը ռազմականորեն ու քաղաքականորեն ապրում եր իր քայքայման շըրջանը, այլ IX դարից, յերբ նա արաբական խալիֆաթի թուլանալու հետևանքով ավելի ակտիվ քաղաքականություն եր վարում Բագրատունյաց Հայաստանի նկատմամբ: Այս քաղաքական ու առևտրական պայմաններում առաջանում եյին հարմար հնարավորություններ հունա-բյուզանդական օրենքների ռեցեպցիայի համար:

Յեթե հիմնավոր տվյալներ չունենք հունա-բյուզանդական

օրենքների ռեցեպցիան IX—X դարերից համարելը, ապա մեզ հասել է մի հետաքրքիր վկայություն, այդպիսի ռեցեպցիայի ու թարգմանության մասին XII դարի վերաբերմամբ: Այս պարագան չառնելն հիմք է ծառայել պնդելու, որ հունա-բյուզանդական իրավունքի ռեցեպցիան Հայաստանում չէր կարող XII դարից առաջ տեղի ունենալ: Այդ վկայությունը բղխում է Կիլիկիայի հայ յեպիսկոպոս Ներսես Լամբրոնացուց: Սա իր հիշատակարանի մեջ, որ կցված է օտար օրենսդրություններից կազմված թարգմանական հայ օրենսգրքի ձեռագրին, ի միջի այլոց գրում է. «Զայս ծայրաքաղ աւրինադրութիւնքս տառապեալ եպիսկոպոս Տարսոնի թարգմանեցի 'ի ծերացեալ հելլենացի մատենէ, թուին ՈԽԵ [645 թ. հայկական, իսկ մեր ներկա թվականով՝ 1196 թ.] Նորաշէն ամսուն Լուլուայ»: Այնուհետև հիշատակելով ասորական մի օրենսգրքի թարգմանության մասին, շարունակում է. «Յետ որոյ ապա 'ի հելլենացոց գրոց արարի թարգմանութիւն Մովսիսական աւրինաց և Լեոնի և Կոստանդեայ աւրինացդ, 'ի նմանէ թարգմանեցի և զզինուորական աւրէնսդ և ընծայեցի որոց սիրեն վարիլ ըստ աւրինաց և հաճոյ գտանիլ Աստուծոյ և կառավարիչք քաղաքաց և գաւառաց»[42]:

Այդ հիշատակարանից բացահայտ է, որ Ներսես Լամբրոնացին 1196 թ. թարգմանել է, բացի Ասորական դատաստանագրքից ու Մովսիսական օրենքներից, նաև Լևոն և Կոստանդին թագավորների օրենքները, այսինքն Ecloga-ն և ապա «զինվորական օրենքը», որը կոչվում է Nόμος στρατιωτικός: Սակայն այդ վկայությունը, որով իրոք հաստատվում է յերկու հունա-բյուզանդական օրենսգրքերի թարգմանությունը XII դարում, բնավ չի կարող կռվան հանդիսանալ յեզրակացնելու, որ ընդհանրապես հունա-բյուզանդական օրենքների մյուս հավաքածուները և նույնիսկ Ecloga-ն, հիրավի, բացի զինվորական օրենքից, չէին կարող մուտք գործած լինել Հայաստան ու թարգմանված XII դարից առաջ: Այդ յենթադրությունը հիմնում ենք Ներսես Լամբրոնացու նկատմամբ վերևում մեր արտահայտած կարծիքի վրա, որ նա թարգմանություններ է կատարել Կիլիկյան հայ թագավորության մեջ, միանգամայն անգիտակ լինելով Մեծ Հայքում գոյություն ունեցող օրենս-

դրությունների ժողովածուների ու հայ դատաստանագրքերի մասին: Ինչպես օրինակ՝ նա գաղափար չուներ Մեծ Հայքում Մխիթար Գոշի Դատաստանագրքի հորինման մասին:

Իր հիշատակարանում Ներսես Լամբրոնացին ընդգծում է, որ Կիլիկյան հայ թագավորության սահմաններում բացակայում էին աշխարհիկ հայացրած օրենքներ ու դատավարության կանոններ. «ոչ ունէին գիրս, որով ընտրեսցին զիրաւունս, զոր և այլոց ազգաց տեսանէին»: Ուստի նա ձեռնամուխ է լինում թարգմանելու վերոհիշյալ օրենսգրքերը, որպեսզի լցվի այն մեծ թերությունը, որ այնքան զգալի էր Կիլիկյան հայ պետության իրավաբանական կյանքում: Մի շարժառիթ, որ միանգամայն բնական էր դարձնում այնտեղ օտար օրենքների, մասնավորապես հունա-բյուզանդական օրենսդրությունների, ռեցեպցիան:

Սակայն աչքաթող չանենք, որ մի դար առաջ, սկսած IX դարից, Մեծ Հայքում գոյություն ուներ ավելի մեծ պետական կազմ, այն է՝ Բագրատունյաց Հայաստանը: Այստեղ պետական-վարչական ֆունկցիաները, ֆեոդալական-հասարակական փարթամ շինարարությունը, զարգացող առևտրական հարաբերությունները, ծաղկող բազմաճյուղ արհեստները, աճող ու հարըստացող քաղաքները, վերջապես ֆեոդալական շահագործման միջոցները՝ նույնպես մեծ չափերով անհրաժեշտություն էին զգալու համապատասխան իրավաբանական նորմերի, հատկապես աշխարհիկ օրենքների, որոնք հայ օրենսդիր գործոնների բացակայության պատճառով՝ չէին հորինվել տեղում: Բնական է, որ այդ բավականին բարդացած հասարակական-պետական հարաբերությունները կթելադրեին դեռ ոգտվելու համապատասխան օտար օրենքներից ռեցեպցիայի միջոցով: Որ իրականում այդ ժամանակ յեղել է այդպիսի օտար ռեցեպցիա, այդ կարելի յե ապացուցել դարտուղի տվյալներով, հիմք առնելով Մխիթար Գոշի Դատաստանագրքի II մասի «Աշխարհական օրենքների» առաջին գլուխը՝ «Յաղագս դատաստանաց թագաւորաց և որք ընդ ձեռամբ նոցա»: Այստեղ Մխիթար Գոշն արծարծում է հայ պետական-վարչական իրավունքը, որի իրավաբանական նորմերը նա չէր կարող վերցնել իր ժամանա-

կակից իրականությունից, քանի որ այլևս գոյություն չուներ հայ պետականությունը: Թագավորի ու իշխանների իրավունքները, պետական-վարչական իրավասությունները և այլ նման իրավական ինստիտուտները Դատաստանագրքի հեղինակը ձևավորում է իրավաբանորեն, անշուշտ, ի նկատի ունենալով նախկին հայ պետականությունն, այսինքն Բագրատունյաց Հայաստանը, որ ժամանակագրորեն իրեն ավելի մոտիկ էր և որն, անտարակույս, ունեցել է այդ նպատակին ծառայող որոշ իրավաբանական նորմեր, որոնք պահպանված կլինեյին տեղական ավանդություններում: Հիրավի, Մխիթար Գոշի Դատաստանագրքի այդ ընդարձակ հոդվածը (II, Ա. էջ 299—319) որոշ չափով կրում է օտար ռեցեպցիայի աղբյուրների հետքեր, մասամբ Մովսիսական օրենքների և մանավանդ հունա-բյուզանդական օրենսդրությունների, որոնք վերաբերում են թագավորի իշխանական իրավասությանը:

Այսպես թե այնպես չի կարելի ժխտել, որ հռոմեյական իրավունքը, հատկապես հունա-բյուզանդական իրավունքը, մուտք է գործել Հայաստան և աղբյուր է հանդիսացել հայ իրավունքի զարգացման: Թեև հավանական յենթադրությամբ փորձում ենք հաստատել, որ այդ ռեցեպցիան սկիզբ է առնում IX դարից, այնուամենայնիվ այդ կնճռոտ պրոբլեմը վերջնականորեն լուծված չենք համարում: Այդ հարցի դրական լուծումը կարող է տալ համապատասխան ձեռագրերի ուսումնասիրությունը, որ ցարդ սպասում է իր հետազոտողներին: Մի կողմից՝ զանազան վերսիաներով ու խմբագրություններով մեզ հասած հունա-բյուզանդական օրենքների հայկական ձեռագրերի պատմա-լեզվագիտական համեմատությունը, և մյուս կողմից՝ հայ թարգմանությունների և հույն բնագրերի փոխադարձ համեմատությունները մեզ շատ բան կպարզաբանեյին:

## V. ԱԶԳԱՅԻՆ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՔԵՐ

Պատմական տվյալներն և մանավանդ Մխիթար Գոշի վկայությունը Մեծ Հայքի նկատմամբ ու Ներսես Լամբրոնացու հիշատակարանը Կիլիկյան հայ թագավորության վերաբերմամբ հաստատում են, որ մինչև XII դարը գոյություն չի ունեցել

ազգային օրենսգիրք, հայկական կոդեքս: Միակը՝ կանոնական իրավունքն եր, վորը կարելի յե ասել, կոդիֆիկացիայի յենթարկվել VIII դարում ու գործում եր իբրև գրի առնված, վորոշ համադրությամբ կազմված օրենսգիրք, բայց սա ել իր իրավաբանական բովանդակությամբ սերտորեն կապված եր հիերոկրատիայի իրավասության, յեկեղեցական ֆեոդալականության հետ:

Միայն XII դարումն է սկիզբ առնում և իրականանում ազգային օրենսգիրք հորինելու ձգտումը: Հայաստանի ժամանակակից քաղաքական ու սոցիալական պայմանները սուր կերպով թելադրում եյին կատարել այդ վճռական քայլը, հորինելով հայկական օրենսգիրք, վորի անհրաժեշտությունն զգացվում եր վաղուց և անորոշ արտահայտումներով դեգերում եր տիրապետող հասարակական դասակարգերի գիտակցության մեջ: Այդ դատաստանագրքերը մի–յերկու անուն են, բայց բավականաչափ ձեռագրերով, և կազմվել են այն աղբյուրների օգտագործումով, վորոնք վերը տեսության առանք: Հետևապես այդ դատաստանագրքերի հետազոտությունը մեզ հնարավորություն է տալիս պարզելու ընդհանրապես հայ իրավունքի աղբյուրները, վորոնց մասին մեզ թերի պատմական տեղեկություններ են հասել: Մյուս կողմից ել՝ այդ դատաստանագրքերը հենց իրենք դառնում են հայ իրավագիտության համար աղբյուրներ, վորոնք հնարավորություն են տալիս թե՛ վերականգնելու հայ իրավունքի պատմությունը և թե՛ պատկերելու հայ իրավունքի բովանդակ սիստեմը: Արդ՝ տեսության առնենք հայ դատաստանագրքերը:

1. **ԴԱՎԻԹ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱԼԱՎԿԱ ՎՈՐԴՈՒ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ**.—Այդ Դատաստանագիրքը բաղկացած է 98—100 հոդվածներից. այն կազմել է Դավիթ վարդապետը, ծագումով Գանձակ քաղաքից, իր ժամանակի ըստ յերևույթին մեծ հեղինակություն վայելող անձն, ինչպես այդ ակներև է Կիրակոս Գանձակեցու Պատմությունից: Դատաստանագրքի հորինման վորոշակի տարեթիվը մենք չունենք, բայց գիտենք, վոր Դավիթ վարդապետը վախճանվել է 1140 թվին, իսկ այդ Դատաստանագիրքը կազմած պետք է լինի նույն դարի 30–ական թվական-

ներին[43]: Այդ Դատաստանագիրքը դեռևս տպագրված չէ, ոչ էլ ուսումնասիրված: Մեր գրականության մեջ կան միայն մի քանի կցկտուր տեղեկություններ և մի փոքր մանրամասն, ոչ իրավաբանական, այլ մատենագրական ուսումնասիրության փորձ՝ Կ. Կոստանյանի: Հնարավորություն չունենալով անմիջապես այդ Դատաստանագրքի մեզ հասած սակավաթիվ ձեռագրերից օգտվելու, մենք նկատի ենք ունեցել լույս տեսած տպագրական տեղեկությունները, որոնք, ինչպես, բավական չեն նրա մասին լրիվ գաղափար կազմելու համար:

Ալավկա որդի Դավթի այդ հավաքածուն, իսկապես, չի կարելի դատաստանագիրք, և առավել օրենսգիրք անվանել, ինչպես այդ յեզրակացնելու յե նրա բովանդակությունից ու վերնագրից, որ արձանագրված է այսպես. «Դաւիթ վարդապետ Ալաւկայ որդի, որ գրեաց զկանոնական օրինադրութիւնս գեղեցկայարմարս և պիտանացուս 'ի խնդրոյ քահանայի միոյ, որում անուն էր Արքայութիւն 'ի քաղաքն Գանձակայ»: Ըստ յերևույթին, այն կազմված է հայ կանոնական նորմերի հիման վրա և մեծ մասամբ ներկայացնում է կանոնական նորմերի ու կարգերի մեկնություններ ու հրահանգումներ: Սակայն ի նկատի առնելով մի կողմից՝ որ այդ առաջին փորձն է յեղել «կանոնական օրենքների» մի հավաքածու կազմելու ինքնուրույն բովանդակությամբ, ուր տեղ են գտել նաև ամուսնական, պատժական իրավունքի վերաբերյալ նորմեր և մյուս կողմից՝ որ այն վաղուց կիրառումն է ունեցել Հայաստանում, քանի որ Մխիթար Գոշն յուր Դատաստանագրքի մեջ մուծել է մի քանի հոդվածներ[44], բառացի քաղելով այդտեղից, մենք Ալավկա որդի Դավթի հորինած այդ ժողովածուն դասում ենք ազգային՝ դատաստանագրքերի շարքը, իբրև կոդիֆիկացիոն աշխատանքի մի փորձ, թեև կատարված անհատական ձեռներեցությամբ և սահմանափակ շրջանակներով:

2. ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ.—Հայ իրավունքի պատմության էջերում բացառիկ տեղ է գրավում «Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց», որ բազմաթիվ ձեռագրերով հասել է մեզ: Ձեռագրերի քանակն, ինչպես և պատմական տվյալները վկայում են, որ նա մեծ չափերով տարածված էր

Հայաստանի իրավական-դատական ասպարեզում, հանդիսանալով միակ օրենսգիրքը, որ հայկական իրավունքի կոդեքսի հռչակ էր վայելում: Ինչպես ակնհայտ է Դատաստանագրքի վերնագրից, նաև նրա հորինողի խոսքերից (ՄԳ., Նախ. ԺԱ, էջ 69—75), հայկական անդրանիկ օրենսդիրքը կազմել է Մխիթար Գոշը: Բացի Մխիթար Գոշի իր մասին պատմածից Դատաստանագրքի Նախադրության ԺԱ գլխում, նրա անձնավորության մասին տեղեկություններ է հաղորդում Կիրակոս Գանձակեցի մատենագիրը: Մխիթարը ծնվել է Գանձակ քաղաքում XII դարի կեսերին, երբ ամբողջ Առաջավոր Ասիան, նաև Հայաստանը, գտնվում էր սելջուկյան հորդաների տիրապետության ներքո: Փոքր հասակից ուսում առնելով՝ նա այնքան է հմտանում «յուսումն սուրբ գրոց», որ հետագայում կուսակրոն հոգևորական է դառնում: Զբավականանալով իր ստացած ուսումով՝ նա շարունակում է կատարելագործվել աստվածաբանական և այն ժամանակվա փիլիսոփայական գիտությունների մեջ, դիմելով վարդապետներով հռչակավոր վանքերը, մինչև իսկ գնում է այդ նպատակով Կիլիկյան հայ թագավորությունը: Շնորհիվ ձեռք բերած գիտությանն ու մտավոր զարգացմանը՝ նա ստանում է վարդապետ կոչումն և ահագին հեղինակություն ու «մեծ վարդապետի» հռչակ է վայելում ժամանակակիցների շրջանում, մանավանդ աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալական հասարակության: Նա ո՛չ միայն գիտական-կրթական ու մատենագրական գործունեություն է արծարծում իր նստած վանքերում, այլև որոշ քաղաքական դեր է խաղում հայ իրականության մեջ: Մխիթար Գոշի այդ գիտական հռչակն էր, որ թելադրեց Աղվանից Ստեփանոս Բ. կաթողիկոսին համառությամբ դրդելու նրան, որ ձեռնարկի այնքան անհրաժեշտ ազգային օրենսգրքի հորինմանը: Կաթողիկոսի յերկար թախանձանքներից հետո Մխիթար Գոշը 1184 թ. ձեռնամուխ է լինում այդ գործին: Թե յե՛րբ ավարտեց Մխիթար Գոշն իր Դատաստանագիրքը, հայտնի չէ, բայց հայտնի յէ, որ հեղինակը վախճանվել է 1213 թ. խորին ծերության հասակում, ինչպես կարելի յէ յեզրակացնել Կիրակոս Գանձակեցու խոսքերից:

Մխիթար Գոշի Դատաստանագիրքը բաղկացած է յերեք մա-

սից․ Նախադրություն—11 գլուխ, Եկեղեցական կանոնք—124 գլուխ և Աշխարհական օրենք —130 գլուխ: Նախադրության Բ․ գլխում Մխիթար Գոշը մի առ մի բացատրում է այն բոլոր շարժառիթները, որոնք դրդել են նրան ձեռնարկելու մի այնպիսի դժվարին ու պատասխանատու գործի, ինչպիսին է հայ օրենսգիրքը: Այդ շարժառիթները նա թվում է կարգով 12 կետերում, որոնց ընդհանուր բովանդակության ամփոփումն ենք առաջ բերում այստեղ: Այդ կետերի մեջ կարմիր թելի նման անցնում է մի հետապնդող խորհրդածություն․ հայերը մինչև այդ չեն ունեցել օրենքների գրավոր ժողովածու, հայերեն Դատաստանագիրք, որի հետևանքով առաջանում են բազմաթիվ անհարմարություններ ու չարիքներ․ ուստի «կամեցաք 'ի գրոց հաւաքմամբ գրել զդատաստան, զի լիցի անշարժ ըստ նմանութեան օրինաց և մարգարէից և աւետարանին» (էջ 10)․ 1) հայերը, զուրկ լինելով սեփական օրենսդրությունից, ստիպված են դիմելու օտար, գլխավորապես մահմեդական դատական հաստատություններին․ Մխիթար Գոշի կարծիքով՝ ինչպես որ հայերն իրենց կրոնով տարբերվում են մահմեդականներից, նույնպես էլ պետք է զատվեն իրենց օրենքներով ու դատարաններով․ «որպէս բաժանեալ եմք 'ի նոցանէ խոստովանութեամբ և հաւատովք և գործովք, նոյնպէս պարտ է և դատաստանաւ բաժանեալ լինել 'ի նոցանէ» (Նախ․, Թ․, 63)․ 2) գրավոր օրենքների բացակայության պատճառով մի կողմից՝ մեծ զրկանք է կրում ժողովուրդը, մատնված լինելով դատավորների կամայականությանն ու կեղեքմանը, մյուս կողմից՝ հենց իրենք դատավորները, զուրկ լինելով ուղեցույց- դատաստանագրքից, անկարող են շիտակ ու արդար դատավճիռներ կայացնել․ 3) անհրաժեշտ է հայերի ազգային պատիվը պաշտպանել օտարների առաջ, որոնք միշտ առիթ են ունենում մեզ նախատելու, թե չունենք սեփական գրավոր օրենքներ, և ուրեմն մեզանում բացակայում է արդար ու շիտակ դատաստան:

Մխիթար Գոշի 12 կետերից բաղկացած պատճառաբանությունը (Նախ․ Բ․, 9—15), որ դրդել է նրան ձեռնամուխ լինելու հայ Դատաստանագրքի հորինմանը, թեև շարադրված է սխոլաստիկ ու մասամբ ճառաբանական ոճով, բայց և այնպես

չեշտը դնում է այն հանգամանքի վրա, որ մինչ այդ գոյություն չի ունեցել սեփական ազգային կոդեքս, որի անհրաժեշտությունն այնքան ուժեղ կերպով էր զգացվում: Հետաքրքրական է, որ այդպիսի տրտունջ ու դանգատներ չեն հնչում հայ մատենագրության էջերում, և ահա XII դարումն է, որ այդ լսում ենք Մխիթար Գոշի բերանից: Նույն այդ XII դարում Մեծ Հայքից հեռու, Կիլիկիայի հայ թագավորության մեջ ևս դժգոհության ձայն է բարձրանում հայկական աշխարհիկ օրենսգրքեր չլինելու մասին: Այդ բանն արձանագրում է Ներսես Լամբրոնացին. «Ցամիս քահանայապետութեան հայոց Գրիգորի ...թուին ՈԽԲ— 642 [1193 թ.]... խնդիր եղև առ նոյն սրբազանն 'ի քաղաքաց և 'ի գաւառաց բնակչաց քաղաքական աւրինացըն, զի որք իսմայէլացւոցն էին իշխանք ի քաղաքս և գաւառորս, զդատ Հայաստանեայցս ոչ դատէին, այլ զխնդրողսն իրաւանց առ իւրեանց աւրէնս առաքէին... և եկեալք ոմանք յեկեղեցին հարցանէին աւրէնս 'ի քահանայից և 'ի քահանայապետաց. զի ոչ ունէին գիրս, որով ընտրեսցեն զիրաւունս, զոր և այլոց ազգաց տեսանէին քրիստոնէից և մսլմանաց»[45]:

Անշուշտ, հայ Դատաստանագրքի հրատապ անհրաժեշտությունը XII դարում, որին ձեռնարկեց Մխիթար Գոշը, բխում էր ավելի խոր պատճառներից, քան այդ շարահյուսում է Մխիթար Գոշը: Այդ անհրաժեշտությունը հասունացել էր այն սոցիալ-քաղաքական պայմաններում, որոնց մեջ ապրում էր Մեծ Հայքը:

Արաբական տիրապետության ժամանակաշրջանում, ինչպես հայտնի է, հայ հիերոկրատիան մենաշնորհ դեր էր խաղում Հայաստանի քաղաքական կյանքում, ինչպես և իր ձեռքին էր պահում իրավական ու դատական ինստիտուտները: Բավական է հիշել, որ այդ շրջանում տեղի ունեցավ հայ կանոնական իրավունքի կոդիֆիկացիան: Բագրատունյաց թագավորության անկումով հայ ֆեոդալ իշխաններն սկսում են կազմալուծվել, տնտեսապես հյուծվել ու քաղաքականապես թուլանալ, որպիսի դրությունն իր գագաթնակետին է հասնում սելջուկների արշավանքի ու տիրակալության որով (1049 թ.): Այդ ժամանակվա պատմագիրներն ամենամռայլ գույներով են ներկայացնում Հա-

յաստանի վիճակը: Սելջուկյան հորդաների ասպատակումները, դերեվարությունը, սուրն և հուրը քամել էին ժողովրդի ֆիզիկական գոյությունը, ավերել տնտեսությունը. ցիր ու ցան էին յեղած նաև հայ ֆեոդալները: Սրանցից կենդանի մնացած ու նոր բռնակալներից իրենց գոյությունը գնած իշխաններն ապավինել էին սեփական ամրոց-բերդերում, իրարից անջատ ու կղզիացած: Սակայն XII դարի յերկրորդ կեսից սկսած՝ Մեծ Հայքը, Վրաստանի օժանդակությամբ և Զաքարե ու Իվանե հայ ֆեոդալների ձեռներեցությամբ, թոթափում է սելջուկների լուծը: Կազմակերպվում է Զաքարյանների ֆեոդալական լայնածավալ իշխանությունը, վոր ընդգրկում եր պատմական Հայաստանի մեծագույն մասը: Վերակենդանանում է տնտեսական կյանքը, սկսվում է լայնածավալ շինարարություն: Համախմբվում է և բազմապատկվում հայ ֆեոդալականությունը Զաքարյանների սուվերեն իշխանության ներքո, կազմելով հզոր ու ամփոփ ազգային պետական միավորումն: Տնտեսապես ու քաղաքականապես վերակենդանացած հայ ֆեոդալական դասակարգն իր՝ սոցիալական տիրապետությունն այժմ հիմնավորում եր ազգային վողով, ազգային գաղափարախոսությամբ, վոր բղխում եր նախորդ սելջուկյան շրջանում նվաճող-շահագործողների ու նվաճված-շահագործվողների միջև առաջացած ազգային ներհակությունից: Այժմ, յերբ հայ ֆեոդալականությունը վերստին տիրացել եր իր նախկին իշխանությանն և իր ձեռքն եր առել իսկական արտադրողներին շահագործելու միջոցները, անհրաժեշտորեն թելադրվում եր այդ ամենը ձևավորել իրավաբանորեն, ամրապնդել իրավաբանական նորմերով, վորոնք սրբագործված լինեյին ազգային բնույթով ու հակադրվեյին նախկին օտար նվաճողների շահերը պաշտպանող օրենքներին: Ահա ֆեոդալական դասակարգի այդ տրամադրություններն են, վոր անդրադարձել են Մխիթար Գոշի, ինչպես և իր ժամանակի հասարակական-քաղաքական գործիչների մտահայեցողության մեջ, ինչպես օրինակ՝ Աղվանից կաթողիկոս Ստեփանոս Բ-ի, վորի հորդորանքներով էլ իրականացավ հայ Դատաստանագրքի հորինումը: Հենց ինքը՝ Մխիթար Գոշն էլ խորթ չեր տիրապետող ֆեոդալական դասակարգին. նա միշտ շփվում եր այդ դասակարգի հետ, հեղինա-

կություն վայելում այնտեղ, և ինքն էլ նմանապես պատկանում էր հոգևոր ֆեոդալականությանը, վարելով վանահոր և այլ պաշտոններ։ Հիրավի, Մխիթար Գոշի Դատաստանագիրքը միանգամայն ծառայում էր հայ ֆեոդալականության ազգային տենդենցներին՝ իր իրավաբանական նորմերի բովանդակությամբ։ Դատաստանագրքի բոլոր հոդվածներում կարմիր թելի նման անցնում է ազգային խտրության գաղափարը, ուր հայը հակադրվում է «այլազգուն», ուր իրավական գերակշռությունը պատկանում է հայությանը, հանձին ֆեոդալական դասի և դրա համապատասխան չափով սեղմվում, սահմանափակվում են «այլազգիների» իրավաբանական պաշտպանության միջոցները։

Դատաստանագիրքը հորինելիս՝ Մխիթար Գոշն, անտարակույս, աչքի առաջ պետք է ունենար այն բոլոր աղբյուրները, վորոնց մասին խոսք յեղավ նախորդ գլուխներում և վորոնք տակավին գոյություն ունեյին նրա ժամանակ։ Բայց թե ի՛նչ չափով է նա օգտվել նրանցից, այդ կտեսնենք ստորև։ Մխիթար Գոշը Դատաստանագրքի Նախադրության Ժ գլխում մի առ մի թվում է իր օգտագործած աղբյուրները, վորոնք հետևյալներն են.—

**Ա. Բնավորական օրենք.**— Այսպես է անվանում Դատաստանագրքի հեղինակն այն օրենքները, «զոր ունէին նահապետքն Աբրահամ և այլքն առանց գրոյ, զոր ունէին զնոյն և հեթանոսք...» (Նախ., գլ. Ժ., էջ 65)։ Բնավորական օրենք ասելով, յերբեմն էլ այդ վորոշելով սոսկ «օրէնք» տերմինով, Մխիթար Գոշը նկատի ունի իրավունքի զարգացման ամենանախնական աստիճանը, «հեթանոսականը», յերբ իրավաբանական նորմերն առանց գրի եյին. իսկ օրենքներն առաջին անգամ գրի յեն առնվել Մովսես մարգարեյի ձեռքով, յերբ նա այդ ստացավ աստծուց 10 պատգամների ձևով։ Այստեղ բնավորական օրենքի մեջ պարզապես պետք է տեսնել այն, ինչ վոր մենք անվանում ենք սովորութական իրավունք։ Սակայն Մխիթար Գոշն այլ կերպ է վորակում այդ իրավունքը, սերտորեն հետևելով իր կրոնա-աստվածաբանական գաղափարախոսությանը. «Աստուած ի սկզբանէ ի բնութիւն մարդոյն սահմանեաց ընտրել զիրաւացին» (Նախ. Ա., էջ 6), այսինքն առաջին օրենքը, իրավունքն աստվածանից տրվել

է մարդու բնությանը, 'ուստի. և այդ նախնական օրենքը բնավորական է: Մխիթար Գոշի տեսակետով՝ բնավորական օրենքը, ինչպես և Մովսիսական օրենքը կամ ավետարանը, վորոնք իբր թե աստծուց են տրված, մշտնջենական, հավիտենական, մեր իմացականության միջոցով իրերի բնությունից ծագող, մարդկային կամքից անկախ իրավունք է: Հայ Դատաստանագրքի մեջ արծարծված այդ իրավահայեցողությունը վորոշ չափով համապատասխանում է յեվրոպական ֆեոդալական աշխարհում ուշ միջնադարում ծագող jus naturale— բնական իրավունքի տեսաբանությանը, վոր նույնպես հիմնված էր կրոնական սխոլաստիկ վարդապետության վրա և ճանաչվում էր իբրև lex aeterna— հավիտենական օրենք:

Բ. Քրիստոնեյական ազգերի օրենքները, «զոր լուաք և տեսաք 'ի նոցա բարւոք դատաստանս» (Նախ., Ժ, էջ 65): Մխիթար Գոշը չի հիշատակում, թե վո՛ր քրիստոնեյական ազգերի օրենսդրություններից է օգտվել: Դժվար չէ կռահել, վոր առաջին հերթին դրանք յեղել են Հայաստան հասած օրենսդրությունները, այն է՝ Ասորա- Հռոմեյական Դատաստանագիրքն և ապա հունա-բյուզանդական օրենքները, վորոնք տեսության առանք նախորդ գլուխներում: Բայց քանի վոր Մխիթար Գոշն ասում է «զոր լուաք և տեսաք», պետք է յենթադրել, վոր բացի այդ, նա նկատի է ունեցել նաև այնպիսի ազգեր, վորոնց օրենքները մեզանում մնացած չեն յեղել, բայց վորոնց ինքը ծանոթացել է իբրև ականատես կամ լսելով: Դրանք կարող եյին լինել վրացիները, վորոնց մասին, հիրավի, նա մի տեղ ակնարկում է, ինչպես և այն ժողովուրդները, վորոնց նա տեսել է իր ճանապարհորդությունների ընթացքում, մանավանդ դեպի Կիլիկիա:

Գ. Մահմեդական իրավունք.— Մահմեդական օրենքներից հեղինակը նկատի չէ առել «ո՛չ զոր նոքա ուսան ի Մահմետայ գաղտաւոր բանս կամ դատաստանս, այլ զոր առին 'ի Մովսիսի օրինացն՝ մեք զայնս ընտրեմք և առնումք». (Անդ, էջ 65): Ուրեմն մահմեդական օրենքները, ինչպես ակնարկել ենք վերը, ծառայել են միայն իբրև զարտուղի աղբյուր Մովսիսական օրենքներից օգտվելու համար: Մխիթար Գոշին դժվար չէր օգ-

*ավել մահմեդական իրավունքից, քանի որ Հայաստանն այն ժամանակ շարունակում էր գտնվել տակավին մահմեդական իրավական ինստիտուտների ազդեցության ներքո, որ սկսվել էր արաբական տիրապետության շրջանից և այս պահպանվել սելջուկյան տիրակալության օրերին, չնայած, որ Դատաստանագրքի հորինման մոմենտին Հայաստանն արդեն թոթափել էր մահմեդական բռնակալների լուծը և Զաքարյանների ֆեոդալական իշխանության տակ էր գտնվում: Բավական է միայն նշել, որ այդ ժամանակ վարչա-պետական ու հարկային տերմինաբանության մեջ մեծ չափերով պահպանվել և իշխում էին տակավին արաբա- թյուրքական անուններ, ինչպես այդ ակներև է վիմագիր ու մատենագրական հուշարձաններից:*

Դ. Հին և նոր կտակարան.—*Մխիթար Գոշը գրավոր օրենք է համարում այսպես կոչված «Աստվածաշունչը», «զի ամենայն Գիրք զի՞նչ այլ ինչ են, եթէ ոչ խրատք և օրէնք հոգևոր և մարմնաւոր դատաստանի»* (*Նախ. Ժ, էջ* 66): *Այստեղ նրա համար առաջնակարգ նշանակություն ունի «Հին կտակարանը», մանավանդ «Գիրք ելից» և «Երկրորդ օրինաց», որոնք կազմում են «Աստվածաշնչի» Մովսես մարգարեյին վերագրված* II *և* V *գրքերը և որոնք, Մխիթար Գոշի կարծիքով, հանդիսանում են «ստոյգ աստուծոյ օրէնք և դատաստանք»* (*Անդ, էջ* 65): *Հետևապես, այս դեպքում վերոհիշյալ նյութերը ծառայել են Մխիթար Գոշին իբրև անմիջական աղբյուր՝ Մովսիսական օրենքից օգտվելու համար:*

Ե. Կանոնական իրավունք.— *Մխիթար Գոշն ամենամեծ չափերով քաղել է Դատաստանագրքի համար հոդվածներ «ի կանոնական գրոց», որ պետք է հասկանալ Հայ «Կանոնագիրքը»: Սակայն հեղինակը, ինչպես ակներև է Դատաստանագրքի բովանդակությունից, օգտագործել է ո՛չ միայն «Կանոնագիրքը», իբրև եկեղեցական կոդեքս, այլ և ուրիշ կանոնադրություններ, որոնք չեն մտել Հայ «Կանոնագրքի» մեջ, բայց Հայ եկեղեցական կյանքում ունեցել են իրավաբանական նշանակություն: Դրանով թերևս պետք է բացատրել, որ Մխիթար Գոշը շատ հաճախ իբրև տերմին գործածում է իր աղբյուրի նկատմամբ «կանոնք» բառը, որն ավելի լայն իմաստ է պարունակում, քան «Կանոնագիրք» անունը, կամ, ինչպես ինքն է անվանում՝*

«Կանոնաց գիրքը»: Հիրավի, Մխիթար Գոշի Դատաստանագրքի ամբողջ Ա. մասը և Բ. մասից էլ բավականաչափ հոդվածներ վերցված են «Կանոնագրքից» և զետեղված են Դատաստանագրքի մեջ գրեթե նույն հաջորդականությամբ, ինչ կարգով նրանք գրված են Կանոնագրքի մեջ[46]:

Ահա այն բոլոր աղբյուրները, վորոնք Մխիթար Գոշը մի առ մի ակնարկում է Դատաստանագրքի Նախադրության մեջ: Այդ ակնարկումները խիստ առաձգական են և վորոշակի, կոնկրետորեն չեն ընդգծում ոգտագործված աղբյուրները: Որինակ՝ Դատաստանագրքի շարադրության մեջ նկատվում են Ասորա-Հռոմեյական Դատաստանագրքի և հունա-բյուզանդական որենքների հետքերը, բայց հեղինակն այդ աղբյուրների մասին վոչ մի հիշատակություն չի անում: Նմանապես, թեև հատուկ աղբյուր չեն հիշատակվում հայ սովորութական իրավունքի նորմերը, վորոնք նա ոգտագործել է և վորոնց հետքերը նկատելի յեն մանավանդ ընտանեկան, ամուսնական, ժառանգական իրավունքների բնագավառում, թեև կողմնակի կերպով որենքների շարադրության մեջ տեղ-տեղ ընդգծում է, վոր «ըստ սովորութեան ասացաք» (I, ՃԹ, 228. II, Ա, եջ 313. ՃԻ, 432. ՃԻԲ, 433):

Ահա այդ բազմապիսի, հայտնի և մասամբ անորոշ աղբյուրները խճողել են հայ Դատաստանագրքի բովանդակությունն և յուրահատուկ կնիք դրոշմել նրա շարադրության վրա:

Առաջին հայացքից կարող է թվալ, վոր Մխիթար Գոշի Դատաստանագիրքը չի հանդիսանում իսկական հայ որենքների կոդեքս, այնտեղ չեն արտացոլել իրավունքի ազգային տարրերը, հայերի իրավահայեցողությունը: Սակայն վորքան էլ Մխիթար Գոշն ահագին տեղ է տվել Դատաստանագրքում կանոնական իրավունքին և Մովսիսական որենքներին, այնուամենայնիվ նրանց մեջ էլ կարելի յե վորոնել ու յերևան հանել հայ իրավահայեցողության տարրերը: Հայ կանոնական իրավունքի նորմերը շատ անգամ բղխում են սովորութական իրավունքից և կարգավորում են զուտ աշխարհիկ հասարակական հարաբերություններ, ուրեմն այդ կողմից հիշյալ նորմերը կրում են աղ-

դայքն բնույթ։ Ինչ վերաբերում է յուրացրած օտար կանոնական նորմերին և մասնավորապես Մովսիսական օրենքներին, Մխիթար Գոշն այստեղ հանդես է գալիս ո՛չ միայն իբրև կոդիֆիկատոր, այլև իբրև ինտերպրետատոր, մեկնաբանող։ Մեջ բերելով օտար օրենքը, նա անմիջապես տալիս է յուր մեկնաբանությունն ու բացատրությունը, ընդ որում կամ ընդունում է տվյալ օրենքը, կա՛մ վերափոխում և կա՛մ ժխտում իբրև անհանդուրժելի, և իր կողմից առաջարկում է համապատասխան այլ որոշում։ Նման դեպքերում Մխիթար Գոշի Դատաստանագրքում սովորական ու հաճախակի յեն այսպիսի դարձվածքներ. «իսկ մեզ փոխեալ լիցի այսպիսի կրմամբ», «այլ ըստ մեզ Դատաստանաց··· լիցի, որպէս ցուցեալն է», «և ի մեզ զնոյն ամբողջ պահելի է» և այլն։ Ահա այստեղ է, որ Մխիթար Գոշի մեկնաբանություններով յերևան է գալիս մի իրավահայեցողություն, որի մեջ, անշուշտ, արտացոլում է ո՛չ թե հեղինակի անձնական հերյուրած իրավունքն, այլ տեղում ու իր ժամանակի հասարակության մեջ գործող սովորութական իրավունքի ոգին, տիրող իրավաբանական նորմերի ազդեցությունը։

Ինչպես արդեն ակնարկել ենք, Մխիթար Գոշը Դատաստանագիրքը բաժանում է յերեք մասի՝ «Նախադրութիւն», «Եկեղեցական կանոնք» և «Աշխարհական օրէնք»։ Առաջին մասը ներածական է, ուր հեղինակն արծարծում է յուր իրավահայեցողությունը, որի հետ կապում է նաև դատակազմությունն ու դատավարությունը. ապա կանգ է առնում Դատաստանագրքի հորինման շարժառիթների ու հանգամանքների, ինչպես և աղբյուրների վրա։ Բուն օրենսգիրքը կազմում են վերջին յերկու մասերը։ Իր համադրած հայ իրավունքը բաժանելով յեկեղեցականի ու աշխարհականի, Մխիթար Գոշը ղեկավարվում է ո՛չ թե իրավական հարաբերությունների սկզբունքով, իրավաբանական նորմերի ներքին բովանդակության տեսակետով, այլ այն յելակետով, թե ի՞նչ դատարանի յեն յենթարկվում իրավաբանական դիպվածները (casus)— յեկեղեցակա՞ն, թե աշխարհիկ։ Սակայն այստեղ էլ նա չի կարողացել հավատարիմ մնալ իր առաջադրած սկզբունքին և շարահյուսության ընթացքում որոշակի սահմանագիծ քաշել յեկեղեցական ու աշ-

խարհիկ օրենքների միջև: Հաճախ այնպիսի օրենքներ, վորոնք վերաբերում են աշխարհիկ, այսինքն քաղաքացիական իրավունքին, տեղ են գտել «Եկեղեցական կանոնք»-ի մեջ և ընդհակառակն: Իրավունքի այդորինակ մեքենական բաժանումն, անշուշտ, պետք է հանգեր անհաջողության, քանի վոր դատական հիմնարկությունների բաժանումն յեկեղեցականի ու աշխարհականի՝ ինքնին խիստ անորոշ ու խախուտ բնույթ ուներ հին Հայաստանում: Ինչպես բացահայտ է մեր պատմական տվյալներից, յեկեղեցական ու աշխարհիկ դատարանների իրավասության շրջանակներն իրականում յերբեք չեշտակի չեյին տարբերվում իրարից, այլ կախված են յեղել տեղական պայմաններից ու քաղաքական մոմենտներից, նայած թե տիրապետող դասակարգի վո՛ր հատվածն եր փաստորեն հեղինակություն վայելում, աշխարհի՞կը, թե՞ հոգևորը: Մենք արդեն քանիցս ակնարկել ենք, վոր իրոք այդ հեղինակությունը և գործոն ազդեցությունը դատա- իրավաբանական ու օրենսդրական ասպարեզում դարձել եր հիերոկրատիայի մենաշնորհը: Դրանով պետք է բացատրել, թե ինչու յեկեղեցական կանոնադրություններում շատ անգամ յերևան են գալիս այնպիսի իրավաբանական նորմեր, վորոնք ըստ ամենայնի վերաբերում են աշխարհիկ կյանքին: Մասամբ սրանից է բղխում նաև այն պարագան, վոր Մխիթար Գոշի Դատաստանագրքի «Եկեղեցական կանոնք»-ի մասում սպրդել են զուտ քաղաքացիական իրավունքի նորմեր:

Նկատելի յե նաև մի այլ թերություն. դա իրավաբանական նյութի ներքին դասավորման անսիստեմ ձևն է: Օրենսգրքի թե՛ առաջին և թե՛ յերկրորդ մասում հոդվածները հետևում են իրար առանց վորևէ կարգի ու փոխադարձ աղերսի: Նույնիսկ առաջին մասը՝ «Եկեղեցական կանոնք»-ը, վոր, միապաղաղ նյութ ունենալով՝ առաջին հայացքից կարծես վորոշ սիստեմով է կազմված, պարզվում է, վոր այդ մասի սիստեմն էլ մեքենական է: Մխիթար Գոշն այստեղ հոդվածները դասավորել է վո՛չ թե ըստ ներքին բովանդակության ու նյութի փոխադարձ կապակցության, վերածելով առարկայական տեսակների, այլ

այն հաջորդական կարգով, որ պահպանված է հայ կանոնագրքում։

Յեթե «Եկեղեցական կանոնք» մասը շարադրելիս՝ Մխիթար Գոշն ունեցել է իր առաջ մի հիմնական աղբյուր, կանոնագիրքը, ապա «Աշխարհական օրէնք» մասը կազմելիս՝ նա օգտագործել է զանազան աղբյուրներ, որոնց նյութը, ի հարկե, նա դասավորել է ո՛չ թե առարկայական սիստեմով, այլ կարծես ըստ այնմ, թե իր ձեռքին ո՞ր աղբյուրն է յեղել։ Ուստի այս մասի հոդվածները հետևում են իրար առանց որևէ ղեկավար սկզբունքի և մշակված կարգի։ Այն տպավորությունն է ստացվում, որ հեղինակն իր աշխատանքի ընթացքում հետզհետե ձեռք է բերել այս կամ այն աղբյուրն և ապա մուծել է իր ընտրած իրավաբանական նորմերը։

Այսպիսով, ամբողջ օրենսգիրքը ներկայացնում է հոդվածների անկապ կուտակումն և իրավաբանական նյութերի խճողումն։ Միևնույն հարցի վերաբերյալ հոդվածները ցրված են այս ու այն տեղ։ Նույնիսկ յուրաքանչյուր հոդված, չնայած որ կրում է հատուկ խորագիր, ինքնին չի ներկայացնում խստորեն որոշված նյութ և մի ուրույն բովանդակություն։ Այդտեղ հաճախ խճողված են առանձին պարբերություններ, որոնք արդեն վերաբերում են իրավունքի այլ կատեգորիայի։

Այդ կողմից Դատաստանագրքի Նախադրությունը թողնում է համեմատաբար ավելի սիստեմատիկ ու ամփոփ գործի տպավորություն։ Այս հանգամանքը պետք է վերագրել Նախադրության հիմք կազմող նյութին, որ առիթ չէր տալիս հեղինակին ցրվելու և զանազան աղբյուրների հետևից ընկնելու. այստեղ նա կենտրոնացած է սահմանափակ առարկայի շրջանակներում և տրամաբանական հետևողությամբ շարահյուսում է իր գործը։

Մխիթար Գոշի Դատաստանագրքի ինքնահատուկ մի նշանակությունն էլ այն է, որ նա չի բղխում օրենսդիր մարմնից, այլ անհատական, մասնավոր ձեռներեցությամբ կատարված կոդիֆիկացիա յէ, թեև այդ գործին նա ձեռնամուխ է յեղել Աղվանից կաթողիկոսի, կրոնական բարձրագույն պաշտոնյայի, առաջադրությամբ։ Չնայած դրան՝ Դատաստանագիրքը

այնուամենայնիվ գործող օրենսգրքի դեր եր առանձնել ու համատարած ընդունելություն եր վայելում, կիրառվելով վո՛չ միայն բուն Հայաստանում, այլև դուրսը, հայ գաղութներում: Դատաստանագրքի հորինման այդ անհատական բնույթը արտացոլել ե նաև նրա ներքին բովանդակության ու շարադրության ձևի մեջ: Այստեղ առաջին նվագ աչքի ե զարնում կրոնավոր հեղինակի առկայությունը, կղերական մտահայեցողությունը: Մխիթար Գոշը նախամեծար նշանակություն ե տալիս թեոկրատիզմին ու կրոնական ինստիտուտներին՝ համեմատած աշխարհիկ իրավունքի ու ինստիտուտների հետ:

Հայ Դատաստանագրքի օրենքները զուրկ են ձևական բովանդակությունից: Այստեղ ձևակերպված իրավաբանական նորմերի փոխարեն հաճախ հանդիպում ենք հեղինակի մի շարք խորհրդածություններին ու անձնական կարծիքներին այս կամ այն իրավաբանական յերևույթների ու դիպվածների, իրավական ինստիտուտների մասին: Դատաստանագրքի ամբողջ իրավաբանական կոնցեպցիան զուրկ ե արծարծած նյութը վերացականացնելու և ընդհանրացնելու յեղանակից: Օրենքները հարմարեցված են առանձին կոնկրետ յերևույթներին և չեն ընդգրկում այն բոլոր իրավաբանական պրեցեդենտները, վորոնք կարող են ծագել հասարակական հարաբերություններում և մարդկային քիչ թե շատ բազմակողմանի կենցաղում: Սրանք բնորոշ գծեր են, վոր յուրահատուկ են յեղել հին օրենսգրքերին և միջնադարյան Յեվրոպայի այսպես կոչված Leges Barbarorum օրենսդրական ժողովածուներին:

Հայ Դատաստանագրքի հորինողի կրոնավոր լինելու հանգամանքը յերևան ե գալիս նաև նրա իրավըմբռնման մեջ: Մխիթար Գոշի հայացքով իրավունքը եթիկական մի հասկացողություն ե. իրավունք և բարոյականություն ասած բաներն անանջատ առումներ են. նրանք կազմում են մի ամբողջություն, իրար համակերպված միասնություն: Իրավունքը — արդարության վորոնումն ու պաշտպանումն ե և առաջանում ե աստծուց. «աստուած 'ի սկզբանէ ի բնութիւն մարդոյն սահմանեաց ընտրել զիրաւացին» (ՄԳ, Նախ., եջ 6): Այսպիսի կրոնաստվածաբանական մնդուրով եյին չափում այն իրավունքն

ու իրավաբանական նորմերը, վոր գոյանում եյին ֆեոդալական հասարակության մեջ և կոչված եյին ծառայելու նրա շահերին:

Մխիթար Գոշի Դատաստանագրքի հորինման հանգամանքները ու նրա միակ հայ աշխարհիկ կոդեքս լինելու փաստը մեծապես նպաստել են, վոր այդ Դատաստանագիրքն ահագին նշանակություն ստանար ու հայերի մեջ համատարած հռչակ վայելեր: Այդ բանը տեղի ուներ անկախ նրանից, վոր որենսգրքի կոդիֆիկացիան անհատական մի գործ եր: Մեզ հասած բազմաթիվ ձեռագիր որինակներն ապացույց են նրա տարածման ու նշանակության: Այդ գրչագրերից յերևում ե, վոր XII դարի վերջերից Մխիթար Գոշի Դատաստանագիրքը կիրառվելիս ե յեղել Հայաստանի ազգային դատարանական հիմնարկներում իբրև գործնական իրավաբանական ձեռնարկ, թեև այն ժամանակ հայերն արդեն զրկված եյին քաղաքական ինքնուրույնությունից:

Մխիթար Գոշի Դատաստանագիրքը, պարունակելով քաղաքացիական որենքներին կից նաև յեկեղեցական կանոններ, գրավել եր գլխավորապես հոգևոր վարչական մարմինների ուշադրությունը: Նա դարձել եր ամենատարածված ու ամենագլխավոր որենսգիրքը հայ հոգևոր հաստատություններում դատավարական գործերի համար, մանավանդ ընտանեկան ու ժառանգական իրավունքների բնագավառում, ինչպես որինակ, այդ յեղել ե Եջմիածնում մինչև վերջին ժամանակները:

Մխիթար Գոշի Դատաստանագիրքը ճանապարհ հարթեց իրեն համար նաև Մեծ Հայքի սահմաններից դուրս: Նա, ինչպես կտեսնենք ստորև, մուտք գործեց Կիլիկիա, ուր այն ժամանակ ծաղկում եր Ռուբինյան թագավորությունը, և գլխավոր աղբյուրը հանդիսացավ Կիլիկյան հայ պետության որենսգիրքը կազմելու համար:

Անցյալ դարի 50-ական թվականների վերջերին Վիեննայի պրոֆ. Բիշոֆը, ինչպես վերն ակնարկել ենք, Լեմբերգի քաղաքային դիվանատանը գտել եր մի հայ որենսգրքի ձեռագիր, հաստատված 1518 թ. Լեհաստանի թագավոր Սիգիզմունդի ձեռքով: Ինչպես ցույց ե տալիս հիշյալ պրոֆեսորը,

գաղթած հայերը Լեմբերգում և ընդհանրապես լեհական Գալիցիայում XIV դարի սկզբներից վայելում եյին ինքնավար համայնքների իրավունքներ՝ ազգային դատարաններով։ Մխիթար Գոշի Դատաստանագրքի հրատարակիչ ու անդրանիկ ուսումնասիրող Վահան Բաստամյանն իր կատարած համեմատական հետազոտության հիման վրա ապացուցում է, վոր Լեմբերգի հիշյալ հայ որենսգիրքը կազմված է Մխիթար Գոշի Դատաստանագրքի հոդվածներից, տեղական պայմաններին հարմարեցրած չնչին փոփոխումներով ու հավելումներով։ Նույն կարծիքին է հանգել գերմանական պրոֆ. Յ. Կոհլերը, միանգամայն անկախ Վ. Բաստամյանից։

Նմանապես հայտնի յեն Ղրիմի թերակղզու թաթարների լեզվով թարգմանված հայ որենսգրքեր, վորոնք XIV դարի դրոշմն են կրում։ Որենքների այդ ժողովածուները, ինչպես յերևում է բնագրից, փոխադրվել են Լեմբերգի հայ որենսգըրքից և ծառայում եյին Ղրիմի հայ գաղթավայրերի ինքնավար համայնքների պահանջներին։

XVIII դարի սկզբներին Վրաստանի թագավոր Վախթանգ VI-ը կազմել էր որենքների վրացերեն ժողովածու՝ «Դատաստանագիրք թագավոր Վախթանգի» անունով, բաղկացած 7 մասերից։ Վրացական այդ որենսգրքի 3-րդ մասը բաղկացած է հայ որենքներից, վորոնք քաղված են Եջմիածնում կիրառվող կանոնագրքերից։ Վախթանգի Դատաստանագրքի այդ հայկական որենքները բաժանվում են յերկու մասի. առաջին մասը, բաղկացած 150 հոդվածներից, վոչ այլ ինչ է, յեթե վոչ ասորահռոմեյական որենքների հայերենից կատարված թարգմանությունը, իսկ յերկրորդ մասը կազմում է Մխիթար Գոշի Դատաստանագրքի «Եկեղեցական կանոնք» և «Աշխարհական օրենք» հատվածների բառացի թարգմանություն, միայն տեղ-տեղ աննշան փոփոխություններով և հոդվածների խանգարված դասավորությամբ։ Հետագայում, յերբ 1801 թ. Վրաստանը բռնի կերպով միացվեց Ռուսաստանին, Վրաստանին արտոնված էր քաղաքացիական գործավարության մեջ ղեկավարվել վրաց սովորութական իրավունքով ու Վախթանգի Դատաստանագրքով։ Վախթանգ թագավորի այդ որենսգիրքն ինչ-ինչ փոփոխություններով

ներմուծվեց 1835 թ. ռուսական Свод законов–ի մեջ, այն է՝ X т., I ч. Св. зак. гражд.–ի մեջ, վորով ուրեմն, Մխիթար Գոշի Դատաստանագրքի օրենքներն էլ տեղ գտան ռուսական օրենսդրության մեջ և Կովկասում գործող օրենքների աղբյուր դարձան։

Այսպիսով, տեսնում ենք, թե ինչ կարևոր պատմական նշանակություն ունի Մխիթար Գոշի Դատաստանագիրքը թե՛ իբրև իր ժամանակին գործող ազգային օրենսգիրք և թե՛ իբրև աղբյուր այլ հայկական օրենսգրքերի և թե՛, վերջապես, իբրև հայ իրավունքի ուսումնասիրության նյութ։

3. ՍՄԲԱՏ ԳՈՒՆԴՍՏԱԲԼԻ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔԸ.— Այս օրենսգրքի յերևան գալը կապված է Կիլիկյան հայ թագավորության պատմության հետ։ Բագրատունյաց Հայաստանի անկումով և ապա սելջուկյան արշավանքների հետևանքով շատ ֆեոդալ իշխաններ, նույնիսկ յերբեմն իրենց հպատակների հետ միասին, գաղթում եյին Կիլիկիա, վորը տակավին շատ և շատ առաջները, շնորհիվ իր բարենպաստ առևտրական դիրքի, հարաբերություններ ուներ Մեծ Հայքի հետ։ XI դարի յերկրորդ կեսին, այստեղ գաղթած հայությունը հաստատված լինելով մի շահավետ առևտրական կենտրոնում, վոր հանդույց եր հանդիսանում Արևմտյան Յեվրոպայի և Առաջավոր ու Փոքր Ասիայի վաճառականական հարաբերությունների, տնտեսապես այնքան ուժեղացավ, վոր շահագրգռված յեղավ իր ազդեցությունն ու տիրապետությունն ապահովելու նպատակով նաև քաղաքական ուժ ունենալու։ Յեվ աՀա կատարվում է տեղական հայ ֆեոդալ իշխանների կոնսոլիդացիան։ Ռուբեն իշխանի, վերջին Բագրատունի Գագիկ Բ. թագավորի ազգականի գլխավորությամբ նրանք հաստատում են այստեղ հայ պետություն (1080 թ.), վոր, հետզհետե զարգանալով ու ընդլայնելով իր սահմանները, գոյություն ունեցավ գրեթե յերեք դար (մինչև 1365 թ.)։ Այսպիսով, ստեղծվեց Կիլիկյան հայ թագավորությունը, մի նոր ֆեոդալական պետություն, վորի ամենածաղկած ժամանակաշրջանը համարվում է Ռուբինյան տոհմի իշխանությունը։ Այդ նոր հայկական պետությունը, վոր սերտ քաղաքական ու առևտրական հարաբերությունների մեջ եր Արևմտյան Յեվրոպայի հետ,— մանավանդ Խաչակրաց ար-

չավանքներից հետո, վորոնց ճանապարհը Կիլիկիայի վրայով եր,— զգալու յեր իր պետական ազգային որենսդրության կարիքը, քանի վոր ասպարեզում գոյություն չունեյին հայ որենսդրքեր: Այդ պահանջն առավելապես զգալի դարձավ XII դարի յերկրորդ կեսին, յերբ Կիլիկյան հայ պետությունը հասել եր քաղաքական ու տնտեսական բարձր զարգացման: Այդ դարաշրջանի տրամադրությունը սեփական որենսգիրք ունենալու մասին ցայտուն կերպով դրսևորվում ե Ներսես Լամբրոնացու այն խոսքերից, վորոնք հիշատակված են վերը, և այն ձեռնարկումից, վոր նա արել ե Կիլիկիայի Գրիգոր կաթողիկոսի թելադրությամբ, թարգմանելով ասորական, Մովսիսական և հունա-բյուզանդական (Եկլոգա և Զինվորական որենք) որենքների ժողովածուները: Սակայն այդ որենսդրքերն ոտար եյին և չեյին համապատասխանում հայ պետականության պահանջներին: Կիլիկիայի հայ ֆեոդալականությունն իր տնտեսական ու սոցիալ-քաղաքական դիրքերն ամրապնդելու կռվանները տեսնում եր Արևմտյան Յեվրոպայի ֆեոդալականության, և վոչ թե հարևան Բյուզանդիայի մեջ, վորն այդ ժամանակ արդեն կորցրել եր իր տնտեսական նշանակությունն ու քաղաքական ազդեցությունը Փոքր ու Առաջավոր Ասիայում:

Արևմտյան Յեվրոպայի ֆեոդալականության ազդեցությունը, մանավանդ Խաչակրաց արշավանքների ներգործությամբ, այնքան ուժեղ եր Կիլիկյան հայ թագավորության վրա, վոր ամբողջ պետական-վարչական կազմը, արքունի և իշխանական պալատական կարգերը, ֆեոդալական ինստիտուտները կառուցվում եյին արևմտյան ֆեոդալական, գլխավորապես ֆրանկների, որինակով և նույնիսկ յուրացնելով նրանց պետական-վարչական ու սոցիալական տերմինաբանությունը: Դա արտահայտվում ե նաև նրանով, վոր XIII դարի առաջին կեսին, հավանորեն, ընդունվել եյին ու հայերեն թարգմանվել Խաչակիրների՝ Պաղեստինում հիմնած Յերուսաղեմի ու Սիրիայում հիմնած Անտիոքի ֆեոդալական իշխանությունների որենսդրքերը, այն ե՝ «Անսիզք Երուսաղեմի» և «Անսիզք Անտիոքայ»[47] անուններով, վորոնցից մեզ հասել ե յերկրորդի հայերեն թարգմանությունը: Յենթադրվում ե, վոր այդ որենքների թարգմանիչը յեղել ե Սմբատ Գունդստաբլը: Ահա այդ պայմաններումն եր, վոր XIII

դարի յերկրորդ կեսին (1265 թ.) այստեղ հորինվում է ազգային օրենսգիրք՝ Սմբատ Գունդստաբլի ձեռքով: Սմբատ իշխանը բարձրագույն ֆեոդալներից էր, Հեթում թագավորի յեղբայրը, և առաջնակարգ դեր էր խաղում, վարելով հայկական զորքի սպարապետությունը (այստեղից էլ նրա տիտղոսը՝ Գունդըս-տաբլ, այսինքն զորահրամանատար, ֆրանկ լեզվով) և միա-ժամանակ լինելով թագավորի ամենամոտ խորհրդականը: Սմբատ իշխանը պատմության մեջ հայտնի յե նաև իբրև մա-տենագիր: Բացի իր չարադրած Դատաստանագրքից, նա թողել է մի տարեգրություն՝ «Պատմութիւն Յունաց 'ի Կոստանդնուպօ-լիս և Հայոց Մեծաց, ըստ կարգի ժամանակաց» խորագրով և ապա «Անսիզք Անտիոքայ» թարգմանությունը:

Սմբատ Գունդստաբլի Դատաստանագիրքը, վոր կրում է «Յաղագս դատաստանաց թագաւորաց» վերնագիրը, նաև «Աւրէնք և կանոնք ընդհանրական եկեղեցականաց և աշխար-հայնոց» վերտառությունը, գալիս էր ծածկելու այն բացը, վորի մասին դեռ մեկ դար առաջ դանգատներ եյին լսվում Ներսես Լամբրոնացու և տիրապետող ֆեոդալ դասակարգի ներկայացուցիչների կողմից, այն է՝ ազգային իրավաբանական կոդեքսի բացակայությունը: Ահա այդ ազգային օրենսգրքով դուրս եյին վանվում ասպարեզից ոտար օրենքների ժողովա-ծուները, մանավանդ հունա- բյուզանդականը, վոր դերիշխում էր այդտեղ և վոր հետագայում Կիլիկյան հայ թագավորու-թյան ուժեղացումով և սրա ու Բյուզանդիայի միջև սրված քաղաքական ներհակության պատճառով դարձել էր այլևս անընդունելի: Չնայած վոր Կիլիկյան հայ օրենսգիրքը կազմ-վել է անհատական ջանքերով, այնուամենայնիվ նա ստանում է տեղական ֆեոդալ հասարակության աչքում պետական-օ-րենսդրական նշանակություն, վայելում է պետական ֆունկցիա-յով անցած կոդեքսի արժեք, վորովհետև նրա կազմողը հան-դիսանում էր հայ կառավարության մեջ առաջնակարգ դեր խա-ղացող մի անձ, թագավորի յեղբայրը, վորը թերևս թագա-վորի առաջադրանքով էր ձեռնամուխ յեղել իր օրենսգրքի հո-րինմանը:

Սմբատ Գունդստաբլը Դատաստանագրքի հորինման մասին

այսպես է արտահայտվում առաջաբանի մեջ. «...Բազում աշխատանաւք աշխատեցայ ի Դատաստանագիրքս ծերացեալ մտաւք վասն զի այլակերպած էր և հեռացած ի հին հայ բառէն ի նորոյս՝ յայնց որ խելք չէին 'ի հասկնալ, և ոչ յօկտել զայն — և ես բազում աշխատութեամբ փոխեցի զսա 'ի հին և 'ի դժուարբառ և յանհասկընալի գրոց, 'ի մեր հեշտալուր և 'ի սովորական բառս... Եւ արդ գրեցի զսա վասն հաստատութեան աթոռոյ եկեղեցւոյ և գոյանալոյ երկրի, և ապա վասն աշխարհական դատաւորաց և թագաւորաց»:

Նախ՝ այստեղ չեշտվում է, որ Սմբատը Դատաստանագիրքը կազմել է թե՛ յեկեղեցական և թե՛ աշխարհիկ իրավասության պետքերի համար: Երկրորդ՝ հիշատակվում է, որ նա այդ օրենսգիրքը վերածել է հին, անհասկանալի գրաբարից՝ խոսակցական, դյուրըմբռնելի բարբառի: Սակայն չի նշվում, թե այդ ի՞նչ Դատաստանագիրք է յեղել, որի բնագրից օգտվել է կազմողը:

Բանասիրական համեմատական հետազոտությունը պարզապես ցույց է տալիս, որ Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքի հիմքն ու արմատական աղբյուրն յեղել է Մխիթար Գոշի Դատաստանագիրքը: Հիշյալ Կիլիկյան օրենսգիրքը Սմբատը կազմել է 1264 թ., իսկ Մխիթար Գոշի Դատաստանագրքի հորինման տարին համարվում է 1184 թ.: Ուրեմն 80 տարիների ընթացքում վերջինս հասել էր նաև Կիլիկյան հայ թագավորությանը և իբրև Մեծ Հայքի Դատաստանագիրք, որը լայն կիրառումն ուներ ու հռչակ էր վայելում, անտարակույս, դառնալու էր Սմբատ Գունդստաբլի համար միակ հայկական իրավաբանական աղբյուրը: Թեև Սմբատ Գունդստաբլի վկայությամբ՝ իբր թե նա փոխել է «'ի մեր հեշտալուր և 'ի սովորական բառս», բայց Մխիթար Գոշի և Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքերի բովանդակության համեմատական վերլուծումը յերևան է հանում, որ այստեղ սոսկ բառացի փոխադրություն չի յեղել, այլ կատարվել է բավականին բարդ աշխատանք: Սմբատ Գունդստաբլը շատ անգամ նրա հոդվածները վերամշակում կամ վերափոխում է, հարմարեցնելով Կիլիկյան հայ պետության սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայ-

մաններին: Նա նույնիսկ յերբեմն իր կողմից մուծում է նոր հոդվածներ, նոր իրավաբանական նորմեր, վորոնք ամենայն հավանականությամբ վերցված են տիրող սովորութական իրավունքից: Մխիթար Գոշի Դատաստանագրքի համեմատությամբ Սմբատ Գունդստաբլի Դատաստանագիրքը հանդիսանում է ավելի վորոշ ու չեշտակի գծերով կերտված ֆեոդալական իրավունք, ուր մի կողմից՝ պարզ ու մեկին լայնացված և ամուր արտոնություններով ապահովված են ֆեոդալական իշխանների իրավունքները, մյուս կողմից՝ ավելի խիստ ու դաժան կարգերի մեջ են դրված իսկական արտադրողներն, այսինքն՝ շահագործվող շինականներն ու ստրուկները:

Այստեղ ակներև է Մեծ Հայքի և Կիլիկյան հայ պետության ֆեոդալական կարգի տարբերությունը:

Մինչդեռ Մխիթար Գոշի Դատաստանագրքում արտացոլել է Մեծ Հայքի տարտամ քաղաքական վիճակը, պետական կենտրոնական իշխանության բացակայությունն և առանձին ֆեոդալական բազմաթիվ իշխանությունների հեղհեղուկ կացությունն ստար նվաճողների բռնակալության ներքո, ընդհակառակն, Կիլիկյան Դատաստանագիրքն արտահայտիչ է հանդիսանում տեղական ֆեոդալական իշխանությունների կոնսոլիդացիայի իրենց սուվերեն իշխանավորի՝ թագավորի գլխավորությամբ, մի ֆեոդալ պետականության, վորի կառուցքը ներծծել է Արևմտյան Յեվրոպայի ֆեոդալական կարգի բնորոշ գծերը: Հակառակ Մխիթար Գոշի Դատաստանագրքի՝ Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում պետական-վարչական ինստիտուտների և պաշտոնների տերմինները գերազանցորեն ֆրանկյան են, յերբեմն միայն հայկական, նույնիսկ բյուզանդական և թյուրքական: Վերջապես, ընդգծենք մի կարևոր հանգամանք ևս: Մինչդեռ Մխիթար Գոշի Դատաստանագիրքը հիմնականում հանդիսանում է ռեցեպցիական ու գրավոր և մասամբ սովորութական իրավունքների տարրերից չարահյուսված օրենսգիրք, ընդհակառակը, Սմբատ Գունդստաբլի Դատաստանագիրքն իր վերամշակված նյութով ներկայացնում է թեև ազգային, բայց տեղական, վորոշ յերկրային իրավունք: Հենց այս հանգամանքով պետք է բացատրել այն հետաքրքրական

յերևույթը, վոր Մխիթար Գոշի Դատաստանագիրքը համատարած նշանակություն ե ունեցել և ճանապարհորդել ե Մեծ Հայքի սահմաններից դուրս դեպի հեռավոր հայ գաղթավայրերը, իսկ Սմբատ Գունդստաբլի Դատաստանագիրքը Կիլիկիայի սահմաններից չի կարողացել դուրս գալ և Կիլիկիայի հայ թագավորության անկումով չքացել ե ասպարեզից ու միաժամանակ անհայտության մատնվել: Միայն XIX դարի վերջերին Սիրիայի Հալեպ քաղաքում[48] գտնվածով հայտաբերվել ե նրա մի օրինակ ձեռագիրը, վորն այժմ պահվում ե Վենետիկի Մխիթարյանների մատենադարանում, իսկ յերկրորդ օրինակը գտնվում ե Նախկին Եջմիածնի, ներկայումս մեր խորհրդային պետական ձեռագրատանը: Յերրորդ ձեռագիրել կա Վիեննայի Մխիթարյանների մոտ, բայց դա XIX դարի սկզբների արտագրություն ե, վոր նման ե Վենետիկի ձեռագրին: Եջմիածնի ու Վենետիկի ձեռագիր օրինակները, վորոնց համեմատությունը կատարել ե Ց. Կարստը և հրատարակել ե թե՛ Սմբատի Դատաստանագրքի տեքստը և թե՛ նրա ուսումնասիրությունն ըստ Վենետիկի օրինակի,— ունեն վորոշ տարբերություններ բովանդակության և, մանավանդ, լեզվի կողմից: Վենետիկի օրինակը հարազատությամբ պահպանել ե Կիլիկյան հայ բարբառը, իսկ Եջմիածնինը, ըստ յերևույթին, արտագրողի կողմից յենթարկվել ե լեզվական փոփոխության, գրաբարին մոտեցնելու ձգտումով: Հետևապես Վենետիկի օրինակը պետք ե ավելի հարազատ ու հին համարել: Եջմիածնի ձեռագիր օրինակը լույս ե տեսած Արսեն Ղլտճյանի խմբագրությամբ. այդ հրատարակությունը վո՛չ միայն գիտական բնույթ չունի, այլև կատարված ե անխնամ կերպով ու լի յե վրիպակներով:

## VI. ՀԱՅ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐ

Ինչպես կարելի յե յեզրակացնել, հայ իրավունքը ներկայանում ե մեզ բավականին աղքատ գրական նյութերով— յերկու Դատաստանագիրք և Կանոնագիրք: Ահա զուտ հայկական կոդեքսները, վորոնք այնուամենայնիվ լրիվ ու ամփոփ պատկեր չեն տալիս հայ իրավունքի բովանդակ սիստեմի

ու պատմության մասին: Այդ Դատաստանագրքերը, լինելով միջնադարի արդյունքներ, առնչություն ունեն միջնադարյան հասարակության իրավահայեցողության հետ, իսկ ավելի հին, նախարարական շրջանի իրավունքը չափազանց սուղ տվյալներով, այն էլ մնացուկների կամ վերապրուկների ձևով և արտահայտվել նրանց մեջ:

Այդ թերությունը հնարավոր է որոշ չափով վերացնել, օգտվելով հայ դասական մատենագիրների թողած ժառանգությունից: Բայց այստեղ էլ դեմ ենք ընկնում դժվարությունների: Թեև մեզ հասել է հարուստ պատմական գրականություն, սակայն նրա մեջ շատ աղքատ նյութերով են արտացոլել հին Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքը, իրավական ինստիտուտները և այլ հասարակական երևույթները: Այնուամենայնիվ մեր հին մատենագիրների երկերում ցիրուցան տեղեկություններ կան, որոնք այսպես թե այնպես օժանդակ աղբյուր են հանդիսանում հայ իրավունքի պատմության պակասները լրացնելու համար: Այդ տեսակետից շահեկան են նախարարական իրավունքի, ֆեոդալական հարաբերությունների մի շարք երևույթները պարզաբանելու համար Մովսես Խորենացու, Փավստոս Բուզանդացու, Ագաթանգեղոսի, Մովսես Կաղանկատուացու, Անանիա Շիրակացու աշխատությունները, Բագրատունյաց Հայաստանի նկատմամբ՝ Հովհաննես Դրասխանակերտցու, Թոմա Արծրունու, և վերջապես, միջնադարի նկատմամբ՝ Ստեփանոս Օրբելյանի աշխատությունները: Կան նաև մի շարք այլ պատմագիրներ, ինչպես Եղիշե, Ղազար Փարպեցի, Եզնիկ Կողբացի և այլն, որոնց մոտ հանդիպում են հատուկ տեղեկություններ մեր առաջադրած առարկայի վերաբերմամբ:

Մեր հին մատենագրության մեջ կան նաև առանձին հուշարձաններ, շատ անգամ անհայտ հեղինակների մանր գործեր, որոնք նույնպես կարող են ծառայել հայ իրավունքի պատմության ուսումնասիրական նպատակներին: Այդպիսի հուշարձաններ են «Գիրք թղթոց» կոչված հավաքածուները, «Գահնամակը», անհատական հիշատակարանները: «Գիրք թղթոց» անունով են հայտնի մեզ հասած մատյաններ, որտեղ ամփոփված

են զանազան անձնական ու պաշտոնական գրություններ, հաղորդագրություններ, նամակներ՝ հասարակական, քաղաքական, դավանաբանական ու նման հարցերի մասին։ Այդ «թղթերը», բղխելով զանազան պաշտոնական անձերից, քաղաքական ու եկեղեցական ականավոր գործիչներից, կազմվում էին կաթողիկոսական ու իշխանական դիվաններում։ Այդ գրությունների մեջ կարելի է գտնել հետաքրքրական տեղեկություններ, վկայություններ, քաղվածքներ կանոնագրքից և իրավաբանական բնույթ ունեցող վավերագրերից։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում «Գահնամակը», գրված մագաղաթի վրա, որ դիպվածով հայտաբերվել է XIX դարի երկրորդ կեսի սկզբներին Թբիլիսիում, մի հին հայերեն ձեռագրի կազմին փակցրած[49]։ Սա մի ցուցակ է Հայաստանի նախարարական տների, դասավորված ըստ գահերեցության աստիճանի, և որոշ պատկեր է տալիս հին ֆեոդալական հիերարխիայի, այն է՝ «բարձ ու պատիվ» վայելելու իրավունքի մասին։ Բացի այս «Գահնամակ»-ից, որ գրականության մեջ հայտնի է Սահակ-Վռամյան (Սահակ կաթողիկոսի կողմից ներկայացված ու պարսից Վռամ Թագավորի կողմից հաստատված) գահնամակ անունով, հայտաբերված է նաև մի այլ վարիանտ՝ այսպես կոչված Արշակ-Ներսիսյան։ Վերջապես՝ այս երկու գահնամակների հետ սերտ առնչություն ունի մի այլ գահնամակ, որ մեր պատմագիտական գրականության մեջ հայտնի է «Զորանամակ» անունով[50]։ Այս հուշարձանի առանձնահատկությունն այն է, որ առաջ է բերված նախարարական տների ցանկը, նշելով յուրաքանչյուրի զորքերի քանակը։

Չանդրադառնալով այստեղ վերոհիշյալ գահնամակների շուրջը ծագած թեր ու դեմ կարծիքներին՝ նրանց վավերականության ու ծագման ժամանակի նկատմամբ, պետք է նշել, որ համենայն դեպս այդ «գահնամակները» խորթ երևույթներ չեն հին հայ պատմության տեսակետից և նրանց պատմական ու կենցաղային հիմքը իրոք եղել է «գահերեցությունը», կամ ֆեոդալական հիերարխիայի սկզբունքը։ Այսպես թե այնպես, նրանք ստանում են պատմական փաստագրի բնույթ, անկախ ծագման ժամանակի անորոշ հարցերից, որովհետև այդպիսի

գրավոր հուշարձանի ծագումն անհնարին էր առանց գահերեցության խնամխոսի գոյության։

Ինչ վերաբերում է «Հիշատակարաններին», որոնք զանազան անձերի գրած համառոտ հիշատակումներ, ավանդումներ և նկարագրություններ են իրենց ժամանակակից դեպքերի մասին և սովորաբար կցված են ձեռագիր մատյաններին, նրանք մեծ մասամբ միջին դարերին են պատկանում և կարևոր նշանակություն ունեն։ Սակայն այդ հիշատակարանները տակավին ուսումնասիրված և ի մի հավաքված չեն և, որ գլխավորն է, հրապարակված չեն։ Ուստի նրանք առայժմ անմատչելի են մնում իրավագիտության ու պատմագիտության համար։

Հայ պատմագիրների մատակարարած նյութերը կարելի է հարստացնել նաև այն օտար պատմագրական աղբյուրներով, որոնք տեղեկություններ են տալիս հին հայերի մասին։ Թեև այդ բնագավառում նյութերը հարուստ չեն, բայց և այնպես հին հունական (Հերոդոտ, Ստրաբոն, Քսենոֆոն, Պլուտարքոս), հին հռոմեական (Տակիտոս, Ամմիան, Պլինիուս), բյուզանդական (Պրոկոպիոս), արաբական (Տաբարի, Յակուբի, Բալաձուրի և այլն) և վերջապես ասորական պատմագրություններում հանդիպում են երբեմն հետաքրքրական տեղեկություններ հին հայ կենցաղի ու հասարակական հարաբերությունների մասին։ Պետք է ասել, որ ասորական աղբյուրները տակավին բավարար չափով մեզանում ուսումնասիրված չեն, ուստի մեզ շատ բան այդ գրականությունից հայտնի չէ, մինչդեռ հայ-ասորական հարաբերությունները, մանավանդ Հայաստանում քրիստոնեության տարածման դարերում, խիստ զարգացած են եղել։

## VII. ՎԻՄԱԿԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Պատմագրության հետ հարակից, իբրև իրավունքի պատմության աղբյուր, կարևոր նշանակություն են ստանում վիմական արձանագրությունները։ Սրանք հավիտենական, մշտընջենական հուշարձաններ են համարվել, մի տեսակ մնայուն, հետնորդ դարերի համար պահպանվող վավերագրեր, ուր դրոշմված են ոչ միայն քաղաքական դեպքերի հիշատակում-

ներ, այլև իրավական գործարքներ ու օրենսդրական ակտեր: Այդպես են ասորա–բաբելական (սկսած XX դ. նախքան մեր տար.), խալդական (IX դ. նախքան մեր տար.) և այլ սեպագիր արձանագրություններն իրենց ժամանակվա թագավորների գործունեության մասին:

Նույնն ենք տեսնում Հայաստանում, ուր հայտաբերված են անհագին քանակով վիմական արձանագրություններ: Սրանք բղխում են հայկական միջավայրից և բավականաչափ լույս են սփռում սոցիալ–իրավական հարաբերությունները պարզաբանելու վրա: Այդ արձանագրությունները, վոր առնչություն ունեն մեր ներկա առարկայի հետ, հանդիսանում են հայ թագավորների հրովարտականեր, ֆեոդալ իշխանների, զանազան բարձր պաշտոնատար անձերի հրամաններ, կարգադրություններ, վորոշումներ հողերի բաշխման, հարկերի, շինականների, գյուղերի և զանազան գույքերի, շինարարական առարկաների և այլն մասին: Ամենահին արձանագրությունները մեզ հասել են հունարեն լեզվով, այսինքն՝ հայ տառերի գյուտից առաջ գրված. դրանք են՝ Ապարանի արձանագրությունը[51], վորով Տրդատ թագավորը, հավանորեն Տրդատ Մեծը (IV դարի սկզբին), հողեր է նվիրում Նիգ գավառում Գնթունի նախարարներից մեկին: Մյուսը հին Տիգրանակերտի պարսպի վրա կերտված արձանագրությունն է, վոր պետք է վերագրել III դարի Արշակունյաց հեթանոս թագավորներից մեկին[52]: Վերջինս դիմում է հպատակ քաղաքացիներին, հայտարարելով իր դիվանագիտական հարաբերությունների մասին պարսից թագավորի ու հռոմեյացիների հետ ինչպես և Տիգրանակերտը հայ զորքերով գրավելու մասին: Կան և լատիներեն արձանագրություններ, ինչպես օրինակ՝ Վաղարշապատինը, վորի մեջ խոսվում է Հայաստանը նվաճող հռոմեյական զորակայանների մասին[53]: Հայերեն արձանագրություններն սկսվում են VII դարից և ամենամեծ թվով հանդես են գալիս XII—XIII դարերում, պարունակելով չափազանց հարուստ նյութ ֆեոդալական տիրապետության նաև իրավաբանական ակտերի մասին (հողային իրավունք, վարչական իրավունք, ֆինանս–հարկային իրավունք, հորստաիրություն և այլն): Դժբախտաբար արձանագրություն-

ների զգալի մասը, վորոնցից շատերը հայտաբերված ու արտանկարված են վերջին ժամանակներում, տակավին մնում են չհրապարակված, հետևապես առժամանակ անմատչելի յեն ուսումնասիրողների համար։ Հրապարակվածներն էլ, ցրված լինելով զանազան պարբերականներում ու առանձին գրքերում, մեծ դժվարություններ են առաջացնում՝ նրանցից լրիվ օգտվելու համար։ Միակ ամփոփ հավաքածուն, «Վիմական տարեգիրքը»[54ա], ներկայումս չի գոհացնում իբր գիտական հրատարակություն և, բացի այդ, հրատարակիչը լրիվ չի ընդգրկել ու ամփոփել յուր ժամանակ հայտնի բոլոր արձանագրությունները։

ՀԱՏՎԱԾ ՑԵՐՐՈՐԴ

# ՀԱՅ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՀԱՄԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ՀԱՅ ԻՐԱՎՈՒՆՔԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ

### 1. ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ

*Յուրաքանչյուր հասարակության մեջ գործող իրավունքը վերնաշենքային կատեգորիա է: Իրավունքը, վորպես հասարակական հարաբերությունները կարգավորող իրավաբանական նորմերի խտացումն, առաջանում է դասակարգայնորեն տրոհված հասարակության մեջ, ծառայելով տիրապետող դասակարգին իբրև նրա պետական կազմն ու չահագործման յեղանակները օրինականացնող գործոն: Ուստի իրավունքն ու նրա արտահայտիչ օրենքները դասակարգային հասարակության մեջ, վոր անցել է սոցիալ-տնտեսական յերեք ֆորմացիաներ — ստրկատիրական, ֆեոդալական ու կապիտալիստական — ընդունում են տվյալ սոցիալ-տնտեսական միջավայրին համապատասխան ձևեր ու բովանդակություն: Նույնը պետք է ասել հայ իրավունքի նկատմամբ:*

*Վորքան մինչև այժմ հայտնի յեն պատմական տվյալների հիման վրա, հայերի հասարակական կազմը, սկսած քաղաքական ասպարեզում նրանց յերևալու մոմենտից մինչև* XVIII *դարը, յեղել է ֆեոդալական. այդ հասարակության արտադրության յեղանակը հիմնված եր ֆեոդալական չահագործման վրա: Հետևապես հայերի քաղաքական կառույցը, թե՛ այն դարերում, յերբ Հայաստանը հանդիսացել է ազգային պետություն, և թե՛ այն ժամանակները, յերբ նա գտնվում եր օտար նվաճողների իշխանության ներքո, միշտ ել հանգչում եր ֆեոդալական հիմքերի վրա: Ուստի Հայաստանի պատմության այդ*

*բազմադարյան ընթացքում գործող իրավունքը, իրավական ինստիտուտները կրել են ֆեոդալական բնույթ:*

*Սակայն հայկական ֆեոդալիզմը յերկար ու ձիգ դարերի ընթացքում, արտադրողական ուժերի և սրանց վրա հենվող հասարակական-արտադրական հարաբերությունների զարգացումով, անցնում է զանազան էտապներ, բյուրեղանում է սոցիալ-տնտեսական համապատասխան ձևերի, դրսևորվում է բնորոշ ու յուրահատուկ քաղաքական գծերով, բայց և այնպես հիմնականում անփոփոխ է մնում ֆեոդալական արտադրության յեղանակը: Ըստ այդ ժամանակաշրջանների սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմանների՝ հայ իրավունքն էլ տոգորվում եր համապատասխան վոգով ու բովանդակությամբ, արտահայտում եր տիրապետող դասակարգի իրավահայեցողությունը:*

1. ՎԱՂԱԳՈՒՅՆ ՖԵՈԴԱԼԻԶՄ — *Այս շրջանը ժամանակագրորեն սկսվում է մոտավորապես Աքեմենյան տիրապետությունից Հայաստանում, այն է՝ մոտավորապես VI դարից (Ն. Ք. մեր տարեթվարկումն) և տևում է մինչև արաբական տիրապետությունը, այսինքն մինչև VII դարը (մեր տարեթվարկության), գրեթե մի հազարամյակ, յերբ Հայաստանի սոցիալ-քաղաքական կառուցքը նախարարական եր: Սակայն այդ նախարարական կարգը Հայաստանի հազարամյա պատմության ընթացքում չի ներկայացնում միակերպ ֆեոդալական պատկեր: Այդ շրջանի սահմաններում նշմարում ենք զանազան իրար հաջորդող, հետզհետե զարգացող էտապներ: Սկզբնական էտապը՝ վաղագույն ֆեոդալիզմն է, յերբ տոհմա-ցեղային հասարակության քայքայումից հետո սկսվում է նախարարությունների կազմավորման պրոցեսը, վորը զարգանում է Արտաշիսյան հարստության օրով, մանավանդ Տիգրան Մեծի թագավորության ժամանակ: Այս էտապը հայոց պատմության ամենամութ և դեռ չլուսաբանված էջն է: Այդ վաղագույն ֆեոդալիզմը պատկերելու համար դեռ բացակայում են քիչ թե շատ վստահելի պատմական տվյալներ, ևս առավել դժվար է խոսել այս էտապի ֆեոդալական իրավունքի բնորոշ գծերի մասին: Բայց և այնպես պետք է յենթադրել, վոր նախարարու-*

թյունների կազմավորման ընթացքում ձևավորվում էր նաև գործող իրավունքը։ Անշուշտ, այստեղ խոսք անգամ չի կարող լինել որևէ օրենսդրական գործունեության, գրավոր օրենքի մասին։ Այստեղ բացարձակորեն տիրապետում էր սովորութական իրավունքը, հասարակական հարաբերություններում գործում էին միայն սովորութական իրավունքի նորմերը։ Ինչպես որ տոհմա-ցեղային կազմի քայքայումով նրա ավերակների վրա բարձրացան նախարարությունները, այնպես էլ նույն տոհմային հասարակության քայքայումով ու սոցիալ-տնտեսական շերտավորումով՝ սովորույթները, ձևավորվելով դասակարգայնորեն և վերածվելով իրավական նորմերի, դառնում են նախարարական իրավունքի աղբյուրներ։ Հայկական վաղագույն ֆեոդալիզմին համապատասխանում էր նաև իր էությամբ վաղագույն նախարարական իրավունքը։ Այս նախարարական իրավունքի մեջ դեռևս զգալի չափով յերևում էին տոհմային հասարակության վերապրուկները, վորոնք կարողանում էին զարմանալի պահպանողությամբ հարմարվել, ժամանակի ու պայմանների համեմատ, սոցիալական հարաբերությունների ներհակությանն և վերասերվել դասակարգային վողով։

2. ԱՐՇԱԿՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ.— Արդեն կազմավորված նախարարական կառուցքը մտնում է հաջորդ էտապը, այն է՝ Արշակունյաց հարստության դարաշրջանը, ուր նա հասնում է ֆեոդալական զարգացման բարձր աստիճանին։ Այստեղ է, որ Հայաստանի նախարարական կառուցքն իր բովանդակ ամբողջությամբ ու զարգացած մանրամասնությամբ կանգնած է մեր առաջ։ Զարմանալի չէ, որ Մովսես Խորենացին իր Պատմության մեջ հայ առաջին Արշակունի թագավոր Վաղարշակի[54] անվան հետ է կապում հայ նախարարությունների հիմնադրումն ու զարգացումն, ինչպես և նրանց կոնսոլիդացիան մի պետականության մեջ ու թագավորի միահեծան իշխանության ներքո։ Ի հարկե, Մովսես Խորենացին ճիշտ տեղեկություն չի տալիս, քանի որ նրա պատմական շրջահայացքից դուրս է ընկել հայ ֆեոդալիզմի, հետևապես հայ նախարարության, նախաիտնուտի գոյությունը նախարշակունյաց ժամանակաշրջանում։ Բայց հայ պատմագրի խոսքերը որոշ չափով արժեք են ստանում այն

տեսակետից, որ նրա ամբողջ պատմությունը Վաղարշակի պետական շինարարության մասին արտացոլում է Հայաստանի քաղաքական վերականգնման դարաշրջանն ըստ ազգային ավանդությունների, որոնց համաձայն այդ վերականգնումը խարսխված էր բազմաթիվ կազմակերպված նախարարությունների համակենտրոնացման վրա, նախարարությունների, որոնցից մի քանիսը, այսպես կոչված ավագ նախարարությունները, հզոր ֆեոդալական իշխանություններ էին Արշակունիների պետության գոյության համար: Ահա այդ նախարարական տները, որոնց հզորությունն ու քաղաքական–պետական նշանակությունն սկսել էին զարգանալ նախորդ շրջանի սոցիալ–տնտեսական պայմաններում, Արշակունյաց հարստության շրջանում այնպիսի աչքի ընկնող դեր էին խաղում, որ նրանց առաջացումը վերագրվում էր Վաղարշակին, Հայ Արշակունյաց դինաստիայի հիմնադրին: Ահա այդ ավանդական մտապատկերը, որ արձագանք է գտել նաև Մովսես Խորենացու Պատմության մեջ, մեզ հիմք է ծառայում յեզրակացնելու, որ իրոք նախարարություններն Արշակունյաց դարաշրջանում արդեն կազմակերպված սոցիալ քաղաքական միավորներ էին հայկական ֆեոդալիզմի զարգացման այս էտապում: Հիրավի, պատմական իրադարձություններն էլ այդ են ապացուցում:

Արշակունյաց դինաստիայի քաղաքականությունը, այն է՝ ստեղծել միակերպ, քաղաքականապես ուժեղ պետություն ֆեոդալ իշխանությունների կոնսոլիդացիայի ու համակենտրոնացման վրա՝ դեմ էր առնում նախարարական տների կենտրոնախույս տենդենցներին: Այդ պայքարի այս կամ այն հետևանքն իրականում կախված էր լինում թագավորական իշխանության ռեալ ուժից, որը, ինչպես նշմարում ենք Արշակունյաց թագավորների պատմությունից, մեծ մասամբ հեղհեղուկ էր: Թերևս Հայաստանի քրիստոնեացումը, որ տեղի յեր ունենում վերևից Տրդատ թագավորի ու Գրիգոր Լուսավորչի ջանքերով, դառնալու յեր նրա հեղինակների նկատառումներով մի նոր քաղաքական միջոց, որ պետք է զսպեր ու թուլացներ այդ ժամանակ բավականին գլուխ բարձրացրած կենտրոնախույս ուժերը՝ կրոնադավանաբանական գաղափարախոսության ազդեցությամբ: Սա–

կայն սոցիալ-տնտեսական պայմաններն այլ կերպ էին տնօրինում ընթացիկ պատմությունն և հեղաշրջում Արշակունի թագավորների վարած ամբողջ քաղաքականությունը: Մի պահ սկզբնական հաջողությունից հետո թագավորական իշխանությունն ստիպված էր տեսնել, որ նորամուտ քրիստոնեությունը ո՛չ միայն չկասեցրեց նախարարների կենտրոնախույս տենդենցները, այլև մի նոր ախոյան ստեղծեց իր դեմ: Հեթանոս քրմական ֆեոդալների ավերակների վրա բարձրացավ քրիստոնյա-եկեղեցական ֆեոդալական դասը, որն անհամեմատ ավելի ուժեղ էր, քան իր նախորդը: Կազմակերպվելով հայ ու նման աշխարհիկ ֆեոդալականության, այն է՝ նախարարություններին, նա շնորհիվ իր հիերոկրատական ապարատի և տնտեսական առավելությունների, ձեռք բերեց իրականում այն կենտրոնաձիգ ուժը, որը տենչում էին Արշակունի թագավորներն իրենց համար, մի ուժ, որ սկսեց դեր խաղալ սկզբում երկրի ներքին քաղաքականության, իսկ հետագայում նաև արտաքին քաղաքականության մեջ: Այժմ թագավորական իշխանությունն իր սուվերեն դիրքը պահելու համար գործ ուներ ո՛չ միայն կենտրոնախույս նախարարների հետ, այլև հաշվի էր տեսնելու իր դեմ ծառացած հոգևոր ֆեոդալականության հետ: Վերջինս ավելի վտանգավոր ու ճակատագրական հակառակորդ հանդիսացավ, որ դիտեր իր շահերի տեսակետից օգտագործել թագավորի ու նախարարների միջև չդադարող պայքարը: Այդ պայքարը դարձել էր նախարարական եքսպանսիայի բաղխումների ասպարեզ: Այդ հակամարտությունն իր գագաթնակետին հասավ վերջին Արշակունիների, Արշակ ու Պապ թագավորների օրով, երբ ազգային պետականությունն և հայ թագավորական իշխանությունն իրենց որհասի շեմքին էին կանգնած ներքին ու արտաքին հարվածներից:

Այդ ներքին պայքարն իր հերթին նյութվում էր նաև արտաքին միջամտություններով: Հայաստանի տերիտորիան իր առևտրա-տրանզիտային և ստրատեգիական մեծ նշանակությամբ դարձել էր երկու հարատև մրցող հզոր պետությունների՝ Պարսկաստանի ու Բյուզանդիայի միջև մի կռվախնձոր, որ գրգռում էր նրանց աննեքսիոն ախորժակները: Հայաստանի ներսում իրար դեմ պայքարող նախարարական խմբավորումների

Հակամարտությունն ավելի յեր սրվում այդ արտաքին ուժերի միջամտությամբ, առաջ բերելով բյուզանդական ու պարսկական որիենտացիայի ներհակությունը: Այստեղ ահագին դեր եր խաղում յեկեղեցական ֆեոդալական դասը, վորի թեքումն ըսկըզբներում Բյուզանդիոնի և հետագայում Պարսկաստանի ոգտին՝ վճռական նշանակություն եր ստանում, խոնարհելով կշեռքի նժարն այս կամ այն կողմը: Այս պայքարում թագավորական իշխանությունը, չնայած իր լարած ջանքերին, միանգամայն ուժասպառ յեղավ, և Արշակունյաց հարստությունը տապալվեց: Հայաստանը կորցնելով իր ազգային պետականությունը, նախ՝ 387 թ. և ապա 428 թ. բաժանվեց Բյուզանդիոնի ու Պարսկաստանի միջև, վորով վերջապես իրականացան այդ յերկու մրցակից հզոր պետությունների աննեքսիոն նպատակները:

Ի՞նչ եյին ներկայացնում այն իրավաբանական նորմերն ու իրավական ինստիտուտները, վորոնցով բնորոշվում եր Արշակունյաց ժամանակաշրջանի նախարարական իրավունքը: Հայաստանի պետական կենտրոնական իշխանության ու առանձին նախարարական իշխանությունների առկայությամբ ինքնին սահմանադրվում եր սենիորական ու վասալական հարաբերությունների, իբրև ֆեոդալական հիերարխիայի, սիստեմը, հարաբերությունների, վորոնք կարգավորվում եյին վորոշ իրավաբանական նորմերով:

Ահա այդ նորմերի խախտումներն եյին, վոր հանդիսանում եյին սոցիալ-տնտեսական պայմաններից առաջացող միջֆեոդալական պայքարի ձևական արտահայտումները նախարարական միջավայրում: Նախարարական իրավունքն, իբրև ֆեոդալական հասարակության հարաբերությունները կարգավորող իրավաբանական նորմերի մի սիստեմ, թեև իր եյությամբ միակերպ եր, սակայն նա իր մեջ պարփակում եր վորոշ հակասություններ, վորոնք և պայմանավորում եյին ֆեոդալական ներքին պայքարը: Առաջին հայ Արշակունի թագավորները, լինելով ծագումով պարթևական, հետևապես ծնված ու սնված պարթևական ֆեոդալիզմի տրադիցիաներով, ջանում եյին նույն ֆեոդալական իրավունքի նորմերը փոխադրել Հայաստան և կարգավորել թագավորի, իբրև գերագույն դեսպոտ իշխանի ու յեն-

թակա նախարարների սենիորական ու վասսալական հարաբերու-թյունները պարթևական ձևով: Սակայն հայ նախարարությունները, վորոնք գոյություն ունեյին Հայաստանում դեռ Արշակունիներից առաջ և իրենց տերիտորիայի սահմաններում վարչական ու տնտեսական կողմից միանգամայն ինքնավար եյին, ղեկավարվում եյին տեղական պայմաններում զարգացած ֆեոդալական իրավունքի նորմերով, վորոնք գոյացել ու ձևավորվել եյին տակավին վաղաղույն ֆեոդալիզմի ժամանակաշրջանում: Տեղական ֆեոդալական իրավունքի մեջ պահպանված վերապրուկներն ու մնացուկները նախորդ տոհմային հասարակակարգից՝ ավելի մեծ ինքնուրույնություն ու անկախություն եյին վերապահում նախարարական տների նահապետներին, նման ավանդական տոհմապետներին: Նախարարական նահապետները չունեյին իրենց գլխավորող իշխողներ և իրարից անկախ եյին: Ահա Արշակունյաց պարթևական ֆեոդալիզմի կենտրոնաձիգ սկզբունքին, վորով բնորոշվում է ասիական ֆեոդալիզմի եյությունը, հակադրվում եր նախարարական իրավունքը, այն է՝ տեղական ֆեոդալիզմի սովորութական իրավունքի նորմերը: Նախարարական իրավունքով եր արդարացվում այն եքսպանսիան, վոր այնքան հատուկ եր Հայաստանի հին պատմության մեջ նախարարներին, վորոնք գործադրում եյին ամեն միջոց ընդլայնելու իրենց ֆեոդալական շահագործման տերիտորիան:

Սակայն նախարարական իրավունքը չեր պարփակվում սոսկ իշխանական ներդասակարգային հարաբերությունների սահմաններում: Այն տարածվում եր ավելի մեծ չափերով ֆեոդալական հասարակության ներհակ դասակարգի, շահագործվող մասսաների վրա: Այս դեպքում թե՛ պարթևական և թե՛ տեղական հայ ֆեոդալական իրավունքը վոչ մի տարբերություն չուներ, քանի վոր արտադրության ֆեոդալական յեղանակը, ֆեոդալական շահագործման ձևերը միևնույն եյին, միատեսակ եյին: Հենց այս ներհակ դասակարգային հարաբերություններն եյին հանդիսանում այն հիմնական բնագավառը, վորտեղ գործում ու զարգանում եյին նախարարական իրավունքի նորմերը: Սրանց սահմանադրումը բղխում եր տեղական իշխանից, սոցիալ-տնտեսական մասնակի յերևույթների նկատմամբ վորոշ պարտիկու-

լյարիզմ մտցնելով ընդհանուր ֆեոդալական իրավունքի մեջ, վորը Արշակունյաց ժամանակաշրջանում արդեն ներծծել եր իրանա-պարթևական տարրեր:

Սակայն չմոռանանք, վոր հենց այս ժամանակաշրջանում մուտք գործեց Հայաստան քրիստոնեյությունը: Վերջինս ֆեոդալ հասարակության մեջ առաջ բերեց վորոշ սոցիալ-քաղաքական տեղաշարժումներ, առաջատար գործոն ունենալով յեկեղեցական դասը, վոր կառուցվել եր նախարարական կազմի համակերպությամբ: Այսպիսով, հանուր նախարարական իրավունքի սահմաններում աշխարհիկ իրավաբանական նորմերին կից յերևան են գալիս յեկեղեցական կամ կանոնական իրավունքի նորմեր, վորոնք սահմանադրվում եյին հիերոկրատիայի ձեռքով, ծառայելով նրա սոցիալ-տնտեսական շահերին ու քաղաքական նպատակներին: Ահա այդ միջֆեոդալական պայքարն Արշակունյաց ժամանակաշրջանում, յերբ յեկեղեցական դասն այնքան գործոն դեր եր խաղում, իր արձագանքն ունեցավ հայ իրավունքի զարգացման մեջ: Այստեղ կանոնական իրավունքի սահմանադրումով՝ նախարարական իրավունքի աշխարհիկ ու յեկեղեցական նորմերն սկսում են իրար հակադրվել և մյուս կողմից՝ այդ պայքարի հետևանքով օրենսդրական կարգավորումն յենթարկվում է ուժեղացող հիերոկրատիայի ձեռներեցությանը: Արշակունյաց ժամանակաշրջանի հայ իրավունքի այդ զարգացման մեջ անդրադառնում են նաև արտաքին քաղաքական ազդակները: Մինչդեռ նախարարական իրավունքի աշխարհիկ իրավաբանական նորմերը կրում եյին զուտ տեղական ազգային բնույթ, վորոշ չափով ներծծելով պարթև-իրանական ֆեոդալական իրավունքի տարրերը, ընդհակառակն, նախարարական իրավունքի յեկեղեցական-իրավաբանական նորմերը բղխում եյին հույն յեկեղեցական իրավունքի նորմերից, վորոնք ներմուծվում եյին Հայաստան Փոքր Ասիայից մուտք գործող քրիստոնեյության հետ: Այդ պարագան հատկանշալի յե դարձնում հայ յեկեղեցական ֆեոդալականության բյուզանդական կողմնորոշումն Արշակունյաց շրջանում:

3. ՄԱՐԶՊԱՆԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ.— Մենք տեսանք, վոր միջֆեոդալական պայքարն և յերկու հարևան հզոր պետություննե-

րի հակամարտությունը Հայաստանի տերիտորիայի շուրջն այն հետևանքն ունեցան, որ Արշակունյաց տապալումով Հայաստանը մասնատվեց Բյուզանդական կամ Արևմտյան և Պարսկական կամ Արևելյան Հայաստանի: Սրանով Հայաստանի նախարարական կառուցքը ճեղքվածք ստացավ, որ գնալով խորանում էր և ներփակում իր մեջ հետագա քայքայման սաղմերը: Հայկական ֆեոդալիզմն և նախարարական իրավունքը մտնում է իր զարգացման յերրորդ ետապը, հետարշակունյաց ժամանակաշրջանը, որ Պարսկական Հայաստանի վերաբերմամբ մեր պատմության մեջ հայտնի յէ մարզպանական անունով, որովհետև Հայաստանը կառավարվում էր Սասանյանների կողմից նշանակված թագավորական տեղակալներով՝ մարզպաններով: Իսկ Արևմտյան կամ Բյուզանդական Հայաստանը կառավարվում էր Comes-ների ձեռքով, որոնք վարչա-պետական տեսակետից նույն նշանակությունն ունեյին, ինչ որ մարզպաններն Արևելյան Հայաստանում:

Ինչո՞ւմն էր կայանում նախարարական կառուցքի ճեղքվածքը և ի՞նչպես էր անդրադարձել այդ նոր դրությունը նախարարական իրավունքի վրա:

Արշակունիների վերջին ժառանգների վերացումով (մոտավորապես 420 թ.) հայ նախարարներն անմիջորեն յենթարկվում եյին, իբրև ֆեոդալ վասսալներ, իրենց նոր սյուզերեն Սասանյան թագավորներին: Թվում էր, որ նախարարները, Արշակունյաց դինաստիայի տապալումով, հասել եյին իրենց նպատակին. նրանց կենտրոնախույս ձգտումներն ստացել եյին որոշ բավարարություն, դուրս վանելով ասպարեզից իրենց դեմ ծառացող Արշակունիների կենտրոնաձիգ իշխանության քաղաքականությունը: Սակայն հայ նախարարներն Արշակունիների դեմ ծառացող դարավոր պայքարում գործ ունեյին կենտրոնացող իշխանության և ֆեոդալական տիրապետությունների կոնսոլիդացիայի առաջին քայլերի հետ: Իսկ այժմ, Հայաստանի բաժանումով ստեղծված նոր պայմաններում, նրանք ստիպված պիտի լինեյին հաշվի առնել տիրող դրությունը, յերբ Բյուզանդիայում ու Պարսկաստանում սուվերենիտետը պատկանում էր արևելյան տիպի դեսպոտ թագավորներին, որոնք օժտված եյին արդեն կազմա-

կերպված ուժեղ կենտրոնական իշխանությամբ և վաղուց կոնսոլիդացիայի եյին յենթարկել տեղական ֆեոդալական միավորները: Հիրավի, քանի վոր Պարսկական Հայաստանում, սկսած 387 թվից մինչև 429 թ., անվանորեն դեռևս թագավորում եյին Արշակունյաց վերջին ժառանգները, և Սասանյաններն իրենց առաջին քայլերում քաղաքական նկատառումներով հանդուրժում եյին հայ նախարարների տեղական իրավունքները, հայ նախարարները կարծես ապահովել եյին իրենց վիճակը, վորի համար այնքան պայքարում եյին Արշակունիների դեմ: Բայց իրերի դրությունը միանգամայն փոխվում ե Սասանյան Հազկերտ Ա-ի թագավորության վերջին շրջանում և նրա հաջորդների, մանավանդ Հազկերտ Բ-ի (438—457 թ. թ.) և Պերոզի (457—484 թ.թ.) որով, յերբ Բյուզանդիայի դեմ, Հայաստանի տերիտորիայի շուրջը շարունակվող հակամարտության հետեվանքով, Սասանյան թագավորները ձեռնամուխ են լինում սահմանափակելու հայ նախարարների իրավունքները, կոնսոլիդացիայի յենթարկելով նրանց ֆեոդալական դարավոր ինքնուրույնությունն և այն համակերպելով համուր՝ պարսկական պետական կազմին: Նույնը տեղի յե ունենում բյուզանդական կայսրների կողմից իրենց յենթակա Արևմտյան Հայաստանի նախարարների նկատմամբ:

Այս պայմաններում բուռն կերպով դրսևորվում են այն հակասությունները, վորոնք հասունանում եյին մի կողմից՝ կենտրոնախույս ձգտումներով նախարարական ֆեոդալիզմի և մյուս կողմից՝ նոր սյուզերենների, այն ե՝ բյուզանդական կայսրների ու Սասանյան թագավորների միջև, հակասություններ, վորոնք վերջիվերջո պիտի ընդհարվեյին: Այդ հակասության սոցիալտնտեսական հիմքերը կայանում եյին նախ՝ նրանում, վոր Հայաստանի մասնատումով ու բաժանված մասերի անեքսիայով Բյուզանդիոնն ու Պարսկաստանը լայնացնում եյին իրենց շահագործման յենթակա յերկիրը, վորպիսի հանգամանքը բացառապես եր անդրադառնում նախարարների տեղական ֆեոդալական շահագործման վրա. յերկրորդ՝ Պարսկաստանն ու Բյուզանդիոնը, գլխավորելով այն ժամանակվա համաշխարհային առևտուրը Փոքր ու Առաջավոր Ասիայում և մրցելով հեգեմոնիայի հա-

մար, իրենց առևտրական կապիտալի ճանապարհները հարդարելու և ծավալումն ապահովելու շահերից դրդված՝ պետք է վերացնեյին այն խոչընդոտները, վորոնք կային Հայաստանում, իբրև տարանցիկ տերիտորիայում, հանձինս նախարարությունների և ապակենտրոն իշխանությունների։ Այս սոցիալ-տնտեսական հիմքերից էլ բղխում եյին նրանց քաղաքական ծրագրերն ու գործողությունները։

Սասանյան քաղաքականությունն այս դեպքում, ինչպես ակներև է Յեղիշեյի ու Ղազար Փարպեցու Պատմություններից, հայ նախարարական կառուցքը կազմալուծելու և նրա կենտրոնախույս ձգտումները կոտրելու նպատակով՝ դիմում եր բավականին կտրուկ միջոցների։ Սասանյան թագավորների համար առաջնակարգ նշանակություն է ստանում հայ նախարարներին մազդեզանց կրոնին դարձնելու խնդիրը, վորի համար նրանք սկսում են մոգական կրոնի, իբրև պետական կրոնի, բռնի պատվաստումը Հայաստանում։ Դրանով յերկու նպատակ եր հետապնդվում։ Առաջին՝ հայ նախարարներին կրոնական կապերով միացնել պարսկական պետականությանը, վորպեսզի նրանք կախումն ունենան Սասանյան արքունիքից և իրենց դասային շահերով ձուլվեն վերջինիս հետ։ Դրանով խորտակվում եր քրիստոնյա Բյուզանդիոնին հարող որիենտացիան հայ նախարարական իշխանների շարքում, վորոնց գլխավորում եր Մամիկոնյան տոհմը, և, ընդհակառակը, ուժեղանում եր պարսկական որիենտացիայով տոգորված նախարարների կուսակցությունը, վորի մեջ ներգործական դեր եյին կատարում Սյունի և Արծրունի նախարարական տոհմերը։ Յերկրորդ՝ խորտակել յեկեղեցական ֆեոդալական դասը, վորն ամենաուժեղն եր հայ նախարարական կազմի մեջ և ղեկավար դեր եր ստանձնել աշխարհիկ ֆեոդալական միջավայրում, հանդիսանալով ամրակուռ կենտրոնացնող ապարատ, վորն իր գաղափարախոսությամբ ու քաղաքական ձգտումներով միշտ հարած եր քրիստոնյա Բյուզանդիոնին։

Սասանյան քաղաքականությունն այնուհետև իրեն սիստեմ եր դարձրել՝ չճանաչել նախարարների տոհմիկության իրավունքը, նսեմացնել նրանց ֆեոդալական հիերարխիայի աստիճանները, վորոնց հետ կապված եյին ավագ ու կրտսեր նախարարներին

ժառանգաբար ու իրավաբար պատկանող պետական պաշտոնները։ Այդ պաշտոններն այժմ տրվում էին շատ անգամ աննշան նախարարներին, վորոնք հավատարիմ էին ճանաչվում Սասանյանների կողմից կամ ընդունում էին մազդեզանց կրոնը։

Վերջապես, նախարարների ինքնուրույնությունն ու իշխանական արժանապատվությունը նսեմացնելու, ինչպես և նրանց «ըստ օրինի նախնեաց» վաղեմի սոցիալական ու քաղաքական դիրքը թուլացնելու նպատակով՝ նախարարների դատողն ու քննողը, նրանց վրա անմիջական իշխանություն գործադրողը դառնում է վո՛չ թե դերագույն սենյորը՝ պարսից թագավորն, այլ, ըստ յերևույթին, նրա տեղակալը՝ մարզպանը։ (ՂՓ, III, 98—161 էջ)։

Այսպիսի հարվածներով էին ջանում Սասանյան թագավորները ջլատել հայ նախարարների կենտրոնախույս տենդենցները և խարխլելով նրանց սոցիալական ու քաղաքական նշանակությունը, սահմանափակել նախարարական ինքնուրույն իրավունքներն ու համաձուլել նրանց պարսկական ֆեոդալականության հետ։

Պարսկական այդ քաղաքականության հետևանքն յեղավ այն, վոր նախարարների շարքերում խմորվող դժգոհությունը վերջիվերջո բռնկեց ապստամբությամբ, վորի գլուխն էր անցած բյուզանդական կողմնորոշման ամենաակտիվ պաշտպան Մամիկոնյան իշխանական տոհմը։ Այդ ապստամբությունը, վոր տևեց գրեթե կես դար, հայ պատմագրության մեջ հայտնի յե իր առաջին շրջանում Վարդանանց (սպարապետ Վարդան Մամիկոնյանի անունով) և ապա հետագայում Վահանանց (սպարապետ Վահան Մամիկոնյանի անունով) պատերազմներ անուններով։ Բնորոշ է, վոր հայ պատմագիրները Սասանյանների դեմ այդ ապստամբական շարժումները նկարագրում են իբրև կրոնական ազատագրական պատերազմներ, վորտեղ, հիրավի, հայ բարձր կղերի ներկայացուցիչները ներգործող դեր էին խաղում։ Այս հանգամանքը դիպվածական չէր։ Մենք արդեն տեսանք, թե ի՛նչպիսի դիրք էր բռնել հայ յեկեղեցական ֆեոդալականությունն Արշակունիների տապալման գործում և թե ի՛նչպես նա Մամիկոնյան նախարարների հետ միասին ղեկավարում էր

Պարսկական Հայաստանում բյուզանդական օրիենտացիան: Երբ պարսկական՝ քաղաքականությունն սկսեց սահմանափակել հայ նախարարների դարավոր արտոնություններն ու ինքնուրույն իրավունքները, անշուշտ, այդ քաղաքականության հարվածները տեղում էյին նաև յեկեղեցական դասի գլխին: Ուստի հոգևոր իշխանները, իրենց ֆեոդալական շահերից դրդված, հենց սկզբից հանդիսացան այդ ապստամբության հրահրողներն ու գործոն մասնակցողները, այդ պատերազմներին տալով կրոնական ազատագրման բնույթ:

Այդ ապստամբությունները ունեցան իրենց հետևանքները: Սասանյան Պարսկաստանը, վոր այն ժամանակ զգալիորեն թուլացել էր արտաքին պատերազմներից, ստիպված յեղավ վերջիվերջո զիջել պայքարող նախարարներին, և Վաղարշ թագավորի (484–488 թ. թ.) օրով հաշտություն կնքվեց: Նվարսակի դաշնագրով վերահաստատվում էյին նախարարների ու հոգևոր ֆեոդալների նախկին իրավունքները:

Այս տևական արյունալի պատերազմները Սասանյանների դեմ, ծանր կերպով հարվածում էյին Հայաստանի տնտեսական դրությանը: Յեթե այստեղ մեծապես վնասվում ու ավերվում էյին ֆեոդալ իշխանների տնտեսությունները, ապա ևս առավել տուժում էյին նրանց յենթակա շինական մասսաները, իսկական արտադրողները, վորոնք, անշուշտ, տրամադիր չէյին պաշտպանելու իրենց շահագործող նախարարների շահերը:

Սակայն պարսիկների կրոնական հալածանքները և մանավանդ բունի հարկահանության սիստեմն այնպիսի ծանր ու տաղտկալի չափերով էյին ճնշում գյուղացիությանը, վոր վերջինս էլ իր փրկությունը տեսնում էր օտար նվաճողների դեմ ապստամբելու մեջ: Պատմագիր Յեղիշեն քանիցս հիշատակում է պարտքերի ծանրության մասին. «էր ծանրութիւն հարկացն. քանզի ուստի արժանն էր առնուլ հարիւր դահեկան չափ, կրկին առնուին. սոյնպէս և եպիսկոպոսաց և երիցանց դնէին; ոչ միայն շինաց, այլև ուեստակաց: Նա բնաւ ո՛վ իսկ կարէ պատմել վասն ծանրութեան մաքսից և սակից, բաժից և հասից և հարկաց լեռանց և դաշտաց և մայրեաց. ոչ ըստ արքունի արժանաւորութեանն առնուին, այլ հինաբար յափշտակելով» (էջ

43)։ Յեվ այնքան հարկերի ծանրությունը, Յեղիշեյի կարծիքով, նպատակ ուներ շինականներին տնտեսապես քայքայել. «զի զշինականսն վատնեսցէ» (Անդ, 42)։ Սա մի պարարտ հող էր գյուղացիության ապստամբության համար, այս անգամ արդեն ուղղված պարսիկների չարաշահումների ու անտանելի հարկերի դեմ, որի ծանրության ամբողջ բեռը շինականության վրա էր ընկնում։ Թեև նախարարների ապստամբությունները, սկըզբում Վարդան Մամիկոնյանի և հետո Վահան Մամիկոնյանի գլխավորությամբ, դասակարգային բնույթ էին կրում, որոնց անմիջական նպատակն էր՝ պաշտպանել ֆեոդալական իրավունքներն ու վաղեմի արտոնությունները, բայց և այնպես այդ ապստամբությանը միանում է նաև շինական դասակարգը։ Այստեղ տեսնում ենք ժամանակավոր դաշն երկու հակադիր դասակարգերի՝ տիրապետող ազնվական կալվածատերերի և շահագործվող գյուղացիական մասսաների, որոնք թեև մեկնում էին տարբեր սոցիալական շահերից, բայց դիմում էին միենույն կետին, այն է՝ տապալել նվաճողներին, որոնցից երկու կողմերն էլ նեղվում և տուժում էին։ Այսպիսով, երկու ապստամբական հոսանքները ձուլվում են միասնական շարժման, որ դառնում է ազգային ազատագրման նպատակ։

Մեր բուրժուական պատմաբանների սխալն այն է, որ նըրանք, հավատարիմ մնալով իրենց դասակարգային դավանաբանությանը, այդ ապստամբությունների ազգային նշանակությունը վերագրել են միմիայն տիրապետող նախարարական դասակարգին և համակել ռոմանտիկ գույնով, շինծու ազգայնական բնույթով։ Իսկ վերջերս մեր նորագույն պատմաբանները, որոնցից մի քանիսն իբր թե կանգնած էին մարքսիստական պատմագիտության սկզբունքների վրա, ձգնում էին այդ ապստամբությունները վերածել կրոնական պայքարի և կապել միայն տիրապետող դասակարգի հետ, յելնելով այն փաստից, որ այդ ապստամբական շարժումներին ակտիվ մասնակցություն ուներ նաև հայ հոգևորականությունը։ Այդ մակերեսային տեսակետը հետևանք է մեխանիստական մոտեցման, որի հետևանքով միանգամայն անտեսել են պարսից տիրապետության ներքո հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական զարգացման հիմ-

նական մոմենտները։ Այդ տեսակետի կողմնակիցները մոռանում են, որ, ինչպես հաճախ տեսնում ենք նաև օտար պատմության մեջ, ժողովրդական, մանավանդ գյուղացիական, ազատագրական շարժումները շատ անգամ ընթանում էին կրոնական աստառի տակ։

Այդ պայքարը Սասանյան Պարսկաստանի դեմ, թեև վերջացավ նախարարական դասակարգի ֆեոդալական իրավունքների ու արտոնությունների վերականգնումով, բայց և այնպես նախարարությունները, տնտեսապես քայքայվելով, բավականաչափ կորցրել էին իրենց վաղեմի քաղաքական ուժն ու ազդեցությունը։ Միայն եկեղեցական ֆեոդալական դասն էր, որ այս քաղաքական իրադարձություններում չքայքայվեց, այլ միջից դուրս եկավ, վերականգնելով իր նախկին դիրքն ու ազդեցությունը, ուժեղանալով ու իր ձեռքին կենտրոնացնելով ղեկավար դերը երկրի քաղաքական ու հասարակական կյանքում։

4. ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ.—Նույնանման պատմական տեսարան է ներկայացնում նախարարական կազմը և սրա հետագա վիճակը Բյուզանդական Հայաստանում։ Արշակունյաց անկումով և Հայաստանի բաժանումով Բյուզանդիայի ձեռքն անցավ Բարձր Հայքը, որը Բյուզանդական պաշտոնական վավերագրերում կոչվում էր Armenia magna (Մեծ Հայաստան) կամ Armenia interior (Ներքին Հայաստան)։ Սակայն նախքան այդ բաժանումը, տակավին Արշակ II-ի ժամանակ, Բյուզանդիոնի փաստական իշխանության ներքո էին գտնվում այսպես կոչված Հայկական սատրապությունները (Անձիտ, Անգեղտուն, Հաշտյանք, Ծոփք, Բաղաց), որը պարզորոշ կերպով հայկական նախարարություն տերմինի թարգմանությունն է։ Թե՛ սատրապիաներում և թե՛ Ներքին Հայաստանում անփոփոխ էին թողնվել նախարարների տեղական վարչական ինքնուրույնությունն և վաղեմի իրավունքները։ Սատրապիաներն անմիջորեն կախում ունեին կայսրներից, իսկ Ներքին Հայաստանում գտնվում էր կայսերական ներկայացուցիչը կամ տեղակալը՝ comes, որն իր իրավական-քաղաքական նշանակությամբ համազոր էր Պարսկական Հայաստանի

մարզպանին: Այս դրությունն անփոփոխ շարունակվում եր գրեթե մի ամբողջ դար, մինչև Զենոն կայսրի իշխանության օրերը (474—491 թ. թ.): Ըստ յերևույթին այդ ժամանակ փորձեր են յեղել սահմանափակելու հայ նախարարների իրավունքներն ու արտոնությունները և ընդհանրապես սեղմել նրանց կենտրոնախույս ձգտումները, վորովհետև պատմական աղբյուրներում նկատելի չե, վոր հայ նախարարների շարքերում խմորվել են ինչ-վոր դժգոհություններ: Այդ դժգոհությունն է, վոր դրդել եր բոլոր հայ նախարարներին միանալ Զենոն կայսրի դեմ բարձրացված ապստամբությանը (484 թ.), յերբ Արևելյան բանակի զորապետ Իլլուսը վոտքի յելավ՝ կայսերական գահի վրա Լեոնտիոսին բազմեցնելու համար:

Զենոն կայսրը, ճնշելով այդ ապստամբությունը, անմիջապես ձեռնամուխ յեղավ հայ նախարարությունների իրավունքների սահմանափակմանը: Նա վերացրեց «նահապետություն» կամ «տանուտերություն», այսինքն՝ տոհմային ժառանգականության իրավունքը: Սատրապներն ու նախարարներն այսուհետև նշանակվում եյին կայսրի ընտրությամբ, ի հարկե, նախարարական տոհմից, բայց առանց պահպանելու ժառանգականության ու ավագության կարգերը: Այսպիսով, Բյուզանդական Հայաստանում էլ հայ նախարարությունները զրկվում եյին ֆեոդալական իրավունքի հիմնական սկզբունքից:

Նախարարական իրավունքին հասցրած այս առաջին հարվածին 40 տարի անց հաջորդեց յերկրորդ, ավելի արմատական հարվածը Հուստինիանոս կայսրի (527—565 թ. թ.) ձեռքով, վորով միանգամայն քայքայվեց նախարարական կարգը Բյուզանդական Հայաստանում: Հուստինիանոսի այդ քաղաքականության առիթ հանդիսացավ Պարսկաստանի դեմ մղած պատերազմը, վորի մեջ Բյուզանդիան պարտություն կրեց: Պարսկական զորքերը, ներս խուժելով Բյուզանդական Հայաստան, վորի սահմանների պաշտպանությունը դրված եր նախարարների վրա, հասան մինչև Պոնտոս: Այս դեպքից հետո Հուստինիանոսը մի շարք որենսդրական ակտերով ձեռնամուխ յեղավ միաձուլելու իրեն յենթակա Հայաստանը Բյուզանդիայի հետ: Այդ նպատակով Հայաստանը վերակազմվեց ռազմա-զինվորական տեսակետից: Հաստատվեց ընդհանուր հրամանատարություն՝ զորական մագիստ-

դոս— magister militum, կամ ստրատեգ, որը նշանակվում էր կայսրի կողմից և իր տրամադրության ներքո ուներ Բյուզանդական, զորքեր՝ իրենց զորավարներով: Այսպիսով, վերացվեցին Comes-ի պաշտոնը և նախարարների զինվորական իշխանությունն ու դերը (528—529 թ.թ.): Այնուհետև 536 թ. XXXI Novella-ով Հայաստանը վարչա-քաղաքական տեսակետից բաժանվել էր չորս մարզերի, իրենց հատուկ, կայսրի կողմից նշանակված բյուզանդական վարչապետներով[55]: Հետևապես, նախարարները զրկվում էին նաև իրենց ներքին վարչա-քաղաքական իրավունքներից: Նրանք ավելի ևս ծանր հարված ստացան, երբ III Եդիկտով— De successione armeniorum (535 թ.) և XXI Novella-ով De armeniis ut et illi per omnia romanorum leges sequantur (536 թ.) ներմուծվեցին հռոմեական իրավունքը, մանավանդ ժառանգական իրավունքի հռոմեական նորմերը, և վերացվեց տեղական հայ իրավունքի, գլխավորապես սովորութական իրավունքի կիրառումը:

Ինչպես տեսնում ենք, Բյուզանդիոնի հետևողական քաղաքականությամբ կազմալուծվում էին դարավոր նախարարական կարգերը: Նախարարական տոհմերը կորցնում էին իրենց ֆեոդալական իշխանության հիմնական կռվանները և զրկվում իրենց տնտեսական ու քաղաքական արտոնություններից, ինքնուրույնությունից:

Սակայն Հուստինիանոսի քաղաքական վերափոխումներով նրան յենթակա Հայաստանում բնավ չէր վերացվում ֆեոդալիզմը, ֆեոդալական հասարակարգը, փոխարեն հանդիսանում էր և ինքը՝ Բյուզանդական կայսրությունը, այլ միմիայն վերացվում էր նրա նախարարական ձևը, որ իր կենցաղային ու սոցիալ-տնտեսական, նաև քաղաքական յուրահատուկ գծերով, չէր համապատասխանում բյուզանդական ֆեոդալ հասարակության կառույցքին ու շահերին: Բանը նրանումն է, որ հայ նախարարական կազմն իր սոցիալ-տնտեսական ու կուլտուրական բնորոշ գծերով կրում էր պարթևա-իրանական ազդեցության հետքեր, նա հար ու նման էր պարսկական ֆեոդալիզմին, որի հետ յերկար ու ձիգ դարերով ապրել էր կողք-կողքի և կապված էր աներկատելի թելերով: Այնպես որ Հայաստանի ֆեոդալիզմի նա-

խարարական կազմը, չնայած նրա բաժանմանը Բյուզանդիոնի ու Պարսկաստանի միջև, ներկայացնում եր միասնական ամբողջություն իր դասակարգային շահերով և կուլտուր-կենցաղային պայմաններով: Յեվ վորովհետև այդ նախարարական Հայաստանի գրեթե ³/₄-ը Պարսկաստանի իշխանության ներքո յեր, ապա բնական ե, վոր Բյուզանդիոնին բաժին ընկած Հայաստանի նախարարությունները վորոշ ձգողականությամբ հարում եյին Պարսկական Հայաստանին: Նրանց մեջ չեր մարում տակավին ֆեոդալական կենտրոնախույս ձգտումը, վոր ավանդաբար իր մասին զգալ եր տալիս թե՛ Պարսկաստանի և թե՛ Բյուզանդիայի հայ նախարարական եքսպանսիայի տենդենցներում: Բավական ե միայն հիշել Մամիկոնյան նախարարական տոհմի խաղացած քաղաքական դերը հայ նախարարությունների շարքերում, Մամիկոնյանների, վորոնք կալվածքներ ունեյին Հայաստանի այդ յերկու հատվածներում: Անշուշտ, Բյուզանդիոնին աննկատելի չեյին մնում այս հանգամանքները, վորոնք կայսրների դեսպոտական իշխանության շահերին միանգամայն հակասում եյին: Այստեղից ել առաջ բյուզանդական անվերջ ու սիստեմատիկ քաղաքականության միջոցառումները, մանավանդ Հուստինիանոսի որով:

Այդ միջոցառումները թուլացնում և կազմալուծում եյին հայկական ֆեոդալիզմի նախարարական հիմքերն և այն խմորում ու միաձուլում եյին ընդհանուր բյուզանդական ֆեոդալիզմին, վոր կառուցված եր խիստ կենտրոնացած և բյուրոկրատական սիստեմի վրա, յենթակա լինելով կայսրների դեսպոտական իշխանության ու կայսրության մեջ գործող հռոմեյական իրավունքի նորմերին:

Ի հարկե, այս ամբողջ քաղաքականությունն առանց դիմադրական արձագանքի չեր անցնում կենտրոնախույս տրադիցիաներով ու տոհմային ֆեոդալական իրավունքի շահերով սնված հայ նախարարների կողմից: Բյուզանդական Հայաստանում ել, ինչպես Պարսկական Հայաստանում, բռնկում եյին ապստամբություններ ու դավադրություններ, վորոնք ճնշվում եյին ամենայն դաժանությամբ: Այդ պայքարը Բյուզանդիայում չունեցավ նախարարների համար վոչ մի հաջողություն: Ընդհակառակը, կայսրներն ոգտվում եյին ամեն անգամ այդ առիթներից, վորպեսզի ավելի կտրուկ ու հիմնովին

կիրառեն իրենց քաղաքականությունը: Նախարարները զրկվում էին ո՛չ միայն իրենց իրավունքներից ու քաղաքական նշանակությունից, ո՛չ միայն քայքայվում էին տնտեսապես, այլև զրկվում էին հողային հարստություններից և գաղթեցվում էին Կ. Պոլիս կամ Բյուզանդիայի այլ շրջանները, Հայաստանի սահմաններից հեռու: Յեթե Պարսկական Հայաստանում հայ նախարարներն իրենց պայքարի յելևեջներում Սասանյանների դեմ կարողացան որոշ հետևանքների հասնել, գեթ պահպանելով նախարարական, թեև բավականաչափ թուլացած, կազմի հիմքերը, ապա Բյուզանդական Հայաստանում նախարարական իշխանություններն իսպառ վերացան քաղաքական ասպարեզից:

Ստեղծված պայմաններում նախարարական տների բյուզանդական օրիենտացիան կորցրեց իր տակի հողն և, ընդհակառակն, մանավանդ վերջին Սասանյանների հաշտվողական քաղաքականության հետևանքով, սկսեց տեղի տալ պարսկական օրիենտացիային ո՛չ միայն Պարսկական, այլև Բյուզանդական Հայաստանի նախարարների շարքերում: Ինչպես վկայում է Հուստինիանոսի ժամանակակից բյուզանդական պատմագիր Պրոկոպիոսը (De bello persico III, 2), նախարարները դեռ պարսկա- բյուզանդական պատերազմից առաջ (540–562 թ. թ.), դիմում էին պարսիկների թագավոր Խոսրով Նուշիրվանին, ռազմական օգնություն հայցելով ընդդեմ կայսրների: Նմանապես շատ հայ նախարարներ, վորոնք սկզբներում անցել էին Բյուզանդական Հայաստան, թողնում էին յերկիրն և, վերադառնալով Պարսկական Հայաստան, հաստատվում էին այստեղ ու նորից տեր դառնում իրենց կորցրած իրավունքներին:

Այս հակաբյուզանդական տրամադրությունը Հայաստանի տիրապետող դասակարգերի մեջ առավել սուր արտահայտություն ստացավ, յերբ բյուզանդական կայսրերն իրենց քաղաքականության մեջ՝ նախարարական իշխանությունները բյուզանդականի հետ համաձուլելու ձգտումներում՝ սկսեցին նաև գործադրել կրոնա- դավանաբանական միջոցներ: Դվինի յեկեղեցական ժողովը 554—555 թ. թ., վոր գումարվել էր այդ քաղաքական հանգամանքներում և վորին մասնակցում էին նաև աշխարհիկ ֆեոդալներ, պաշտոնապես ազդարարեց հայերի հակաբյուզան-

դական տրամադրությունը, մերժելով քաղկեդոնական դավանանքը և կտրականապես բաժանելով հունականից հայ յեկեղեցին, իբրև հայ ազգային: Այս կրոնա-դավանաբանական ակտի մեջ արտացոլում էր քաղաքական մի ձեռնարկումն, որով հայ տիրապետող ֆեոդալական դասակարգն ամրացնում էր իր թուլացած դիրքերն և վերականգնում իր նախարարական իրավունքները, ընդ որում հայկական ֆեոդալիզմի և ընդհանրապես կուլտուրական ու քաղաքական կյանքի կենտրոնը մնում էր բացառապես Պարսկական Հայաստանը:

Այսպիսով, նախարարությունները, Արշակունյաց թագավորության անկումից հետո, անվերջ պայքար մղելով իրենց ֆեոդալական տեղական իրավունքներն ու արտոնությունները պահպանելու, թերևս նաև լայնացնելու համար, չհասան այն նպատակներին, որոնց նկատառումներով նրանք թուլացրել և նույնիսկ տապալել էին հայ թագավորական իշխանությունը: Ընդհակառակը, Բյուզանդական Հայաստանում հայ նախարարական կարգը քայքայվեց, համաձուլվելով բյուզանդական ֆեոդալիզմին, իսկ Պարսկական Հայաստանում նախարարությունները թեև պահպանեցին որոշ չափով իրենց գոյությունը, բայց չէին ներկայացնում կոմպակտ մի զանգված, հանուր դասակարգային շահերի գիտակցությամբ ներշնչված: Պարսկական Հայաստանի նախարարները, մի կողմից՝ ներքին պայքարով ջլատված և մյուս կողմից՝ իրենց սյուզերեն Սասանյան թագավորների կենտրոնաձիգ իշխանությանը համառությամբ դիմադրավելով, մնում էին ապակենտրոնացած բջիջներ Հայաստանի ֆեոդալիզմի մարմնում, պարտիկուլյարիստական ինքնամփոփ իշխանություններ, որոնք զգալի ճեղքվածք էին առաջացնում նախարարական ընդհանուր կառուցքում և թուլացնում այդ կազմը: Այդ թուլությունն որհասական նշանակություն ունեցավ նախարարությունների համար, որոնք անկարող յեղան որևէ լուրջ դիմադրություն և միասնական ինքնապաշտպանություն փորձ արտաբերելու հետագա արաբական մրրկալի արշավանքների հանդեպ:

5. ՅԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՖԵՈԴԱԼԻԶՄ — Միակը հայ յեկեղեցական ֆեոդալականությունն էր, որ իր կենտրոնացած կազմով ու ապարատով կարողացավ անվնաս դուրս գալ Արշակունյաց անկմանը

հեռանալ մրրկածուփ քաղաքական իրադարձություններից և կորցնել իր կենտրոնացումը նախարարական պարտիկուլյարիզմի պայմաններում: Կարելի է համարձակ ասել, վոր Արշակունյաց թագավորական կենտրոնաձիգ իշխանության դերն ու նշանակությունը Հայաստանի քաղաքական կյանքի այս շրջանում փոխանցվեցին վորոշ մոդիֆիկացիայով եկեղեցական ֆեոդալականությանը: Սա, հակառակ նախարարական պարտիկուլյարիզմին, հանդիսանում էր իրական գործոն համայն Հայաստանում, իր շուրջը կենտրոնացնելով աշխարհիկ ֆեոդալներին և նույնիսկ իր մենաշնորհը դարձնելով արտաքին քաղաքականության ղեկավարումը Սասանյան ու Բյուզանդական թագավորների նկատմամբ:

Մենք արդեն վերը նշել ենք, թե ի՛նչ դեր էր խաղում եկեղեցական ֆեոդալականությունը հայ նախարարների ապստամբական շարժումներում: Բայց այդ դերն ու ազդեցությունն ավելի ուժեղ արտահայտվեցին երկրի ներքին կյանքում: Նա վո՛չ միայն իր ձեռքում էր պահում երկրի կուլտուր-լուսավորական կյանքը, նա վո՛չ միայն ներս էր խուժում նախարարական տների փոխադարձ հարաբերությունների ու հասարակական կենցաղի հարցերի մեջ, այլև ստանձնել էր իրավական ու վարչական գործունեության մենաշնորհն ամբողջ Հայաստանում: Եթե նախարարները, հենվելով իրենց ֆեոդալական իրավունքի վրա, դատ էին տեսնում և օրենք սահմանում իրենց կալվածական երկրի ներսում ըստ տեղական սովորութական իրավական նորմերի, ապա այժմ, երբ բացակայում էր հայ թագավորական գերագույն իշխանությունը և նախարարական կարգն էլ բավականաչափ խարխլվել էր, եկեղեցական ֆեոդալական իշխանությունն էր դատ ու օրենք տեսնում, իրավարարական ու օրենսդրական ակտիվ գործունեություն արծարծում, տարածելով իր հեղինակությունն անխտիր բոլոր նախարարական երկրների վրա: Այս դեպքում կղերական ֆեոդալականության համար ազդեցիկ միջոց էին եկեղեցական ժողովները, վորոնք կյանք առան ու սկսեցին գործել մանավանդ Արշակունյաց իշխանության տապալումից հետո:

Այդ եկեղեցական ժողովները, վորոնք գումարվում էին հոգևոր ֆեոդալ իշխանների ձեռներեցությամբ ամբողջ Հայաստանի մասշտաբով, ի տարբերություն տիեզերական ու ոստար

երկրներում տեղի ունեցող եկեղեցական ժողովների, հայանի էին ազգային ժողով անունով: Սրանց մասնակցում էին շատ անգամ նաև աշխարհիկ ֆեոդալներ: Այդ ժողովներն զբաղվում էին, բացի կրոնական ու եկեղեցական հարցերից, նաև աշխարհիկ բնույթ ունեցող խնդիրներով, որոնց մեջ առաջնակարգ տեղ էր գրավում օրենսդրական գործունեությունը: Այդպիսի ժողովներից առաջինն ու նշանավորն էր Շահապիվանինը[56], որ տեղի է ունեցել 443 թ., մոտավորապես այն խառն ժամանակները, երբ հասունանում էր նախարարական ապըստամբությունը Վարդան Մամիկոնյանի ղեկավարությամբ: Այդ ժողովին ներկա էին, բացի բազմաթիվ հոգևորականներից, նաև բոլոր նախարարներն ու զանազան ֆեոդալական իշխաններ, գործակալներ, և այլն: Վերջիններս միաբան դիմում էին ժողովի ղեկավար հոգևորականներին. «զեղեալ կարգ օրբայն Գրիգորի և Ներսէսի և Սահակայ և Մաշտոցի զոր անդրէն հաստատեցէք և այլ զկանոնս, որպէս և ձեր կամք են և մեք կամօք և ախորժելով յանձն առնումք... Դուք զայն կարգեցէք և մեք հնազանդ եմք և հաստատուն պահեմք» (ԿՀ., 59—60): Շահապիվանի ժողովի կանոնական որոշումները բնորոշ են նրանով, որ սահմանվում են ո՛չ միայն եկեղեցական իրավունքի, այլև քաղաքացիական ու քրեական իրավունքի նորմեր, որոնց կիրառումը, ինչպես ակներև է ժողովի կանոնների վերահիշյալ նախաբանից, պարտադիր է դառնում նաև աշխարհիկ ֆեոդալների համար:

Ահա այս ժամանակաշրջանի մի շարք եկեղեցական ժողովներում, ինչպես Դվինի Բ (554—555 թ. թ.), Դվինի Դ (648 թ.), նույնպես սահմանվում են նոր կանոններ և կամ վերահաստատվում նախորդ ժողովների կանոնները, որոնց մեջ որոշ չափով տեղ են գտնում նաև քաղաքացիական ու պատժական իրավունքների նորմեր:

Բացի եկեղեցական ժողովներից, կղերական ֆեոդալանությունն օրենսդրական գործունեություն էր արծարծում նաև առանձին կաթողիկոսների կամ ազդեցիկ եպիսկոպոսների ձեռքով: Սրանք յուրացրել էին իրավունք՝ հրատարակելու կանոններ պարտադիր գործադրության համար: Այդ կանոնների մեջ, ինչպես օրինակ՝ «Ներսեսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամի-

կոնէից Եպիսկոպոսի», կամ «Ներսիսի Հայոց Հայրապետի», հանդիպում են նաև քաղաքացիական իրավունքի նորմեր, գլխավորապես ընտանեկան իրավունքի:

Ամփոփելով մեր ասածները հայ իրավունքի զարգացման առաջին շրջանի, այն է՝ նախարարական իրավունքի մասին, տեսնում ենք, որ այդ շրջանի հասարակական ձևում գործող իրավանական նորմերն ու իրավական ինստիտուտները, իբրև վերնաշենք ֆեոդալական Հայաստանի նախարարական կարգի, բղխում են հենց նախարարական սոցիալ-քաղաքական կառուցքից: Այսպիսով, նախարարությունները ու նրանց գլխավորող թագավորական իշխանությունն հանդիսանում են իրավադիր գործոններ, որոնք սահմանում են իրենց դասակարգային տիրապետությունն ու գոյությունն ապահովող իրավանական նորմեր: Այդ նախարարական իրավունքի նորմերն երբեք գրի չեն առնվել ու օրենսդրական որևէ հեղինակավոր մարմնի կողմից չեն հաստատվել, քանի որ իրականում այդպիսին ընավ գոյություն չի ունեցել, այլ ուժ և կիրառումն են ստացել սոսկ սովորույթի հիման վրա, որը հասարակության իրավակարգացության մեջ պարտադիր նշանակություն ուներ:

Սովորութական իրավունքի համաձայն՝ Արևելքի ֆեոդալական պայմաններում դեսպոտական պետության հիմնական հատկանիշներից մեկն էլ այն էր, որ թագավորի բռնապետական իշխանության մեջ էր պարունակվում նաև օրենսդիր ֆունկցիան, որ կապված էր թագավորի անձնավորության հետ: Մեր մի քանի պատմագիրներ հիշատակում են թագավորների հրապարակած օրենքներ ու կարգադրություններ, բայց չեն նշում, թե ինչ ձևով էր այդ տեղի ունենում:

Ագաթանգեղոսը պատմում է, որ Տրդատ թագավորն ուղղում էր նախարարներին և ընդհանրապես Հայաստանի «մեծամեծներին, գործակալներին և շինականներին» հատուկ հրովարտակներ՝ վարչական-պետական հարցերին վերաբերող որոշումներով, որոնք օրենքի ուժ ունեյին:

Օրինակ՝ Տրդատը հրապարակում է հրովարտակ աստվածներին պաշտելու մասին և հակառակողների վերաբերմամբ խիստ պատիժ սահմանում: «Արդ, եթէ յանկարծ ոք թէ գտցի, որ դիցն անպատուեսցէ, և գտցեն զայնպիսին՝ կապեալ ոտիւք և

կապեալ ձեռօք և կապեալ պարանոցաւ 'ի դուռն արքունի ածցեն. և տուն և կեանք և արարք և ստացուածք և գանձք՝ այն ամենայն նոյնոցիկ լիցի, որ ղայնպիսին 'ի մէջ ածցեն» (Աղ. Ժ., 75)։ Նույնպիսի հրովարտակ է արձակում Տրդատը քրիստոնյաների դեմ, փորձելով նրանց ձերբակալել և բերել «ի դուռն արքունի», իսկ քրիստոնյաներին թաքցնողների վերաբերմամբ սահմանում է. «այսպիսին ընդ մահապարտս համարեալ լիցի, և ի հրապարակ արքունի եկեալ մեռցի, և տուն նորա յարքունիս երթիցէ» (Անդ, ԺԲ, 77)։ Քրիստոնեությունն ընդունելուց հետո Տրդատ թագավորը սահմանում է օրենք գյուղական հոգևորականներին որոշ չափի հողաբաժիններ հանդերձ շինականներով հատկացնելու մասին (Անդ, ԾԺԹ., 423)։ Սակայն այդ ամենը ժամանակավոր բնույթ էր կրում, դիպվածական մոմենտին կոնկրետացած կարգադրություն էր, որը, բխելով դեսպոտական իշխանությունն անձնավորող թագավորից, ստանում էր օրենքի նշանակություն, քանի նրա հեղինակը կենդանի էր և իշխում էր։

Մենք միժամանակ տեսանք, որ նախարարական կարգն իր զարգացման պրոցեսում, այն է՝ վաղագույն ֆեոդալիզմի և ապա Արշակունյաց թագավորության ֆեոդալիզմի առաջին երկու էտապներում, վորոշակի ձևավորված գոյություն ուներ երկրի քաղաքական պայմաններում։ Հետևապես այդ պայմաններում գործող իրավունքը, իբրև ֆեոդալական, բխում էր այդ նախարարական կարգի էությունից և, ամբողջովին հիմնված լինելով սովորութական իրավունքի վրա, կարող չէր դրաման յերրորդ էտապում, քաղաքական իրադարձությունների ճնշման ներքո, ճեղքվածներ ստանալով, կորցնում է վաղեմի ուժն ու ազդեցությունը, տեղի տալով հոգևոր ֆեոդալականության առաջ։ Նախարարական իրավունքը, թեև չի կորցնում իր սովորութա-իրավական բնույթը, բայց յենթարկվում է վորոշ չափով յեկեղեցական ֆեոդալականությանը, համակերպվելով նրա դատական-իրավարանական գործունեությանը, հանդուրժելով նրա օրենսդրական իրավասությունը։ Այս պարագաներում նախարարական իրավունքի նորմերը մասամբ ստանում են նշանավոր արտահայտություն յեկեղեցական ֆեոդալների ձեռքով ու ամփոփվում են կանոնական իրավունքի մեջ, մարմնանում են յեկե-

ղեցական ժողովների ու առանձին կաթողիկոսների կողմից հաստատված կանոնադրություններում, վորոնք նույնպես իրենց եյությամբ ֆեոդալական հասարակության իրավահայեցողության արգասիքներ եյին:

## II. ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԿԱՄ ԱՐԱԲԱ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՇՐՋԱՆ

1. *ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ.* — *Միանգամայն փոխվում են քաղաքական-տնտեսական պայմանները Հայաստանում արաբական տիրապետության ժամանակ, յերբ առաջանում են խոշոր սոցիալական տեղաշարժեր: Արաբական արշավանքները վողողեցին Հայաստանը 640 թվականից: Գրեթե կես դար տևող մարտական պայքարը Բյուզանդիայի ու արաբների միջև Հայաստանի տերիտորիան գրավելու շուրջը՝ վերջացավ արաբների հաղթանակով 698 թ., յերբ նրանք իրենց ձեռքը գցեցին ամբողջ Մեծ Հայքը: Հայաստանը զուրկ եր կենտրոնական ղեկավար իշխանությունից և տրոհված եր գրեթե ինքնուրույն, ցիրուցան ֆեոդալական իշխանությունների, վորոնք իրարից անջատ մարտնչում եյին նոր նվաճողների դեմ, ապավինած սոսկ իրենց սեփական զինվորական ուժերին և ամրոցներին: Ուստի արաբները դյուրին կերպով կարողացան խորտակել նախարարների դիմադրությունը և գրավել ամբողջ յերկիրը: Այնուհետև Հայաստանը, դառնալով արաբական խալիֆատի հպատակ յերկիր, կառավարվում եր խալիֆի ներկայացուցիչ-տեղակալի միջոցով, վորը հայ մատենագրական աղբյուրներում սովորաբար կոչվում է* վոստիկան, *յերբեմն ել՝* ամիր: *Այդ տեղակալը նստում եր Դվինի մայրաքաղաքում, վոր այն ժամանակ խոշոր վաճառաշահ կենտրոն եր և գտնվում եր տարանցիկ առևտրական ճանապարհների հանգույցի վրա:*

*Արաբական նվաճողական արշավանքները հաղթականորեն ծավալվում եյին հանուն մահմեդական-իսլամական կրոնի: Այդ կրոնն իրականում հանդիսանում եր արաբական հասարակության մեջ կատարվող սոցիալ-տնտեսական հեղաշրջման մի վերնաշենք և միաժամանակ դառնում եր նորելուկ տիրապետող դասկարգի ձեռքին մի հզոր զենք՝ շահագործման եքսպանսիայի համար: Արաբների վաչկատուն տոհմային կազմակերպությունե-*

րում տակավին Մահմեդից առաջ տեղի ունեցող սոցիալական շերտավորումը հուժկու խթան է ստանում առևտրա-վաշխառուական կապիտալի զարգացումով, որ Արաբական թերակղզուց ձգտում էր դեպի այն ժամանակվա համաշխարհային շահաստանները՝ Միջերկրածովյան ավազանն ու Միջագետքը: Այդ սոցիալական տրոհման հետևանքով ֆեոդալականացած տարրերն իրենց անասնապահական ու նորաստեղծ յերկրագործական տնտեսությունների շահագործման ախորժակը հագեցնելու համար ձեռնարկում էին նոր յերկրների նվաճումներ, նոր հողերի հափշտակման և միաժամանակ ճանապարհ բաց անում առևտրա-վաշխառուական կապիտալի առաջ: Այդ նվաճողական ձեռնարկումները մի կողմից՝ հարստացնում էին ֆեոդալների նյութական կարողությունը, ՚իսկ մյուս կողմից՝ ժամանակավորապես հարթում էին արտատնտեսական ճնշման սրությունը շահագործվող արաբական մասսաների մեջ, հնարավորություն տալով նրանց նույնպես քիչ թե շատ շահվելու ռազմական ավարների փշրանքներից:

Ահա այդ իրական նպատակներից էին բխում Հայաստանի նվաճումն արաբների ձեռքով և այն քաղաքականությունը, որ վարում էին նրանք հպատակեցրած Հայաստանի նկատմամբ: Յեթե Սասանյան Պարսկաստանն իր Բյուզանդական եքսպանսիայի ամբողջ ընթացքում և իր ազդեցությունը Հայաստանում ամրապնդելու համար հնարավոր էր գտնում պահպանել նախարարական սիստեմը, ճանաչելով նախարարների վաղեմի արտոնյալ իրավունքները և ձգտելով կապել հայ ֆեոդալ իշխաններին պարսկական արքունիքի ու ազնվականության հետ, ապա արաբները հաշվի էին առնում նախարարներին այն չափով, ինչ չափով նրանք խոչընդոտ չէին հանդիսանում իրենց նվաճողական նպատակներին: Այս դեպքում արաբները շատ հասարակ և կոպիտ քաղաքականություն էին կիրառում: Քանի որ միակ հողատերերը նախարարներն էին, վորոնք վախենալով, թե կզրկվեն իրենց հարստություններից, մեծ մասամբ թշնամաբար էին տրամադրված դեպի նոր նվաճողները, ուստի վերջիններն այդպիսի անցանկալի նախարարներին ուղղակի վոչնչացնում էին ֆիզիկապես և զավթում նրանց հողերը: Հայ[57] ու արաբ պատմագիրները[58] հաղորդում են նախարարների մասսայական

կառուցածների մասին արաբական հրամանատարների ու էմիրների ձեռքով, ինչպես և նախարարական հողերը գրավելու և արաբական գաղթականներով բնակեցնելու մասին։

Այսպիսով, սկսած VII դարից՝ Հայաստանի շատ մասերում, ինչպես օրինակ՝ Դվինում, Նախիջևանում, Արճեշում, Բերկրիում, Խլաթում, Կարինում (Երզրում), Մանազկերտում և այլ խոշոր կենտրոններում և նույնիսկ այնպիսի անառիկ նախարարական յերկրում, ինչպիսին էր Սյունիքը (ՍՕ., Լէ, 174)։ Հաստատվեցին արաբ ֆեոդալներ, վորոնք իրենց ձեռքն էյին գցել ահագին տարածությամբ նախարարական հողեր՝ գյուղերով և շինականներով հանդերձ, նաև հիմնվեցին բազմաթիվ արաբական գաղութներ։

Սակայն արաբների ֆեոդալական էքսպանսիան չէր սահմանափակվում սոսկ հողերի զավթումներով՝ իրենց շահագործման տերիտորիական շրջանները լայնացնելու և յուրացնելի հավելյալ արդյունքի քանակն ավելացնելու համար։ Այդ էքսպանսիան նմանապես ձգտում էր հարստությունների կուտակման թե՛ դրամական ռենտայի միջոցով, վորի խթանն էր հանդիսանում նրա ուռճացած առևտրա-վաշխառուական կապիտալը, և թե՛ պարբերաբար կատարվող գիշատիչ թալաններով։

Արաբների նվաճումը չէր բերում հպատակեցրած Հայաստանում արտադրության նոր յեղանակ։ Թե՛ նվաճող արաբները և թե՛ նվաճված Հայաստանը գտնվում էյին միևնույն սոցիալ-տնտեսական ֆորմացիայի շրջանակներում, բայց զարգացման տարբեր աստիճաններում։ Տարբերությունը առևտրա-վաշխառուական կապիտալն էր, վոր մինչև այդ բացակայում էր Հայաստանում։ Վերջինս մուտք էր գործում Հայաստան արաբ նվաճողների հետ և տիրապետող բնատնտեսության մեջ ճանապարհ էր հարթում դրամական շրջանառության համար։ Դրամական շրջանառությունը Հայաստանում գոյություն էր ունեցել դեռևս Արշակունիների ու Սելևկյանների դարաշրջաններում և մանավանդ Սասանյանների տիրապետության ժամանակ։ Սակայն նա ազդեցիկ դեր չէր խաղում ժողովրդական տնտեսության մեջ, վորովհետև ֆեոդալական շահագործման ձևերում տիրում էր արդյունավճար ռենտան, իսկ դրամական ռենտան աննշան գործոն էր և օժանդակ նշանակություն ուներ։

Արաբական նվաճումն իր հետ բերեց դրամական ռենտա, որ բնականաբար փողի ահագին պահանջ առաջացրեց չհա-գործվող մասսաների մեջ, որոնք ստիպված էին մետաղյա դրամանիշներ ձեռք բերելու համար իրենց արտադրած արդյունքները շուկա հանել:

Արաբական նվաճումների հետևանքով ստեղծված տնտեսական ու քաղաքական պայմանները թեև անխախտ էին թողնում Հայաստանում արտադրության ֆեոդալական յեղանակը, բայց և այնպես մեծ տեղաշարժեր առաջացրին սոցիալական միջավայրում, մանավանդ հայ ֆեոդալական ազնվականության շարքերում, և կազմալուծեցին նախարարական ամբողջ սիստեմն ու կառուցքը:

Մենք վերը նշեցինք, որ արաբ նվաճողները հողեր զավթելու և ազգաբնակությանը շահագործելու նպատակով գործադրում էին անցանկալի նախարարների ֆիզիկական ոչնչացման և տոհմային կալվածատիրության իրավունքից նրանց զրկելու քաղաքականությունը: Մյուս կողմից՝ նույն արաբները որոշ չափով համբերատար էին այն նախարարների նկատմամբ, որոնք ճանաչում էին նվաճողների իշխանությունը և համակերպվում էին նոր պայմաններին: Այս նախարարներն, օգտվելով իրենց համար քիչ թե շատ նպաստավոր պայմաններից, ձգտում էին օգտագործել մոմենտը, կուտակելով հարստություն և լայնացնելով ֆեոդալական կալվածքները՝ իրենց քաղաքական ուժի այդ հիմնական խարիսխները:

Այս պարագաներում աչքի ընկան և ուժեղացան յերեք նախարարական տոհմեր՝ Բագրատունի, Արծրունի և Սյունի: Սրանք ընդունակ յեղան կուտակելու հողային և դրամական հարստություններ և այսպիսով գլխավորող դեր խաղալու այդ դարաշրջանի Հայաստանի քաղաքական ու սոցիալ-տնտեսական կյանքում, և սրանց ստիպված էին հաշվի առնել արաբները:

2. ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ.— Բագրատունի նախարարությունը համարվում էր ամենահին ու ամենաանվանի տոհմերից մեկը: Նա վայելում էր առաջնակարգ պատիվ հայ արքունիքում և ահագին քաղաքական ազդեցություն ուներ յերկրում: Այս տոհմը մրցակից ախոյան էր մի այլ ազդեցիկ ու անվանի նախարարական տոհմի՝ Մամիկոնյանների, որոնք ժա-

ռանդաբար իրենց ձեռքում էին պահում Հայաստանի ռազմական ուժերի սպարապետությունը: Նախարարների բազմադարյան յերկպառակչական պայքարում և թագավորական կենտրոնական իշխանության դեմ ուղղված հարատև կենտրոնախույս ելույթներում, նմանապես նախարարական խմբավորումների որիենտացիաներում, հակառակորդ կուսակցությունները ընթանում էին մեկը՝ Մամիկոնյանների, իսկ մյուսները՝ սկզբներում Սասանյանների ժամանակ, Սյունիների, իսկ հետագայում Բագրատունիների հետ: Այս պայքարներն առանձնապես չեչտակի արտահայտումն ստացան արաբական տիրապետության ժամանակ, երբ նախարարական կառուցքը խոշոր ճեղքվածքներ ստանալով՝ քայքայման որհասական օրեր էր ապրում:

Բագրատունիները ճարպկորեն կարողանում էին անվնաս դուրս գալ այդ պայքարի բոլոր շրջաններում: Նրանք պահպանում էին իրենց տոհմային կալվածքների ամբողջությունը և լայնացնում նրանց սահմանները՝ յուրացնելով հակառակորդների հողերը: Սասանյանների ժամանակաշրջանում Բագրատունի տոհմից նույնիսկ յեղել են յերկու մարզպաններ (VII դ. սկզբները)՝ Մամիկոնյան տոհմի մի քանի նախարարների մարզպանությունից հետո: Նմանապես արաբական դարաշրջանում, յերբ Հայաստանը ժամանակավորապես արաբների ձեռքից ընկնում էր Բյուզանդիայի ձեռքը՝ բյուզանդական կայսրները նշանակում էին կուրոպաղատներ Բագրատունի իշխաններից, ինչպես և արաբները նրանց նշանակում էին վոստիկանի և նույնիսկ հայ զորքերի սպարապետի պաշտոններում: Այս նախարարական հարատև պայքարում հետզհետե թուլանում էր Մամիկոնյանների դրությունը: Նրանց քաղաքական դերն ու նշանակությունն անցնում էր Բագրատունիներին: Մամիկոնյանները, վոր միշտ բյուզանդական կողմնակիցների պարագլուխներն էին, պետք է վերջիվերջո զրկվեյին իրենց ազդեցությունից Հայաստանում, վորովհետև այդ կողմնորոշումը, շնորհիվ Բյուզանդիոնի նենգ քաղաքականության, կորցնում էր իր նշանակությունը հայ ֆեոդալների միջավայրում և արաբական ժամանակաշրջանում իսպառ վարկաբեկվեց: Այս պայքարում Բագրատունիները վո՛չ միայն հարվածում էին Մամիկոնյանների քաղաքական ազդեցությանը, այլև խորտակում նրանց սոցիալ-տնտեսական դիրքը:

Մամիկոնյանների գլխավորությամբ արաբների դեմ բարձրացած յերկու ապստամբությունները (771 և 859—885 թ. թ.) ճնշվեցին արաբների ձեռքով Բագրատունի իշխանների գործակցությամբ, վորոնք իբրև վարձահատուցումն ստացան Մամիկոնյանների տոհմային կալվածքների մեծ մասը: Մամիկոնյաններն այս դեպքերից հետո չքացան Հայաստանի քաղաքական ասպարեզից: Այդորինակ միջոցներով Բագրատունիները, հենվելով արաբների բարեհաճ վերաբերմունքին իրենց հավատարիմ վասալության համար, կարողանում եյին հողեր յուրացնել նաև ուրիշ, ավելի թույլ նախարարներից, վորոնք մասնակցում եյին տեղական ապստամբություններին:

Սակայն Բագրատունիները չեյին սահմանափակվում միայն ֆեոդալական իշխանների հողերի զավթումով: Այս ժամանակաշրջանում Բագրատունիները կարողացան կուտակել այնքան հարստություն, վոր սկսած VIII դ. յերկրորդ կեսից՝ ձեռք են բերում կալվածքներ, գնելով այլ ֆեոդալ իշխաններից[59]: Աշոտ Բագրատունին, վոր հայտնի յեր Մսակեր մականունով, գնում է անվանի ու նշանավոր Կամսարականներից նրանց ամբողջ տոհմային կալվածքը՝ Արշարունիքն ու Շիրակը[60]: Վերջինում գտնվում եր Անի ամրոցը, վոր հետագայում դարձավ Բագրատունի թագավորների մայրաքաղաք (սկսած X դ. յերկրորդ կեսից) և խոշորագույն առևտրական կենտրոն: Այս հանգամանքը վկայում է, վոր ֆեոդալները զերծ չեյին մնացել առևտրա-վաշխառուական կապիտալի ազդեցություններից և նույնիսկ իրենք ներգրավվել եյին կալվածական հողերի առուծախի գործարքների և դրամական կուտակման շրջանակների մեջ: Այսպիսով, արաբական տիրապետության դարաշրջանում ֆեոդալական էքսպանսիայի զարգացմանը ծառայում եյին վո՛չ միայն հողերի սեփականացումը բռնի յուրացման կամ ընծայման միջոցներով, այլև, շնորհիվ առևտրա-վաշխառուական կապիտալի ներգործության, կալվածքների գնումները: Այս հանգամանքը խթան եր հանդիսանում հողերի մոբիլիզացիային և հնարավորություն ընձեռում տնտեսապես ուժեղ ֆեոդալներին՝ կալվածական հողերի հավաքումով ու լայնացումով իրենց ձեռքում հսկայական հողային հարստություններ կենտրոնացնել:

Դրամական շրջանառությունը վճռական նշանակություն ունեցավ Բագրատունիների, ինչպես և այլ խոշոր ֆեոդալների հարստությունների կուտակման գործում։ Հարստության առաջին աղբյուրը հանդիսացավ արաբների ֆինանսական քաղաքականությամբ Հայաստանում հաստատված դրամական ռենտան։ Ցեթե այնուամենայնիվ շարունակում էր մասամբ գոյություն պահպանել նաև արդյունավճար ռենտան, որ բացառապես անցնում էր տեղական ֆեոդալների ձեռքը, ապա վերջինները կարող էին այդ ստացած արդյունքների ավելցուկներն իրացնել իբրև ապրանք, մանավանդ, որ այդ ժամանակաշրջանում վերստին վերականգնվեց Հայաստանի տրանզիտային առևտուրը, որն արաբական նվաճման առաջին դարում խափանվել էր շնորհիվ անդադրում ռազմական գործողությունների Բյուզանդիայի ու արաբների միջև, ինչպես և տեղական նախարարների ապստամբությունների հետևանքով։

Բագրատունիներն իրենց հողերի հարաճուն լայնացումով մի կողմից՝ ծավալում էին ֆեոդալական շահագործման ապարատը, դուրս քաշելով ռենտան իսկական արտադրողների ավելացող մասսայից, իսկ մյուս կողմից՝ տեր էին դառնում մի տերիտորիայի, որտեղ անցնում էր հնուց ի վեր տորոված տարանցիկ առևտրական ճանապարհը։ Այդ ճանապարհն առևտրական հարաբերությունների վերականգնումով ու աշխուժացումով դառնում էր ֆեոդալական յեկամտի անսպառ աղբյուր՝ անցնող կարավաններից մաքսային հարկեր և այլ տուրքեր կորզելու համար։ Հիրավի, Բագրատունիների տնտեսական վերելքն և ընդմին քաղաքական ուժեղացումը սերտորեն կապված են Հայաստանի տրանզիտային առևտրական ճանապարհի աշխուժացման հետ։ Այդ ճանապարհի վերականգնումով նորից կենդանացավ Դվինի, Նախիջևանի ու այլ քաղաքների առևտրական նշանակությունը, և Բագրատունիների կալվածական հողերի վրա առաջացան առևտրական նոր քաղաքներ, ինչպես Անին, Կարսը, Արծն։

Նույնպիսի յերևույթ ենք նկատում նաև Հայաստանի հարավում Արծրունի նախարարական տոհմի, ինչպես և հյուսիսում՝ Սյունյաց նախարարական տոհմի պատմության մեջ։ Արծրունիներն, օգտագործելով արաբների հովանավորությունը, կարողա-

ցան նույնպես լայնացնել իրենց կալվածքները, մասամբ զավթելով, մասամբ էլ գնելով թուլացած և հյուծված նախարարներից նրանց տոհմային հողերը: Արծրունիների տնտեսական ու քաղաքական վերելքին նպաստում էր նաև այն կարևոր հանգամանքը, որ նրանց տերիտորիայով էր անցնում տրանզիտային առևտրական ճանապարհի հարավային ճյուղը, որտեղ գտնվում եյին այնպիսի խոշոր առևտրական կետեր, ինչպես Վան, Բերկրի, Արճեշ, Մանազկերտ, Բաղեշ (Բիթլիս) և այլն:

Այսպիսով, IX դարի շեմքին Հայաստանում բարձրացել եյին Բագրատունի, Արծրունի և Սյունի խոշոր ֆեոդալները, որոնք ընդունակ յեղան իրենց ձեռքում կենտրոնացնել լայնածավալ հողային տարածություններ և քաղաքական կշիռ վայելել արաբների ու Բյուզանդիայի առաջ: Փաստորեն այդ ժամանակ ամբողջ Հայաստանը կազմված էր յերեք ուժեղ ֆեոդալական տերիտորիաներից, որոնց տերերն իրենց արդեն կոչում եյին ո՛չ թե նախարար, այլ իշխան, և որոնք վասալական կախումն ունեյին արաբական խալիֆատից:

Բաժանելով իրենց միջև տնտեսական շահերի ու քաղաքական ազդեցության շրջանակները, այդ ֆեոդալական իշխանությունները, մանավանդ Բագրատունիներն ու Արծրունիները, այնուհանդերձ շարունակում եյին փոխադարձ հակառակություն ու մրցակցություն՝ տերիտորիական էքսպանսիայի ու քաղաքական իշխանության շուրջը: Այդ պայքարում դարձյալ Բագրատունիներն եյին հաղթանակողը: IX դարի յերկրորդ կեսին Աշոտ Բագրատունին, իր գերագույն սյուզերենի՝ խալիֆի համաձայնությամբ, հայտարարեց իրեն «իշխանաց իշխան» և ապա հետագայում (885 թ.)՝ «թագավոր հայոց»: Առաջացավ Բագրատունյաց թագավորությունը, որ ընդգրկում էր Հայաստանի հյուսիս- արևմտյան մասը: Հետևելով Բագրատունիներին, X դարի սկզբում (908 թ.) Արծրունիները նույնպես իրենց կոչում եյին թագավոր, որոնց իշխանության տերիտորիան կազմում էր Հայաստանի հարավային մասը՝ Վասպուրականը (Վանա ծովի շրջապատ տարածությունը): Վերջապես X դարի յերկրորդ կեսին (978 թ.) ասպարեզ յեկավ նաև Սյունյաց թագավորությունը, Հայաստանի հյուսիս- արևելյան մասում:

3. **ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ**.— Բյուզանդիոնը, որ IX դարի երկրորդ կեսից սկսեց նորից ուժեղանալ, կասկածով ու անհանգստությամբ էր նայում Հայաստանի քաղաքական վերածնության ու իր սահմաններին կից Բագրատունյաց և ապա Արծրունյաց թագավորությունների երևան գալու վրա: Բյուզանդիոնն, օգտվելով խալիֆատի թուլանալու ու քայքայման հարմար մոմենտից, սկսեց ագրեսիվ քայլեր ձեռնարկել խալիֆատի Հայաստանի սահմանների վրա և մի քանի խոշոր հաղթանակներ տարավ արաբական զորքերի հետ ունեցած պատերազմներում: Չնայած, որ Հայաստանն ողակված էր բյուզանդական ու արաբական պետությունների քաղաքականության շրջանակներով և ենթակա նրանց ինտրիգներին, Բագրատունի թագավորները կարողանում էին չեզոքություն պահպանել, մընալով խալիֆատի հավատարիմ վասալներ, և միաժամանակ բարեկամական հարաբերություններ վարել Բյուզանդիոնի հետ: Շնորհիվ այդ հանգամանքի՝ Հայաստանում X դարի ամբողջ ընթացքում տիրում էր խաղաղություն, որ նպաստում էր միջազգային տրանզիտային առևտրի ծաղկմանն ու յերկրի տնտեսական վերելքին: Այդ միջազգային առևտրի հայկական ուղիների վրա գտնվող քաղաքների շարքում առանձնապես մեծ նշանակություն ստացավ Անին, վորպես ամուր բերդ և խոշոր առևտրական կենտրոն, ուր Բագրատունիները տեղափոխեցին X դարի յերկրորդ կեսին իրենց նստավայրը, վորով Անին դարձավ Հայաստանի մայրաքաղաք:

Բյուզանդիոնն, ինչպես արդեն նշել ենք, իր քաղաքական կայունության նպատակներով Առաջավոր Ասիայում և իր միջազգային առևտրական հարաբերությունների շահերից դրդված՝ միշտ ձգտում էր տիրել Հայաստանին: Յերբ արաբական հսկայական պետությունն սկսեց թուլանալ և կազմալուծվել կենտրոնախույս էմիրների անջատողական տենդենցների հետևանքով, Բյուզանդիոնը միանգամայն փոխեց իր հարկադրված խաղաղ քաղաքականությունը Հայաստանի վերաբերմամբ: Նա վերսկսեց իր սովորական խարդավանական քաղաքականությունը և, հրահրելով տեղական ֆեոդալների մեջ կենտրոնախույս ձգտումներն ընդդեմ Բագրատունի և Արծրունի թագավորների և նյութելով

ներքին պառակտումներ, ձեռնարկեց ագրեսիվ քայլերի՝ ամբողջ Հայաստանը Բյուզանդական կայսրությանը միացնելու նպատակով: Արաբական խալիֆատը, որ ապրում էր իր հնկայական պետության քաղաքական քայքայման պրոցեսը, անզոր էր դիմագրավելու Բյուզանդիոնի նվաճողական առաջխաղացմանը: Ցեվ ահա Բագրատունիների թագավորությունն և սրա մայրաքաղաք Անին, ինչպես և Արծրունիների թագավորությունը (Վասպուրականը) XI դարի առաջին կեսին ընկան Բյուզանդիոնի ձեռքը: Հայաստանի ֆեոդալ ազնվականության մեծ մասը նվաճված յերկրից տեղահան յեղավ ու վերաբնակություն հաստատեց Փոքր Ասիայում, Բալկաններում և Կիլիկիայում, վորով վերջ տրվեց նախարարական տոհմերի մնացորդների գոյությանը Հայաստանում:

Նախարարական կառուցքի տապալումն Հայաստանում բնավ չեր նշանակում ֆեոդալականության քայքայումն կամ անկումն, վորն, իբրև սոցիալ-տնտեսական ֆորմացիա, դեռ շարունակում եր իր գոյությունը: Նախարարական կառուցքը, ինչպես արդեն վերը շեշտել ենք, հանդիսանում եր սոսկ Հայաստանի ֆեոդալիզմի յուրահատուկ քաղաքական ձևավորումն նրա պատմական զարգացման վորոշ ետապում՝ Արշակունյաց դարաշրջանում: Արաբական տիրապետության դարերում նախարարական ֆեոդալիզմը, հետզհետե կորցնելով իր հնավանդ բնորոշ գծերը, վերասերվում եր նոր ձևերի, անխախտ պահպանելով արտադրության ֆեոդալական յեղանակը: Այդ նոր ձևերում հին պատմական նախարարական տոհմերի վորոշ մասի անեյացումով՝ ասպարեզ եյին յեկել նոր ֆեոդալներ արաբ նվաճողներից, ինչպես և մի քանի ուժեղացած հայ նախարարական դինաստիաներից: Վերջինները կարողացան իրենց ձեռքում կենտրոնացնել ահագին տերիտորիաներ և միաժամանակ առևտրա- վաշխառուական կապիտալի հորձանքներում թաղեցին հողային ազնվականության տոհմային տրադիցիաները:

Ցեթե նախարարական սիստեմը ներծծել եր իրանական կուլտուրայի տարրեր և սոցիալ- կենցաղային տեսակետից վորոշ չափով իրանացել եր, ապա արաբական տիրապետության ժամանակաշրջանում, այդ կառուցքի քայքայման հետ, Հայաստանի ֆեոդալիզմը յենթակա յեր արաբացման ազդեցության: Այդ ա-

բարբարացումն, արտահայտվում էր ո՛չ միայն ֆեոդալական դասակարգի էթնիկ բաղադրությամբ, վորի մեջ թափանցել էին մուսուլմանական ցեղերը, ո՛չ միայն յերկրի քաղաքական կոնստրուկցիայով, այլև ֆեոդալական շահագործման ձևով, վորոնց տիրապետում էր դրամական ռենտան: Դրանով պետք է բացատրել բազմաթիվ արաբական տերմինների ու անունների մուտքը քաղաքացիական շրջանառության ու իրավաբանական նորմերի, հարկային ու դրամական սիստեմի, պետական-վարչական հիմնարկների ու ֆեոդալական աստիճանների բնագավառներում: Այդ տերմինները մասամբ դուրս մղեցին իրանական անունները և պահպանվեցին որպես մինչև վերջին ժամանակները: Ահա այս բյուզանդա-արաբական շրջանումն էին զարգանում այն նախադրյալները, վորոնք մի կողմից՝ զգալ տվին հայ իրավունքի գրավոր հորինման կամ հայերեն որենսգրքերի անհրաժեշտությունը, իսկ մյուս կողմից՝ խթան հանդիսացան օտար որենքների ռեցեպցիայի:

4. ԳՈՐԾՈՂ ԻՐԱՎՈՒՆՔՆ ՈՒ ՈՐԵՆՔՆԵՐԸ.— Նախարարական իրավունքը, վոր գործում էր Արշակունյաց թագավորության և սրա անկումից հետո նաև Սասանյան Հայաստանում, այնպիսի իրավաբանական նորմերի կոմպլեքս էր, վորոնք կարգավորում էին հասարակական– իրավական հարաբերությունները նախարարական սիստեմի վրա կառուցված ֆեոդալական պետականության մեջ: Սակայն արաբների նվաճողական քաղաքականության հետևանքով նախարարական սիստեմը քայքայվեց ու խորտակվեց, ուստի նախարարական իրավունքն էլ բոլորովին կորցրեց իր նշանակությունը: Նա վերացավ, տեղի տալով ֆեոդալական հարաբերությունները կարգավորող այնպիսի նորմերի, վորոնք համապատասխանում էին արաբական տիրապետության շրջանում վերափոխվող ու կազմավորվող պետական–հասարակական կառուցքին, սոցիալ–տնտեսական պայմաններին: Արաբներն իրենց հետ բերին Շարիաթը, մահմեդական որենքների կոդեքսը, վորը Հայաստանում կիրառվող նրանց քաղաքականության մեջ հակադրվում էր հայկական իրավունքին, մանավորապես նախարարական իրավունքի վերջին մնացորդներին: Շարիաթն ունեցավ իր ազդեցությունն ամբողջ յերկրի վարչա-պետական, քաղաքացիական և մանավանդ ֆինանսական իրավունքների բնագավա-

ռում։ Այդ ազդեցությունն այնքան խորն էր, որ նրա առկայությունը տակավին նշմարում ենք միջնադարյան Հայաստանի քաղաքացիական շրջանառության մեջ, մասնավորապես հարկային օրենքի տերմիններում։

Շարիաթը մահմեդական օրենքների գրավոր ժողովածու չէ, իսկ նրան հակադիր հայ իրավունքը մինչ այդ չուներ գրավոր հորինվածք։ Նախորդ նախարարական իրավունքն ամբողջովին բաղկացած էր սովորութա-իրավական նորմերից, որոնք գրի չէին առնված ու չէին վերածված օրենսգրքի, էլ չենք ասում՝ կոդիֆիկացիայի։ Միայն եկեղեցական ժողովների կանոններն էին, որոնք, գրված լինելով, կարողացել էին ամփոփել իրենց մեջ մասամբ նաև նախարարական իրավունքի նորմերը։ Ուստի կարիք էր զգացվում Հայաստանում Շարիաթին հակադրել տեղական ազգային մի օրենսգիրք, գրի առնված հայ օրենքների ժողովածու, թերևս հայկական կոդեքս։

Այն ժամանակվա Հայաստանի քաղաքական-հասարակական կյանքում, դասա-իրավաբանական ասպարեզում, երբ բացակայում էր հայ պետականություն, կենտրոնացած ազգային աշխարհիկ իշխանություն, ազդեցիկ գործոն էր հանդիսանում և նույնիսկ արաբների առաջ ներկայացուցչական նշանակություն էր ստացել հայ եկեղեցական դասը։ Սա էր, որ ձեռնամուխ եղավ ծածկելու այն մեծ բացը, որ նկատվում էր հայ իրավունքի բնագավառում որևէ օրենսգրքի կամ ժողովածուի բացակայությամբ։ Ահա VIII դարում տեղի է ունենում մի կոդիֆիկացիա, որը, եկեղեցական հիերարխիայի գործ լինելով, ի հարկե, հյուսվում է եկեղեցական ժողովների կանոնադրություններից և այսպիսով կազմվում է Կանոնագիրքը։

Սակայն առևտրա-վաշխառուական կապիտալի մուտքը և միաժամանակ խափանված տրանզիտային առևտրի նոր վերականգնումը Հայաստանում՝ մի կողմից, իսկ մյուս կողմից՝ հողերի մոբիլիզացիան և սրան հարակից ֆեոդալական կալվածքների կենտրոնացումը մի քանի ուժեղացած իշխանների ձեռքում նախապատրաստում են ներքուստ հայ քաղաքական իշխանության վերածնությունը, որ, ինչպես տեսանք, իրականանում է առաջին հերթին Բագրատունյաց թագավորության հիմնադրումով (887—1045 թ. թ.)։ Այս նոր պետությունն, հանձին վերա-

կանգնած ֆեոդալական տիրապետող դասակարգի՝ Բագրատունի թագավորների գլխավորությամբ, ներծծել էր արաբական կուլտուրայի տարրեր և ստիպված էր ղեկավարվել վորոշ չափով, մանավանդ ֆինանս-հարկային ու վարչական բնագավառում, Շարիաթի նորմերով: Բագրատունյաց թագավորությունը իր քաղաքական դիրքերն ամրացնելու և ֆեոդալական արտադրության ձևերն առավելապես իր շահերին ծառայեցնելու համար պետք էր գտնում վերականգնել նաև հայ իրավունքը, արձանացնելով այն գրավոր օրենքներով, ունենալով իր ձեռքի տակ Շարիաթին հակադիր աշխարհիկ օրենսգրքեր: Իսկ Հայկական առաջին կոդիֆիկացիայի արդյունք հայ կանոնագիրքը չէր համապատասխանում Բագրատունյաց թագավորության սոցիալ-տնտեսական պայմաններին, չէր բավարարում արդեն ազդեցություն ձեռք բերած աշխարհիկ ֆեոդալականության շահերին: Յեվ ահա Բագրատունյաց Հայաստանում, ուր միջազգային տրանզիտային առևտրի ծաղկումով խաչաձևվում էին Բյուզանդիոնի ու ամբողջ Միջագետքի առևտրական հարաբերությունները, մուտք են գործում օտար օրենսգրքեր նաև այդ ճանապարհներով, Թերևս այդ առևտրականների ձեռքով, վորոնք շահագրգռված էին իրենց իրավունքները պաշտպանել գրավոր օրենքներով: Այս յեղանակով կարող էին յերևալ Հայաստանում Ասորա-Հռոմեական Դատաստանագիրքը Սիրիայից և Ecloga-ն՝ ընտրված քաղվածքներով՝ Բյուզանդիայից: Այս օրենսգրքերի ռեցեպցիան Հայաստանում, յեթե չէր կատարվել Բագրատունյաց պետական իշխանության միջոցով, ապա կատարվել էր սովորույթի կարգով, վոր ավելի քան հավանական է:

Վոր բյուզանդական իրավունքի, մանավանդ պետական վարչական իրավունքի մուտքն յեղել է այս շրջանում, մանավանդ Բագրատունյաց թագավորության օրով, այդ բացահայտ է բյուզանդական տերմիններից, վորոնք յուրացվում էին հայ ֆեոդալ իշխանների կողմից: Այն ժամանակվա հայ պատմագրական հուշարձաններում և վիմական արձանագրություններում, սկսած VII դարի յերկրորդ կեսից, հանդիպում ենք վարչական-պետական տերմինների, ինչպես են՝ պատրիկ, կատապան, կուրոպալատ, հյուպատոս, ապոհիպատ, մագիստրոս, անտիպատ, վեստես, դուկ. հարկեր՝ պախտ, անգարիան (ՎՏ, էջ

2, 3, 14, 16, 17, 20, 22, 23, 27 և այլն) նոմոս՝ որենք և այլն: Բագրատունյաց ժամանակաշրջանում հայ պետականությունն արդեն հետամուտ եր գրավոր կերպով արձանագրելու իր որենքները, կիրարկվող իրավունքը: Այդ վկայում են մի քանի փաստեր:

Բագրատունի թագավորները, սովորաբար, իրենց որինական կարգադրությունները՝ վանքերին հողերի վերադարձման կամ թեթևացման մասին, հաստատում եյին վիմական արձանագրություններով (ՎՏ, եջ 9, 10, 13), վորոնք մասամբ հասել են մեզ: Սակայն Մխիթար Գոշի Դատաստանագրքի մեջ ել գտնում ենք որենքներ, վորոնք բղխում են Բագրատունյաց շրջանից, վորը մի-յերկու-դար առաջ ե յեղել Մխիթար Գոշից: Հետևապես, այդ տևական վոչ այնքան յերկարատև ժամանակամիջոցում Բագրատունյաց որենքները չեյին մոռացվել ու պահպանվել եյին գրավոր կամ բանավոր կերպով, քանի վոր Մխիթար Գոշը կարողացել ե այն մտցնել իր Դատաստանագրքի մեջ: Մխիթար Գոշի Դատաստանագրքի այդ որենքները վերաբերում են Հայաստանի պետական-վարչական, մասամբ և քաղաքացիական իրավունքին: Հայտնի յե, վոր Մխիթար Գոշի ժամանակ, XII դարում, Արևելյան Հայաստանում գոյություն չուներ հայկական պետականություն, հետևապես պետական-վարչական իրավունքը, վոր շարադրված ե Դատաստանագրքի յերկրորդ՝ «Աշխարհական որենք» խորագրով՝ մասի առաջին գլխում, Մխիթար Գոշը չեր կարող քաղել իր ժամանակակից իրականությունից, յերբ այդպիսի որենքներ այլևս կիրառումն չունեյին, այլ քաղել ե անցյալից մնացած ու պահպանված հիշատակումներից, նախորդ հայ պետականությունից, վոր Բագրատունյաց թագավորությունն եր:

Վերոհիշյալ Ա. գլուխը կրում ե «Յաղագս դատաստանաց թագավորաց» խորագիրը, վոր, ինչպես ճիշտ նկատում ե Յոզեֆ Կարստ (ZVR. XIX $^{2}/_{3}$ Heft. s. 330), չի վերաբերում այդ հոդվածի բովանդակությանը, այլ Մխիթար Գոշն ի նկատի յե ունեցել այդտեղ որենսդիր—հեղինակին, այսինքն հայ թագավորներին, վորոնք որինադրել են այդ հոդվածում մեջ բերված իրավաբանական նորմերը: Այդ բավականին յերկար ու մանրամասն Ա. հոդվածը շարադրված ե վորպես մի շարք իրավաբանական նորմերի կոմպլեքս, մի ամբողջացրած իրավունք, վոր

պարունակում է զանազան իրավական հարցեր՝ թագավորի իշխանության, թագավորական ժառանգության, թագավորական դատաստանի, ֆեոդալական հողատիրության, բերդերի, ամրոցների ու քաղաքների, պատերազմի ու ավարառման, հարկերի, դրամների, կոռ ու բեկարի, քրեական հանցանքների մասին: Հիշյալ հոդվածում Մխիթար Գոշը քանիցս կրկնում է, թե այդ իրավաբանական նորմերը սահմանված են հետևությամբ «առաջին թագաւորների», այսինքն Արշակունյաց ժամանակ գոյություն ունեցող օրենքների. «որպէս և զայս սովորութիւն կալան առաջինք թագաւորք»[61] (էջ 304), «զի և կարգ առաջնոցն է մերոց թագաւորացն այդոքիկ»[62] (էջ 318):

Հետևապես, Մխիթար Գոշը «առաջին թագաւորներին», այն է՝ Արշակունիներին, հակադրում է իր Ա. հոդվածում «յերկրորդ թագաւորներին», վորոնք, ի հարկե, Բագրատունիներն էին: Այս պարագան վկայում է, վոր Բագրատունյաց թագավորներն իրենց պետական ու վարչական սիստեմը սահմանադրելիս՝ ձգտել են վերականգնել հայ առաջին թագավորության, Արշակունյաց պետության, իրավական կարգերը, ֆեոդալական իրավունքի սովորույթներն ու նորմերը: Ամենայն հավանականությամբ Բագրատունյաց թագավորության այդ օրենքները կազմված են յեղել գրավոր ժողովածուի ձևով և այդ ժողովածուի բովանդակությունն ամբողջովին մտել է Մխիթար Գոշի Դատաստանագրքի II մասի Ա. հոդվածի մեջ, ուստի և սա կոչվում է «Վասաղս դատաստանաց թագաւորաց»:

Այսպիսով, Հայաստանի պատմության բյուզանդա- արաբական շրջանը, մասնավորապես Բագրատունյաց թագավորությունն իր տնտեսական վերելքով, առևտրա- վաշխառուական կապիտալի զարգացումով և կուլտուրական շինարարությամբ՝ անհրաժեշտորեն առաջ է մղել հայ իրավունքի զարգացումն հենց այս դարերից: Այդ իրավունքն իր նորմերով դալիս եր կարգավորելու Հայաստանի այդ դարերի սոցիալ- քաղաքական կառուցքը, վորտեղ մի կողմից՝ յեկեղեցական ֆեոդալիզմը հանդես եր գալիս իր դիրքերն ամրացնելու համար կանոնական կոդիֆիկացիայով, իսկ մյուս կողմից՝ աշխարհիկ ֆեոդալիզմը, հատկապես Բագրատունի թագավորությունը, վերականգնում եր իր դերն ու ազդեցությունն ոտար օրենքների ոչնչացմամբ:

*Այս ժամանակաշրջանը Հայաստանի պատմության մեջ աչքի յե ընկնում քաղաքական տեսակետից նրանով, վոր յերկիրը դարձել եր թյուրք-մոնղոլական անվերջ արշավանքների մրրկածուփ ասպարեզ: Արևելյան Ասիայի խորքերից դուրս յեկած նվաճողները գիշատիչ շահագործման նոր տերիտորիա ձեռք բերելու նպատակով՝ հրով և սրով հաստատում եյին իրենց իշխանությունն այստեղ, վորոնք այնուհետև ստիպված եյին լինում զիջելու հաջորդ, ավելի ուժեղ տիրապետողներին: Մի շարք դարերի ընթացքում իրար հաջորդում եյին և փոփոխվում յերկրի նվաճողները: Այդ պարբերական, տագնապալի իրադարձությունների մթնոլորտում Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացումը մերթ ընկղմվում եր անկման մեջ, մերթ վերականգնվում վերելքի ուղիներով: Տեղի եյին ունենում ֆեոդալական կառուցքի նոր շրջադարձեր և փոփոխվում եր տիրապետող դասակարգերի դիրքը: Այդ ամենը յուրահատուկ ձևով արտահայտվում եր եթնիկ բաղկացության ու քաղաքական հարաբերությունների մեջ: Այս յերկարատև դարաշրջանում նկատում ենք յերեք բնորոշ ու գլխավոր ժամանակաշրջաններ:*

1. **ՍԵԼՋՈՒԿՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ.**—*Սելջուկներն իրենց նվաճողական արշավանքների ճանապարհին հանդիպեցին ընդարմացած ու քաղաքականապես կազմալուծված Հայաստանին, վորին 1048 թ. տիրեցին առանց դժվարության, ուղեկցելով իրենց արշավանքը սոսկալի ավերածությամբ, արյունհեղությամբ, գերեվարությամբ ու ավարառությամբ: Այդ ժամանակ Հայաստանը՝ արաբական խալիֆատի քայքայման հետևանքով, նմանապես Բագրատունյաց ու Արծրունյաց թագավորությունների անկումով՝ ամբողջովին գտնվում եր Բյուզանդիոնի ձեռքում: Սելջուկների արշավանքի նախորյակին, բյուզանդական քաղաքականության շնորհիվ, ֆեոդալական Հայաստանում մնացել եյին նախկին նախարարությունների խղճուկ բեկորները, ինչպես որինակ, Բագրատունիները՝ Ձորագետում, Աբասյանները (Բագրատունի տոհմի մի ճյուղը) Կարսում, Սյունիները՝ Ղափանում, Ռշտունիները, Մամիկոնյանները՝ Սասունում, Պահլավունիները՝ Շիրակում, վորտեղ Անի քաղաքը գտնվում եր*

Բյուզանդիայի անմիջական իշխանության ներքո, և այլ մանր-մունր աննշան ֆեոդալներ: Այդ բոլոր հայ ֆեոդալական կալվածքները, ցիրուցան, ողակված եյին մուսուլման ֆեոդալների զանգվածով և վո՛չ մի իրական ուժ, վո՛չ մի քաղաքական նշանակություն չունեյին:

Բյուզանդիոնը, վորի վրա յեր ընկած Հայաստանի պաշտպանությունը, վորպես նրա տիրապետողի, վոչ մի լուրջ միջոցի չձեռնարկեց սելջուկների ներխուժման դեմ, այլ ինքն ել հետո յենթարկվեց նրանց հարվածներին: Սելջուկները գրավեցին Փոքր Ասիայի մեծ մասը, վոր Բյուզանդիոնի տերիտորիան եր կազմում, և կանգ առան Կ. Պոլսի չեմքին (1086 թ.): Այսպիսով, Հայաստանն ընկավ Արաբական խալիֆատի ավերակների վրա բարձրացած Սելջուկյան տիրապետության տակ, վոր տարածվում եր Միջերկրական ծովից մինչև Չինաստան, Անդրկովկասից մինչև Յեմեն:

Սելջուկների սոցիալ-տնտեսական հասարակակարգը դեռ բավարար չափով ուսումնասիրված և լուսաբանված չէ: Անտարակույս, սելջուկներն իրենց ձեռնարկած արշավանքների մոմենտին ներկայացնում եյին դասակարգայնորեն շերտավորված հասարակություն, վաչկատուն ֆեոդալիզմի հիմքերի վրա, վոր կենտրոնացվել եր Միջին Ասիայի թյուրքական ցեղերից: Սելջուկների նվաճողական յելույթի մղիչ գործոնն, ինչպես և նախորդ արաբներինը, ֆեոդալական եքսպանսիան եր: Դա հնարավորություն եր տալիս զավթելու լայնածավալ հողեր, վորոնք անհրաժեշտ եյին իբրև արոտատեղիներ՝ նվաճողների վաչկատուն մասի համար և իբրև մշակույթային կալվածքներ՝ նրանց նստակյաց մասի համար: Հողային հարստությունների կուտակման հետ միասին տեղի յեր ունենում նաև հարստության կուտակումն՝ նվաճված յերկրների անխնա ավարառման, դերեվարության ու հարկահանման միջոցով: Ի հարկե, այս գիշատիչ շահագործումն ոգուտ եր բերում ֆեոդալ դասակարգին վո՛չ միայն իբրև սեփական կուտակման աղբյուր, այլև իբրև միջոց, վորով նա բթացնում եր իրեն յենթակա թյուրք շահագործվող մասսաների ներհակ տրամադրությունները, մասն հանելով նրանց ռազմական ավարից:

Սելջուկների նվաճումը չեր բերում իր հետ առաջադիմության

որևէ նոր յեղանակ: Ընդհակառակն, այդ նվաճումը, բղխելով նվաճած յերկրների համեմատությամբ զարգացման ստոր աստիճանի վրա կանգնած վաչկատուններից, վոչնչացնում եր տեղական արտադրողական ուժերը, քայքայում եր բովանդակ ժողովրդական տնտեսությունը: Յերբ արդեն անցավ նվաճման առաջին հրոսն, և սելջուկները հաստատեցին իրենց իշխանությունը նվաճած յերկրներում, նրանք սկսեցին յուրացնել նվաճվածների արտադրության յեղանակը, ներծծվելով տեղական բնակչության զանգվածների մեջ: Այդ տեղի ունեցավ առանձնապես Սելջուկյան Մելիք-Շահի (1072—1092 թ. թ.) թագավորության ժամանակ:

Սակայն Մելիք-Շահի մահից հետո հսկա Սելջուկյան պետությունը ճեղքվածներ տվեց: Ծայր առան դինաստիական գժտություններ, վորոնք կազմալուծում եյին ահագին պետությունը: Խոշոր սելջուկ ֆեոդալները, վորոնք, իբրև կենտրոնական իշխանության ներկայացուցիչներ, նստած եյին հպատակ յերկրներում, անջատվում եյին կենտրոնից և իրենց հայտարարում կառավարած յերկրների անկախ իշխաններ: Ամբողջ Հայաստանում առաջացան մի քանի խոշոր անկախ ֆեոդալական իշխանություններ՝ էմիրություններ: Սրանք կենտրոնացել եյին հինավուրց հայտնի վաճառաշահ քաղաքների շուրջը, ինչպիսիք են Դվինը, Անին (Շեդդադյաններ), Սեբաստիան (Դանիշմանյաններ), Մերդինը և Հիսնկեյֆը կամ Մծբինը (Որթոկյաններ), Մանազկերտն ու Խլաթը (Շահ- Արմեններ և այնուհետև Եյուբյաններ), Կարինն ու Կարսը (Սալդուխներ) և այլն: Այդ մուսուլման ֆեոդալական ծովում, վորպես ցաք ու ցրիվ կղզիներ, շարունակում եյին իրենց գոյությունը նախորդ նախարարական տոհմերի վերջին մնացուկները, տնտեսապես թուլակազմ և քաղաքականապես անզոր հայ ֆեոդալները:

Ինքնուրույն թյուրք ֆեոդալական իշխանությունների գոյացումը խոշոր առևտրական կենտրոնների շուրջը՝ վկայում է, վոր առևտրա- վաշխառուական կապիտալը պահպանում եր իր կենսունակությունը, չնայած յերկրի համատարած ավերմանը: Յեթե արաբական նվաճողական առաջխաղացմանը հետևում եր առևտրական կապիտալը, վոր մուտք եր գործել նաև Հայաստան, ապա սելջուկների ժամանակ, առևտրա- վաշխառուական

կապիտալը կարողացավ պահպանել իր գրաված նախկին դիրքերը, վորովհետև սելջուկներին էլ այն խորթ չեր: Ջուր չեր ասում Կ. Մարքսը, վոր «առևտրական կապիտալը յուրահատուկ է հենց վոչ-նստակյաց, վաչկատուն ժողովուրդներին»[63]:

Այդ թյուրք խոշոր ֆեոդալներն, իրենց ձեռքին ունենալով հինավուրց հայոնի առևտրական քաղաքները, իրենք էլ ամենայն հավանականությամբ աչխույժ մասնակցություն ունեյին առևտրա- վաչխառուական կապիտալի կուտակման մեջ: Նրանք դառնում եյին այնպիսի խոշոր դրամական միջոցների տերեր, վոր հնարավորություն եյին ստանում կանխիկ դրամով ամբողջ քաղաքներ ու խոշոր կալվածքներ գնել: Շեդդատյաններից մեկը 1072 թ. գնել եր Անի քաղաքը Ալփասլանից[64]: Կեչրորի Եմիր Կարաչայը վաճառել եր Ղըզըլ Ասլանին մեծաքանակ վոսկով Ծարաքարը, բերդաքաղաք Անիի մոտ[65]:

2. ԶԱՔԱՐՅԱՆՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ.—XII դարի առաջին քառորդում Վրաստանը, վոր այնքան էլ չեր տուժել սելջուկների արշավանքներից, կարողացավ ազատվել Սելջուկյան թագավորության կազմալուծումից և սելջուկներին դուրս քշել Վրաստանի սահմաններից, ինչպես և հարևան վասսալական հայ ֆեոդալական իշխանություններից: Հայաստանի հյուսիսային մասի ֆեոդալները, վորոնք համեմատաբար պակաս եյին տուժել սելջուկներից, գլխավորությամբ Վրաստանի ականավոր հայ ֆեոդալներ Զաքարեյի ու Իվանեյի, վորոնք վրաց թագուհի Թամարայի (1184—1210 թ. թ.) և սրա վորդի թագավոր Գեորգի Լաշայի (1210—1223 թ. թ.) ժամանակ աղդեցիկ քաղաքական դեր եյին խաղում վրաց արքունիքում և հայտնի եյին առաջինն իբրև ամիր- սպասալար, իսկ յերկրորդն իբրև աթաբեկ, համախմբվելով, ազատեցին ամբողջ Հայաստանը սելջուկների լծից: Հայաստանը XIII դ. սկզբին քաղաքականապես նորից վերականգնվեց Զաքարեյի ու Իվանեյի իշխանության ներքո: Սրանք, լինելով Վրաստանի ֆեոդալներ, իրենց անվանեցին Հայաստանի տերեր և յուրացրին անսահմանափակ իրավունք ու իշխանություն սելջուկներից ազատագրված Հայաստանի վրա: Վերջինը, թեև համարվում եր անվանապես Վրաստանին յենթակա վասսալական պետություն, բայց փաստորեն հանդիսանում եր

անկախ ու ինքնուրույն մի երկիր, որ պատկանում էր Զաքարյանների իշխանությունը: Դա լայնածավալ մի տերիտորիա էր, որ բռնում էր նախկին Բագրատունյաց և Սյունյաց թագավորությունները միասին վերցրած: Զաքարյանների այդ Հայաստանը միջնադարյան պատմագրություններում, ինչպես և վիմագիր հուշարձաններում հիշատակվում է որպես «թագավորություն», «պետական իշխանություն», «աշխարհակալություն», «ինքնակալ պետություն», «աշխարհակալ տերություն» և այլն (ՎՏ, 47, 50): Իրենք՝ Զաքարեն ու Իվանեն, իրենց անվանում էին ո՛չ միայն «պարոն», այլև «թագավոր», «շահին շահ» և մի քանի դեպքերում նաև «կեսար» (ՎՏ, 47, 49, 50, 141):

Անին նրանք համարում էին իրենց «թագավորանիստ» քաղաք (ՎՏ, 141): Զաքարյաններն իրենց ֆեոդալական իշխանության հեղինակությունը բարձրացնելու նպատակով այնքան հեռու էին գնում, որ իրենց տոհմային ծագումը սերում էին Բագրատունի թագավորներից «...այս մեր գիր և յիշատակի է և արժան մշտնջենաւոր որդեաց մեծին Սարգսին յազգէ Բագրատունեան, Իւանէի և Զաքարէի...» (ՎՏ. 141):

Սելջուկների արշավանքի ժամանակ Հայաստանի հյուսիսարևելյան մասերում գոյություն էին պահպանում մի քանի նախկին նախարարական տոհմերի մնացորդներ: Զաքարյանների տիրապետության օրով նրանք, մասնակցություն ունենալով սելջուկների դեմ մղվող պատերազմներին, մեծացրին իրենց կալվածքներն և սկսեցին աչքի ընկնող դեր խաղալ, վերականգնելով իրենց ֆեոդալական նշանակությունը: Միևնույն ժամանակ Զաքարեն և Իվանեն նպաստեցին նորելուկ ֆեոդալական իշխանությունների գոյացմանը, լայնածավալ կալվածներ տրամադրելով իրենց զորապետներին սելջուկներից ազատագրված հայկական տերիտորիայում: Այսպիսով, առաջացան ֆեոդալ իշխաններ՝ Վաչուտյանք, Օրբելյանք, Խաղբակյանք, որոնք հետագայում վերանվանվեցին Պռոշյանք, Դոփյանք, Խաչենի և այլն: Սրանք Զաքարյանների վասալներն էին և միևնույն ժամանակ այնքան խոշոր ու հարուստ, որ ունեին նաև իրենց ենթակա մանր վասալ ֆեոդալներ:

Հայաստանը, որ վերջին սելջուկների ժամանակ սկսել էր տնտեսապես վերականգնվել, Զաքարյանների օրով արդեն ա-

րագ թափով ընթացող տնտեսական և կուլտուրական վերելքով։ Տեղական արտադրողական ուժերի զարգացումը, առևտրական հարաբերությունների աշխուժացումը և այդ կապակցությամբ քաղաքների ծաղկումը Անիի գլխավորությամբ և, վերջապես, անմիջական արտադրողների դյուրին շահագործման հնարավորությունը ստեղծված խաղաղ պայմաններում,— այդ ամենը նպաստում էր հարստությունների կուտակմանը ֆեոդալների և առաջին նվազ Զաքարյանների ձեռքում։ Ֆեոդալներն հենց իրենք էլ մասնակից էին առևտրա-վաշխառուական կապիտալի շրջանառությանը։

Առևտրա-վաշխառուական կապիտալի խոշորագույն ներկայացուցիչներից էր Տիգրան Հոնենցը։ Սա, շնորհիվ իր հսկայական հարստության, զբաղվում էր հողերի գնումներով, փոխատու գործարքներով հողերի ու կալվածքների գրավի դիմաց, նա իր հարստությունից մասն էր հանում՝ ընծայելով վանքերին ու Անիի յեկեղեցիներին խոշոր հողեր, անշարժ կայքեր և այլ թանկարժեք սպասներ ու յեկեղեցական պարագաներ «հոգու փրկության» համար։ Նա անվանում է իրեն «հավատարիմ ծառայ ամիր սպասալար Շահնշահ Զաքարիայի»։ Այսպիսով, նա վասալ-կալվածատեր էր Զաքարյանների և ընդսմին իր ժամանակի բնորոշ «կապիտալիստ» (ՎՏ, էջ 54, 58)։

Հայ պատմագրության մեջ (ԿԳ, էջ 349) և հայ վիմական արձանագրություններում հիշատակվում է մի այլ «կապիտալիստ» Ումեկի անունը, որը հարուստ վաճառական էր Կարին քաղաքում և ապա մոնղոլական արշավանքների ժամանակ տեղափոխվել էր Թբիլիսի։ Ըստ յերևույթին, այդ վաճառականական տունը ժառանգական է յեղել, որովհետև նրա որդին՝ Ծարը, հետևելով իր հորը, մեծամեծ գումարներ ծախսելով՝ հողեր է գնում, խոշոր նվիրաբերումներ անում վանքերին (ՎՏ, 124—125)։ Մոնումենտալ շենքերի կառուցումը, ճարտարապետական փարթամ հուշարձանները, շինարարական արվեստի զարգացումը, որտեղ ֆեոդալները մրցում էին իրար հետ, և որտեղ տեսնում ենք նյութական կուլտուրայի փառահեղ զարգացումը, վկայում են, թե ինչ ահագին հարստություններ էին կուտակվել ֆեոդալ իշխանների ու խոշոր առևտրականների ձեռքում և թե

ինչպես այդ փարթամ շինարարությունը կատարվում էր նրանց ճորտերի բանվորական ուժի շահագործումով:

Չնայած որ Զաքարյանների ժամանակ Հայաստանն իր տնտեսական և կուլտուրական վերելքով ներկայացնում էր ազգային պետական կազմակերպություն, այնուամենայնիվ պետք է ասել, սելջուկների տիրապետությունը թեև կարճատև էր պատմական տևողության տեսակետից, բայց թողել էր իր ազդեցության հետքերը: Այդ հետքերը նկատելի յեն Զաքարյանների Հայաստանի ֆեոդալական կառուցքում, որտեղ դասային-վարչական և ֆինանս-հարկային նախորդ արաբական արմատացած անուններին միանում և յուրացվում են թյուրքական տերմիններ:

3. ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ.— Զաքարյանների իշխանությանը վերջ դրեց Չինգիզ-խանի հորդաների արշավանքը՝ Չարմաղանի հրամանատարությամբ: Մոնղոլների արշավանքը Հայաստանում սկիզբ է առնում 1236 թ. և, ընթանալով մաչկատուն ժողովուրդներին յուրահատուկ անողոք ավերածություններով, արյունհեղություններով, ավարառություններով ու գերեվարություններով, ավարտվում է 1244 թ. Հայաստանի վերջնական նվաճումով: Ներս խուժած ահարկու ուժի դեմ չկարողացան որևէ քայլ անել ո՛չ Վրաստանը, ո՛չ էլ Հայաստանը: Վրաստանն այդ ժամանակ պառակտվել էր, ասպարեզ դառնալով միջֆեոդալական և թագավորի դահի շուրջը բռնկած պայքարի: Իսկ Հայաստանը, բաղկացած լինելով բազմաթիվ ֆեոդալական իշխանություններից, չէր ներկայացնում մի կուռ զորություն և միացյալ կայուն զանգված, մանավանդ որ այդ ժամանակ Զաքարյանների տոհմը կորցրել էր իր նախկին հզորությունն ու ազդեցությունը: Հայ ֆեոդալ իշխաններն այդ պայմաններում գերադասում էին իրենց հպատակությունը հայտնել ու ճանաչել նորեկ նվաճողների իշխանությունն և այսպիսով փրկել իրենց կյանքն ու կալվածքները:

Մոնղոլներն ընդհանրապես անփոփոխ թողին Հայաստանի ֆեոդալական կառուցվածքը, որը նրանք կարողացան օգտագործել իրենց նվաճողական նպատակների համար: Նախ՝ նրանք ձգտում էին տեղական իշխանների միջոցով կառավարել նվաճած յերկիրը և յերկրորդ՝ տեղական ֆեոդալներն, իբրև վասալներ, իրենց զինվորական ուժերով պարտավորվում էին

ժամանակցել մոնղոլների ձեռնարկած արշավանքներին: Այդ քաղաքականությունը սովորական գործելակերպն էր մոնղոլական կենտրոնական իշխանության, վոր այդ յեղանակով հնարավորություն էր ստանում Միջին Ասիայից, Կարա-Կորումից, կառավարել ու իրեն իշխանության ներքո պահել նորակազմ պետության անսահման տարածության վրա սփռված բազմազան յերկրները:

Հայաստանում արտադրության ֆեոդալական յեղանակն իր տնտեսական դրությամբ ավելի բարձր էր կանգնած մոնղոլների վաչկատուն հասարակության ֆեոդալական արտադրության յեղանակից: Ուստի վերջիններն իրենց շահագործողական տեսակետից պահպանում էին տեղական ֆեոդալական կառուցվածքն իր իշխաններով ու կալվածատիրություններով: Այդ կառուցվածքը, հանդիսանալով մոնղոլների աչքում ավելի նպատակահարմար միջոց նվաճած յերկիրը կառավարելու համար, միաժամանակ հնարավորություն էր ընձեռում բարձրացնելու հավելյալ արդյունքի քանակը և սիստեմատիկորեն այն դուրս կորզելու արտադրող մասսաներից:

Հիրավի, նվաճողական առաջին քայլերից հետո, յերբ յերկիրն ասպատակվել էր ու ավերվել էին արտադրողական ուժերը, մոնղոլները աշխատում են յերկրում կյանքի նորմալ ընթացք հաստատել: Պատմագիր Կիրակոս Գանձակեցին, մոնղոլական արշավանքների ժամանակակիցը, բնորոշում է այդ մոմենտը հետևյալ խոսքերով. «Ապա հրաման ետուն մնացորդացն՝ որ ապրեալ էին ի սրոյ անտի և ի գերութենէ, գնալ յիւրաքանչիւր տեղիս, ի գիւղս և ի քաղաքս, և շինել յիւրեանց անուն և ծառայել նոցա. և սկսաւ երկիրն առ սակաւ սակաւ զշինութիւն առնուլ» (ԿԳ, եջ 247, 277):

Նույնը վկայում է և մի այլ ժամանակակից պատմագիր՝ Մաղաքիա Աբեղան[66]:

Անկման շրջանից հետո Հայաստանում սկսում են վերականգնվել արտադրողական ուժերը, նորից շարունակվում է նյութական կուտակումն և աշխուժանում առևտրական կապիտալի գործունեյությունը: Վերակենդանանում են առևտրական հարաբերությունները:

Սակայն հայ ֆեոդալական հասարակության հարստացումը, վոր, անշուշտ, վերջին հաշվով տանում էր դեպի նրա սոցիալ-քաղաքական ուժեղացումը, այնքան էլ նպատակավոր չէր համարվում, և նույնիսկ վտանգավոր էր թվում մոնղոլներին: Ուստի նրանք համապատասխան միջոցների ձեռնարկեցին: Մոնղոլների տիրապետության օրով Հայաստանի հարկերը մտնում էին խանական կենտրոնական գանձարանն առանց սահմանված սիստեմի և ճիշտ հաշվառման: Երկրի այդպիսի շահագործումն ընչաքաղց նվաճողներին թվում էր վոչ բավարար: Ուստի, նրանք XIII դարի յերկրորդ կեսին ազգաբնակության մարդահամար արին և ըստ այնմ էլ մտցրին նոր հարկային սիստեմ: Հայ մատենագիրների վկայությամբ՝ հարկերը չափազանց ծանր էին և բնակչության ուժերից վեր: Եթե իսկական արտադրողները միշտ, յերբ նույնիսկ Հայաստանն ազատ էր օտար նվաճողներից, հեծում էին կոռ ու բեկարի ծանրության տակ, ապա այժմ ավելի ևս ճնշվելու էին հարկերի բեռից, քանի վոր նրանց բնիկ տերերը, ստիպված լինելով ստացած ռենտայի առյուծի մասը հատուցել տուրքի և հարկի ձևով մոնղոլ նվաճողներին, այդ իրենց վնասը լրացնում էին՝ ավելի մեծ չափով ուժեղացնելով շահագործումը: Սակայն հարկային ծանրությունն ավելի ևս բարդանում էր հարկահավաքների ապօրինի կորզումներով և մոնղոլական զորաբաժինների կամայականություններով ու թալաններով: Մոնղոլական ֆեոդալական վերնախավը մեծ խանի գլխավորությամբ, տեսնելով, վոր զորքերը ռազմական արշավանքների ընթացքում յուրացնում էին ավարների մեծ մասը և դրանով վնասում խանական գանձարանին, սահմանեց յուրատեսակ տուրք նաև զորաբանակի վրա: Վերջինս պարտավորվում էր ռազմական ավարի 1/10 մուծել խանական գանձարան (ԿԳ, էջ 135): Հետևանքն այն յեղավ, վոր զինվորական մասերը, սկսած մեծից մինչև հետին զինվորը, ջանում էին իրենց վնասը ծածկել բնիկ հարկերով և կողոպուտով, խաղաղ բնակիչներին թալանելով:

Այս պայմանները քայքայիչ կերպով էին ազդում յերկրի նյութական բարեկեցության վրա: Ժամանակակից հայ պատմագիրների վկայությամբ[87] բազմաթիվ հայ իշխաններ ստիպված

եյին վաճառել կամ գրավ դնել իրենց կալվածները, ապարանքներն ու ամրոցները, վորպեսզի կարողանային վճարել տուրքերը: Նմանապես հայ բնակչության մեծ մասը, անկարող լինելով տանել հարկային ծանրությունը, կեղեքողների կամայականություններն ու ճնշումները, թողնում եր հովիտներն ու դաշտավայրերն և ապաստանում լեռնային կիրճերում ու բարձունքներում: Ահա այս ժամանակ, մանավանդ XIV դարի առաջին կեսին, ծայր առավ նաև քաղաքների տնտեսական անկումը, ինչպես որինակ՝ վաճառաշահ Անիի անկումը: Այս քաղաքական ու տնտեսական ծանր հանգամանքները պատճառ հանդիսացան քաղաքային բնակիչների արտագաղթելուն և քաղաքային-առևտրական կյանքի մեռնելուն Հյուսիսային և Միջին Հայաստանում:

Այս դրությունն ավելի ևս վատթարացավ վերջին իլխանների ժամանակ, յերբ XIV դարի յերկրորդ կեսին մոնղոլական լայնածավալ պետությունը դինաստիական դժտությունների հետևանքով մասնատվեց մի քանի մուսուլմանական ֆեոդալական իշխանությունների: Ծայր առան անվերջ կռիվներ ու պայքար այդ նորելուկ իշխանների միջև՝ Հայաստանի ու Վրաստանի տերիտորիաներին տիրելու համար: Բոլոր պատերազմները տեղի եյին ունենում գլխավորապես Հայաստանի սահմաններում, վորով յերկիրը մատնվում եր հարատև ավերման, իսկ ժողովրդական մասսաները՝ տնտեսական ու ֆիզիկական քայքայման:

Այդ անմխիթար վիճակը կատաստրոֆիկ բնույթ ստացավ XIV դ. վերջերին և XV դ. սկզբներին, յերբ Լանկթամուրի ավերածու արշավանքներով Հայաստանը դարձավ հրի ու սրի ճարակ: Յերկրի տնտեսական ու քաղաքական կյանքը կարկամեց ու կանգ առավ իր զարգացման ընթացքում և նույնիսկ հետադիմեց, իսկ նյութական և հոգևոր կուլտուրան միանգամայն ամայացավ:

4. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ.—Հայկական ֆեոդալիզմի պատմության մեջ, կարծես, առանձնակի տեղ ե բռնում Կիլիկյան հայ թագավորությունը, վոր գոյություն ունեցավ յերեք հարյուրամյակ (1080—1375 թ. թ.): Այդ ֆեոդալականության առաջանալը Կիլիկիայում իր արմատներով մտնում ե Մեծ Հայքի պատմության մեջ:

Կիլիկիան, որ բռնում է Փոքր Ասիայի հարավ-արևմտյան անկյունը՝ Միջերկրական ծովին կից, արդեն հնում լավ հայտնի էր հայերին, շնորհիվ առևտրական հարաբերությունների Մեծ և Փոքր Հայքի հետ: Բյուզանդիայի նվաճողական էքսպանսիայի և մանավանդ սելջուկյան արշավանքների ժամանակները Հայաստանից մեծ արտագաղթային շարժում սկսվեց դեպի Կիլիկիա: Այստեղ հայերը փրկություն էին որոնում նվաճողների ձեռքից: Այդ վտարանդիների մեջ կային նախարարական ու իշխանական տոհմերի մի քանի ներկայացուցիչներ, որոնց ձեռքից գնացել էին հայրենի հողերն ու կալվածները և որոնք այժմ այդտեղ, լեռնային վայրերում, ապաստան էին գտնում բյուզանդական կայսրների ու սելջուկյան էմիրների հալածանքներից: Այսպիսով, Կիլիկիայում, որ գտնվում էր Բյուզանդիայի իշխանության ներքո և բնակված էր գլխավորապես հույներով, առաջացան հայ գաղութներ: Այդ գաղութները, յերկրի բարեհաջող աշխարհագրական դիրքի ու Միջերկրածովյան յերկրների հետ ունեցած աշխույժ առևտրական հարաբերությունների շնորհիվ, արագ թափով սկսեցին տնտեսապես զարգանալ և ուժեղանալ: Այդ գաղութներում, ազգային տրադիցիաների կամ, ավելի շուտ, սոցիալ-տնտեսական ազդեցիկ դրության հետևանքով, սկսեցին ղեկավար դեր խաղալ այստեղ ապաստանած հայ ֆեոդալ իշխանները: Ժամանակի ընթացքում հայկական տարրը Կիլիկիայում քանակորեն ու տնտեսապես այնքան աճեց, որ դուրս մղեց բնիկներին, որոնց հողերը հետզհետե անցան այդ վտարանդիների, գլխավորապես հայ ֆեոդալների ձեռքը:

XI դարի յերկրորդ կեսին հայ ֆեոդալականությունն այստեղ այնքան ուժեղացավ, որ իր տիրապետող դիրքն ապահովելու նկատառումներով անհրաժեշտ զգաց սեփական պետական կազմ հիմնելու: Այդ ֆեոդալների մեջ ամենաուժեղն և ամենահարուստը, իշխան Ռուբենը, որ վերջին Բագրատունի թագավոր Գագիկ II-ի մոտիկ ազգականն էր, կարողացավ համախմբել նրանց և, իրեն հռչակելով ինքնուրույն իշխան, հիմնադրեց Կիլիկիայի հայ պետությունը: Հետագայում, Ռուբենի հաջորդների օրով, Կիլիկիայի հայկական թագավորության սահմանները զգալիորեն ընդարձակվեցին, և խաչակրաց արշավանքների

ժամանակ նա հասավ իր տնտեսական ու քաղաքական զարգացման ամենաբարձր աստիճանին: Այսպիսով, հայ պատմության մեջ հանդես յեկավ Կիլիկյան հայ թագավորությունը, վոր ծագեց ու զարգացավ Արևմտյան Յեվրոպայի հետ ունեցած առևտրական հարաբերությունների մթնոլորտում: Կիլիկյան հայ թագավորությունը ներկայացնում եր տիպիկ ֆեոդալական պետություն, բավականաչափ կենտրոնացված իշխանությամբ, մի պետություն, վոր սկզբնական շրջանում կազմակերպվել եր նախարարական կառուցքի վերապրուկային տրադիցիաների վրա: Սակայն Արևմտյան Յեվրոպայի և խաչակիրների հետ ունեցած սերտ հարաբերությունների շնորհիվ՝ կիլիկյան ֆեոդալական սիստեմը ներծծեց արևմտա-յեվրոպական, գլխավորապես ֆրանկյան, ֆեոդալիզմի բնորոշ գծերը: Արևմտա-յեվրոպական ազդեցությունն այստեղ այնքան ուժեղ եր, վոր XII դարից սկսած՝ կիլիկյան ֆեոդալականության հասարակական, պետական- վարչական և ֆինանսա- հարկային բնագավառներում տիրապետում եյին արևմտա-յեվրոպական ֆեոդալական տերմիններ:

Թեև Կիլիկյան հայ թագավորությունը քաղաքականապես կապված չեր բնիկ Հայաստանի, Մեծ Հայքի հետ, բայց և այնպես նա սերտ կուլտուրական կապեր եր պահպանում նրա հետ, մանավանդ Զաքարյանների ժամանակաշրջանում, յերբ Մեծ Հայքի տարանցիկ ճանապարհներով եյին կատարվում առևտրական հարաբերությունները Միջերկրածովյան կենտրոնների հետ՝ Կիլիկիայի վրայով: Այդ կապերի շնորհիվ Զաքարյան Հայաստանը հնարավորություն եր ստանում վորոշ չափով հաղորդակից լինել յեվրոպական կուլտուրային և նույնիսկ մի քանի բան յուրացնել Կիլիկիայից: Զաքարյան Հայաստանի ֆեոդալական կենցաղում թափանցել են ֆեոդալական տերմիններ, վոր արևմտա-յեվրոպական ծագում ունեն և այնքան խորն են արմատացել հայ լեզվի մեջ, վոր պահպանվել են մինչև մեր օրերը: Բավական ե միայն հիշել «պարոն» բառը, վորը վոչ այլ ինչ ե, յեթե վոչ յեվրոպական ֆեոդալական «baron» տերմինը:

5. ԳՈՐԾՈՂ ԻՐԱՎՈՒՆՔԸ.— Այս վերջին ժամանակաշրջանների պայմաններում հայ իրավունքը, իբրև տվյալ հասարակության մեջ գործող իրավաբանական նորմերի և իրավական ինս-

տիտուտների կոմպլեքս, յենթակա յեր այն իրադարձություններին և վերապրում եր այն ազդեցությունները, վորոնք յերերում եյին յերկրի բովանդակ սոցիալ-քաղաքական կյանքը և խափանում նրա տնտեսական զարգացման նորմալ ընթացքը:

Մեզ չեն հասել պատմական տեղեկություններ, թե ի՛նչ եր ներկայացնում և ինչո՛վ եր արտահայտվում իրավունքը Հայաստանում սելջուկյան տիրապետության վոչ այնքան յերկարատև շրջանում: Սակայն կարելի յե վորոշ յենթադրություններ անել, վորոնց հավանականությունը բղխում ե ստեղծված քաղաքական ու հասարակական հարաբերություններից: Այստեղ շարունակում եր պահպանել իր նշանակությունը արաբներից մնացած շարիաթական իրավունքը, վոր համապատասխանում եր նաև սելջուկների գաղափարախոսական վերնաշենքին և իրավական գործիք եր դառնում նվաճողների ձեռքին՝ իրենց տիրապետության հիմքերն ամրացնելու համար: Իսկ տեղական հայ իրավունքը, վոր զարգացել եր, մի կողմից, ինչպես տեսանք, Բագրատունյաց շրջանում հունա-բյուզանդական, ասորական և Մովսիսական որենքների ժողովածուների մասնակի ռեցեպցիայով և մյուս կողմից՝ հենց Բագրատունիների «թագավորական որենքներով», կանգ ե առնում սկսած զարգացման մեջ ու միանգամայն կարկամում, քանի վոր այլևս գոյություն չուներ հայ քաղաքական իշխանությունը: Սակայն ասպարեզում մնում եր հայ հիերոկրատիան, վորի ուժն ու ազդեցությունը խորտակված չեյին, ինչպես աշխարհիկ ֆեոդալներինը: Ուստի հայ յեկեղեցական ֆեոդալականությունը հնարավորություն ե ունենում իր ձեռքում կենտրոնացնելու դատական և իրավաբանական ամբողջ բնագավառը: Այստեղ «Կանոնագիրքն» ու «Մովսիսական որենքները», վորոնք սերտորեն կապված եյին թեոկրատական իրավահայեցողության հետ, դառնում են տիրող պայմաններում գործող իրավունքի միակ արտահայտիչները: Թե վորքան զորեղ եր հայ հիերոկրատիայի նշանակությունը սելջուկյան ժամանակաշրջանի իրավաբանական բնագավառում՝ այդ բացահայտ ե հաջորդ, Զաքարյան ժամանակաշրջանում նրա վայելած հեղինակությունից, յերբ դատական հիմնարկների ղեկավարումն և մանավանդ որենսգրքերի հորինումը հանձնարարվում եր հոգևոր

դասի ներկայացուցիչներին: Հիրավի, հայ օրենսգիրք կազմելու առաջին, թեև անհաջող փորձը պատկանում է, ինչպես տեսանք, Դավիթ Ալավկա որդուն, իսկ յերկրորդ փորձը կատարվեց Մխիթար Գոշի ձեռքով. յերկուսն էլ հոգևորականներ էին:

Սելջուկյան տիրապետությանը հաջորդող Զաքարյանների տիրապետությունը, յերբ Հայաստանը տնտեսապես ու քաղաքականապես վերակենդանեց, և քաղաքական իշխանությունը կենտրոնացավ հայ աշխարհիկ ֆեոդալականության ձեռքում, բնորոշ է այն տեսակետից, որ հասարակական և կուլտուրական զարգացումն առաջ մղեց նաև հայ օրենսգրքի պահանջը: Այդ պահանջն իրականացավ մասամբ Մխիթար Գոշի Դատաստանագրքով, որը հայ իրավունքի պատմության մեջ յուրատեսակ կոդիֆիկացիայի առաջին և վերջին փորձն էր: Մենք արդեն վերը տեսություն ենք արել այն սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմանները, որոնք թելադրեցին Մխիթար Գոշի Դատաստանագրքի հորինումը: Այստեղ միայն նշենք, որ Զաքարյանների Հայաստանում ազգային օրենսգրքի սուր կերպով զգացվող անհրաժեշտությունը հաստատում է մեր վերևում բերած յենթադրությունն այն մասին, որ սելջուկյան տիրապետության տակ հայ իրավունքը կարկամել ու յետ էր մղվել:

Հայ իրավունքի զարգացումը, որ նոր խթան էր ստացել Զաքարյան Հայաստանում, ճակատագրական հարվածի յենթարկվեց հաջորդ՝ մոնղոլական շրջանում, յերբ հայ քաղաքական իշխանությունը վերստին չքացավ ասպարեզից: Թեև մոնղոլական տիրապետության ներքո Հայաստանում պահպանում էին իրենց գոյությունը տեղական հայ ֆեոդալները, ինչպես օրինակ՝ Պռոշյաններն և այլք, նաև վաճառաշահ քաղաքները, ինչպես Անին, բայց սրանք լինելով ցիրուցան և ապակենտրոնացած վիճակում և վասալական կախումն ունենալով գերագույն սյուզերեն մոնղոլական խանից, չէին ներկայացնում այն պետական կազմը, այն ազգային քաղաքական կոմպակտ մարմինը, որտեղ կարողանար տեղական օրենսդրություն գոյանալ և հայ իրավունքն իր հետագա զարգացումն ունենար: Այս պայմաններում հայկական միջավայրի հասարակական հարաբերությունները կարգավորվում էին սովորութական իրավունքի նորմերով և հայ

օրենսգրքերով, վորոնք հասել եյին նախորդ՝ Զաքարյանների իշխանությունից, վորտեղ, անկասկած, գլխավոր տեղն եր բռնում Մխիթար Գոշի Դատաստանագիրքը։

Ինչպես ակներև է միջնադարյան հայ պատմագիրներից և մանավանդ բազմաթիվ վիմական արձանագրություններից, մոնղոլական տիրապետության ժամանակ դեռ գործում եյին հայ ֆեոդալական աշխարհում, առավելապես տնտեսական հարաբերությունների բնագավառում, շարիաթական իրավունքի նորմերը։ Շարիաթի կիրառումն ավելի օրինական ուժ է ստանում Հայաստանում, յերբ մոնղոլները հարում են մահմեդական կրոնին, և ապա բացարձակորեն սկսում է տիրել հաջորդ դարերի թյուրք նվաճողների օրով, յերբ Հայաստանն այլևս չեր ներկայացնում քաղաքական մեծություն և կազմում եր թյուրք պետությունների սոսկ մի տերիտորիական մասը։ Այստեղ այլևս խոսք չի կարող լինել հայ իրավունքի մասին իբրև իրավական մի սիստեմի։ Այն արդեն կորցրել եր իր քաղաքական և սոցիալտնտեսական նշանակությունը։ Հայ իրավունքը դարձել եր միայն անցյալի պատմական մի յերևույթ, դրավոր հուշարձանի արժեք ունեցող մնացորդ, բացառությամբ հայ սովորութական իրավունքի, վորի նորմերը, մանավանդ ընտանեկան ու ժառանգական հարաբերությունների բնագավառում, համառ պահպանողականությամբ տիրում եյին բնատնտեսության պայմաններում դեգերող հայ համայնքներում։

Հայ իրավունքը պատմական դեպքերի դասավորությամբ շարունակում է մի առժամանակ պահպանել իր գոյությունը հեռավոր հայ գաղութներում, ինչպես Լեհաստանում, Ղրիմում, Աստրախանում և Նոր-Նախիջևանում։ Սակայն և այնպես, հայ իրավունքը միայն թեոկրատական առումով կարողացավ պահպանել իր գոյությունը մինչև վերջին ժամանակները հայ հիերոկրատական հաստատություններում։ Վորպես հայ ֆեոդալական իրավունքի մնացորդ՝ յեկեղեցական իրավունքն իր «Կանոնագրքով» և այն օրենքների ժողովածուներով, վորոնք բացարձակապես աստվածաբանական-յեկեղեցական գաղափարներով եյին խմորված, դառնում է հայ կղերական կազմակերպության իրավաբանական հիմքը։ Այդ իրավունքի նորմերով եր նա մի կող-

մից՝ ամրապնդում իր քաղաքական ու տնտեսական նշանակությունը տիրող ստար պետության սահմաններում, երբեմն վորպես պետություն պետության մեջ, չհագործելով իր մենաշնորհ դիրքը, միշտ լինելով տիրող ստար պետականության քաղաքական գործիքը. մյուս կողմից՝ այդ իրավունքի նորմերով նա ամրացնում եր իր հարաբերությունները հայ աշխարհիկ համայնքների հետ և հնարավորություն ստանում չահագործելու նրանց:

Իբրև վերջաբան, ամփոփենք ներկա գլխում արծարծված տեսությունը: Ֆեոդալական իրավունքը, ինչպես ասել ենք, իրավական վերնաշենք է ֆեոդալական հասարակական կառուցվածքի տնտեսական հիմքի վրա և հանդիսանում է տիրապետող դասակարգի ձեռքին ճնշման, հարկադրման կենտրոնացած մի միջոց: Այդ իրավունքի նորմերի մեջ արտացոլում են ֆեոդալական հասարակության արտադրական հարաբերությունները:

Հին Հայաստանի ֆեոդալական իրավունքը կոդիֆիկացիայի չեր յենթարկվել: Նա գործում և պահպանվում եր սովորութական իրավունքով, շնորհիվ արտադրական յեղանակի պահպանողականության: Հետագայում այդ սովորութական իրավունքի մի շարք նորմերը, վորոշ պրեցեդենտների ազդեցության տակ, հաստատվում են յեկեղեցական ժողովների վորոշումների և ապա գործող որենսգրքերի ու կանոնական կոդեքսների մեջ միջին դարերում: Սակայն այդ սովորութական– իրավական նորմերն, ինչպես յերևում է, միշտ խախտվում կամ զանց եյին առնվում տիրապետող ֆեոդալ դասակարգի առանձին ներկայացուցիչների կամայականությամբ կամ «ուժեղի իրավունքով», մանավանդ ճորտացած ու հպատակ բնակչությանը չահագործելու բնագավառում: Այդ բացահայտ է մի քանի կանոնական վորոշումներից, վորոնք սահմանվել են այդորինակ պրեցեդենտների հետևանքով[68]:

Մյուս կողմից՝ նախարարական սիստեմի սովորութական իրավունքի հիմնական սկզբունքները բյուզանդական, արաբական և ապա թյուրք-մոնղոլական տիրապետությունների ժամանակ, նախարարական կառուցքի կազմալուծման հետ միասին,

Համապատասխան փոփոխությունների ենթարկվեցին։ Հայ ֆեոդալական իրավունքի մեջ ներթափանցեցին մովսիսական, հունա-բյուզանդական և արաբա շարիաթական իրավունքների դրույթները։

---

Գլուխ յոթերորդ

# ՊԵՏԱԿԱՆ ՈՒ ՎԱՐՉԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ

## I. ԳԵՐԱԳՈՒՅՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ

1. *ՀՈՂԱՅԻՆ ՊԵՏԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ.*—*Վերը քանիցս ակնարկել ենք, որ հայ իրավունքն իր եյությամբ յեղել է ֆեոդալական. նա հանդիսանում էր ֆեոդալական հասարակության իրավական վերնաշենքը: Ֆեոդալական հասարակությունը ներկայացնում է այն սոցիալ-տնտեսական ֆորմացիան, որը բնորոշվում է արտադրության ֆեոդալական յեղանակով: Այս հակամարտիկ (անտագոնիստական) հասարակության մեջ տիրապետող դասակարգը, հանձինս ֆեոդալների, արտադրության հիմնական միջոցի՝ հողի սեփականության իրավունքը դարձրել էր իր մենաշնորհը: Իսկ ներհակ դասակարգը, հանձինս գյուղացիների, որոնք իսկական արտադրողներ եյին, կարող էր ունենալ իբրև սեփականություն արտադրության ու վերարտադրության բոլոր միջոցները, բացառությամբ միայն հողի: Այս դասակարգը, որ անձնապես կախված էր ֆեոդալներից ու ամրացված էր հողին արտատնտեսական ճնշման շնորհիվ, շահագործվում էր, զրկվելով իր հավելյալ արդյունքից, որը կորզում էր նրանից հողատեր ֆեոդալը: Այս պայմաններում արտադրության ֆեոդալական յեղանակը խարսխվում է գյուղատնտեսության սիստեմի վրա, որտեղ, սակայն, չի բացառվում արհեստավորական աշխատանքը:*

*Հայաստանը գերազանցորեն գյուղատնտեսական յերկիր էր, որտեղ ֆեոդալիզմի բազմադարյան գոյության ընթացքում տիրում էր բացառապես բնատնտեսություն, յերբ, Կ. Մարքսի խոսքերով ասած, «տնտեսական պայմանների ամբողջովին կամ ճնշող մասով արտադրվում են հենց տնտեսության մեջ, հա-*

տուցվում են և վերարտադրվում անմիջորեն նրա համախառն արտադրանքից»[69]: Բնատնտեսության հիմնական ճյուղերը Հայաստանում հողագործությունն ու անասնապահությունն էին, վորոնք ֆեոդալական արտադրության հիմքն էին կազմում: Ուստի հողը, իբրև արտադրության հիմնական միջոց, ստանում էր գերակշռող նշանակություն ֆեոդալական հասարակության սոցիալ-տնտեսական սիստեմում: Հողի սեփականության իրավունքը դառնում էր ֆեոդալների դասակարգային տիրապետության նյութական հիմքը: Բռնի յուրացնելով նախկին գյուղական համայնական հողերը, ֆեոդալական դասակարգը հողերի սեփականության իրավունքն իր մենաշնորհն էր դարձնում և համայնական ազատ գյուղացիներին, իսկական արտադրողներին, դնում կախյալ դրության մեջ, ճորտացնելով արտատնտեսական ճնշման ներքո, վորպեսզի նրանց աշխատանքի շահագործումով իրացնի իր հողային սեփականությունը:

Հին Հայաստանի ֆեոդալիզմը, պահպանելով տվյալ սոցիալ-տնտեսական ֆորմացիայի այդ հիմնական գծերը, միևնույն ժամանակ պարունակում էր նաև այնպիսի առանձնահատուկ կողմեր, վորոնք բնորոշում են նրան վորպես ֆեոդալիզմի արևելյան կամ ասիական ձև: Այդ տարբերությունն ամենից ավելի աչքի յե ընկնում հողատիրության սիստեմում, վորտեղ և կաղապարվում էր պետության գերագույն իշխանության բնույթը:

Թագավորի իշխանությունը հին Հայաստանում, ինչպես և հին Արևելքի մյուս պետություններում, բացարձակ դեսպոտական էր: «Քանզի նախդոյն թագաւորն Հայոց Արշակ ունէր միահեծան զթագաւորութիւնն 'ի վերայ ամենայն աշխարհին Հայոց» (ՂՓ, եջ 17): Արևելյան այդ յուրահատուկ դեսպոտիզմը բղխում էր հողի սեփականության իրավունքից, վոր պատկանում էր միայն պետությանը՝ հանձին նրան գլխավորող թագավորի: Թագավորը, հենվելով իր դեսպոտական իշխանության վրա և օգտվելով իր սուվերեն իրավունքից, ճանաչում էր իրեն վորպես ամբողջ պետության հողերի կարգադրող և տնօրինող: Հողային սեփականատիրության այդպիսի իրավաըմբռնումը զարգացել էր ֆեոդալիզմի ծագման ու կազմավորման պրոցեսում՝ գյուղական համայնքի միջոցով: Գյուղական համայնքը, համդի-

սանալով տոհմային հասարակության քայքայման վերջին ստադը, շարունակում էր պահպանել հողային սեփականության կոլեկտիվ իրավունքը: Եթե գյուղական համայնքը մինչև ֆեոդալական հասարակական ձևի կազմավորումը օժտված էր իր տերիտորիայի սահմաններում գերագույն հողային իրավունքով և համայնական հողերի տերն ու տնօրենն էր, ապա ֆեոդալական պայմաններում այդ իրավունքն ըստ համանմանության փոխանցվում է պետական իշխանությանը, և համայնքին վերապահվում է միմիայն հողային տիրության կոլեկտիվ, բայց ոչ թե սեփականատիրական ձևը: Այդ իրավաըմբռնումը ձևավորվում է ֆեոդալական պետության կազմավորման պրոցեսում, երբ առանձին ֆեոդալական իշխանությունները համակերպվում էին և հարում ասիական պետության կենտրոնական դեսպոտական իշխանությանը: Այստեղ գյուղական համայնքները, չնայած իրենց կախյալ դրության, հիմնական նշանակությամբ շարունակում էին մնալ հաստատուն:

Ինչպես վերը նշել ենք, վաղագույն ֆեոդալական Հայաստանը գտնվում էր սկզբում Աքեմենյան, իսկ այնուհետև Սելևկյան թագավորության սոցիալ-տնտեսական ու քաղաքական հարաբերությունների շրջագծում: Սելևկյան միապետությունն իր հելլենիստական կառուցվածքի մեջ անփոփոխ պահպանել էր Աքեմենյան ժամանակաշրջանի սոցիալ-տնտեսական հարաբերությունները, մանավանդ հողային իրավունքի վերաբերմամբ: Սելևկյան թագավորներն յուրացրել էին Աքեմենյան պետական իշխանության բոլոր հատկությունները: Սելևկյան թագավորներն էլ տիպիկ ասիական դեսպոտներ էին, որոնք իրենց իշխանությանը ենթակա պետական տերիտորիան համարում էին իրենց ժառանգական սեփականություն, անձնական կալվածք, որը տնօրինում էին իրենց կամքով և յուրացրած հողային իրավունքով:

Պետական հողային իրավունքի նույնանման իմաստավորում նկատում ենք նաև բյուզանդական կայսրության մեջ: Վերջինը ներծծել էր իր սոցիալական ու քաղաքական կառույցի մեջ ասիական դեսպոտական պետականության բոլոր բնորոշ տարրերը նախկին՝ հելլենիստական թագավորություններից, որոնց մեծ մասը մտել էր նրա կազմի մեջ, նաև սահմանակից Սասանյան

Պարսկաստանից, վորի հետ նա թե՛ խաղաղ և թե՛ ռազմական բնույթի մշտական հարաբերություններ ուներ։ Բյուզանդիայի հողային իրավունքի հարաբերություններում մինչև VII դ. սկիզբները պահպանվել էին գործնականորեն γῆ βασιλική և γῆ οὐσιακή անուններով հողային տեսակները։ Այդ տերմինները հայտնի էին հին հելլենիստական պետություններում, մանավանդ Պտղոմեյան Եգիպտոսում, ուր γῆ βασιλική էին կոչվում արքունի հողերը՝ պետական առումով, իսկ γῆ οὐσιακή թագավորական հողերը՝ անձնական առումով։

Ահա հողային իրավունքի այդ ըմբռնումն, վորով ամբողջ պետության հողային սեփականությունը ձուլվում էր թագավորի անձնավորության մեջ, գտնում ենք նաև հին Հայաստանում, վորը սերտորեն կապված է յեղել մի կողմից՝ Իրանյան աշխարհի հետ Աքեմենյանների, Պարթևների և ապա Սասանյանների տիրապետության դարերում, իսկ մյուս կողմից՝ հելլենիստական աշխարհի հետ Սելևկյանների որով։ Թեև մեզ չեն հասել այդ հարցի աղերսով վորոշ տվյալներ Հայաստանի պատմության Աքեմենյան ու Սելևկյան ժամանակաշրջաններից, այնուամենայնիվ Հայաստանի քաղաքական վերականգնման ամբողջ պատկերը Սելևկյանների անկումից հետո, այն է՝ Արտաշիսյանների և մանավանդ Տիգրան Մեծի թագավորության շրջանում, հնարավորություն է տալիս, չնայած սուղ տեղեկություններին, մեր այդ կարծիքը վորոշ չափով հաստատելու։

Ցեղայնական հայ իշխանությունների կոնսոլիդացիան Արտաշեսի թագավորության (189—161 թ. թ. մեր տարեթվից առաջ), ինչպես և Տիգրան Մեծի թագավորության որով (95—55 թ. թ. մեր տարեթվից առաջ), նմանապես այդ թագավորների նվաճողական էքսպանսիան կարող էին տեղի ունենալ միայն թագավորի դեսպոտական իշխանության պայմաններում։ Թագավորի անձնավորության մեջ քաղաքական տիրապետությունն ու իշխանությունը նույնացվում էին ամբողջ պետական տերիտորիայի վրա տարածվող նրա հողային սեփականատիրության իրավունքի հետ։ Հին պատմարան Պլուտարքոսի ասելով՝ բազմաթիվ «թագավորներ» և իշխաններ ծառայում էին Տիգրան թագավորին, վոր նրանց բաշխում էր նվաճած հողեր և նրանցից ստիպում էր բնա-

կություն հաստատվել այդ նոր մարզերում, իսկ այդ մարզերից նա սովորաբար տեղական բնակչությունը տեղափոխում էր կամ բռնի ուժով, կամ իբրև գերիներ՝ բուն Հայաստանի ներքին գավառները, տեղավորելով քաղաքներում և գյուղերում[70]:

Հողային գերագույն իրավունքի մարմնացումը պետության պարագլխի անձնավորությամբ՝ կարմիր թելի նման անցնում է հին Հայաստանի բովանդակ պատմության միջով: Այդ իրավարմբռնումը տիրապետում էր Հայաստանի վաղ-ֆեոդալական շրջանում, երբ ֆեոդալիզմը տակավին իր կազմավորման փուլն էր ապրում, երբ գյուղական համայնքի հողային սեփականատիրության վերապրուկային մնացուկները տակավին վերջնականորեն չէին մարել. այդ նաև տիրապետում էր հաջորդ նախարարական ֆեոդալիզմի շրջանում, երբ ֆեոդալական հասարակությունն արդեն ձևավորվել էր: Այդ իրավաըմբռնումը ցայտուն կերպով յերևան է գալիս մանավանդ Արշակունյաց թագավորության շրջանում, երբ նախարարությունների կենտրոնախույս ուժերն ամենամեծ լարման էյին հասել, երբ թագավորական իշխանության ու ֆեոդալական իշխանների իրավունքի միջև հակասությունները սրվել էյին մեծ չափերով, հակասություններ, վորոնք բղխում էյին հենց այդ հողային սեփականության իրավունքի շուրջը բաղխվող շահերից:

Քիչ թե շատ տեղեկություններ պետական հողային սեփականության և թագավորի գերագույն իշխանության նույնության մասին մեզ հասել են գլխավորապես Արշակունյաց թագավորության շրջանից: Այդ փաստերը միաժամանակ հնարավորություն են տալիս հեռադարձ հայացքով, վորոշ չափով պարզել նախընթաց, այն է՝ վաղ-ֆեոդալական շրջանի խավար պատկերը: Տարակա, վոր Արշակունյաց Հայաստանի հողային գերագույն իմաստավորումը վաղ- ֆեոդալական հասարակության բնման հետագա զարգացման աստիճանն է:

Վերևում բերված ընդհանուր ակնարկները միանգամայն հաստատվում են Կ. Մարքսի պատմահայեցողական կոնցեպցիայով, վորի համաձայն, Ասիայում, կամ Արևելքում պետությունը

հանդիսանում է հողի միակ գերագույն սեփականատերը: «Պետությունն այստեղ (Ասիայում) հողի գերագույն սեփականատեր է: Սուվերենությունն այստեղ—հողային սեփականություն է, որ կենտրոնացել է ազգային մասշտաբով: Սակայն այս դեպքում գոյություն չունի ոչ մի մասնավոր հողային սեփականություն, թեև գոյություն ունի հողի թե՛ մասնավոր և թե՛ համայնական տիրություն և օգտագործություն»[71]:

Նախարարական կառույցքը, իբրև հին Հայաստանի ձևավորված ֆեոդալական պետություն, սովորաբար կապում են Արշակունի տոհմի թագավորելու հետ: Հայ Արշակունիներն իրենց թագավորական, այն է՝ քաղաքական գերագույն իշխանությունը հետևցնում էին ամբողջ Հայաստանի տերիտորիայի վրա իրենց վերապահված իշխանությունից: Նրանք իրենց համարում էին բոլոր հողերի գերագույն սեփականատեր, ճիշտ այնպես, ինչպես այդ Պարթևների թագավորն էր, որոնցից նրանք սերվում էին, և ինչպես այդ տեղի ուներ Առաջավոր Ասիայի բոլոր պետություններում: Թագավորական իշխանության այդ իրավաըմբռնումն արտացոլել է այն բնորոշ տերմինի մեջ, որին հանդիպում ենք հայ պատմագիրների, մանավանդ Փավստոս Բուզանդացու մոտ: Նախարարական շրջանի թագավորը համարվում էր «բնակ տէր Երկրին», կամ «բնատէր Երկրին Հայոց»[72]: Թովմա Արծրունին հայ թագավորին անվանում էր «բնատուր տէրդ Հայոց» (ԹԱ., էջ 468): Այս տերմիններում արտահայտվում էր ոչ այնքան թագավորական իշխանության վերացական իմաստավորումը, որքան նրա կոնկրետ էությունը, իբրև պետական ամբողջ հողի գերագույն սեփականատեր: Ամբողջ Հայաստանի տերիտորիան համարվում էր թագավորական, արքունի հող, որպիսի իրավահայեցողությունը միանգամայն համանիշ է γῆ βασιλική–յին: Թագավորը նայում էր իր գլխավորած պետության վրա սեփական հողային իրավունքի տեսանկյունով, որտեղ ամբողջ պետական տերիտորիան նույնացվում էր թագավորական մի ընդհանուր միասնական կալվածքի հետ: Այդ են վկայում մեր պատմագրության մեջ հիշատակված զանազան թագավորների հրովարտակները, որտեղ Հայաստանի ամբողջ տերիտորիան անվանվում է ֆեոդալների կալվածական տնտեսությունների այն

պես տերմիններով, ինչպես են՝ «ձեռատունկ», «ձեռասուն», «ձեռակերտ», «դաստակերտ»: Առաջ բերենք մի քանի օրինակներ:

«Ամենայն նախարարք մեծամեծք և ազատք և գործակալք և սիրելիք մեր թագաւորաց և շինականք, բնաւ ձեռատունկ և ձեռասունք մեր Արշակունեաց» (Ագ., ԺԲ, 75): Այստեղ ամբողջ յերկիրը Տրդատ թագավորի հրովարտակով անվանվում է «ձեռատունկ» և «ձեռասունք»:

«Ունիմք զանուսս յիշատակարանսն զառաջինն նախնեացն ձերոց, [որք] ունելով զԵւրոպէ՝ անցին և տիրեցին և Ասիացւոց կողմանցն… և յայնչափ մեծ իշխանութեան՝ դաստակերտ մեծ և սիրելի զհայոց աշխարհս անուանէին»: Թեոդոս կայսրին ուղղված այդ նամակում Հայաստանը կոչվում է հռոմայեցոց «դաստակերտ» (ԵՂ, էջ 91—92):

«Բնակ տէր երկրի» տիտղոսի իրական նշանակությունը, վորով մեծարվում էյին Արշակունի թագավորներն իբրև հողային գերագույն սեփականատերեր, յերևում է Հայաստանի հին պատմությունից: Արշակունյաց թագավորության անկումից հետո, յերբ Հայաստանը բաժանված էր Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև և նախարարական իշխանությունները յենթակա էյին նոր սյուզերեններին՝ Սասանյան թագավորներին ու բյուզանդական կայսրներին, «բնակ տէր երկրի» տիտղոսը մեր պատմագրության մեջ կիրառվում էր մի քանի խոշոր ու նշանավոր նախարարությունների նկատմամբ: Իսկ արաբական տիրապետության շրջանում, յերբ գոյացան նախ՝ Բագրատունյաց թագավորությունն և ապա Արծրունյաց և Սյունյաց թագավորությունները, այդ տերմինն սկսեցին գործադրել վերոհիշյալ նոր թագավորների սուվերեն իշխանությունը վորոշելու համար[73]: Այդ տիտղոսային տերմինը մենք գտնում ենք նաև միջին դարերում, ինչպես այդ բացահայտ է XIII դ. վիմագիր հուշարձանից:

«Ես… Ջալալ Դաւլա Հասան, որդի Վախտանգայ, թոռն մեծին Հասանայ, բնակաւոր ինքնակալ բարձր և մեծ Արցախական աշխարհի, թագաւոր…» (ՎՏ, էջ 81. Գանձասարի արձանագրութիւն):

Սակայն Արշակունիները, համախմբելով ֆեոդալական Հայաստանի թագավոր, նախարարական կալվածներից բաղկացած

պետության սյուզերեն իշխան, որին ձեռքում եր «տէրութիւն թագաւորութեանն Հայաստան երկրին» (ՓԲ, IV, Գլ. Բ, եջ 62), միաժամանակ ունեյին իրենց սեփական սենյորական կալվածքը, համարվում եյին ֆեոդալական իշխան, նախարար իրենց սեփական, անձնական ղեկավարությամբ ու տնտեսությամբ տարվող հողերի, որը կոչվում եր «ոստան արքունի»: Այդ «ոստան արքունի»-ն եր «բնիկ սեփական» Այրարատյան յերկիրը, որը թագավորի անձնական սեփականությունն եր համարվում և գտնվում եր նրա անմիջական իշխանության ու տնօրինության տակ: «Ոստան արքունի»-ն, ինչպես տեսնում ենք, համանիշ է γῆ οὐσιακή-ին. Ինչպես որ թագավորը համարվում եր գերագույն սենիոր, կամ գլուխ, սյուզերեն բոլոր նախարարների, այնպես էլ Արարատյան յերկիրը՝ «Ոստան արքունի»-ն, ըստ Ղազար Փարպեցու՝ համդիսանում եր «գլուխ երկրին Հայոց»:

Յեթե Հայաստանի ամբողջ հողը պետական սեփականությու
եր հանձին թագավորի, ապա առանձին նախարարներն իրեն
ֆեոդալական հողերի վրա նստած եյին և տնօրինում եյին ո՛
թե սեփականության, այլ սոսկ տիրության իրավունքով
Հին հայ մատենագրական աղբյուրներում չենք գտնի հողայի
իրավունքի տեսականորեն ձևակերպված, գրավոր օրենքներո
վավերացված նորմեր: Պետության հողային իրավունքի բնագա
վառում բոլոր հողային հարաբերությունները պահպանվում և
կարգավորվում եյին սովորութական իրավունքի նորմերով: Հո
ղային սովորութական իրավունքը զարգացել եր դարերի ընթաց
քում Արևելքի այն հնավանդ ըմբռնումներից հողային սեփակա
նության մասին, որոնք, ծագելով արխայիկ ֆորմացիայի տոհ
մացեղային համայնական հասարակարգերում, ձևավորվեցի
գյուղական համայնքների սոցիալ-տնտեսական մթնոլորտում և
ապա կերպարանափոխվեցին ասիական ֆեոդալական պետությա
իմաստավորումով:

**2. ՀՈՂԻ ՊԵՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՐՇԱԿՈՒՆՅԱ
ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ**.— Դարավոր սովորութական իրավունք
նորմերով սրբագործված գերագույն հողային սեփականությա
իրավունքն և նախարարների հողային տիրության իրավունք
համեմատաբար ավելի որոշ գծերով յերևան է գալիս Հայաս

տանի Արշակունյաց թագավորության շրջանի պատմության մեջ: Հողային իրավունքի այդ ըմբռնումն արտացոլել է նաև հայ մատենագրության էջերում: Նույնիսկ Փավստոս Բուզանդացին, որ աչքի յէ ընկնում իր հակաարշակունի մտայնությամբ, բնորոշ կերպով է արձանագրում թագավորին և նախարարներին վերաբերյալ հողային հարաբերությունը: Ներսես կաթողիկոսին վերագրված խոսքերում, ուղղված հայ նախարարներին, ասված է հետևյալը. «Զի ամենեքեան դուք աւադիկ կայք և վկայէք, մանաւանդ զի ամենքեան դուք կեցեալ էք յազգէդ Արշակունւոյ. ոմանք ի ձէնջ դաստատեարք յեալք ՛ի նոցանէն, և ոմանք մեծամեծք աշխարհաց, ոմանք աւագ աւագ աւանաց գեղից և գանձուց տեարք լեալ էք, և պէսպէս դաստակերտացն» (ՓԲ, IV, ԾԱ, էջ 166):

Մեր կարծիքն ավելի ևս հաստատելու համար ստորև առաջ ենք բերում մի քանի որինակելի փաստեր հայ մատենագրությունից:

Արշակունի թագավորները սովորություն ունեյին նվիրելու նախարարներին հողեր առանձին ծառայությունների ու ռազմական քաջագործությունների համար, կամ, տրամադրելով հողային տերիտորիաներ, հիմնել նոր նախարարություններ: Այս դեպքում հողերը բաշխվում էյին ո՛չ թե թագավորի անձնական համարվող հողերից՝ «արքունի ոստանից», այլ սովորաբար պետական հողային տերիտորիայից, թեև, պետք է ասած, որ կարող էյին նաև բաշխումներ տեղի ունենալ «վոստանիկ» հողերից, յերբ նախարարները Այրարատյան սենիորատին էյին պատկանում և թագավորի պալատական վասալներն էյին:

Մովսես Խորենացու ասելով՝ Վաղարշակ թագավորը տալիս է Շարայի զավակներից սերված Գուշարին ժառանգություն Ջավախքի կես մասը, Կողբը, Ծոբը, Ձորը մինչև Հնարակերտ բերդը (II, գլ. Ը, էջ 106). Նմանապես Սանասարի տոհմից Շարաշանին պարգևում է Արձն գավառը շրջակա հողերով, Տավրոս լեռն, ուր գտնվում է Սիմը և ամբողջ Կղեսուրն (Անդ, էջ 109):

Նույն Վաղարշակը, քաղաքական նկատառումներով, թողել էր արքունիքում, իր մոտ՝ միայն ավագ որդուն, որպես թագաժառանգ; իսկ մնացած որդիներին հեռացրել էր, տրամադրելով

նրանց «Հաշտենից գավառը» (Անդ, էջ 111)։ Յերբ հետագայում Հաշտենից գավառի այդ Արշակունիների սերունդն այնքան էր բազմացել, վոր այլևս հողերը չէին բավարարում նրանց կարիքներին, Տիրան թագավորը տալիս է նրանցից մի քանիսներին նոր կալվածներ Աղիովիտ և Առբերանի գավառներում (ՄԽ, II, գլ. ԿԲ, 191)։

Նույն Տիրանն իր անզավակ յեղբոր, Արտավազդի, մահվանից հետո նրա ամբողջ կալվածական հողը տվեց Անձևացի նախարարական տոհմի պատանի Յերախնավին և կարգեց նրա մոտ իր մտերիմ պարսիկ Դրուասպին, վորին էլ տրամադրեց Տատիոն ավանը (այժմյան Դիադին) շրջակա ագարակներով և այգիներով (Անդ, 192)։

Արտաշես թագավորը պարգևում է Հայաստան գաղթած Ամատունի տոհմին գյուղեր ու դաստակերտներ, և այդպիսով հիմնադրվում է Ամատունի նախարարությունը (ՄԽ, II, գլ. ԾԷ, 185)։

Խոսրով թագավորը հաղթական պատերազմից հետո նվիրում է Վաչե սպարապետին «զականս Ջանջանակին և զՋրաբաշխիս և զՑլու գլուխ, ամենայն գաւառակօքն հանդերձ» (ՓԲ, III, Ը, 18)։

Պապ թագավորը պարգևում է սպարապետ Մուշեղ Մամիկոնյանին պարսիկների դեմ հաղթական պատերազմներ վարելու համար բազմաթիվ գյուղեր (ՓԲ, V, Դ, 204)։ Նույն Պապը վերադարձնում է իր հոր ժամանակ վոչնչացրած Կամսարական տոհմից դիպվածով կենդանի մնացած ժառանգներին իրենց նախկին կալվածքները՝ Շիրակն ու Արշարունիքը (ՓԲ, IV, ԺԹ, 133)։

Մովսես Խորենացին պատմում է, թե ինչպես Տրդատ թագավորը Կամսար իշխանին, յերբ սա քրիստոնեյությունն է ընդունում և մկրտվում, պարգևում է «զմեծ դաստակերտն Արտաշիսի, որ այժմ ասի Դրասխանակերտ և զդաւառն Շիրակ», իսկ յոթն որից հետո, յերբ Կամսարը վախճանվում է և սրա վորդի Արշավիրը մեծ սգի մեջ էր, թագավորը նրան մխիթարելու նպատակով տալիս է նաև «զքաղաքն Երուանդայ և զնորին գաւառըն մինչև ցկատար ձորոյն մեծի» (II, Ղ, 242—243)։

Ի վերջո նշենք ավելի հետաքրքիր փաստ։ Տրդատ թագավորը Հայաստանում քրիստոնեյություն հաստատելիս՝ բոլոր հե-

թանոսական տաճարական կալվածքներն ու հողերը հանձնում է Գրիգոր Լուսավորչի տոհմին, և, այսպիսով, հիմնվում է կաթողիկոսական խոշոր կալվածատիրություն: Բացի այդ՝ նա ամբողջ Հայաստանում հոգևորականության ու յեկեղեցիներին տրամադրում է հողեր՝ «չորս չորս հողս երդոյ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն յօթն յօթն հողս երդոյ» (ԱԳ, գլ. ՃԺԹ, 423, ՓԲ, V, ԼԱ, 237):

Եթե Արշակունի թագավորներն իրենց վերապահում էին իրավունք հողեր ու կալվածքներ բաշխել պետական տերիտորիայից նախարարներին, ապա և տրամաբանորեն կարող էին իրավունք ունենալ նույն նախարարներին զրկելու այդ հողերից ու կալվածքներից: Այդ տեսակ զրկումները տեղի էին ունենում իբրև պատիժ՝ նախարարների ըմբոստության կամ դավաճանության դեպքերում, ինչպես վկայում են մատենագրական տվյալները:

Խոսրով թագավորը հանձնեց ապստամբված բդեշխ Բակուրի կալվածքները Վաղինակ Սյունի նախարարին (ՓԲ, III, Թ, 21): Նույն Խոսրովը Դատաբեն Բզնունյաց իշխանի դավաճանության ու ապստամբության պատճառով վոչնչացնում է նրա ամբողջ տոհմը և, բռնագրավելով նրա հողերը, միացնում է «արքունի ոստանին» (ՓԲ, III, Ը, 20): Դարձյալ այդ Խոսրովի վոչնչացնում է Մանավազյան և Որդունի նախարարական տոհմերը, վորոնք իրենց գժտություններով ու ըմբոստություններով խանգարում էին յերկրի անդորրությունը և չեյին խաղաղվում, չնայած թագավորի կողմից արված զգուշացումներին: Նրանց հողերը թագավորը գրավում է և տալիս կաթողիկոսական տանը (ՓԲ, III, Դ, 9):

Տրդատ թագավորը, կամենալով վոչնչացնել Սլկունի նախարարին, վորը, անցնելով պարսից թագավորի կողմը, դավեր եր լարում իրեն դեմ, հայտարարում է բոլոր նախարարներին. «Որ ոք ածէ առ իս զնահապետն Սլկունեաց, տաց նմա յաւիտենական իշխանութեամբ զգեօղ զև զդաստակերտս» (ՄԽ, II, ՁԴ, 228):

Այդ տեսակետից աչքի յե ընկնում մանավանդ Արշակ II-ը, վորի թագավորությունը միշտ ալեկոծվում եր սուր պայքարով

կենտրոնախույս նախարարական տոհմերի ու կենտրոնաձիգ իշխանության միջև: Այդ նախարարների դեմ շահը ձեռք էր առնում դաժան միջոցներ, վոչնչացնելով ամբողջ նախարարական տոհմեր և բռնագրավելով նրանց հողերն ու կալվածները. որինակ՝ նա վոչնչացրեց հայտնի Կամսարական տոհմը և նրա Շիրակ ու Արշարունիք գավառները միացրեց արքունի կալվածներին (ՓԲ, IV, ԺԹ, 133):

Վերջապես, Արշակ II-ի վորդի Պապը, յեկեղեցական ֆեոդալականության դեմ մղած պայքարի հետևանքով, հրաման էր արձակել գրավելու յեկեղեցական հողերի մեծ մասը. «Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս և զերկուսն միայն թողոյր երկուս հողս: Եւ ըստ հողոյն թողուր երկուս-երկուս առ դեղ...» (ՓԲ, V, ԼԱ, 237):

Թագավորների հողային գերագույն իրավունքը բնորոշող հետաքրքիր մի այլ գիծ ենք գտնում հին հայ մատենագիրների հաղորդումների մեջ: Արշակունի թագավորներն իրավունք եյին վերապահել իրենց տնորինելու և կառավարելու բոլոր ամրոցբերդերը, վորոնք գտնվում եյին նախարարների ավատական կալվածներում: Կայազորների նյութական կարիքները բավարարելու համար այդ ամրոցներին ու բերդերին, վորոնք թագավորի իրավասության տակ եյին գտնվում, կցվում եյին շրջակա գյուղերն ու ագարակները: Արշակունիների անկումից և Հայաստանի բաժանումից հետո պարսիկներն այդ բերդերը բնակեցրել եյին իրենց կայազորներով: Տարակույս չկա, վոր այդ ամրությունները անցել եյին պարսիկների ձեռքը վո՛չ թե նվաճման կարգով, այլ վորպես ժառանգություն Արշակունիներից: Բացի դրանից, Արշակունիներն ունեյին իրենց տրամադրության ներքո սեփական վոստաններ—պալատ ամրոցներ նախարարներին պատկանող տերիտորիաներում (ՓԲ., IV, Ծ, 164, Ը, 213):

Թե վորքան խորն արմատներ ուներ հասարակական իրավըմբռնման մեջ հողային գերագույն իրավունքը, այդ բացահայտ է հետագա պատմությունից, յերբ Արշակունիների անկումից և Հայաստանը Բյուզանդիայի ու Պարսկաստանի միջև բաժանվելուց հետո՝ նախարարները դժվարին կացության մեջ ըն-

կամ իրենց կալվածների պատճառով, վորոնք գտնվում եյին այս կամ այն մասում։ Պարսկական Հայաստանում Սասանյան Շապուհը թագավոր եր նշանակել Խոսրովին, իսկ Բյուզանդական Հայաստանում կայսրը թագավոր եր նշանակել Արշակ III-ին։ Այդ յերկուսն ել Արշակունյաց դինաստիայից եյին և փաստորեն հանդիսանում եյին Պարսկաստանի և Բյուզանդիայի սոսկ վասալներ։ Ահա այդ բաժանումով Պարսկական Հայաստանի շատ նախարարներ ստիպված եյին անցնել բյուզանդական մասը, վորովհետև նրանց կալվածների մեծ մասը գտնվում եր այնտեղ։ Պարսկական մասի նրանց կալվածները բռնագրավեց Խոսրով թագավորը։ Այդ նախարարներից մեկը, ասպետ Սահակը, հետագայում նորից վերադարձավ Պարսկական Հայաստան։ Խոսրովը նրան նշանակեց հայ զորքերի սպարապետ, վերադարձնելով նրանից խլված կալվածները և, բացի այդ, նվիրելով նոր կալվածներ, վորոնք պատկանում եյին բյուզանդական մասում Արշակ III-ի մոտ գտնվող նախարարներին (Մխ, III, գլ. ԻԴ, 317—318)։ Սակայն բյուզանդական մասի նախարարները չուզում հիասթափվեցին և չափազանց դժգոհ եյին բյուզանդական քաղաքականությունից։ Նրանք վերադարձան Պարսկական Հայաստան, յերբ Խոսրով թագավորից գրավոր յերաշխիք ստացան, վոր իրենց կվերադարձվեն խլված կալվածները, բացառությամբ այն հողերի, վորոնք, ինչպես գրում է Խորենացին. «ումեք ումեք պարգևեցաք, և ոչ չրջին պարգեւք թագաւորաց առանց վնասու. մանաւանդ զի 'ի դիւան հօրն մերոյ տեառն Շապհոյ արքայից արքայի եմուտ, այլ փոխանակ ընդ այնր և յարքունուստ լնումք և զձերոյն պակասութիւնն» (Մխ, III, գլ. ԽԸ, 325)։

Պարսկական Հայաստանում Սասանյան թագավորներն իրենց յենթակա հայ նախարարների նկատմամբ վարվում եյին տեղական հողային իրավունքի համաձայն։ Պարսկական Արտաշես թագավորը Վռամշապուհ հայ թագավորին ուղղած նամակում, յերբ վերջինս միջնորդել եր վտարանդի ու փախստական նախարարների վերադարձման ու իրավունքների վերականգնման մասին, գրում է ի միջի այլոց հետևյալը. «Վասն որոյ զորդեակդ դորա զՀամազասպ կացուցես 'ի վերայ զօրացդ սպարապետ՝ մեր հրամանաւ, և ազգի դորա տացես զգահ հինգերորդ՝ պա-

տուող նախարարացդ և զգեղս և զդաստակերտս, զոր տուեալ է ճախնեացն քոց հարց դորա, կալցեն դոքա: Սաղէս և զտունս մնասակարաց ազգացդ, զոր կալայք յարքունիս, թողցես ի բաց՝ աներկիւղաբար ժառանգել նոցին մնացորդաց» (Մխ, III, գլ. ԾԱ, 332):

3. ՌԵԳԱԼԻԱՆԵՐ.—Հողային գերագույն իրավունքը ընդ-րոշող մի այլ յերևույթն էր այսպես կոչված արքունի ռեգալիան (Regalia): Ռեգալիան, իբրև արքունի վոստանից դուրս գտնված յեկամտային վորոշ աղբյուրների մենաշնորհ իրավունք, բղխում եր վոչ թե թագավորական իշխանության սուվերենիտետի մի-բացական իմաստավորումից, այլ այն ռեալ ըմբռնումից, վոր թագավորի հողային սեփականության իրավունքը տարածվում եր, բացի հողային մակերեսից, նաև նրա ընդերքում պա-րունակված հանքերի, ինչպես և ջրային ռեսուրսների վրա: Փավ-ստոսի վկայությամբ՝ Առեստ ավանի գետակի մոտ, վոր թափ-վում է Վանա ծովը, գտնվում եր արքունի ձկնորսարան (III, Ը, 19): Միևնույն հավանականությամբ, ամբողջ Վանա ծովերի ձկնորսարանները պատկանում եյին Արշակունյաց թագավորնե-րին, չնայած վոր այդ լիճը գտնվում եր Այրարատյան գավա-ռից, Արշակունիների արքունի վոստանից հեռու և կազմում եր Վասպուրականի տերիտորիալ մասը, իսկ սա համարվում եր Արծրունիների, Ռշտունիների և Բզնունիների նախարարական կալվածք: Մեր այդ յենթադրությունն ավելի ևս հաստատվում է արաբական պատմագիր Բալաձուրիի խոսքերով: Սա պատմում է եմիր Հաբիբի մասին, վոր, արշավելով Հայաստան, նվաճում է Վասպուրականը Վանա լճի հետ միասին և գրավում և բո-լոր տեղական նախարարական կալվածները: Նրանից հետո Վա-նա լիճն իր ձկնորսարաններով դարձավ Հայաստանի արաբ փոխ-արքաների սեփականություն— սկզբում Մահմետ—իբն Մերվան-իբն Հակամի և ապա Մերվան իբն-Մահմեդի (յերկի առաջինի վորդին)[71]: Անշուշտ, Վանա լիճը ձկնորսարաններով հան-դերձ դառնում եր արաբական փոխարքաների մենաշնորհ պատ-կանելիք վո՛չ թե նվաճման իրավունքով, այլ վորպես սեփական ժառանգություն նախկին Արշակունիների, իսկ հետո Սասա-նյանների:

Արքունի ռեգալիա էին համարվում ոսկու և արծաթի հանքերը: Բյուզանդական պատմագիր Պրոկոպիոսի ասելով՝ (Bell. Pers. I, 15) մարզպանների ժամանակ Ծարանիթիայում[75] հանված ամբողջ ոսկին դառնում էր սեփականություն Սասանյան թագավորների[76]: Պետք է կռահել, վոր այդ մենաշնորհ իրավունքն առաջներում պատկանում էր Արշակունի թագավորներին, և Արշակունյաց անկումից հետո ինքնաբերաբար անցել էր Սասանյան թագավորներին:

Թագավորների մենաշնորհ իրավունքը ոսկու և արծաթի հանույթների վերաբերմամբ արձանագրել է նաև Մխիթար Գոշն իր Դատաստանագրքում: Այստեղ նա այնքան հեռու չի գնում, վոր նույնիսկ այդ արքունի իրավունքը տարածում է պղնձի ու յերկաթի հանքերի վրա. «Ի գետոս ոսկեհանս գտեալ յամենայն սահմանաց իշխանաց՝ արքայից լիցի, իսկ արծաթ՝ թագուհեաց. և ի կամս նոցա է մատուցանել նոցա կամ ոչ: Այլ պղինձ և երկաթ և այլք 'ի նմանեաց նոցին—իշխանաց իցէ մեծամեծաց պարգեօք թագաւորաց. նմանապէս և աղ և բորակ, նաւթ և կուպր, ապակի և այլ ինչ այսպիսի: Իսկ ակն և մարգարիտ արքունի լիցի» (II, Ժ, 325—326):

Հայկական մատենագրական աղբյուրներից կարելի յե յեզրակացնել, վոր աղահանքերը համարվում էին թագավորի մենաշնորհ սեփականություն: Այդ ակներև է նաև նրանից, վոր Կողբի և այլ աղահանքերը բյուզանդական թագավորների ձեռքում էին, յերբ Հայաստանը նվաճվել էր նրանց կողմից: Բյուզանդական կայսր Հերակլը Հայաստանի բոլոր աղահանքերն և Կողբի աղահանքերի յերրորդ մասը տրամադրել էր Յեզր կաթողիկոսին (Սեբեոս, XXIX, էջ 112), վորն այդտեղի շահագործումից տարեկան ստանում էր 12.000 դահեկան յեկամուտ[77]: XIII դարում մոնղոլները, նվաճելով Հայաստանը, իրենց ձեռքը վերցրին աղահանքերը (ԿԳ., էջ 349): Վերջապես, Մխիթար Գոշի Դատաստանագրքի համաձայն, ինչպես բացահայտ է վերևում բերված հոդվածից, աղահանքերը համարվում էին, ըստ օրենքի, արքունի սեփականություն, բայց կարող էին տրամադրվել նաև իշխաններին վորպես պարգև թագավորի կողմից: Մխիթար Գոշի Դատաստանագրքի մեջ ներկա դեպքում անդրադարձել է

հնավանդ իրավաըմբռնումը հողի պետական սեփականության մասին՝ հանձին թագավորի։ Հիրավի, Բագրատունյաց թագավորության շրջանում աղահանքերը, մասնավորապես Կողբինը, պատկանում էին թագավորներին։ Այդ ակներև է 1038 թ. վիմական մի արձանագրությունից, ուր հիշված է, որ Բագրատունի Հովհաննես—Սմբատ թագավորը, Գագիկ թագավորի որդին, տվել է Հոռմոսի վանքին իրավունք՝ ձրի ստանալու Կողբի աղահանքերից տարեկան 100 բեռ աղ (ՎՏ, 21)։

Վերոհիշյալ մատենագրական և այլ տեղեկությունները պարզորոշ ցույց են տալիս Արշակունի թագավորների գերագույն հողային իրավունքը։ Այդ հողային իրավունքը հոմանիշ է Արևմտյան Եվրոպայի միջնադարյան ֆեոդալական հասարակության մեջ՝ dominium directum կոչված գերագույն սեփականության իրավունքին։ Սակայն հին Հայաստանի այդ dominium directum-ը համակված էր արևելյան դեսպոտիզմի բնորոշ գծերով, և նախարարական հողերը համարվում էին պետական հողային սեփականության բաղկացուցիչ մաս՝ հանձին թագավորի։ Ահա այն գիծը հանդիսանում է հիմնական հատկանիշներից մեկը, որով բնորոշվում է ֆեոդալիզմի ասիական ձևը։

Մեր պատմագիտական գրականությունն անհրաժեշտ ուշադրություն չի դարձրել հին Հայաստանի հողային սեփականության իրավունքի հարցի վրա, որ մեծ նշանակություն ունի հայկական ֆեոդալիզմի բնույթը պարզաբանելու համար։ Այդ հարցին առաջին լրջորեն մոտեցողը Ն. Ադոնցն էր, որն իր «Армения в эпоху Юстиниана» աշխատության մեջ փորձում է լուսաբանել այդ պրոբլեմը, հիմնվելով սոսկ արևմտյան եվրոպական ֆեոդալական իրավունքի անալոգիայի վրա, և, իհարկե, բացասական կարծիք է հայտնում Արշակունիների գերագույն հողային սեփականության իրավունքի նկատմամբ։ Տվյալ հարցում Ն. Ադոնցի կոնցեպցիային է հետևել ընդհանուր առմամբ նաև Հ. Մանանդյանն իր «Ֆեոդալիզմը հին Հայաստանում» աշխատության մեջ։ Կան նաև մի քանի հայագիտական ուսումնասիրություններ արևմտյան – եվրոպական գիտնականների, ինչպես օրինակ՝ Tournebiz, Fr.— Histoire politique et religieuse de l' Armenie (Paris, 1900) և Laurent, I.— L,Armenie entre

Byzance et l'islam (Paris, 1919), վորոնք նույնպես շոշափում են հին Հայաստանի հողային իրավունքի պրոբլեմը: Այս վերջինների կարծիքով, հայ նախարարները լիակատար սեփականատեր էին իրենց ֆեոդալական կալվածքների, և նրանց հողային իրավունքը միանգամայն անկախ էր պետական սուվերեն իշխանությունից: Դժբախտաբար ներկա աշխատության շրջանակները թույլ չեն տալիս քննական տեսության առնել վերոհիշյալ հեղինակների կարծիքները, մանավանդ, վոր Ն. Ադոնցի և Հ. Մանանդյանի անընդունելի տեսակետները մենք քննության ենք յենթարկել մեր արդեն տպագրության համար պատրաստ ռուսերեն «Феодализм в древней и средневековой Армении» աշխատության մեջ:

**4. ՀՈՂԻ ՊԵՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ.**— Հայաստանի պատմության հաջորդ շրջանում, արաբական տիրապետության դարերում, մանավանդ Բագրատունյաց թագավորության որով, գերագույն հողային իրավունքը դեռ կանգուն էր հասարակական իրավահայեցողության մեջ: Բագրատունյաց Հայաստանում գերագույն հողային իրավունքի սկզբունքը հայ թագավորների կողմից անխախտ էր պահպանվում: Ամբողջ հողային տերիտորիան համարվում էր պետական սեփականություն՝ հանձին սուվերեն թագավորի, վոր հենվում էր իր դեսպոտական իշխանության վրա: Թագավորն էր սովորաբար բաշխում հողերը և վավերացնում իրեն յենթակա ֆեոդալ իշխանների հողատիրության իրավունքը:

Սմբատ Բագրատունի թագավորը Նախիջևան քաղաքը տերության իրավունքով հանձնել էր իր վասսալ Սիսական իշխան Սմբատին (Ց. Դ., 209): Նույն թագավորը խոստացել էր իր վասսալ՝ Վասպուրականի իշխան Աշոտին ռազմական օգնության համար «տալ նմա քաղաքս, գաւառս, դեօղս և ագարակս» (ԹԱ, ԻԸ, 397): Համաձայն 1013 թ. վիմական արձանագրության՝ իշխան Գրիգոր Մագիստրոսը Գագիկ Բագրատունու որով նվիրաբերել իր կառուցած Հաւուցթառոց վանքին կալվածքներ, և այդ նվերը վավերացվել էր «անջնջելի արձանագրով և աշխարհակալ թագաւորի թղթովն և կայսերական կնքովն» (ՎՏ, 14):

Սմբատ Բագրատունու թագավորության ժամանակ նրա վաս—

սալ Սյունիքի իշխան Աշոտն իր որդիների և յեղբայրների հետ միասին, ներկայությամբ այլ իշխանների, կազմում է Տաթևվանքին պատկանած կալվածների սեփականատիրական արձանագրությունը, նշանակելով բոլոր սահմանները: Այդ արձանագրությունը, վոր ստորագրել են իշխան Աշոտն և ներկա յեղած ֆեոդալները, ի վերջո վավերացնում է թագավորը հետևյալ մակագրությամբ. «Ես Սմբատ Բագրատունի՝ թագաւոր հայոց, հաստատեցի իմով ձեռամբս զայս վճիռս և եդի ի վերայ զիմ թագաւորական մատանին ի ստորև» (ՍՕ, գլ. ԽԳ, 233): Նույնպես են վարվում Սյունիքի թագավորները, յերբ նախկին վասալական դրությունից ազատվելով, իրենց յերկիրը հայտարարում են թագավորություն: Սյունիքի թագավոր Վասակը վավերացնում էր ֆեոդալների նվիրաբերությունները հողով ու կալվածքներով հոգուտ Տաթևի և այլ վանքերի հետևյալ ձևով. «Ես Վասակ թագաւոր իմով ձեռամբ հաստատեցի և եդի զիմ կնիքս արքունական» (ՍՕ, գլ. ԾՁ, 307—308): Պատմագիր Ստեփանոս Օրբելյանը հաղորդում է, թե ինչպես Սյունիքի թագավորների հրամանով վասալ ֆեոդալներն իրենց կալվածներից վարելահողեր և գյուղեր էին բաժին տալիս այս կամ այն վանքին: Հողերի այդ նվիրաբերումը ձևակերպվում էր գրավոր ակտով ու համապատասխան ստորագրություններով և ապա վերջնականապես հաստատվում էր Սյունյաց թագավորի ստորագրությամբ ու կնիքով (ՍՕ, գլ. Կ, 321—332):

Վերևում բերված փաստերից վորոշակի հետևում է, վոր վասալ իշխանների հողային իրավունքը սահմանափակված էր, նրանք կարող էին ոտարել իրենց կալվածային հողերից իրենց սյուզերենի, այսինքն թագավորի, հաճությամբ ու թույլտվությամբ, վոր և վավերացվում էր վերջինի կողմից: Այս յերևույթը պետք է բացատրել իշխող իրավահայեցողությամբ, ըստ վորի ճանաչվում էր միայն պետական հողային սեփականություն թագավորի անձնավորումով, մյուս կալվածատեր իշխանները, վորպես ֆեոդալներ, ոգտվում էին հողերից վո՛չ թե սեփականության, այլ տիրության իրավունքով, վոր սահմանվում և հաստատվում էր հողի գերագույն սեփականատիրոջ ու տնորինողի, այն է՝ թագավորի կողմից:

Սակայն հետագայում, օտար նվաճողների տիրապետությամբ փոփոխվող քաղաքական պայմաններում, գերագույն հողային սեփականության իրավունքն իրականության մեջ հաճախ խեղաթյուրվում էր և կարծես կորցնում էր իր սկզբունքային նշանակությունը: Այդ առանձնապես յերևան է գալիս արաբների տիրապետության ժամանակաշրջանում, վորոնք զգալի փոփոխություններ են առաջացնում Հայաստանի հողային իրավունքի բնագավառում: Արաբական շրջանում, ինչպես տեսանք, սկսվեց նախարարական սիստեմի կազմալուծումը: Շատ նախարարներ, արաբների նվաճողական քաղաքականության շնորհիվ, զրկվեցին իրենց տոհմային կալվածներից և նույնիսկ այդ տոհմերից շատերը ֆիզիկապես բնաջինջ յեղան: Նախարարներից գավթված հողերը բաշխվում էին նվաճողների միջև և մասամբ էլ ընկնում էին այն փոքրաթիվ նախարարների ձեռքը, վորոնք կարողանում էին համակերպվել արաբական քաղաքականությանը: Վերջապես, արաբների մտցրած հարկային սիստեմը զգալի չափով խախտեց տեղական կալվածատիրության իրավական կառույցը, հարվածելով տեղական գերագույն հողային սեփականատիրության սկզբունքին:

Արաբներն իրենց բոլոր նվաճած հողերը համարում էին խալիֆատի սեփականություն: Այստեղ, ուրեմն, հանդես էր գալիս ասիական դեսպոտական պետությունների համար այնքան բնորոշ՝ հողերի պետական սեփականության իրավունքը: Այդ հիման վրա էլ խալիֆ Ոմարը օրենք էր սահմանել, վոր վոչ մի մուսուլման իրավունք չուներ Արաբիայի սահմաններից դուրս անշարժ գույք ձեռք բերել և հողագործությամբ զբաղվել[78]: Բոլոր հողերը մնում էին նվաճողների ձեռքում վո՛չ թե սեփականության, այլ տիրության, ժառանգական օգտագործման իրավունքով: Այդ իրավունքը արտահայտվում էր խարաջ կոչված պարտականությամբ, վորն իսկապես հողային ռենտա յեր. խարաջը ծանրանում էր վո՛չ թե անձերի, այլ միայն հողերի վրա:

Սակայն այդ օրենքը Ոմարից հետո կորցրեց իր նշանակությունը և գործնականում միանգամայն անտեսվում էր մուսուլմանների կողմից: Նվաճողները, նույնիսկ խալիֆի փոխարքանե-

րը, վոստիկանները, սովորական բան էյին դարձրել հողերի զավթումը և կալվածների յուրացումը գրաված յերկրներում: Իսկ արաբների հետ մուտք գործած դրամական ռենտան և առևտրա-վաշխառուական կապիտալն առաջացրին անշարժ գույքերի վաճառք և գնումն, վորոնք իրենց հերթին նպաստում էյին հողերի կենտրոնացմանը խոշոր ֆեոդալների ձեռքին:

Արաբների տիրապետությամբ հայ ֆեոդալ իշխաններն ընկան իրենց համար խորթ սոցիալ-քաղաքական պայմանների մեջ: Արաբները նվաճած յերկրներում, նաև Հայաստանում, հետապնդում էյին բացառապես ֆինանսա-գանձահասույթային նպատակներ, վորպեսզի յերկրից ըստ կարելվույն շատ նյութական միջոցներ դուրս հանեն: Այդ նկատառումով նրանք քիչ էյին միջամուխ լինում տեղական ֆեոդալների ներքին հարաբերություններում և գործերում: Նրանք բավականանում էյին, վոր տեղական իշխանները, վորպես վասալներ, կատարեն հարկային պարտականություններն և ըստ պահանջի զինվորական ուժեր ներկայացնեն իրենց գլխավորությամբ: Այդ վասալական հարաբերություններով նախարարները փաստորեն կապված էյին վո՛չ թե անմիջորեն խալիֆի, մուսուլման աշխարհի միապետի, այլ նրա փոխարքայի՝ վոստիկանի հետ, վորը համարվում եր Հայաստանի գերագույն կառավարիչը: Զգալով իրենց վրա կենտրոնական իշխանության անմիջական ազդեցությունը և շրջապատված լինելով մի մթնոլորտով, վորտեղ հողերի բռնի հափշտակումը, տուր և առը դարձել եր արաբների տեղական քաղաքականության անբաժանելի գործելակերպը,— մի քաղաքականություն, վոր վոտնահարում եր դարերով պահպանված ավանդական իրավահայեցողությունը պետության գերագույն հողային իրավունքի մասին,— նախարարները չհապաղեցին ոգտագործել ստեղծված պայմաններն իրենց շահերի տեսակետով: Այժմ ֆեոդալ իշխանները հնարավորություն էյին ստանում նայել իրենց հողերին վո՛չ թե տիրության, այլ սեփականության իրավունքով: Հողային իրավունքի այդ տեսակ իմաստավորումը դրդում եր ֆեոդալների ընչաքաղց ախորժակները և խթան հանդիսանում հողերի հավաքման ու կենտրոնացման, վորպիսի հանգամանքը նպաստում եր հողեր հավաքողների տնտեսական ու քա-

ղաքական ուժեղացմանը: Դրա հետևանքն այն եղավ, որ առաջացավ նախ՝ Բագրատունյաց թագավորությունը և ապա հերթով՝ Արծրունյաց և Սյունյաց թագավորությունները: Այս պայմաններում նրանք դարձան իրենց հողերի փաստական սեփականատերեր: Այդ թագավորներն իրենց հողային սեփականության իրավունքին նույնպես իրավաբանական ձև տվին, վերականգնելով իրենց անձի վերաբերմամբ գերագույն հողային իրավունքի ավանդական սկզբունքը: Հետևապես, այդ թագավորություններում նստած վասալական ֆեոդալ իշխանները, համաձայն այդ սկզբունքի, օգտվում էին իրենց հողերից միայն տիրության իրավունքով: Այդ բացահայտ երևում է վերն առաջ բերած փաստերից, երբ հողերի օտարումը կատարվում էր Բագրատունի կամ Սյունի թագավորների համաձայնությամբ և վավերացումով:

5. ՀՈՂԻ ՊԵՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՔԱՐՅԱՆՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ — Հողային գերագույն իրավունքի այդ տեսակ ըմբռնումն ավելի ցայտուն հանդես է գալիս Զաքարյան ժամանակաշրջանի Հայաստանում: Թեև Զաքարեն ու Իվանեն համարվում էին վրաց թագավորների վասալներ, բայց և այնպես այդ երկու իշխաններն ու նրանց ժառանգները ճանաչում էին Հայաստանը փաստորեն անկախ ու իրենց անմիջական իշխանության ենթակա տերիտորիա, որի գերագույն սյուզերենն էին համարում իրենց: Հենվելով իրենց յուրացրած հողային գերագույն իրավունքին՝ նրանք սելջուկներից նոր նվաճած Հայաստանի հողերը բաշխում էին նախկին ֆեոդալական տոհմերին և նորաստեղծ ֆեոդալներին, ենթարկելով սրանց իրենց իշխանությանը և վերապահելով նրանց միայն հողի տիրության իրավունք:

Բերենք մի քանի օրինակներ, որոնք բնորոշում են Զաքարյանների և սրանց վասալ ֆեոդալների հողային հարաբերությունները՝ հողային գերագույն սեփականության իրավունքի վրա:

Իշխանաց իշխան Բուպակը նվիրաբերում է Նորավանքին իր հայրենական հողերից Աղբերիս գյուղը, որ նա յետ էր խլել «այլազգիներից» և որը, ինչպես նա նշում է նվիրաբերման

վճռում՝ «իմ պարոնայք [Շահանշահ-Զաքարեի որդին և Իվանեն] մեծ սիրելով այլ ինձ էին որոշեալ» (ՄՕ, գլ. ԿԵ, 357):

Ըլլիկում իշխանի որդի Լիպարիտը, վերադառնալով Պարսկաստանից և ներկայանալով Աթաբեկ Իվանեին, վերականգնում է իր ֆեոդալական իրավունքները, ստանալով նրանից գյուղեր Վայոց Ձորում, Գեղարքունիքում, Կոտայքում, Կայենում (Անդ, 360):

«Յետ աւուրց ինչ այր մի մեծազգի ի տոհմէ իշխանացն Բաղաց, Թոռն Ջուրջեանց Մահեան անուն, զորոյ զնախնիսն յաւերման ժամանակին բերեալ էր Աթաբէկն Իւանէ և բնակեցուցեալ ի Վայոց ձոր և տուեալ հայրենեօք գնորոյն բերդ այլովք ագարակօք» (անդ, 366):

Այդպիսի օրինակներ գտնում ենք նաև վիմագիր հուշարձաններում, որոնք ավելորդ ենք համարում մի առ մի թվել, զգենլով, որ վերևում բերվածներն էլ բավականաչափ հաստատում են մեր ասածները:

Վերջապես, հողային գերագույն իրավունքը, որպես սեփականությունը գլխավորող թագավորի իրավունք, որ հնագույն դարերից ի վեր գործում էր Հայաստանում, իր արտահայտությունն է գտել նաև գրավոր օրենքներում: Այդ տեսակետից կարևոր նշանակություն է ստանում Մխիթար Գոշի Դատաստանագիրքը, որ, հագեցած իր ժամանակաշրջանի ֆեոդալական գաղափարախոսությամբ՝ արծարծում է նաև հողային իրավունքը մեր նշած սկզբունքով:

Մխիթար Գոշի Դատաստանագրքի II մասի («Աշխարհական օրէնք») Ա. գլխում, որ կրում է «Յաղագս դատաստանաց թագաւորաց և որք ընդ ձեռամբն նոցա», հիշվում է, որ հողը պատկանում է թագավորին և իշխանին (էջ 315): Այստեղ իշխան ասելով՝ պետք է հասկանալ սուվերեն իշխող, սենիոր: Այս մեր ենթադրությունը հաստատվում է Դատաստանագրքի այլ համապատասխան հոդվածներով, որտեղ ճշտակի որոշվում է թագավորի գերագույն հողային իրավունքը:

Նույն գլխում Մխիթար Գոշն ասում է. «Թագաւոր իշխանի տուեալ գաւառ՝ եթէ չինէ բստ հրամանի նորա բերդ և կամ աւան և կամ աւերակս ի նոյն սահմանի ի ժառանգութիւնս հա-

մարեսցի նմա, մի՛ լիցի փոխել առանց մեծի և իրաւացի յանցանաց. և զկնի մահու նորա՝ որդւոց նորա լիցի հրամանաւ թագաւորի: Սոյնպէս ընդ ձեռամբ իշխանաց ազատք լիցին և ընդ ազատաց ձեռամբ շինականք» (317):

Այս տողերից հետևում է, որ վասալ իշխանը հողն ստանում է թագավորից տիրության իրավունքով, այն էլ որոշ ժամանակով, իսկ յեթե այդ հողի վրա, թագավորի թույլտվությամբ կամ հրամանով, շինարարություն է կատարվում, այն է՝ կառուցվում են գյուղեր, բերդեր, վերականգնվում են ավերակները, ապա այդ հողերը մնում են ֆեոդալների ձեռքին ժառանգական տիրության իրավունքով, որը կարող է վերացվել թագավորի կամքով, յեթե ֆեոդալը կատարել է լուրջ հանցանք: Անտարակույս, այս օրենքի մեջ գրավոր կերպով արտացոլել է սովորութական իրավունքի հնավանդ մի նորմ, որը թերևս ծագում է Արշակունյաց շրջանի նախարարական իրավունքից:

Վերևում բերված հոդվածում բնորոշն այն է, որ շինականները, այսինքն ճորտերը, ըստ յենթակարգության ստանում են հողերն իրենց անմիջական սենիորներից, այն է՝ ազատներից, նույնանման ձևով, ինչպես որ իշխանները թագավորից: Ինչպես հայտնի յե, վոչ մի ֆեոդալական հասարակակարգում ճորտերը հողերի սեփականատեր չեն յեղել, այլ յեղել են սոսկ հողից օգտվողներ: Հետևապես, Մխիթար Գոշի անալոգիան ավելի ևս չեշտակի ընդգծում է ֆեոդալական հողային իրավունքի առանձնահատուկ բնույթը Հայաստանում, որտեղ հողի սեփականության իրավունքը պատկանում էր միայն թագավորին, իսկ նրա յենթակա վասալ իշխաններն օգտվում էին լոկ հողի տիրության իրավունքով:

Այնուհետև թագավորի գերագույն հողային իրավունքին է վերաբերում հետևյալ կետը. «շինել քաղաք և բերդ, և կամուրջս շինել մեծամեծ գետոց, թագաւորաց լիցի» (II, Ա. 304):

Ինչպես ակնհայտ է Մխիթար Գոշի Դատաստանագրքի վերոհիշյալ իրավաբանական նորմերից, նրանք մեծ կամ նվազ չափով համանման են Արշակունյաց թագավորների հողային գերագույն իրավունքին: Այդ առանձնապես նկատելի յե նախարարներին հողեր տրվելու և յետ վերցնելու, նախարարական տերի-

տորիաներում բերդեր կառուցելու և արքունի ռեգալիաների վերաբերմամբ:

Հողային իրավունքի նույն սկզբունքն ենք տեսնում Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում, վոր գործում եր Կիլիկյան հայ թագավորության մեջ: Սակայն այստեղ նկատվում ե այն փոքրիկ տարբերությունը, վոր ֆեոդալ իշխանների հողային իրավունքը վորոշ չափով լայնացված ե և, ընդհակառակն, սեղմված ե թագավորի գերագույն իրավասությունը վասսալական իշխանների տիրության ներքո գտնվող հողերի նկատմամբ: Այդ յերևույթը պետք ե բացատրել Կիլիկյան հայ պետության տեղական առանձնահատկություններով և մանավանդ նրա պետական կազմի բնույթով: Կիլիկիայի հայ ֆեոդալական կառուցքը զգալի չափով ազդված եր, խաչակրաց արշավանքների և Արևմտյան Յեվրոպայի հետ ունեցած առևտրական հարաբերությունների շնորհիվ, արևմտա-յեվրոպական ֆեոդալիզմի սկզբունքներից:

6. ԹԱԳԱՎՈՐԻ ՍԵՆԻՈՐԱԿԱՆ ՀՈՂԵՐ.— Արշակունի թագավորները, բացի այն, վոր հանուր պետական հողերից բաժին եյին հանում և տրամադրում նախարարներին, սովորություն ունեյին բաշխել հողեր նաև իրենց թագավորական սենիորական տերիտորիայից, այսպես կոչված «արքունի վոստանից»: Այդ արվում եր գլխավորապես պալատական պաշտոնյաների, գործակալների վերաբերմամբ, վորոնք միաժամանակ ստանում եյին նախարարական կոչում:

Այդ տեսակետից մեծ պատմագիտական նշանակություն ե ստանում 1907 թ. Բաշապարանում հայտնաբերված հունարեն արձանագրությունը, վոր վերլուծել ե պրոֆ. Մ. Ռոստովցևը[79]: Այդ արձանագրության մեջ ասված ե, վոր «Տրդատ մեծ թագավոր Մեծ Հայքի պարգևել ե այս ինչին [անունը վերծանված չե, յեղծված լինելու պատճառով] Գնթունու տոհմից Նիգ գավառն ու քաղաքը»: Նիգը մտնում ե Արարատյան մարզի մեջ վորն, ինչպես գիտենք, «արքունի վոստան» եր: Այս արձանագրության շնորհիվ նախ ճշտիվ հաստատվում ե Տրդատ թագավորի անձնավորությունը: Դա Տրդատ առաջինն ե, վոր հայ ավանդություններում, ըստ Մովսես Խորենացու Պատմու-

թյան, նույնացվել է Վաղարշակ թագավորի հետ և Հայոց պատմության մեջ ներկայացվել է իբրև Արշակունյաց թագավորական դինաստիայի հիմնադիր, հայ պետականության անդրանիկ բարեկարգողն ու նախարարական սիստեմի կառուցողը: Երկրորդ՝ խիստ հետաքրքրական է հունարեն εἰς ἀρτά[ρι]α յեղծված բառի լուսաբանությունը, թեև յենթադրական է այդ հետևությունը: Ռոստովցևն այդ վերծանված բառը թարգմանում է «վասն կոչիկների», վորտեղից յեզրակացնելու յե, վոր թագավորը Նիգ գավառը տվել է Գնթունուն «կոչիկների» համար, այսինքն՝ տրամադրել է կալվածական ավատ վորոշ ֆեոդալական պարտականության դիմաց. այս դեպքում ավատատեր իշխանը պետք է հոգար արքունի զինվորների մատակարարումը: Այդպիսի ֆեոդալական պարտականությունը սովորական եր հին պարսկական, պարթևական և նույնիսկ XI դ. Թուրքեստանի պետություններում, վորտեղ ֆեոդալ իշխաններին ու պալատական մեծամեծներին տրվում եյին ավատական կալվածքներ, պայմանով, վոր նրանք հոգան պալատական տնտեսության զանազան մասերը:

Հիրավի, Մովսես Խորենացին, պատմելով Վաղարշակի (իրականում՝ Տրդատ I-ի) ձեռներեցությամբ Հայաստանում կատարված պետական բարեփոխումների և նախարարությունների հիմնադրման մասին, հիշատակում է, վոր նա նշանակել է «զգեցուցանողս իւր զձեռչս ի զաւակաց քանանացւոց. անուն կոչէ ազգին Գնթունիս» (II, գլ. է, 103): Թեև Մովսես Խորենացին վոչինչ չի ասում, վոր Գնթունուն այդ պարտականության համար տրամադրվել են հողեր, սակայն ուշադրության առնելով Մովսես Խորենացու ասածի շարունակությունը, վորտեղ նա մի առ մի թվում է պալատական տնտեսական կառավարման ճյուղերը և այդ առնչությամբ զանազան նախարարների ավատական կալվածներ բաշխելը, պետք է կռահել, վոր նաև Գնթունի տոհմը բավարարվել է ավատական հողով:

Հետևապես, վերոհիշյալ հունարեն արձանագրությունը վորոշ չափով հաստատում է Մովսես Խորենացու ասածը Գնթունի նախարարության մասին և ընդամենը հիմք է տալիս յեզրակացնելու, վոր նաև նրա պատմվածքը մյուս նախարարների մասին, վորոնք Վաղարշակից (Տրդատ I) ստացել եյին հողեր՝ պալատական

տնտեսության վորոշ պահանջները բավարարելու պարտականությամբ, զուրկ չեն պատմական հիմքից: Հիրավի, Մովսես Խորենացու Պատմությունից յերևում է, վոր մի շարք նախարարներ ավատական կալվածքներ եյին ստացել, վորի հանդեպ պարտավոր եյին հոգալ պալատական տնտեսության մատակարարումը. Գնթունի նախարարը հոգում եր թագավորի հանդերձանքի մասին, Վարաժնունի նախարարությունը— վորսի, Գաբեղյանները— ձիերի յերամակների և ախոռների, Աբեղյանները— արքունի գահույքի և տան սպասավորման, Գնունիները— գինու և մառանների, Սպանդունիները— մսի և սպանդանոցի, Ջյունականները— սառույցի և ամառանոցների մասին և այլն. (Պ., գլ. Է, 103—104):

7. ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ.— Այսպիսով, հանգում ենք այն կարծիքին, վոր բովանդակ պետական տերիտորիայի վրա տարածվող լիակատար հողային սեփականության իրավունքը պատկանում եր թագավորին, գերագույն սյուզերենին, վորի անձնավորության մեջ գերագույն հողային իրավունքը նույնացվում եր նրա քաղաքական իշխանության հետ: Այլապես չեր էլ կարող լինել այն ֆեոդալական հասարակակարգում, վորտեղ թագավորի քաղաքական իշխանությունը բղխում եր միասնական պետական սեփականություն կազմող բոլոր հողերի վրա նրան պատկանող իշխանությունից: Դա մի բնորոշ յերևույթ եր, վոր հատուկ եր ասիական պետություններին, ինչպես ակնարկել է Կ. Մարքսը:

Թագավորի հողային գերագույն իրավունքի իմաստից ել բղխում եր նախարարների հողատիրության իրավունքը, վորպես պայմանական հողային տիրություն: Այդ տիրությունը, չնայած իր ժառանգական բնույթին, կախումն ուներ կենտրոնական թագավորական իշխանությունից և կապված եր վերջինի հետ վորոշ պարտականություններով: Հողատիրության այդ յերկակի բնույթը, մի կողմից՝ թագավորի լիազոր հողային իրավունքը ամբողջ պետական տերիտորիայի վերաբերմամբ, իսկ մյուս կողմից՝ նախարարների պայմանական հողատիրական իրավունքը նույն տերիտորիայում՝ արտահայտվում եր այն յերկու ձևերով, վորոնք արևմտա-յեվրոպական ֆեոդալիզմի տերմինաբանության

մեջ հայտնի յեն dominium directum և dominium utile անուններով:

Dominium directum-ը—հողի ուղղակի, անմիջական տիրությունը, վորպես սեփականական իրավունք, և dominium utile-ն—հողի օգտագործման տիրությունը, վորպես վասսալական իրավունք— հանդիսանում եյին հողային իրավունքի յերկու ծայրահեղ բևեռները: Սրանցից մեկի վրա կանգնած եր թագավորի իշխանությունն իր կենտրոնաձիգ եյությամբ, իսկ մյուսի վրա՝ նախարարական, ֆեոդալական իշխանությունն իր կենտրոնախույս ուժերով: Ֆեոդալական Հայաստանի ամբողջ պատմությունը պտտվում եր այդ յերկու բևեռների միջև տեղի ունեցող սուր բաղխումների մթնոլորտում, վորտեղ դարավոր անհաշտ պայքար եր մղվում արտադրության հիմնական միջոցին տիրանալու համար, այսինքն՝ հողի սեփականության անմիջական իրավունքի և լիակատար հողային իշխանության համար, պայքար թագավորի dominium directum-ի և նախարարների dominium utile-ի միջև:

Մենք տեսանք, վոր հողային գերագույն իրավունքից բղխում է թագավորի գերագույն պետական իշխանությունը, քաղաքական իշխանությունը: Այդ իշխանությունն իր եյությամբ դեսպոտական եր, վորի մեջ կենտրոնանում եյին պետական կյանքի ու կառավարման հիմնական կողմերը: Այդ իրավահայեցողությամբ թագավորը հանդիսանում եր գերագույն օրենսդիրը, իրավունք և դատ սահմանող: Այդ յերևում է նաև մատենագրական մի քանի տվյալներից: Յեզնիկ Կողբացին ասում է. «Ընդէ՞ր օրենք ի թագաւորաց դնիցին, և սաստք իշխանաց և պատիժ ի դատաւորաց» (I, ԺԵ): Փավստոս Բուզանդացին Արշակ II-ի վերաբերմամբ գանգատվում է՝ «իրաւունք ումեք յարքունուստ ոչ ելանէին» (IV, գլ. ԺԲ, 110): Ի հարկե, այդ օրենսդրությունն ու իրավարարությունը բնավ կառուցված չեր վորոշ սահմանադրական սկզբունքների վրա, այլ բղխում եր թագավորի բռնակալ իշխանության բնույթից և կապված եր նրա անձնավորության հետ, վորպես ֆեոդալական հասարակության միապետի, վորի գերագույն իշխանությունը կենտրոնանում եր արքունիքում: Այստեղից եյին բխում հրամանները ու կարգադրությունները,

վորոնք որենքի նշանակություն եյին ստանում: Իբրև այդպիսին, թագավորը դառնում եր իր հպատակների կյանքի ու մահվան տերը: Մենք տեսնում ենք, թե ինչպես թագավորը հրամայում և վոչնչացնել ըմբոստ նախարարներին, գլուխները հատանել և այլն:

Վորպես գերագույն սյուզերեն, նախարարությունների գլխավորող, տեր ու հրամայող՝ նա հանդիսանում եր պետության միակ ու ինքնակալ ներկայացուցիչը, վոր հարաբերություններ եր պահպանում և բանակցություններ վարում ոտար պետությունների հետ, դաշինք եր կնքում, պատերազմ հայտարարում ու ձեռնարկում, դեսպաններ առաքում և ընդունում: Նույնիսկ այն ժամանակները, յերբ Հայաստանն ընկնում եր այս կամ այն ոտար պետության, ինչպես Սասանյանների, Հռոմի և Բյուզանդիայի գերիշխանության տակ, նմանապես Հայաստանի թագավորի անձնավորությամբ եր արտահայտվում ամբողջ յերկրի վասալական յենթակայությունը նվաճող ոտար պետությանը:

Վերջապես, թագավորի գերագույն իշխանությունից եր բղխում դրամ հատանելու իրավունքը: Մեզ հասել են դրամներ, տակավին նախաարշակունյաց շրջանի հայ թագավորներից: Այդ ավանդական իրավունքն արտացոլել ե նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքում. «եթէ դահեկան և դրամ հատանիցէ, իշխանութիւն կալցի ըստ իրաւանց դատաստանի: Այլ իշխանաց ո՛չ է իրաւացի հատանել դահեկան և դրամ, և թէ հատանիցէ, հրամանաւ լիցի թագաւորի» (II, Ա, 304):

## II. ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ

1. *ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅՈՒՆ.—* Ֆեոդալական Հայաստանում հողային սեփականության իրավունքը պատկանում եր բացառապես գերագույն սյուզերենին, թագավորին, վորի իշխանության ներքո, վորպես dominium directum գտնվում եյին պետական տերիտորիան կազմող բոլոր հողերը: Իսկ նախարարների, վորպես վասալ իշխանների, հողային իրավունքն արտահայտվում եր սոսկ տիրության իրավունքով, այն ե՝ նրա ոգտագործումով, այսինքն՝ dominium utile: Ահա այդ իրավունքի

մեջ էր կայանում ֆեոդալական հասարակության արտադրության հիմնական միջոցին՝ հողին տիրելը: Ուստի կարևոր է պարզել հողատիրության ձևերն, այլապես ասած՝ վորոշել հողերի կատեգորիաները, վորոնք կազմում էին նախարարական հողատիրության հիմնական տարրերը:

Հայ մատենագրական աղբյուրներում հիշատակվում են գլխավորապես հողային տիրության յերկու տեսակներ՝ հայրենիք և պարգևական, հիշատակվում է նաև յերրորդ տեսակը՝ քսակագին կամ գանձագին: Վերջին տերմինը հանդիպում է գլխավորապես միջնադարյան գրականության մեջ, նախարարական սիստեմի կազմալուծման և առևտրա-վաշխառուական կապիտալի ներմուծքի դարաշրջանում: Ուստի այդ վերջին կատեգորիայի հողերը չեն հանդիսանում ֆեոդալական հողային իրավունքի հիմնական ու բնորոշ տարրը:

Մեր պատմագետներից ու հայագետներից շատերը սովորաբար հայերեն հայրենիք ու պարգևական տերմինները նույնացնում են արևմտա- յեվրոպական ֆեոդալական հողային տերմիններին՝ հայրենիքը «feod-ին, մի քանիսը նաև allod-ին, իսկ պարգևականը beneficium-ին: Յեթե մի քանի արտաքին նշաններն իրոք հիմք են տալիս անալոգիայով նույնացնել վերոհիշյալ տերմինները, սակայն ըստ էության այդ հայկական տերմինների համապատասխանությունը feod-ին կամ allod-ին և beneficium-ին կարելի յե ընդունել վորոշ վերապահություններով միայն:

Չպետք է աչքաթող անել մի կարևոր հանգամանք, վոր հայկական պարգևականն ու հայրենիքն՝ և արևմտա-յեվրոպական beneficium-ն ու feod-ը, նաև allod-ը, իրենց գենետիկ զարգացումով մեկնում են միանգամայն տարբեր հիմքերից: Արևմտա-յեվրոպական ֆեոդալիզմը, վորպես սոցիալ-տնտեսական ֆորմացիա, հաջորդելով անտիկ, ստրկատիրական ֆորմացիային, դոյացել է հին-գերմանական համայնքի քայքայման և արտադրության անտիկ յեղանակի քայքայման սինթեզի վրա, ընդսմին այդ ֆեոդալիզմն ունեցել է այնպիսի նախապայմաններ, ինչպես հռոմեյական լատիֆունդիաներն ու կոլոնատը: Իսկ ֆեոդալիզմը Հայաստանում, ինչպես և ընդհանրապես Արևելքում,

զարգացել է նախնադարյան կոմունիստական տոհմային հասարակության քայքայումից, անցնելով գյուղական համայնքի միջով, որը պահպանեց իր գոյությունը Հայաստանի ամբողջ ֆեոդալական պատմության մեջ: Ահա ֆեոդալիզմի զարգացման այդ յերկու տարբեր մեկնակետերն են, որով առանձնահատուկ բնույթ է ստացել Արևելքի ֆեոդալական հողային իրավունքը, ըստ որի բոլոր հողերը պատկանում են պետությանը՝ հանձին նրա թագավորի:

Հետևապես, սխալ տեսակետի վրա յեն կանգնած մի շարք պատմագետներ, ինչպես Ն. Ադոնցը (ААЮ, 460—461), Տուրնեբիզը[80], Լորանն[81] և, սրանց հետևողությամբ, Հ. Մանանդյանը, յերբ հայկական հայրենիքը նույնացնում են արևմտա-յեվրոպական allod-ին:

«Մերովինգյան դարաշրջանի allod-ը, որպես հողային գույքի տիպ,— ասում է Ն. Ադոնցը— միանգամայն զուգադիպում է հայկական հայրենիքին... այդ յերկուսն էլ ժառանգական հողեր են, որոնք սերնդից սերունդ են անցնում լիակատար սեփականության իրավունքով» (ААЮ, 457): Հ. Մանանդյանը, համաձայնելով Ն. Ադոնցի ասածների հետ, իր կողմից ընդգծում է. «Թե՛ Արշակունիների արքունի յերկրում և թե՛ նախարարական իշխանություններում գոյություն են ունեցել մասնավոր հատուկ կալվածներ ու հողեր, որոնք համարվել են նման միջնադարյան allod-ների՝ ժառանգական լիակատար սեփականություն: Այս կարգի գույքերն անվանվել են հայրենիք»[82]:

Միջնադարյան յեվրոպական ֆեոդալիզմում allod-ը, լինելով ինքնուրույն հողատիրության ձև և տիրոջ լիակատար սեփականություն, հակադրվում է beneficium-ին և feod-ին, որպես հողատիրության պայմանական ձևերին: Allod-ը տիրապետում էր սկզբնական շրջանում, յերբ ֆեոդալական սիստեմը նոր էր կազմակերպվում, և իսկական ֆեոդալական հարաբերությունները դեռևս չէին հասել իրենց զարգացմանը: Ալլոդական հարաբերություններն ըստ իրենց էության միշտ մնում էին ֆեոդալական հարաբերություններից դուրս: Այդ ակներև է նրանից, որ ավատական հարաբերությունների և ֆեոդալական

պայմանական հողատիրության հետագա զարգացումով՝ allod-ն անհայտնում և արդեն XIV դարում բացառիկ երևույթ է դառնում: Այդ միանգամայն բնական ու տրամաբանական էր միջնադարյան եվրոպական ֆեոդալիզմի ծագման ու զարգացման պայմաններում: Իսկ Հայաստանում, գերագույն հողային իրավունքի տիրապետության հանգամանքներում, ալլոդական հողատիրությունը չէր կարող տեղ ունենալ: Ցեթե, այնուամենայնիվ, Հայաստանի ֆեոդալիզմի պատմության մեջ կարող են հանդիպել ալլոդական թվացող հողատիրության երևույթներ, ապա դրանք հետնագույն ժամանակի չեն և բնավ չեն բխում նախարարական ֆեոդալիզմի էությունից: Հայաստանում, իրոք, ալլոդական հողային իրավունքը երևան է գալիս թագավորական իշխանության ժամանակից սկսած և կոնկրետ ձև ստանում Արշակունիների անկումից հետո, առավելապես արաբական տիրապետության ժամանակից սկսած: Այդպիսի հողային իրավունք ձեռք էին բերում միայն մի քանի նախարարություններ, վորոնք, հենվելով իրենց իրական ուժին, հնարավորություն էին ունենում ինքնուրույն գործելու և կախված չէին Հայաստանում այլևս գոյություն չունեցող թագավորից: Այդպես էին Մամիկոնյան, Բագրատունի, Արծրունի, Սյունի և մի քանի այլ նախարարություններ:

Այստեղ տեսնում ենք երկու միանգամայն հակադիր երևույթներ: Այն ժամանակ, երբ միջնադարյան եվրոպական ֆեոդալիզմում allod-ը՝ թագավորական իշխանության ուժեղացումով և վասալական կախումների կոնսոլիդացիայով՝ չքանում է ավատական հարաբերությունների մթնոլորտից, ընդհակառակը, Հայաստանում ալլոդական հողատիրությունը սկսում է երևան գալ, այն էլ ցաքուցրիվ, գլխավորապես նախարարական սիստեմի կազմալուծման պայմաններում, երբ հայկական ֆեոդալիզմը, ոտար նվաճողների ճնշման տակ, վերակառուցվում է նոր քաղաքական գծով:

Հիրավի, միջնադարյան մատենագրության մեջ, օրինակ՝ Ստ. Օրբելյանի և ապա հաջորդ վիմական արձանագրություններում, քաղաքական հարաբերություններում ստեղծված և առևտրա-վաշխառուական կապիտալի պայմաններում մուտք գոր-

ծած «հայրենիք» տերմինը կորցնում է իր նախկին նշանակությունը: Բացի դրանից, ինչպես վերն ակնարկել ենք, այդ դարերում, սկսած արաբների տիրապետությունից, ֆեոդալ իշխանների մեջ մեծ չափերով զարգանում է հողերի գնումն ու վաճառումը: Այս մթնոլորտում թե՛ ժառանգական տոհմային կալվածքը և թե՛ գնված հողերն ստանում են ֆեոդալական հողատիրության մեջ միատեսակ նշանակություն՝ հողային սեփականության իրավունքի տեսակետից: Արձանագրություններում, սկսած XII դարից, և այդ դարաշրջանի մատենագրական աղբյուրներում, մանավանդ Ստ. Օրբելյանի մոտ, գտնում ենք բազմաթիվ հիշատակումներ գանձագին կամ դրամագին հողերի մասին[83], ինչպես և «հալալ ընչից իմոց»[84] արտահայտությունը: «Հայրենիք» տերմինով արդեն նշում էին ամեն տեսակ հողային սեփականություն, թե՛ ժառանգական ավատը, և թե՛ գնված կալվածքը: Այստեղից էլ հայ վիմագրություններում յերևան է գալիս հողային սեփականության իմաստավորումով այնպիսի մի նոր տերմին, ինչպես «հայրենիք գանձագին»[85]:

Յեթե անալոգիա փորձենք արևմտա-յեվրոպական ֆեոդալական տերմինաբանության մեջ, ապա գանձագին, դրամագին, կամ քսակագին անվանված հողերն են, որ համարվելով կալվածատեր-իշխանների անհատական սեփականություն, նմանվում են allod-ին, իսկ հայրենիքն իր սկզբնական ավատական նշանակությամբ feod-ն է, ֆեոդալական հողատիրության հիմնական տարրը, որով բնորոշվում է այդ սոցիալ-տնտեսական հասարակակարգը: Feod-ը (լատ. feudum, ֆրանս. fief, գերմ. Lehn) հանդիսանում էր պայմանական սեփականություն, որ կապված էր որոշ պարտականություններով նրա հետ, որից այդ հողը ստացվել էր ժառանգական տիրության իրավունքով: Մեր պատմական գրականության մեջ չենք գտնում հստակ բնորոշում «հայրենիք» տերմինի վերաբերյալ, իսկ նույն գրականության մեջ ավանդված փաստական տվյալները յերբեմն այնքան խառնաշփոթ են, որ տարբեր ու կասկածելի մեկնաբանության առիթ են տալիս. այդ տեսանք allod-ի և «հայրենիքի» անհարկի նույնացման վերաբերմամբ:

Գալով պարգևական կոչվող ֆեոդալական հողերին, ապա

բառակազմությունից հետևում ե, վոր նրանք թագավորի կողմից պարգևված, ընծայված հողեր եյին: Ուրեմն այդ հայկական տերմինը միանգամայն նույնանիշ ե միջնադարյան ֆեոդալական beneficium-ին: Արևմտյան յեվրոպական ֆեոդալիզմում beneficium-ն արտահայտում եր պարգևած հողին ցկյանս տիրելու իրավունք՝ վորոշ պարտականությունների, վորոշ ծառայության հանդեպ: Վերը թված մի շարք որինակներում բացահայտ յերևում ե, վոր թագավորները պարգևում եյին հողեր զորավարներին, նախարարներին և այլ ֆեոդալներին առանձին ծառայությունների ու կատարած գործերի համար: Սակայն այդ մատենագրական տվյալներից չի կարելի վորոշել, թե ինչ պայմաններով եյին տրվում այդ հողերը, արդյոք ժամանակավո՞ր, այսինքն ցկյանս, թե՞ ժառանգական տիրության կարգով: Պետք ե յենթադրել, վոր այդ հողային նվերները ցմահ տիրելու բնույթ ունեյին: Բայց և այնպես այդ պարագան խոչընդոտ չեր հանդիսանում, վոր գործնականում այդ նվիրած հողերը դառնում եյին ժառանգական: Այդ ակնբախ ե Մխիթար Գոշի Դատաստանագրքից (II, Ա, եջ 317)· թագավորի կողմից իշխաններին նվիրված կամ տրված հողերը դառնում եյին ժառանգական տիրություն, յերբ վերջիններն այդ հողերի վրա կատարում եյին շինարարական կամ մշակութային աշխատանքներ, ընդվորում այդ ժառանգական տիրության իրավունքը պետք ե հաստատվեր թագավորի կողմից: Ուրեմն «պարգևականք» կոչված հողը ժամանակի ընթացքում դառնում ե «հայրենիք»: Այս դեպքում նկատում ենք արևմտա-յեվրոպական ֆեոդալիզմին հոմանիշ յերևույթ, յերբ բենեֆիցիական հողը հետագայում վերածվում ե ֆեոդալականի, այսինքն beneficium-ը կամ «պարգևականքը» հանդիսանում ե feod-ի կամ «հայրենիքի» նախապարագան, այն սաղմը, վորից զարգանում ե վերջինս: Հիրավի, հայկական ֆեոդալիզմի զարգացման հետագա շրջանում «պարգևականքի» և «հայրենիքի» միջև, կարծես, ջնջվում ե այդ յերկու հողատիրական ձևերի վերաբերյալ իրավաըմբռնումը: Այդ նկատելի յե Ստ· Որբելյանի մոտ, վորը նույնիսկ պարգևված հողերն անվանում ե «հայրենիք», միայն ընծայման հանգամանքը չեշտելու համրա նա յերբեմն կցում ե «արքայատուր» բառը (գլ· ԿԶ, 411):

Հետաքրքրական է վերջերս Հ. Մանանդյանի կատարած վերլուծական փորձը, որով նա գալիս է ապացուցելու, թե ֆեոդալական Հայաստանում փեոդ տերմինին համապատասխանում է խոստակ բառը, իսկ ֆեոդ ունեցողը կոչվում էր խոստակդար[86]: Այդ բառերը հանդիպում են Մովսես Կաղանկատվացու Պատմության մեջ հիշատակված Աղվանից Վաչագան Արքայի կանոնադրության 6-րդ հոդվածում[87] և Ստ. Օրբելյանի Պատմության մեջ (գլ. ԼԹ, 206—207, գլ. Խ, 219, գլ. ԽԳ, 232—2339): Համեմատելով Վաչագանի 6-րդ կանոնը Շահապիվանի ժողովի Բ. հոդվածի (ԿՀ, էջ 61) և «Կանոնք Ներսիսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի» Ե հոդվածի հետ (ԿՀ, էջ 109), որոնք համանիշ բովանդակություն ունեն հոգևորականների ժառանգական հողատիրության իրավունքի մասին, և նկատի առնելով, որ Վաչագանի հոդվածում նշված «խոստակ»-ին համապատասխանում է վերջին երկու հոդվածներում կիրառված «հայրենիք» տերմինը, Հ. Մանանդյանն հանգում է այն եզրակացության, որ «խոստակը» ոչ այլ ինչ է, եթե ոչ «հայրենիք», որը համապատասխանում է եվրոպական «feod» տերմինին:

Այնուհետև խոստակ տերմինը հանդիպում ենք Ստ. Օրբելյանի Պատմության մեջ IX և X դ. դ. վերաբերյալ հողային նվիրաբերությունների վավերագրերում: «Խոստակդար», այսինքն ավատառու, ինչպես ենթադրում է Հ. Մանանդյանը, խոշոր ֆեոդալների վասալներ էին, «ազատները», որոնք իրենց սենիորներից ստանում էին հողեր՝ ձիավոր զորքում ծառայելու պարտականությամբ:

Չառարկելով Հ. Մանանդյանի խոստակ բառի վերլուծման ճշտության դեմ, մենք այն կարծիքին ենք, որ նշված տերմինը, չնայած նրա լեզվական իրանա-պարթևական ծագմանը, խորթ է յեղել Հայաստանում վաղուց հաստատված ֆեոդալական տերմինաբանությանը: Հայ մատենագրության մեջ սովորաբար հանդիպում է «ֆեոդի» առումով միայն «հայրենիք» և ո՛չ թե «խոստակ» տերմինը, որը հիշատակվում է ընդամենը մեկ անգամ VII դ. (Վաչագանի կանոնը) և չորս անգամ IX և X դ. դ. վավերագրերում (Ստ. Օրբելյանի Պատմության մեջ):

Սակայն ուշագրավ է այն, որ թեև «խոստակ» տերմինը, ինչ-
պես տեսնելու ենք վավերագրերից, հանդես է գալիս զանազան դա-
րերում, բայց միայն երկու վայրերում — Աղվանքում և Սյու-
նիքում, իրար հետ տնտեսապես ու քաղաքականապես սերտ
կապված երկրներում, որոնք սահմանամերձ էին Մեծ Հայ-
քին: Այս պարագան հիմք է տալիս ենթադրելու, որ ընդհան-
րապես «խոստակ» բառը գործածություն չի ունեցել հայ ֆեոդալա-
կան միջավայրում և իբրև տերմին տեղ չի գտել հայ ֆեոդալա-
կան իրավունքի թե՛ սովորական և թե՛ գրավոր նորմերում,
չնայած որ Հայաստանի ֆեոդալական իրավունքի տերմինա-
բանության մեջ մուտք են գործել ու սովորական դարձել իրա-
նա-պարթևական շատ անուններ: Ըստ երևույթին, «խոստակ»
տերմինը մուտք էր գործել պարթևական գերիշխանության ժա-
մանակ Աղվանից երկիրը և այստեղից արձագանք տվել հարևան
Սյունիքում, չտարածվելով այլևս Հայաստանի մյուս մասերում:

2. ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ.— Վերը
չեշտել ենք, որ նախարարական հողատիրությունը պայմանա-
կան էր: Ինչո՞ւմն էր կայանում այդ պայմանականությունը:

Նախարարական Հայաստանը ներկայացնում էր մի պետու-
թյուն, բաղկացած ֆեոդալական իշխանություններից՝ նախա-
րարություններից, որոնց միացնում և ղեկավարում էր թագա-
վորն իր կենտրոնական իշխանությամբ: Այդ պետական կազմի
ու նրան անձնավորող թագավորի մեջ ֆեոդալները տեսնում
էին իրենց դասակարգային տիրապետության հանդրվանը, որ
ապահովում էր ֆեոդալական շահագործման սիստեմը և հնարա-
վորություն ընձեռում միշտ արտատնտեսական ճնշման տակ պա-
հել իսկական արտադրողներին ամբողջ պետական տերիտորիա-
յում: Այդ պայմաններում կենտրոնական թագավորական իշխա-
նությունն ու ֆեոդալական միավորների համագոյությունն,
իբրև պետություն, հիմնված էին որոշ շաղկապիչ հարաբերու-
թյունների վրա: Թագավորի և վասալ նախարարների փոխադարձ
հարաբերությունները արտահայտվում էին այն կախումով ու
պարտականություններով, որոնք ունեին նախարարները միա-
նական ու ամբողջ պետության հանդեպ՝ հանձին թագավորի:
Այդ կախումը հողային բնույթ էր կրում և ո՛չ թե անձնական,

ինչպես կարծում են Ն. Ադոնցն ու Հ. Մանանդյանը, լինելով ֆեոդալական Հայաստանում իբր թե տիրող ալլոդական հողատիրության կոնցեպցիայից: Ինչպես հայտնի է, արտադրության ֆեոդալական յեղանակի վրա հիմնված ամեն մի հասարակության սոցիալ-տնտեսական կառուցքը հանգչում է հենց հողային կախման հարաբերությունների վրա, կախման, վոր հիերարխական կարգերով իջնում է թագավորից, գերագույն սյուզերենից, մինչև ամենաստորին աստիճանը՝ ճորտացած գյուղացին: Այդ հարաբերությունները, յեթե նույնիսկ անձնական համարենք, ինչպես կարծում են Ն. Ադոնցն ու Հ. Մանանդյանը, այնուամենայնիվ ծագում էին այս կամ այն ձևով հողի ոգտվելուց և տիրելուց, վոր պայմանավորված էր ավատական իշխանների վորոշ պարտականություններով:

Այդ պարտականությունները կայանում էին ծառայության մեջ, վորպիսի տերմինը համանիշ է յեվրոպական միջնադարյան ֆեոդալիզմի servitium-ին: Այդ «ծառայության» մեջ գլխավոր տեղն էր բռնում նախարարի պարտականությունը՝ իր զորքով ներկայանալ թագավորին, ըստ նրա պահանջի, պետության պաշտպանության համար: Ինչպես բացահայտ է «Զորանամակ» կոչված ցուցակից, այդ զորքերի թիվը համապատասխանում էր յուրաքանչյուր ավատական իշխանի հողային տերիտորիայի տարածությանը: Այնուհետև, տեսնում ենք բդեշխ կոչված ծայրագավառային ֆեոդալ իշխաններ, վորոնց պարտականությունն էր ընդհանուր պետության սահմանները պաշտպանել: Կային նաև նախարարներ, վորոնց «ծառայությունն» էր արքունի պալատի տնտեսության զանազան ճյուղերի մատակարարումը: Կային, վերջապես, նախարարներ, վորոնք պատվավոր պարտականություններ էին կատարում արքունի դրանը, ինչպես և այնպիսիները, վորոնք, թագավորի հանձնարարությամբ զանազան վարչա-պետական պաշտոններ էին վարում զանազան գավառներում:

Ահա այդ նախարարական «ծառայությունը» միշտ կապված է յեղել, ըստ մեր հին պատմագիրների իրավաըմբռնման, հողատիրության հետ: Այդ յերևում է նաև Բյուզանդական Հայաստանում ապաստանած հայ նախարարների նամակից, վոր ուղղ-

ված էր Պարսկական Հայաստանի թագավոր Խոսրովին, յերբ նրանք ցանկություն են հայտնում Հայաստան վերադառնալ և հավատարիմ ծառայել նրան, ինչպես և ծառայում էյին նրա հորը՝ Արշակին, յեթե նա իրենց վերադարձնի բոլոր բռնագրավված հողերը (ՄԽ, III, գլ. ԽԸ, 323—324)։ Նույնիսկ նախարարական կոչում տալն, ըստ մեր պատմագիրների, մանավանդ ըստ Մովսես Խորենացու, տեղի յեր ունենում բացառապես հողի բաշխումով։

3. ՄԱՅՈՐԱՏ — Նախարարական ծառայության օրգանական աղերսը հողատիրության հետ վկայում է նաև հին Հայաստանում գոյություն ունեցող մայորատի իրավունքը, վոր կարելի յե թարգմանել «ավագության իրավունք»։ Նախարարական տերիտորիան համարվում էր տվյալ ամբողջ տոհմի անբաժանելի և միասնական տիրություն։ Ահա ֆեոդալական հողատիրության այդ հիմնական սկզբունքն անխախտ էր մնում նախարարական հողի ժառանգումով ըստ ավագության՝ հորական գծով։

Նախարարական մայորատի իրավունքի մեջ նշմարում ենք սոցիալ-տնտեսական մնացուկ արխայիկ տոհմային հողատիրության, վոր վերափոխվել էր գյուղական համայնքի հողատիրության, ուր տոհմային ավագը, իսկ հետագայում գյուղական համայնքի ավագը, հանդիսանում էր կոլեկտիվի իրավական ներկայացուցիչ՝ տոհմա-ցեղային միության մեջ։ Այդ սոցիալ-տնտեսական բնորոշ գիծը՝ վերափոխված դասակարգային ձևով՝ պահպանվել էր Արևելքի ֆեոդալական հասարակություններում, ինչպես և Հայաստանում։ Այստեղ նախարարական տոհմի կամ տան ավագը, վոր կոչվում էր նահապետ կամ տանուտեր, իբրև ներկայացուցիչ տոհմային ամբողջ անբաժանելի հողի և նրա տիրության իրավաբանական անձն, պատասխանատու յեր իր տոհմի «ծառայության» համար։ Ուստի թագավորական իշխանությունը, մեկնելով իր հողային գերագույն իրավունքի շահերից և նախարարական հողատիրության հետ կապված վասալական ծառայության ապահովումից, իրեն իրավունք էր վերապահել միջամտելու մայորատական ժառանգների նշանակման հարցերին։ Այդ բանն առանձնապես աչքի յե ընկնում Արշակունի թագավորների ժամանակ։ Սրանք իրավունք էյին համարում, թե-

կուլ ձևականորեն, ո՛չ միայն հաստատել ամեն անգամ տանու-
տիրական կամ նահապետական իշխանության ժառանգումը նա-
խարարական տոհմի ավագագույն անդամի կողմից, այլ և
յերբեմն իրենք էին նշանակում այդ նահապետին, տանուտե-
րին: Այդ ժառանգական կարգն անփոփոխ պահպանվում էր նա-
խարարների նկատմամբ նաև Հայաստանի բաժանումից հետո
նոր սյուզերեն իշխանների կողմից, հանձինս Սասանյան թա-
գավորների, ինչպես և սկզբներում մի քանի բյուզանդական
կայսրների:

Ի լուսաբանումն մեր ասածների՝ առաջ բերենք մի քանի
մատենագրական տվյալներ:

«Եւ կացոյց արքայն (Արշակ Բ) զՎարդան, զերէց եղբայրն
[Մամիկոնյան տոհմի] ՚ի նահապետութեանն ազգին իւրեանց»
(ՓԲ, IV, Բ, 67): «Եւ ազգին Մամիկոնեան տոհմին տանուտէր
նահապետ կացոյց թագաւորն (Վարազդատ), Վաչէ անուն ի
նմին տոհմէ» (ՓԲ, V, ԼԵ, 245):

«Յայնժամ կոչէ արքայ Կաւատ զՎարազտիրոց զորդի Սըմ-
բատայ Բագրատունւոյ՝ Խոսրով Շում կոչեցելոյ, և տայ նմա
զիշխանութիւն տանուտէրութեանն. առնէ զնա մարզպան. և ար-
ձակէ ի Հայս հանդերձ ամենայն ընչիւք հայրենի, զի պաշխարհն
ի շինութեան պահեսցէ» (Սեբեոս, ԻԸ, 156):

«Եւ զորդի նորա (Վարազտիրոց Բագրատունւոյ) զանդրանիկն՝
որում անունն էր Սմբատ, կարգեաց արքայ [Կոստանդին Բյու-
զանդական] ի պատիւ հաւր իւրոյ, տուեալ նմա զիշխանութիւնն
բնիկ տանուտէրութեանն ասպետութեան» (Սեբեոս, ԼԲ, 188):

Միջին դարերի Հայաստանի մայորատական իրավունքի ցայ-
տուն պատկեր են ներկայացնում Օրբելյան տոհմի Սյունյաց
իշխանության ժառանգումները: Իշխան Լիպարիտ Օրբելյանի մա-
հից հետո, վորը Զաքարե և Իվանե իշխաններից վերստացել էր
Սյունյաց յերկիրը վորպես ժառանգական տիրություն, նրան ժա-
ռանգում է անդրանիկ վորդի Էլիկումը: Վերջինի մահից հետո,
թեև մնացել էր նրա վորդի Բուրտելը, բայց և այնպես իշխա-
նությունը ժառանգում է նրա յեղբայր Սմբատը, վորպես տոհմի
ավագագույնը, իսկ սրա մահից էլ հետո՝ յերրորդ յեղբայր
Տարսայիճը (ՍՕ, գլ. ԿԶ, 404—405, 419): Հայ մատենագրու-

թյան էջերում պահպանվել են բավականաչափ հիշատակումներ մայրատական իրավունքի շուրջը ծագող վեճերի ու դժտությունների մասին։— «Իսկ Ստեփաննոս Սիւնոյ [VI դարի վերջը] պայքարեալ վասն տանուտէրութեան լեալ ընդ հաւրեղբաւրն իւրում Սահակայ» (Սեբ., ԺԳ, 92)։ Եղիշե պատմագիրն ավանդում է, որ Սյունյաց նախարար Վասակը սպանել էր իր հորեղբայր Վաղինակին, որին «ըստ օրինի» ժառանգելու էր տանուտիրությունը, որպեսզի ինքը գրավի ժառանգությունը (Ե., 178)։

Մայրատական իրավունքն անդրադարձել է նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքում և մասամբ Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում։

Մխիթար Գոշն այնքան լայն ծավալ է տալիս ավագության սկզբունքին, որ այդ իրավունքը նա տարածում է նաև թագավորական գահի ժառանգության վրա, որին, ինչպես հայտնի է Արշակունյաց թագավորների պատմությունից, հորից անցնում էր անդրանիկ որդուն։ Ըստ Մխիթար Գոշի՝ թագավորի մահից հետո նրա ժառանգական գույքը հավասար բաժանվում է որդիների և դուստրների միջև, իսկ անդրանիկին անցնում էր գահը։ Իսկ եթե նրա մահից հետո կենդանի են եղբայրները, ապա թագավորական գահը ժառանգում են սրանք ըստ ավագության, բայց՝ ոչ մեռնողի որդիները, որոնք կարող են ժառանգել թագավորների այդ եղբայրների վախճանով (II, Ա, էջ 300)։

Խիստ ուշագրավ է, որ մայրատի իրավունքը սովորույթի ուժով ավանդաբար մասամբ պահպանվել էր հայ գյուղական ընտանեկան համայնքների կենցաղում մինչև անցյալ դարի վերջերը։

Եթե ֆեոդալական Հայաստանում մայրատի իրավունքն անհողդողդ պահպանվում էր նախարարական տոհմերում, ընդհակառակն՝ այդ իրավունքը չի գործում նույն սկզբունքով արքայական տոհմում, որտեղ ժառանգումն անցնում էր նույնպես ավանդության գծով, բայց միայն հորական ուղիղ գծով՝ որդուն։ Այդ պարզ երևում է Մովսես Խորենացու Պատմության մեջ. «Եւ քանզի բազում ունէր ուստերս, պատշաճ վարկաւ ոչ ամենեցուն

տա իւր կալ ի Մծբին. վասն որոյ առաքէ զնոսա բնակել ի գաւառս Հաշտենից, և ի ձորն Նորին սահմանակալ, որ է արտաքոյ Տարօնոյ. ի նոսա թողլով զշէնս ամենայն հանդերձ յաւելուածով մտից առանձինն և ռոճկաց կարգելոց յարքունուստ: Եւ միայն զառաջին որդին իւր, որ կոչէր Արշակ, պահէ առ իւր ի համար թագաւորութեանն, և զնորին ուստր՝ զոր անուանեաց Արտաշէս...: Եւ եղև այս յայնմ հետէ և առ յապայ օրէնք ի մէջ Արշակունեաց, միոյ որդւոյ բնակել ընդ արքային՝ փոխանորդ լինել թագաւորութեանն, և այլ ուստերաց և դստերաց գնալ ի կողմանս Հաշտենից՝ յազգին ժառանգութիւն» (ՄԽ, II, գլ. Ը, 111):

Նախարարական տոհմերի միջավայրում մայորատի իրավունքի տիրապետությունը վկայում է նախարարության մեջ պահպանված տոհմային հիմունքների մասին: Անշուշտ, արքայական դինաստիայում չեյին կարող մնալ տոհմային հիմունքները: Պետության իմաստավորումը չեր կարող համատեղվել տոհմային հանկալվածքի գաղափարի հետ: Նախարարական տերիտորիան հանդիսանում եր ամբողջ նախարարական տոհմի կալվածք, իսկ պետական տերիտորիան, վոր ընդգրկում եր իր մեջ բոլոր նախարարական կալվածքները, համարվում եր թագավորի, գերագույն իշխանության ինքնակալի հողային սեփականություն, վորը, ի հարկե, կրում եր անհատական, անձնական և վո՛չ թե տոհմային բնույթ:

Այդ տեսակետից հետաքրքիր է Բագրատունյաց թագավորության պատմությունը: Յերբ Արշակունյաց անկումից չորս դար անց Աշոտ Բագրատունին վերականգնեց հայ թագավորությունը, գահակալության հարցում սկսեցին կիրառել Արշակունյաց դինաստիայում գործող ժառանգման կարգը: Սակայն, մայորատական իրավունքի սկզբունքն այնքան ավանդական ուժ եր պահպանել Բագրատունի տոհմի մեջ, վոր նրա ավագագույն անդամները չեյին հաշտվում այդ նորամուծ կարգի հետ, տեսնելով այդտեղ իրենց վաղեմի տոհմային շահերի սահմանափակումն ու տրադիցիաների խախտումը: Սովորաբար ամեն մի թագավորի մահից հետո, յերբ գահը ժառանգելու յեր թագավորի ավագ վորդին, մեռնողի յեղբայրները վեճ ու առարկումներ եյին հարուցանում և շատ անգամ բանը հասնում եր արյունալի ընդհարումների և բացարձակ ապստամբությունների:

# III. ՋՐԱՅԻՆ ԻՐԱՎՈՒՆՔ

Հողային իրավունքի հետ սերտ առնչություն ունի ջրային իրավունքը: Հայտնի փաստ է, թե ինչ ահագին նշանակություն ունի ջուրը Արևելքի կլիմայական-աշխարհագրական պայմաններում, մանավորապես նաև Հայաստանում, յերկրագործական մշակույթի համար, վորն առանց վոռոգման անկարող է գոյություն ունենալ: Ջրազուրկ հողը վոչ մի արժեք չի ներկայացնում: Ուստի այստեղ հողերի յուրացումը տնտեսական նպատակներով անկարելի յե առանց վոռոգման շինարարության, վորի մեջ առաջնակարգ տեղ է բռնում առուների արհեստական սիստեմը՝ ջրամատակարարումը կարգավորելու համար:

Այդ կարևորագույն պարագան իր վրա յե գամել Արևելքի ժողովուրդների պատմությամբ զբաղվող շատ մասնագետների ուշադրությունը: Առաջավոր Ասիայի ու Յեգիպտոսի հնագույն քաղաքակրթության, նյութական և հոգևոր կուլտուրայի զարգացման պատմության մեջ վճռական դեր եր խաղում վոռոգման մշակույթը: Այդ տեսակետից Մ. Վեբերն այնքան հեռու յե գնում, վոր շարահյուսում է յուրահատուկ պատմական տեսակետ, վորի համաձայն հին Արևելքի բոլոր տնտեսական ու քաղաքական ինստիտուտները նա բացատրում է վոռոգման շինարարության հետևանքներով: Միջագետքում վոռոգումն Յեփրատ ու Տիգրիս մեծ գետերի սիստեմով՝ դերակշռող դեր եր խաղացել հին Բաբելոնի ու Ասորեստանի գյուղատնտեսական կուլտուրայում, վորտեղ տիրապետող թագավորներն իրենց ձեռքում եյին կենտրոնացրել վոռոգման շինարարության ու ջրաբաշխման ամբողջ գործը: Նույնն եր հին Յեգիպտոսում Նեղոսի ջրերով վոռոգելու բովանդակ կառուցքը[88]:

Արևելքի ժողովուրդների համար վոռոգման վճռական նշանակության վրա քանիցս շեշտել են Կ. Մարքսն ու Ֆ. Ենգելսը իրենց կլասիկ աշխատություններում:

«Պարսկաստանից մինչև Հնդկաստան, Յեգիպտոսից մինչև Չինաստան,— ասում է Ֆ. Ենգելսը,— բոլոր յերկրներում համատարած է ժողովրդական այն ասացվածքը, վոր առանց ջրի չկա յերկրագործություն»[89]:

«Բազմաթիվ բռնապետություններ, վորոնք բարձրանում և

տապալվում էին Պարսկաստանում ու Հնդկաստանում, բոլորն էլ շատ լավ հասկանում էին իրենց առաջնագույն պարտականությունը. հոգալ հովիտների ոռոգման մասին, առանց որի այդ յերկրներում անհնարին է յերկրագործությունը»[90]:

Հայաստանի դաշտային մասերում էլ յերկրագործության մշակույթի զարգացման մեջ առաջնակարգ նշանակություն ունի ոռոգումը: Այդ ոռոգման աղբյուրներն էին Արաքսն ու Եփրատն իրենց բազմաթիվ ճյուղերով, նաև ստորերկրյա ջրային հարուստ պաշարները: Տակավին Հայաստանի պատմության հնագույն շրջանում, խալդական թագավորության ժամանակները, այստեղ ոռոգման հսկայական ու հոյակապ շինարարություններ կատարվում: Տեղական յերկրագործական մշակույթի զարգացման համար, որ տարվում էր ֆեոդալական կալվածքներում, խալդական թագավորները կառուցում էին ջրատար առուներ Արարատյան դաշտում՝ Արաքսի և նրա ճյուղերի ջրերից, ինչպես նաև Վասպուրականում: Այդ առուներից մի քանիսը, չնայած իրենց ալևոր հնությանը, գործում են տակավին այսօր էլ: Ակադեմիկոս Ն. Մառի ու այլ հետախույզների հնագիտական պրպտումներով հայտաբերվել են Սևանի լիճն յեզերող Գեղամա լեռների, նաև Արագածի վրա «մեգալիթյան ձկներ—վիշապներ»: Հայաստանի «նախապատմական» դարերի այդ ջրային աստվածները գտնվում էին լճերի ու արհեստական ջրամբարների գլխին, որտեղից ջուրը առուների ջրաբաշխական ցանցով տարածվում էր Արարատյան դաշտում[91]:

Հայ մատենագրական աղբյուրներում բացակայում են տեղեկություններ հայ թագավորների ջրաշինարարական գործերի մասին: Սակայն պետք է յենթադրել, որ գոյություն են ունեցել ոռոգման կառուցումներ, առանց որի չէր կարող զարգանալ յերկրագործական մշակույթը: Մովսես Խորենացին, պատմելով Տիրան թագավորի մասին, որ հողեր է պարգևում իր բարեկամ Դրուասպին, նշում է, որ այդ հողերի վրա խաղողի և այլ այգիները ոռոգվում էին Գայլատու լճից հանված ջրանցքով (II, ԿԲ, 192): Բացի այդ՝ գտնում ենք կողմնակի ակնարկներ Արշակունի թագավորների ջրանցքակառուցման մասին նրանց շինարարական գործունեության այլ բնագավառներում: Ըստ Փավստոս Բու-

զանդացու Պատմության՝ Խոսրով Կոտակ թագավորը տնկեց Արարատյան դաշտում ահագին անտառ, սկսած Գառնի ամրոցից մինչև Դվին քաղաքը՝ Ազատ գետի ուղղությամբ, ավելի հեռուն մինչև Արտաշատ քաղաքը և Արաքս գետը (III, գլ. Ը, 18)։ Անտառի տնկումն այդպիսի մեծ տարածության վրա Արարատյան դաշտի չոր կլիմայական պայմաններում անհնարին կլիներ՝ առանց արհեստական վոռոգման սիստեմի։ Այդ նպատակով կառուցվելու եյին հատուկ ջրանցք— առուներ, մանավանդ, յեթե նկատի առնենք, վոր այդ անտառատունկ հողերը տարածվում եյին Արաքսի և նրա վտակ Ազատի միջև ընկած ուղղությամբ։ Մովսես Խորենացին ավանդում է Յերվանդ թագավորի շինարարական գործունեության—քաղաքների, դաստակերտների շինության մասին, վորոնք շրջապատվում եյին այգեստաններով, նաև արհեստական անտառներով (II, գլ. ԼԹ, Խ, ԽԱ, ԽԲ, 160—163)։ Անտարակույս, այդ բուսական մշակույթի աճեցման համար անհրաժեշտ եր վոռոգումն, վոր հնարավոր եր միայն ջրանցքաշինարարությամբ։ Մովսես Խորենացին հիշատակում է Յերվանդի այդպիսի ջրանցքաշինարարության մասին Արաքսից, բայց հատկապես Յերվանդաշատ քաղաքի համար։ Ինչպես տեսնում ենք, այդ բոլոր շինարարությունները, հատկապես և ջրային, կենտրոնացած եր պետության գլխավոր արքայի ձեռքին։

Սակայն մենք ունենք մատենագրական ու վիմագրական տեղեկություններ ջրանցքաշինարարության մասին միջին դարերի վերաբերմամբ[92]։ Թեև այդ տեղեկությունները վերաբերում են վանքերի կալվածական տնտեսություններին, բայց և այնպես այդ տվյալների հիման վրա կարելի յե յենթադրել, վոր աշխարհիկ ֆեոդալների լայնածավալ դաշտային կալվածներն էլ նույնպիսի ջրանցքաշինարարությամբ կարող եյին յուրացվել յերկրագործական մշակույթների համար։

Ահա այդ վոռոգման նշանակությունն ու ջրանցքաշինարարության դերն անպայման պետք է առնչություն ունենային ջրային իրավունքի հարցի հետ, իսկ վերջինս էլ, իր հերթին, սերտորեն կապվում եր հողային իրավունքի հետ։ Թե վորքան այդ յերկու իրավունքները փոխադարձ աղերս ունեյին և ջրային

Հարցի իրավաըմբռնումը բղխում էր հողային իրավունքից, այդ ակներև է այն բնորոշ փաստից, վոր հայ պատմագրական և միջնադարյան վիմագրական հուշարձաններում գտնում ենք համատեղ հողատիրության ու ջրատիրության մասին սովորաբար գործածվող «հող և ջուր» դարձվածքը, յերկու տարրերի մի անխզելի ըմբռնում, վոր չի կարելի հողը յերևակայել առանց ջրի:

Մովսես Կաղանկատվացի (VII դ.) և ՍՏ. Օրբելյան (XIII դ.) մատենագիրները պատմում են, թե ինչպես Պարսից թագավոր Շապուհը, կամենալով վորոշել հայ նախարարների նախապատվության աստիճանները, դիմում է նրանց հետևյալ խոսքերով... «Բայց զԱրմենու զազգատոհմ և զնոցին նախապատիւ, զնախադաս նախագահութիւնս ոչ կարացաք գիտել ո՛չ ի նախնեացդ մերոց հարցն հարանց թագաւորաց և ո՛չ այլ ուստեք յամենիմաստ մատենագրաց: Եւ արդ մի յերկուց առաջի կայ ձեզ նախարարացդ Հայոց ազատ արանց կատարել զխնդիրս մերոց Արեացս աշխարհաժողով ազատազարմ կուսակալաց. ցուցանել ձեզ զնախնական զգիր ըստ իւրաքանչիւրումն ըստ տանց ազատազարմն եկացն ձերոց զնախաստիճանն և զնախանիստ պատիւն. և դարձեալ մեծագոյնն ունել զչքեղաչուք մեծարանս ևս քան զիս: Եւ եթէ ոչ կարէք ակն ի յայս Արեացս զնդի ժողովոյ ցուցանել զգիր նախագահութեան՝ զպատիւ և զտուն, զհող և զջուր և զստացուածս ձեր Արեացս աշխարհի ազատ արանցս շնորհեսցուք» (ՍՕ, գլ. Թ., 30—31. նաև Մովսես Կաղանկատվացի, II, Ա., 119—120):

«Հողն ու ջուրը» վորպես սեփականության յերկու անխզելի տարրեր հանդես են գալիս նաև կանոնական վորոշումներում, օրինակ՝ Շահապիվանի կանոնների հոդ. Դ., նաև «Կանոնք Ներսէս կաթողիկոսի և Ներշապուհ Մամիկոնէից եպիսկոպոսի», հոդ. Ե. (ԿՀ, էջ 64 և 109):

Այսպիսով, հողային իրավունքն ինքնին պարփակում է իր մեջ նաև ջրային իրավունքը: Ուշադրություն առնելով այս տեսակետը, վոր արծարծել ենք վերը թագավորի հողային գերագույն իրավունքի մասին, հանգում ենք այն յեզրակացության, վոր այդ գերագույն սեփականատիրական իրավունքի

մեջ մտնում է նաև ջրի իրավունքը, ջուրը հանդիսանում էր նույնպես թագավորի dominium directum-ի անբաժանելի մասը: Հետևապես, նախարարների ու հետագա ֆեոդալական իշխանների directum utile ինստիտուտի մեջ հողատիրության իրավունքի հետ օրգանապես կապվում է նաև ջրատիրության իրավունքը: Ստ. Օրբելյանն իր «Սիսական գավառի պատմության» մեջ առաջ է բերում մի շարք նվիրաբերական վավերագրեր ֆեոդալ իշխանների կողմից վանքերին, մանավանդ Տաթևի վանքին հողեր տրվելու մասին[93]: Այդ նվիրված գյուղերի, դաշտերի, այգիների և այլ տեսակ հողերի հետ միասին՝ նվիրաբերողները հիշատակում են, որ տալիս են նաև ոռոգման համար անհրաժեշտ ջրի կամ գետակների, նմանապես արհեստական առուների վրա տիրելու իրենց պատկանյալ իրավունքը: Այդ նվիրատվական վավերագրերը նույնիսկ հաստատված են թագավորի ստորագրությամբ ու կնիքով, որպես այդ հողերի ու ջրերի գերագույն սեփականատիրոջ:

«Հողի և ջրի» նույնանման նվիրաբերության ձևեր տեսնում ենք միջնադարյան վիմական արձանագրություններում: Նվիրաբերումները լինում են կամ ջրերի (գետակների և արհեստական ջրանցքների) լիակատար տիրության իրավունքով[94], կամ թե մասնակի, այն է՝ շաբաթվա մեջ 3—4 օրով ջրից օգտվելու իրավունքով[95]: Առաջին դեպքում՝ ոռոգող ջուրը դառնում է կալվածատեր վանքի բացարձակ իրավունքի օբյեկտ, որից ոչ ոք չի կարող օգտվել առանց նրա թույլտվության, իսկ երկրորդ դեպքում՝ ջրատիրության իրավունքը լիակատար չէ և այդ ջրից օգտվելու միատեղ իրավունք ունեն նաև ուրիշները, հերթական կարգով:

Վերն արդեն ակնարկել ենք, որ հողային գերագույն սեփականության իրավունքը, մանավանդ Բագրատունյաց թագավորության անկումից հետո, միջնադարյան քաղաքական պայմաններում, միանգամայն խախտվել էր, երբ զարգանում է ալլոդական հողային իրավունքը և նախորդ նախարարական հողատիրությունն ստանում է առանձին խոշոր ֆեոդալական սեփականության իրավունքի բնույթ: Նույնն է տեղի ունենում և ջրի վերաբերմամբ, որ սկսում է դառնալ այս կամ այն ուժեղ ֆեո-

դալի կալվածքի սահմաններում նրա սեփականություն, հետևապես դառնում է, ինչպես և հողը, վաճառքի ու գնման առարկա:

Այդ երևույթը բացահայտ է մի շարք պատմական տվյալներից, որ գտնում ենք հայ մատենագրության մեջ, մանավանդ Ստ. Օրբելյանի մոտ: Առաջ բերենք յերկու բնորոշ օրինակներ: Մեկը վերաբերում է Տաթևի վանքին, որ ջրանցք է կառուցում իր տնտեսության համար և որի վանահայր Հակոբ յեպիսկոպոսը 932 թ. գնում է Փիլիպպե իշխանից նրան պատկանած Վարարակ անունով ակունքի ջրի իրավունքը: «Ես Յակոբ՝ շնորհիւն Աստուծոյ Սիւնեաց եպիսկոպոս, գնեցի զՎարարակ ջուրն յաստուածապահ... Փիլիպպէէ Սիւնեաց տեառնէ ընդ 12·000 դրամի և մի պատուական գոհարի, և բազում ծախիւք և մեծամեծ աշխատութեամբ վերին օգնականութեամբն ածի զջուրն ի լեռնէն Զաղէձորոյ և բերի ի վարդուտս, և տնկեցի որթս սորեկս և այգիս վայելուչս և դրախտս բազմածաղիկս և պտղալիցս...: Եւ չկայ յայս ջրոյս բաժին ո՛չ Նորեցւոց, ո՛չ Խոտանանեցւոց, ո՛չ Շնհէրացւոց կամ Հալեցւոց, ոչ այլ մարդոյ, ոչ յարտ կտրել և ոչ ի մարգ և ոչ պարտիզի ջուր տալ՝ բաց ի մատակէդ ըմպելոյ մարդոյ և անասնոյ» (գլ. ԽԹ, 254—255): Այս վկայությունից հետևում է, որ Փեոդալ իշխանից գնված ակունքի ջուրը և նրա համար վանքի ծախքով շինված ջրանցքը դառնում է Տաթևի սեփականություն, որի ջրից իրավունք չունեն օգտվելու այդ ջրանցքի ուղղությամբ ընկած գյուղերն իրենց յերկրագործական մշակույթների համար, գյուղեր, որոնց շինականների աշխատանքը, թերևս պարհակի կարգով, շահագործված կլիներ այդ ջրանցքաշինարարության մեջ:

Նույնպիսի մի փաստ է ավանդում Ստ. Օրբելյանը Վայոց ձորի Գնդեվազ վանքի վերաբերմամբ, որը 1008 թ. կառուցում է ջրանցք, և, համարելով իր սեփականություն, իրավունք չէր տալիս նրանից օգտվելու սահմանակից գյուղերին. «Ի կաթողիկոսութեան հայոց տեառն Սարգսի, և ի թագաւորութեանն Գագկայ որդւոյ Աշոտոյ, իսկ ի Սիւնեաց և Բաղաց նորոգ թագաւորութեանն Վասակայ, կացեալ յառաջնորդութեան տանն այն հայր Սարգիս միւսն, և արարեալ բազում արդիւնս, և ածեալ զջուրն ի լեռնէն ի մեծ դիտաւոր սարէն, ուր ակունքն են քաղցրա-

համ գետոյն, որ Զկնարած կոչեն,... բաղում ջանիւ և մեծամեծ ծախիւք բերեալ յանդաստան վանիցն, և զանհուն առապարն անջրդի արար ջրարբի և զամենայն լեռնակողմն. յորում ո՛չ զոյումեք հաշիւ ո՛չ Պռակեցւոց և Կեչուտեցւոց և ո՛չ այլ սահմանակից գիւղօրէիցն և ո՛չ այլ ումեք...: Եւ գրէ ինքեան արձան ի վերայ եկեղեցւոյն սեպագրով. և ահագին և մեծամեծ նզովիւք փակէ զսահ ջրոյն, զի մի՛ ոք իշխեսցէ կարել զնա և կամ հարակաւ զող և բաժինս առնուլ, բայց միայն թէ ըմպեն ի մատակէն մարդ և անասուն» (Գլ. Ծ, 262—263):

Այսպես ուրեմն, ջուրը, որ հանվում է իր բնական վիճակից և արհեստական ոռոգման է ծառայում որպես շինարարության միջոցով, դառնում է իրավահարաբերությունների օբյեկտ և տիրության իրավունքով պատկանում է բացարձակապես կալվածատեր ֆեոդալին, երբ սա իր նյութական միջոցներով է սեփականատեր դառնում, և կամ գյուղական համայնքներին, եթե սրանց աշխատանքով ու միջոցներով է ստեղծվել արհեստական ոռոգման սիստեմը: Այդ մի երևույթ է, որ զարգացել է ուշ ֆեոդալական հասարակության իրավահայեցողության մեջ և սրբագործվել է սովորութական իրավունքի նորմերով, որոնք, ինչպես կտեսնենք ստորև, պահպանվել էին Հայաստանի իրականության մեջ մինչև գրեթե XIX դարի վերջերը:

Սակայն այստեղ նշելու ենք մի հանգամանքի վրա ևս: Վերոհիշյալ միջնադարյան նվիրաբերական արձանագրություններում գերագույն հողային իրավունքն արտահայտվում է ո՛չ թե արքայի, թագավորի անձնավորումով, այլ բղխում է տեղական խոշոր ֆեոդալ իշխանից: Այլապես չէր էլ կարող լինել, քանի որ այդ դարերում Հայաստանը չէր ներկայացնում միասնական պետական տերիտորիա՝ ինքնուրույն քաղաքական իշխանությամբ՝ հանձին թագավորի, այլ մի շարք իրարից անկախ, քիչ թե շատ ինքնուրույն ֆեոդալական իշխանություններ, որոնք վասալներ էին համարվում թուրք-մոնղոլական պետությունն անձնավորող սյուզերեններին: Այնուամենայնիվ այդ հանգամանքը տեսականորեն չէր խախտում հողային ու ջրային գերագույն իրավունքի սկզբունքը, որ գոյություն ուներ հին Հայաստանում: Այժմ իրավունքն ավանդաբար փոխանցվել էր ա-

ռանձին իշխանների, որոնք իրենց համարում էյին տեղական մասշտաբով «բնակ տեր» յերկրի, ֆեոդալական տերիտորիայի սեփականատեր ու հրամայող:

Տեսնենք այժմ, թե ինչպես է արտահայտվել ջրային իրավունքը Մխիթար Գոշի Դատաստանագրքում: Պետք է ասել, որ Դատաստանագրքի մեջ այս հարցը արծարծվում է չափազանց թռուցիկ, հակասական ու խառնաշփոթ ձևով: «Յաղագս դատաստանաց թագաւորաց» Ա. հոդվածում Մխիթար Գոշը գրում է. «Բայց անդաստանք ջրարբիք լիցին ընդ հնգեկաւ, այլ ոստինք տասանորդեսցին. զի հող միայն է թագաւորի և իշխանի, և ոչ ջուր» (էջ 315): Այս պարբերության հիման վրա պետք է մակաբերել առաջին հայացքից, թե ջուրը չի կարող պատկանել թագավորին կամ իշխանին: Այստեղ, ինչպես տեսնում ենք, խոսքը վերաբերում է ջրին՝ հողային ռենտայի կապակցությամբ, որպիսի ռենտան իբր թե չի տարածվում ջրի վրա, մինչդեռ ջրարբի անդաստանից վերցվում է հնգեկով (բերքի $1/5$), այսինքն ավելի, քան անջրդի հողերից, որոնք հարկված են տասանորդով. սրանից հետևում է, որ արդեն անուղղակի կերպով հարկված պետք է համարել նաև ջուրը: Ուրեմն, տվյալ դեպքում ջուրն էլ հանդիսանում է իրավունքի նույնպիսի օբյեկտ, ինչպես և հողը, և իբրև արհեստական ոռոգման միջոց նա հողի հետ միասին դառնում է կալվածատեր ֆեոդալի շահագործման առարկա: Հետևապես, հիմնականում այստեղ չի բացասվում ջրատիրության իրավունքը, չնայած Մխիթար Գոշի խոսքերին՝ «Զի հող միայն է թագաւորի և իշխանի և ո՛չ ջուր»:

Յեթե Մխիթար Գոշի Դատաստանագրքում անորոշ ու հակասական կարծիք է արտահայտվում արհեստական ոռոգման ջրի իրավունքի նկատմամբ, ապա այդ հակասությունն ավելի ցայտուն է յերևան գալիս բնական ջրերի վերաբերյալ իրավունքի մեջ: «Այլ և պետք ուստի ակն ելանէ նոցա է և ո՛չ առ ուր հասանեն» (II, Ժ, 327, ծանոթ. ԺԸ): Ըստ այս իրավաըմբռնման՝ գետի ակունքը պատկանում է կալվածատիրոջն, իսկ այդտեղից բնական հոսող ջուրը՝ ոչ ոքի[96]: Ուրեմն, Մխիթար Գոշի Դատաստանագրքում տեսնում ենք նույն իրավաըմբռնումն, որ գոյու-

թյուն ուներ X դարում, ըստ Ստ. Օրբելյանի Պատմության, որը ավանդում է, թե ինչպես Սյունյաց իշխան Փիլիպպեն վաճառում է իր կալվածքում գտնվող և իր սեփականություն համարվող Վարարակ ակունքի ջրի իրավունքը Տաթևի վանքին:

Մխիթար Գոշի Դատաստանագրքի ջրային իրավունքի վերահիշյալ խառնաշփոթ ըմբռնմանը կարելի է հակադրել Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում արծարծվող նույն հարցը: «Եւ ջուր հանել ի գետոց ջրելոյ կամ ջաղցնոց համար, չկարէ ոք արգելուլ կամ առել թէ սինօրն [սահմանը] իմ է, մի՛ հանել ջուր. կարէն հանել և տանել խանդակով ընդ ամէն մարդոյ գետններ՝ ի յիր հողն և շինել զինչ իր պիտենայ. և չէ այն ջուրն քանց այնոր, որ տարաւ զայն ջուրն հայրենիք իւր սեփական» (ՍԴ., էջ 20):

Առաջադրված հոդվածից պարզվում է՝ 1) խոսքը վերաբերում է գետից հանած ջրին, որը, ըստ այն ժամանակվա իրավահայեցողության, չէր կարող համարվել ֆեոդալի սեփականություն, որի կալվածքով այդ գետը հոսում էր. 2) այստեղ հանդես է գալիս սերվիտուտային իրավունքը միջնադարյան ֆեոդալական իրավահայեցողության համեմատ. սերվիտուտային իրավունքը հանդիսանում էր ֆեոդալի ջրատիրության իրավունքի բնական ու անհրաժեշտ սահմանափակումն Արևելքի յերկրագործության համար բացառիկ նշանակություն ունեցող ոռոգման պայմաններում. այդ սերվիտուտն այնուամենայնիվ սկզբունքորեն չէր խախտում թագավորի ջրային գերագույն իրավունքը:

Ընդհանրապես ջրային իրավունքը, որը այդպիսի առաջնակարգ նշանակություն ուներ ամբողջ յերկրի հողագործական մշակույթի համար, չէր կարող յերբեք մասնավոր իրավունքի բնույթ ունենալ: Նա պետության առանձնաշնորհությունն էր հանձին թագավորի գերագույն իշխանության և կրում էր հանրային բնույթ: Ուստի ջրատիրությունը պետության սահմաններում համարվում էր սոսկ օգտագործման իրավունք, որը յելնում էր կենտրոնական իշխանությունից: Ջրային իրավունքի այդ հիմնական սկզբունքը դարերից ի վեր սրբագործված էր սովորութական իրավունքով, որը պահպանողաբար կայուն էր

մնում ժողովրդական իրավահայեցողության մեջ մինչև վերջին ժամանակները: Անդրկովկասում ժողովուրդները համարում էին «հողն ու ջուրը» աստծու պարգև, վոր ստեղծված է բոլոր մարդկանց հանուր բարօրության համար[97]:

Այդպիսի հայացքի հիման վրա յերկար ու ձիգ դարերի ընթացքում զարգանում էին սովորութական իրավունքի նորմեր, վորոնք կարգավորում էին և ուղղություն տալիս ջրի ոգտագործմանը:

Ըստ Անդրկովկասյան ժողովուրդների սովորութական իրավունքի՝ բոլոր ջրերը ոգտագործման տեսակետից բաժանվում են յերկու տեսակի— բնական և հանած ջուր: Առաջին տեսակին են պատկանում բնական վիճակում գտնվող ջրերն, այն է՝ գետերը, վտակները, լճակները, մասնատիրական կալվածքներից դուրս բղխող աղբյուրները, անձրևի ջուրը և այլն: Յերկրորդ տեսակի յեն համարվում այն ջրերը, վորոնք դուրս են հանված արհեստական միջոցներով յերկրի խորքից կամ բնական հոսուն ջրերից՝ առուները, ջրանցքները, ջրհորները, քյահրեզները և այլն: Ահա այդ յերկու տեսակ ջրերի վերաբերմամբ տարբեր իրավաբանական հարաբերություններ են ծագում: Բոլոր ջրերը, քանի նրանք գտնվում են բնական վիճակում, համարվում են «աստծու պարգև», և նրանցից իրավունք ունեն ոգտվելու անխտիր բոլոր բնակիչները տվյալ տերիտորիայում, վոր կարող է վոռոգվել այդ ջրով: Ընդհակառակը, հանած ջուրը համարվում է մասնավոր սեփականություն թե՛ առանձին անհատների և թե՛ համայնքների: Այսպիսով, ջրերը պատկանում են նրանց ավազանի բնակչությանը, լճերը և այլ կանգնած ջրերը՝ նրանց ջրափնյա բնակիչներին. ջրանցքներն ու առուները պատկանում են ամբողջ համայնքներին, վորոնք կառուցել են այդ. հերթական վոռոգելի ջուրը պատկանում է նրանից հերթականորեն ոգտվողին: Աղբյուրներն և ակունքները, վորոնց ջուրը չի հոսում տվյալ համայնքի կամ մասնավոր կալվածատիրոջ հողերի սահմաններից դուրս, յենթարկվում են նրանց բացարձակ տիրության իրավունքին, իսկ յեթե այդ ջրերը հոսում են համայնական կամ անհատական հողերի սահմաններից դուրս, այդ ջրից իրավունք ունեն ոգտվելու հարևան համայնքները[98]: Ինչպես

*տեսնում ենք, աշխատանքային սկզբունքը, վորի միջոցով ստեղծվում եր արհեստական վոռոգման ջրերի ոգտագործումը, հանած ջրին տալիս է սեփականատիրական բնույթ, վոր մեծ մասամբ պատկանում եր գյուղական համայնքներին և, ի հարկե, նաև կալվածատեր ֆեոդալներին, վորոնք շահագործելով ճորտական աշխատանքը, կարողանում եյին իրենց տնտեսության սահմաններում արհեստական վոռոգման սիստեմ կառուցել:*

*Դժբախտաբար մեզ հասած պատմական տվյալները Հայաստանի միջնադարյան և մանավանդ հին դարերի ջրային իրավունքի մասին այնքան սուղ են, վոր լրիվ ու պարզորոշ պատկեր չեն տալիս: Բայց և այնպես վերը բերված տվյալները հիմք են տալիս աներկբայորեն այն տեսակետը պաշտպանելու, վոր հին Հայաստանում ջրային իրավունքն անխզելի աղերս ուներ հողային գերագույն իրավունքի հետ և բղխում եր հենց նրանից: Ի հարկե, սկզբունքային մի իրավահաջորդություն եր այդ, տեսականորեն գոյացած իրավական մի գաղափար: Սակայն միաժամանակ չի կարելի անտեսել և այն պարագան, վոր շատ անգամ իրականության մեջ, մանավանդ միջին դարերում, յերբ Հայաստանի քաղաքական կյանքը տակնուվրա յեր լինում, ջրային իրավունքի այդ հիմնական սկզբունքը խախտվում և խեղաթյուրվում եր տիրապետող դասակարգերի կողմից և դառնում եր ինքնապարփակ և ինքնաբավ ֆեոդալների սոսկ տեղական շահերի արտահայտություն:*

## IV. ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆ

1. *ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՀԻԵՐԱՐԽԻԱ.—Նախորդ գլուխներում առիթ ունեցանք շեշտելու, վոր նախարարական և ընդհանրապես ֆեոդալական հողատիրությունը շաղկապված եր վորոշ պարտականություններ կատարելու հետ սյուզերենի հանդեպ: Այդ հարաբերությունները հայտնի յեն հին հայ ֆեոդալական իրավունքի մեջ* ծառայություն *անունով, վոր համանիշ է արևմտա-յեվրոպական միջնադարյան ֆեոդալիզմի* servitium*-ին: Այդ ծառայությունից բղխում եր հողատիրության պայմանականությունն և ֆեոդալա-*

կան վասալականությունը: Վասալականությունը կրում էր հիերարխիական բնույթ, որով և բնորոշվում էր ֆեոդալական պետության կառուցվածքը, որպես հիերարխիական: Այստեղ յուրաքանչյուր ֆեոդալ իշխանի քաղաքական իշխանությունը «համաչափ է նրա հողատիրության ծավալին»[99]: Ֆեոդալական հիերարխիան յուրահատուկ ձևավորված պետական ապարատ էր, որը միասնական ամբողջության մեջ էր ամփոփում տիրապետող դասակարգը և, այդպիսով, ապահովում ֆեոդալների տիրապետությունը: «Հիերարխիան ֆեոդալիզմի իդեալական ձևն է»[100]:

Հայ մատենագիրները հաղորդում են ֆեոդալական հիերարխիան բնորոշող բավականաչափ տվյալներ: Նախարարները համարվում էին «ծառայք» թագավորի: Հայ ֆեոդալական «ծառայ» տերմինը համանման է արևմտա-եվրոպական ֆեոդալական տերմին servus-ին կամ famulus-ին, որպիսի բառով բնորոշվում էր վասալի սոցիալական ու քաղաքական կացությունը սյուզերենի վերաբերմամբ:

Բերենք մի քանի օրինակներ: «Զայնու ժամանակաւ ապըստամբեաց յարքայէն Հայոց մի 'ի ծառայից նորա մեծ իշխանն Աղձնեաց, որ անուանեալ կոչէր բդեաշխ, որ էր մի 'ի չորից, գահէրէց բարձէրէց տաճարին արքունի» (ՓԲ, III, գլ. Թ, 21):

«Յաղագ գնաց առ մեծ իշխանն աշխարհատէրն մեծ ծառայն արքային Հայոց առ Մանաճիհր Ռշտունի» (Անդ, էջ 24):

«Ապա առաքէր թագաւորն Հայոց զբարեկիր զծառայս իւր, զիշխանն Կորդուաց զՋոնն...հանդերձ բազում զօրօք» (անդ, էջ 21):

«Զեզ զի՞րդ թուի, ծառայից այդպիսի աներկիւղ համարձակութեամբ գրել առ իւրեանց տէրն» (ՂՓ, II, գլ. ԻԵ, 95):

«Երդմնեցուցեալ զվասակալաւր և զայնպիսի պիտանի ծառայն մեր զքաջն Վարդան [Մամիկոնյան] և զընկերակիցս նորա» (Անդ, էջ 181—182):

«Նախ արա զիս արեաց տեառն ծառայ» (Անդ, III, էջ 363):

«Եւ մեր բնիկ տեարք էք և մեք ձեր բնիկ ծառայք եմք» (Անդ, էջ 372):

«Կայր բդեաշխն Վաղինակ 'ի ծառայութեան արքային» (ՓԲ, 21)։

Ֆեոդալական հիերարխիայի ամենաբարձր աստիճանը բռնում էր թագավորն իբրև տեր «բնակ յերկրի» և գերագույն իշխող։ Թագավորից հետո հաջորդ աստիճանի վրա էին կանգնած «բդեշխները», ծայրամարզերի իշխողները, վորոնց պարտականությունն էր պետական սահմանների պաշտպանությունն արտաքին թշնամիներից։ Այդ հետևությամբ նրանք ըստ հիերարխիկան աստճանի կոչվում էին «գահերէց արքունի տաճարին»։ Բդեշխները, կանգնած լինելով այդ բարձր աստիճանի վրա, հանդիսանում էին կիսանկախ իշխաններ պետության մեջ, գրեթե իրավահավասար թագավորին, թեև յենթակա նրա գերիշխանությանը։ Ագաթանգեղոսի և Փավստոս Բուզանդացու խոսքերի համաձայն՝ Արշակունյաց Հայաստանում կային չորս բդեշխություններ «զառաջին սահմանակալն ի Նոր-Շիրական կողմանէն [հարավ-արևելյան սահման], և զերկրորդ սահմանակալն յԱսորեստանեայց կողմանէն [հարավ-արևմտյան սահման], և զերրորդն՝ յԱրուաստանի կողմանէն [հարավային սահման], զչորրորդն՝ ի Մասքթաց կողմանէն [հյուսիսում]»[101]։ Արուաստան կողմը՝ Աղձնյաց մդեշխն էր, Ասորեստանյայց կողմը պետք է համարել Ծոփաց բդեշխը[102], իսկ Մասքթաց կողմը— Վրաստանի սահմանի դիմաց՝ Գուգարաց բդեշխն էր (ՄԽ, II, գլ. Ը, 114)։

Այնուհետև բդեշխներից ցածր գալիս են նախարարները, վորոնք բաժանվում են յերկու դասի՝ «ավագ» և «կրտսեր» նախարարներ։ Մատենագրական աղբյուրներում չի տրվում սրանց տարբերող գծերի բնութագիրը, բայց և այնպես յեղած ավյալներից կարելի յե յեզրակացնել, վոր այդ յերկու դասերի տարբերիչ հատկանիշներն էին ֆեոդալական տների տոհմային ծագման հնությունն ու ազնվազարմությունը, նմանապես տերիտորիալ հզորությունը։ Հետևապես «ավագ» մակդիրը վերաբերում է վո՛չ թե առանձին անհատներին, այլ ամբողջական տոհմին՝ սոցիալական առումով։ Ավագ նախարարը վորոշ չափով համապատասխանում է արևմտա-յեվրոպական ֆեոդալիզմի senior-ին։ Ավագ նախարարների ամբողջ դասն ընդհանուր առմամբ մեր

մատենագրության մեջ կոչվում է ավագանի, որը բնավ չպետք է իմաստավորել հասակավոր տարիքի առումով: Պրոֆ. Հ. Մանանդյանն «ավագ» ու «կրտսեր» նախարարների տարբերիչ հատկանիշը համարում է, բացի պաշտոնեությունից, նաև տարիքի մեծությունը: Այս դեպքում նա հետևում է պրոֆ. Ի. Ջավախովին[103], որը, հիմնվելով Ղազար Փարպեցու «պաշտօնիւ և աւուրբք» խոսքերի վրա[104], եզրակացնում է, թե ավագ են համարվել նախարարները կամ «պաշտօնիւ», այն է՝ իրենց պաշտոնեությամբ, և կամ «աւուրբք», այն է՝ տարիքի հասակով[105]: Ի. Ջավախովի կարծիքը մի թյուրիմացություն է, որը բխում է Ղազար Փարպեցուց քաղած ցիտատի ոչ ճիշտ մեկնաբանումից: Հետևապես, Հ. Մանանդյանի տեսակետն էլ հիմնավոր չէ, չնայած որ նա բերում է մի շարք վկայություններ, որոնք, պետք է ասած, շատ անգամ չեն համապատասխանում «ավագ» մակդիրի գործածության երկու իմաստով՝ «պաշտօնիւ և աւուրբք»: Ղազար Փարպեցու վերոհիշյալ «աւուրբք» բառը, լինելով սոսկ անհատական հատկանիշ, մի որևէ նախարարի անձնական հասակի որոշիչ, չի կարող սոցիալական նշանակություն ունենալ: Ոչ մի տեղ հայ մատենագրության մեջ չենք գտնում այդ հատկանիշը՝ իբրև ավագ նախարարության բնորոշիչ: Այդ բառը մի անգամ է գործածվում Ղազար Փարպեցու մոտ, այն էլ որպես դիպվածական և դրված է սպարապետ Վարդան Մամիկոնյանի բերանը, երբ նա Պարսից արքունիքում արտասանած ճառի մեջ ներկայացնում է հայ նախարարներին, որոնց մի մասը իրոք կարող էին հասակով իրենից ավագ լինել, իսկ մի մասն էլ «պահու» կարող էին ավելի երեց լինել: Վերջապես, ֆեոդալական հասարակության, այն էլ նրա ազնվազարմ վերնախավի սոցիալական մտայնությունը միանգամայն անհարիր կլիներ, որ հասակը տոհմական ավագության ցուցանիշ լիներ, և որևէ աննշան ու անզոր տոհմի հասակավոր ներկայացուցիչ դրվեր բարձրագույն հիերարխիական աստիճան իրենից թե՛ ծագումով և թե՛ կալվածական հարստությամբ ավելի նշանավոր նախարարական տան համեմատությամբ:

Վերոհիշյալից արդեն կարելի է կռահել, որ կրտսեր նախարարներ պետք է համարվեին ո՛չ թե տարիքով ավելի երի-

տասարդները, այլ նրանք, ովքեր իրենց ազնվազարմ ծագումով և հողային հարստությամբ սոցիալական ու քաղաքական մեծ նշանակություն չէին ներկայացնում և ստորադաս էին իրենցից աստիճանով բարձր տոհմերից: Պետք է ընդգծել, որ կրտսեր նախարարները կարող էին ոչ միայն թագավորի անմիջական վասալներ լինել, այլև մեծ մասամբ ենթավասալական կախումն ունեին ավագ նախարարներից: Հետևապես, որոշ նախարարների վասալական կախումը մյուս նախարարներից նույնպես կարող է հատկանիշ հանդիսանալ ավագ և կրտսեր նախարարների հիերարխիկական աստիճանը որոշելու համար: Պատմագիր Սեբեոսի խոսքերից ակներև է, որ Դիմաքսյան նախարարական տունը Բագրատունիների վասալն էր: Իսկ մեր մատենագրության մեջ Բագրատունի տոհմը համարվում էր ավագ նախարարություն: Նմանապես այսպես կոչված Զորանամակից էլ երևում է, որ Դիմաքսյան նախարարական տոհմը դուրս էր բերում միայն 300 ռազմիկ, որ նշան է այդ տոհմի նվազ հզորության: Այդ ենթավասալականությամբ պետք է բացատրել, որ Բագրատունյաց տան նահապետ Սմբատը նշանակել էր Դիմաքսյան տոհմից իշխան Մեհրուժին իր տան կառավարիչ՝ «հավատարիմ և կամակատար» (Սեբ., գլ. ԺԷ, էջ 100—101):

Ամեն մի նախարարության գլուխ էր կանգնած տոհմի տարիքով ավագագույն անդամը, որի համար իսկապես կարելի չէր տալ «աւուրբք» ավագ: Այդ տոհմային ավագը կոչվում էր տանուտէր կամ նահապետ: Այդ տերմինների լեզվաբանական բովանդակությունն էլ ավագի իմաստավորումն է ներկայացնում և նրանք համանիշ նշանակություն ունեն, տարբերվելով սոսկ լինգվիստական ծագումով: Առաջին տերմինը, որը ավելի հնագույնն է, հարում է հայերի էթնոգենեզի թրակո-փռյուգիական հիմքին՝ տոհմային հասարակակարգի արխայիկ ֆորմացիային, որտեղ տունը նշանակում էր տոհմ, իսկ տէրը՝ տոհմի ավագ, գլուխ: Երկրորդ տերմինը պարթևականից յուրացված բառ է և, ինչպես ապացուցում է A. Meillet, ծագում է պարթևական nafapati-ից, որը նշանակում է նույնպես տոհմի, ցեղի պետ, գլուխ[106]: Նախարարական «տանուտէրը», կամ «նահապետը», համարվում էր ամբողջ տոհմի ներկայացուցիչ, որի ձեռքում

էյին տոհմային կալվածքի բովանդակ հողային իրավունքը և քաղաքական իշխանությունը նախարարական տերիտորիայի նկատմամբ: Նա անմիջորեն կապված էր վասսալական հարաբերություններով թագավորի հետ, վորն ամեն անգամ նրան հաստատում էր տանուտիրական կոչման մեջ: Տանուտերի, նահապետի անձնավորության հետ էր կապված մայորատի իրավունքը: Նախարարական տան մյուս անդամները գտնվում էյին տանուտերի կամ նահապետի իշխանության ներքո և կոչվում էյին սեպուհ: Այդ տերմինի լեզվաբանական իմաստը նույնպես բնորոշ է՝ հնադարյան տոհմային հասարակակարգից ծագելու տեսակետից: Ն. Մառի կարծիքով՝ սեպուհ հայերեն բառը (sepurn, վրաց sazepuro) փոխ է առնված իրանականից է համապատասխանում է զենդական višaputhra բառին, վոր նշանակում է տոհմի կամ ցեղի վորդի[170]: Սեպուհ բառը հոմանիշ է նաև արամեյական Barbita բառին, վոր նույն նշանակությունն ունի, այն է՝ տոհմի վորդի[108]:

Սեպուհ բառից է առաջացել արդիական հայ լեզվում գործածվող «սեփականություն» բառը՝ առարկայի, գույքի պատկանելության իրավաբանական իմաստավորումով:

Վերջապես ֆեոդալական հիերարխիայի ամենավերջին աստիճանն են ներկայացնում այսպես կոչված «ազատ»-ները: Այդ բառը նմանապես փոխառություն է պարթևական լեզվից և հին հայերենում «ազն» նշանակում էր տոհմ[109]: Ազատների դասը միջին, փոխանցական շերտն էր կազմում տիրապետող նախարարների և հպատակ գյուղացիության միջև: Այդ յերևում է նրանից, վոր մեր մատենագրության մեջ նրանք սովորաբար հիշատակվում են նախարարներից հետո և ռամիկներից կամ շինականներից առաջ: Հետևապես, ազատները տիրապետող ֆեոդալական դասակարգի ստորին շերտն էյին կազմում, հանդիսանալով մանր ազնվական կալվածատերեր, վորոնք կախված էյին նախարարներից հողային և անձնական հարաբերություններով: Ինչպես ապացուցում է Քրիստենսենը, Սասանյան Պարսկաստանում էլ գոյություն ունեյին azat-ներ, վորոնք մանր ազնվականներ էյին[110]: Հայ մատենագրական յերկերում հաճախ սոցիալական առանձին դասի «ազատ» անունը վերագրվում է,

ստանալով ազնվականի, տոհմիկի իմաստ և, իբրև այդպիսին, գործածվում է նախարարների սոցիալական կացությունը բնորոշելու համար, վորպես «ազատութիւն», «ազատորեար», «ազատանի»: Պետք է ասած, վոր մեր հին գրականության մեջ պարզորոշ չէ արտահայտվում ազատների կախման հարաբերությունը նախարարներից, բայց վոր այդ չեղել է, պետք է կռահել մեր միջնադարյան գրականության տվյալներից: Ստ. Որբելյանն իր Պատմության մեջ բերում է մի շարք փաստեր, վորոնք վկայում են ազատների, վորպես վասալների, անձնական ու հողային կախումը Փեոդալ իշխաններից: Թվենք մի քանի օրինակներ:

«Ապա հասեալ վախճան առաքինւոյն Սաղոմոնի և ժողովեալ տէրանցն Սիւնեաց և ամենայն ազատաց նոցա» (գլ. ԽԱ, 222):

«Նմանապէս և իշխանքն զգեղանն էին բաշխեալ ազատաց իւրեանց» (գլ. ԾԶ, 305):

«Որդի մեծափառ իշխանին Բաղաց Հասանայ, որ ունէր ընդ ձեռամբ զամենայն ազատս թագաւորութեանն այնմ» (գլ. ԿԴ, 347):

Սյունեաց Փեոդալ իշխանները Տաթևի և այլ վանքերին հողեր ընծայելիս՝ արձանագրություններում հիշատակում են վորպես վկաների իրենց վասալ ազատների անունները (ՍՕ, գլ. ԼԹ, 207, գլ. Խ, 220, գլ. ԽԳ, 231 և այլն):

Ֆեոդալական հիերարխիայի արտաքին ձևը սովորաբար արտահայտվում էր գահերեցութեամբ[111] կամ բարձերեցութեամբ[112]: Ըստ սահմանված սովորույթի՝ արքունի պալատում հանդիսավոր ընդունելությունների, տոնական հանդեսների, ճաշկերույթների կամ ընթրիքների ժամանակ բդեշխները, ավագ ու կրտսեր նախարարները, մասամբ և ազատները բազմում էին ըստ հիերարխիական աստիճանի, պահպանելով «բարձ ու պատիւ»-ի կարգը: «Բարձը»՝ այլապես «գահը» այն բազմոցն էր, վորի վրա նստում կամ կռթնում էր ըստ ավագության կարգի ամեն մի նախարար, իսկ «պատիվ»-ը գլխի զարդարանք էր, վարտակալ[113], վորն ուներ հատուկ ձևեր հիերարխիական աստիճանի համեմատ և կոչվում էր նաև գարդմանակ: Փավստոս Բուզանդացին մեզ ավանդել է հետաքրքիր նկարագիր Արշակ II թագավորի հանդիսավոր ճաշկերույթի՝ հայ նախարարների մասնակցու-

Թյամբ. «Եւ այլ յայժմ ազգաց և 'ի խոնարհ՝ որ գործակալս անուն բարձիւք սաւղի արքային պատիւ 'ի գլուխ բազմէին, Թող զնահապետս մեծամեծս և զտանուտեարս՝ որք գործակալք միայն էին ինն հարիւր բարձ. որ մտանէր 'ի ժամ տաճարին ուրախութեանն բազմակալացն կարգելոց» (IV, գլ. Բ, 68): Նույնպիսի տեղեկություն է տալիս Ստ. Օրբելյանը. «Գրիգորիս հրամայէ մեծին Տրդատայ կարգել զԹագաւորութիւն իւր ըստ սահմանի կայսերացն յունաց և տալ ըստ իւրաքանչիւր պատշաճի գահ և պատիւ իշխանացն յաջմէ և յահեկէ, որ և գեղեցկապէս յօրինեալ 'ի ժամ ճաշոյն նստել բարձս չորեքհարիւր իշխանաց» (գլ. Է, 24):

Թե ինչ մեծ նշանակություն է ունեցել գահերեցությունը հայ ֆեոդալական հասարակության իրավահայեցողության տեսակետից, այդ ակնհայտ է այն փաստից, որ գոյություն է ունեցել գահերեցության կարգը որոշող հատուկ վավերագիր, որ հայտնի էր Գահնամակ անունով, և որտեղ ցուցակագրված էին հայ նախարարությունները ըստ իրենց ավագության կարգի: Գահնամակի կազմելը, ինչպես բացահայտ է մեզ հասած մագաղաթյա պատառիկից, վերագրվում է Սահակ կաթողիկոսին, որը իբր թե Սասանյան Վռամ թագավորի (423—439 թ. թ.) համար պատրաստված է այդ ցուցակը, քաղելով պարսկական արքունի դիվանի վավերագրերից[114]: Մեզ հասած հին պատմական պատառիկների մեջ հայտնաբերվել է նաև մի այլ Գահնամակ, որը մեր պատմագիտության մեջ ստացել է Զորանամակ անունը, որովհետև այդ ցուցակում նշանակված են ըստ ավագության աստիճանի նախարարությունները և սրանց զինվորական ուժերի քանակը[115]: Թեև այդ երկու հետաքրքիր վավերագրերը, ինչպես ցույց են տալիս պատմագիտական լուսաբանությունները, ավելի ուշ ժամանակի խմբագրություններ են, բայց և այնպես, քաղված լինելով հին աղբյուրներից, արժեքավոր նշանակություն են ստանում հայ ֆեոդալական իրավունքի պատմության համար:

Արշակունյաց անկումից և Հայաստանի բաժանումից հետո, ինչպես ակներև է մատենագրական աղբյուրներից, հայ նախարարների գահերեցությունը պահպանվում էր նաև Սասանյաննե-

րի արքունիքում: Սակայն արաբների տիրապետության ժամանակ, յերբ նախարարական կառուցքը մեծ հարված եր ստացել ու քայքայվել եր, վերացավ նաև հայ նախարարների հիերարխիական տրադիցիաների կիրառումը: Միայն հայոց Թագավորության վերականգնումով Բագրատունյաց օրով գահերեցությունը, կամ «բարձ ու պատիվը», նույնպես վերականգնում և ձևականորեն:

2. ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆ.— Ի՞նչ պարտականություններով եյին արտահայտվում այն հարաբերությունները, վորոնք Փեոդալական հիերարխիայի հիմքն եյին կազմում և շաղկապված եյին հողատիրության իրավունքի հետ:

Մենք արդեն ակնարկել ենք, վոր Փեոդալ հիերարխիայի բարձրագույն աստիճանի վրա կանգնած բդեշխներն ստանձնած եյին պետության սահմանները պաշտպանելու պարտականություն և այդ պատճառով կոչվում եյին սահմանակալք, կողմնակալք, սահմանապահք, կողմնապահք:

Նախարարների ծառայությունը կատարվում եր յերկու գըծով, զինվորական ու քաղաքացիական: Ի հարկե, հիմնականը զինվորական ծառայությունն եր, վոր կայանում եր սահմանված քանակով իր յերկրից զորք հանելու պարտականության մեջ, և ըստ Թագավորի պահանջի՝ պաշտպանել պետությունն արտաքին թշնամիների հարձակման դեպքերում, մտնելով ընդհանուր զորաբանակի մեջ իբրև պատերազմող ուժ: Իսկ քաղաքացիական ծառայությունն արտահայտվում եր հատուկ պաշտոնավարական պարտականությունով արքունիքում և պետության կառավարման զանազան ճյուղերում: Այդ զինվորական պարտականություններն ու պաշտոններն ստանձնում եյին ավագ ու կրտսեր նախարարներն ըստ իրենց հիերարխիական աստիճանի ու գահերեցության: Նախարարները զորք եյին հանում իրենց տերիտորիայի տարածության համեմատ:

Ինչպես կարելի յե յեզրակացնել Զորանամակից, նախարարների շարքում առաջին տեղն եր բռնում Սյունյաց իշխանը, վոր հանում եր 19,400 ձիավոր զորք և ապա հերթականությամբ հիշատակվում են իշխաններ, վորոնցից յուրաքանչյուրը պարտա-

*կան էր հանել 4000-ից մինչև 1000 ձիավոր: Անտարակույս, սըրանք ավագ նախարարներ էին, ինչպես ակնբախ է թվածանուններից՝ Մամիկոնյան, Բագրատունի, Արծրունի, Ռշտունի և այլն: Մնացյալները, որոնք դուրս էին բերում յուրաքանչյուրը 500-ից մինչև 50 ձիավոր, ամենայն հավանականությամբ, կրտսեր նախարարների շարքին էին պատկանում:*

*Բացի զինվորական պարտականություններից՝ նախարարներն ստանձնում էին նաև զանազան համապատասխան ծառայություններ ու պաշտոններ արքունիքում և պետական կառավարման ասպարեզում: Այդ քաղաքացիական պաշտոնն ընդհանրապես կոչվում է* գործ, *այստեղից էլ պաշտոնավարությունը՝* գործակալություն, *իսկ պաշտոնյան՝* գործակալ[116]: *Գործակալությունը, որ բղխում էր ֆեոդալական հողատիրության իրավունքից, ժառանգական էր համապատասխան նախարարական տոհմերում: Այն գործակալությունները, որոնք ըստ նախարարական իրավունքի՝ տոհմային ժառանգական արտոնություն էին, պատկանում էին, ինչպես ակնհայտ է մատենագրական աղբյուրներից, ավագ նախարարներին: Այդ գործակալությունները հետևյալներն էին.*

*Ա.* Սպարապետություն.— *Գլխավոր հրամանատարությունը Հայաստանի բոլոր զորքերի վրա. «Իշխանութիւն բովանդակ ի վերայ ամենայն զօրաց թագաւորութեան Հայոց Մեծաց»* (*ՓԲ*, IV, *գլ. Բ*, 68): *Այդ գործակալական պաշտոնը պատկանում էր Մամիկոնյան տոհմին, որն այդ իրավունքն իրեն էր վերապահում նույնիսկ Սասանյանների տիրապետության, մասամբ նաև արաբական իշխանության ժամանակները, մինչև Բագրատունիների իշխանության վերելքը: Փավստոս Բուզանդացին և Մովսես Խորենացին յերբեմն սպարապետություն բառի տեղ գործ են ածում հունական հոմանիշ «ստրատելատություն» տերմինը* (*ՓԲ*, IV, *գլ. Բ*, 68):

*Բ.* Թագակապ ասպետություն.— *Ինչպես բառի իմաստից ակներև է, թագավորի գլխին թագ դնելու պաշտոն է, որ պատկանում էր Բագրատունիների նախարարական տոհմին: «Ասպետ» տերմինը Բագրատունիների տոհմային տիտղոսն էր: Այս տերմինի հակասական ստուգաբանությունների մեջ ավելի ճիշտ*

պետք է համարել Ն. Ադոնցի կարծիքը. ասպետ— aspet բառը ծագում է իրանական viϑa-pati -ից և նշանակում տոհմի— viϑ պետ— pati[117]:

Գ. Հազարապետություն.— Պատկանում էր Գնունի նախարական տոհմին: Փավստոս Բուզանդացու խոսքերի համաձայն՝ հազարապետի[118] պաշտոնի մեջ մտնում էին պետության յերկրագործական-տնտեսական և գյուղացիական, նմանապես ֆինանս-հարկային գործերի կառավարումը (IV, գլ. Բ, 67):

Դ. Մարդպետություն.— Սա յուրատեսակ «արքունի դրան» մինիստրություն է, յեթե խմաստավորենք արդիական նշանակությամբ: Այդ գործակալական պարտականության մեջ եր մտնում Արշակունյաց թագավորության ժամանակ արքունիքի և թագավորի կանանցի կառավարումը, թագավորական կալվածների, ամրոցների, բերդերի և այնտեղ ամբարված գանձերի պահպանությունն ու հսկողությունը[119] (ՓԲ, IV, ԺԴ, 117. V, Գ, 195. III, ԺԸ, 46—47. Աղ., գլ. ՃԺԲ, 414): Այդ պաշտոնը վարում եր Մարդպետ կոչված իշխանական տոհմը: Մարդպետ անունը ծագում է mard-pet բառից, վոր նշանակում է պետ, գլուխ մարդերի, մարդ ժողովրդի: Այս ժողովուրդը բնակվում եր Մարդաստան կոչված յերկրում (պատմական Վասպուրականում) և այնուհետև մարդպետ բառը դարձավ տոհմային տիտղոս (ԱԱЮ, 417), ինչպես ասպետ և, ինչպես տեսրև կտեսնենք, մաղխազ տիտղոսները. V դարում յերբ Մարդպետական իշխանական տոհմը սպառվեց, այդ տիտղոսն անցավ Արծրունի տոհմին, վոր գրավեց նրա հողերը (ԹԱ, III, ԺԵ, 339):

Մեր մատենագրության մեջ նկատելի յե, վոր մարդպետությունը կապված է նաև ինչ-վոր արքունի—պալատական պաշտոնի հետ: Այդ բացահայտ է նրանից, վոր հաճախ մարդպետ բառին կցված է լինում «հայր» մակդիրը, ինչպես և մարդպետությանը՝ «հայրություն» մակդիրը: Ըստ Փավստոս Բուզանդացու՝ մարդպետը «անուանեալ կոչէր ըստ գործոյն՝ հայր թագաւորին» (V, Զ., 207)[110]: Պատմագիրները չեն բացատրում, թե ինչ եր նշանակում «հայր» և «հայրություն» տիտղոսները մարդպետության նկատմամբ: Համենայն դեպս մի բան պարզ է, վոր «հայր» ու մարդպետ, կամ «հայրություն» ու մարդպետություն

տերմինները նույնանիշ իմաստ եյին պարունակում: Հիրավի, Աղաթանգեղոսի Պատմության հունական տարբերակում հայկական «մարզպետություն» բառն արտահայտվում է πατρίκιος հայրություն տերմինով[121]: Հայրություն և πατρίκιος համարժեք բառերն իրենց նշանակությամբ հիմք են տալիս կարծելու, որ մարզպետը, որպես արքունիքում թագավորին ամենից մոտ կանգնած ու բարձրագույն դիրք վայելող անձն, կարող էր միաժամանակ թագավորի որդիների խնամակալ կամ դաստիարակ լինել, բռնել հոր տեղը: Այս ենթադրությունն ավելի քան հավանական է դառնում, եթե նկատի առնենք աթաբեկ բառացի նույնանիշ (աթա—հայր, բեկ—իշխան) տիտղոսը, որ թյուրք-թաթարական ֆեոդալ թագավորների արքունիքում կրում եյին նրանց զավակների դաստիարակները. այնուհետև աթաբեկ տիտղոսն անցնում է պալատական ամենաբարձր պաշտոնին՝ զորահրամանատարին և այլն:

Ե. Մաղխազություն.— Այս գործակալությունը վերապահված էր Խորխոռունի նախարարական տոհմին, որի ներկայացուցիչն արքունիքի թիկնապահ զորքի հրամանատարն էր: Մաղխազ տերմինը, ինչպես և սպետ, մարզպետ տերմինները, տոհմային տիտղոս էր, որ կրում էր Խորխոռունի նախարարությունը: Մաղխազ բառը նշանակում է ընդհանրապես տիրող, իշխան, թագավոր և ծագում է ասորական malχazu-ից, որից գոյացել է նաև արաբական մելիք տերմինը. (ААЮ, 400):

Զ. «Գործակալութիւն մեծի դատաւորութեանն».— Գերագույն դատավորություն, որը, ըստ Փավստոս Բուզանդացու՝ պատկանում էր կաթողիկոսին (III, ԺԴ, 36), այսինքն հիերոկրատիայի պետին:

Կրտսեր նախարարների և «սեպուհների» գործակալական պարտականությունների մասին մեր մատենագրության մեջ չենք գտնում որոշակի տվյալներ: Սակայն հիշատակվում են մի շարք գործակալությունների անուններ, որոնք, ըստ երևույթին, վերապահված եյին կրտսեր նախարարներին: Մենք արդեն առիթ ունեցանք վերը նշելու մի շարք ծառայություններ, որոնք կապված եյին արքունիքի տնտեսության մատակարարման հետ: Այդ պարտականությունները բաշխված եյին որոշ նախարարություն-

ների միջև. օրինակ՝ «շահախոսապետ», «վորսապետ», «տակառապետ», «սեննեկապետ արքային», «կարապետ արքային», «զինակիր» և այլն: Բացի դրանից՝ մենք հանդիպում ենք գործակալության զանազան անունների, վորոնց մի մասի նշանակությունը կարելի չէ կռահել այդ տերմինների բառական իմաստից: Փավստոս Բուզանդացին հիշատակում է՝ «գաւառատեարք», «մեծամեծք աշխարհաց», «պանծուց տեարք», «դասապետք շինականաց» (IV, ԾԱ, 165—166) և այլն:

Գործակալների թիվը հասնում էր մի քանի հարյուրի: Փավստոս Բուզանդացու ասելով՝ Արշակ II թագավորի արքունիքում հավաքվում էին 900 գործակալներ (IV, Բ, 68):

3. ԱԶԱՏՆԵՐ — Արդ, տեսնենք, թե ինչ տեղ էին բռնում «ազատները», ֆեոդալական հիերարխիայի ստորին աստիճանում կանգնած այդ ֆեոդալները, գործակալության պաշտոններում: Նրանք մանր հողատեր ազնվականներ էին, նախարարների յենթավասալներ: Ազատները նույնպես կարող էին գործակալներ լինել, 'ի հարկե, համեմատաբար ավելի ստորին աստիճաններում, այն է՝ նախարարական ու թագավորական հողատիրությունների սահմաններում: Նրանք կարող էին լինել, ինչպես ակներև է Շահապիվանի յեկեղեցական ժողովի կանոնական հոդվածներից, նաև դատավորներ (ԿՀ, հոդ. ԶԺ, եջ 76): Հայկական «ազատ» տերմինն, ինչպես արդեն ասված է, իրանա-պարթևական ծագումն ունի և նրա իմաստն ավելի պարզ կլինի, յեթե նկատի ունենանք, վոր Հայաստանի նախարարական սիստեմը շատ գծերով նման էր Սասանյան Պարսկաստանի ֆեոդալական կառուցքին: Սասանյան Պարսկաստանում, հիրավի, գոյություն ուներ ազատների բազմամարդ դաս, վորոնք նույնպես մանր ազնվականներ էին և վարում էին ստորադաս վարչական պաշտոններ[122]:

Սակայն ազատների հիմնական ծառայությունը զինվորական էր, և այն էլ հեծյալ: Հայաստանի հեծելազորը, վոր կազմում էր զորաբանակի ծուծը, բաղկացած էր ազատներից: Ուստի այդ զորքը կոչվում էր «ազատազորք», «ազատագունդ», նմանապես «ազատագունդ կամ ազատախումբ բանակ»: Այսպիսով, ազատներն առաջին հատկանիշով ներկայացնում էին ձիավորների

դաս, նման Հին Հռոմի ordo equester կոչված ձիավոր դասին կամ միջնադարյան Եվրոպայի գերմանական Ritter և ֆրանսիական chevalier դասերին:

Ազատների հեծելազորային ծառայության այդ առանձնահատուկ բնույթը գտնում ենք նաև Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում. «Եւ զիշխանքս դատէ իշխանաց իշխանն՝ իշխանօք և իրենց տեառն, նույնպէս զազատսն, որ են ի մերս ձիաւորքն և լին ճորտերն»[123]: Ինչպես երևում է, Սմբատ Գունդստաբլը ազատների շարքն է դասում նաև «լին ճորտերին», որպիսի տերմինը թարգմանաբար փոխառված է ֆրանկների ֆեոդալական սիստեմում գոյություն ունեցող homme lige անունով սոցիալական դասից:

Անշուշտ, ազատներն այդ ծառայությունը կատարում էին իբրև վասալներ, որոնք տիրում էին իրենց սենիորից, այսինքն նախարարից, ստացած հողերին պայմանական հարաբերություններով:

Հայ մատենագրության մեջ ազատների հետ միասին հաճախ հիշատակվում են նաև ոստանիկներ կամ ոստանի մարդիկ: Ձմանելով այս տերմինի շուրջը հայ պատմագիտության եջերում արտահայտված հակասական կարծիքների տեսության մեջ[124], գտնում ենք, որ այդ երկու տերմինները՝ ազատներ ու ոստանիկներ նույնանիշ են, ներկայացնելով միևնույն սոցիալական խավը, այն տարբերությամբ միայն, որ ոստանիկները նստած էին թագավորի հողի վրա, Ոստանում: Ըստ Հ. Հյուբշմանի ստուգաբանության՝ հայերեն «ոստան» տերմինը փոխ է առնված պեհլևիի ôstân բառից, որ նշանակում է «արքունի երկիր կամ քաղաք»: Այդ հետևությամբ Հ. Հյուբշմանը «ոստանիկ» թարգմանում է՝ արքունի կամ թագավորական երկրից ծագող ազնվականներ կամ զորագնդեր[125]: Հ. Հյուբշմանի ստուգաբանությունն ու մեր կարծիքը հաստատվում են Եղիշե պատմագրից քաղված հետևյալ ցիտատներով.

«Բազում և այլ ազատ մարդիկ, որ Ոստանիկսն անուանեն՝ յարքունի տանէ» (IV, 119):

«Եւ բազում ևս այլ ազատ մարդիկ. են որ յարքունի տանէ, և են որ ի տանէ նախարարացն իւր նոցունց» (VIII, 251):

«Գունդ կազմէր 'ի Հայոց մեծաց զազատ և զազատորդիս և յարքունի տանէ զօստանիկ մարդիկ» (I, 16):

Ուրեմն ոստանիկներն արքունի յերկրում, ինչպես և ազատները նախարարական յերկրներում կազմում եյին զինվորական դաս: Իսկ Եղիշեյի հետևյալ խոսքերը՝ «բազում և այլ այրուձի, որ յարքունի տանէ անտի էր» (III, 91), հիմք են տալիս յենթադրելու, վոր արքունի յերկրից, այն է՝ Ոստանից յեկած այրուձին, սոցիալական տեսակետից նույնն եր, ինչ վոր նախարարական յերկրների այրուձին, վոր բաղկացած եր ազատներից և կոչվում եր ազատագործ կամ ազատագունդ:

4. ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻ ՀԱՐԿԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ.— Տեսության առնելով Թագավորական իշխանության և նախարարների վասալականության հարաբերությունները հողատիրության ու ծառայության բնագավառներում, հանդիպում ենք մի հետաքրքիր ու կարևոր հարցի, թե արդյոք նախարարները, մանավանդ Արշակունյաց շրջանում, հարկ վճարո՞ւմ եյին իրենց սյուզերեն Թագավորին: Այդ հարցն ինքնին առաջ է գալիս, քանի վոր հայ մատենագրության մեջ այդ մասին վորոշ բան չի հաղորդվում: Այդ լռությունը հիմք է ծառայել մի շարք պատմագետների՝ ժխտողական կարծիք հայտնելու նախարարների հարկատվության մասին: Մատենագիրների այդ լռությունը դեռևս չի կարող ապացույց լինել, վոր նախարարները չեյին կրում հարկային պարտավորություններ Թագավորի հանդեպ: Չե՞ վոր մեր պատմագրության մեջ կարևոր շատ բաներ անտեսության են մատնվել և միայն արդի պատմագիտական հետազոտությունների ու քննությունների շնորհիվ են յերևան հանվել ու լուսաբանվել: Այդպիսի վիճակի յե յենթարկվել նաև նախարարների հարկային պարտավորությունը, վորը թերևս այնքան սովորական ու բնական յերևույթ է թվացել մեր պատմագիրներին, վոր ավելորդ են համարել հիշատակելու կամ արժեք չեն տվել արձանագրելու այն: Ճիշտ է, վոր նախարարությունների կողմից Թագավորներին հարկ վճարելու հարցը պաշտպանող պատմագետներն էլ բավականաչափ համոզիչ տվյալներով չեն հաստատում իրենց տեսակետը:

Կարծում ենք, որ տեսականորեն մոտենալով այդ հետաքրքիր խնդրին, կարելի յե ընդունել նախարարների հարկատվության պարտավորությունն առ իրենց թագավորը: Յեթե Հայաստանում հողային սեփականությունը յեղել է պետական ու կաղապարվել է թագավորի գերագույն իշխանության մեջ, իսկ նախարարներն ոգտվել են, այդ հողերը ստանալով պետությունից կամ նրան գլխավորող թագավորից տիրության իրավունքով, ապա տրամաբանորեն հետևում է այն իրավաբանական դրույթը, որ նախարարների այդ հողատիրությունը, լինելով պայմանական, կապված էր թագավորի գերագույն հողային սեփականության իրավունքի հետ ո՛չ միայն «ծառայությունով», այլ և իրական նյութական կախումով, որ կարող էր արտահայտվել հարկային պարտավորությամբ: Այս յենթադրությունն ավելի քան հավանական է դառնում, յեթե նկատի ունենանք, որ նախարարական Հայաստանի բովանդակ սոցիալ-տնտեսական կառույցը հիմնված էր բացառապես արտադրության ֆեոդալական յեղանակի վրա, որտեղ հողն արտադրության հիմնական միջոց է և թագավորի գերագույն սեփականության իրավունքի մեջ է մտնում:

Մեր յենթադրությունը տվյալ հարցի նկատմամբ կարելի յե հաստատել մի քանի պատմական փաստերով, որոնք թեև այնքան էլ շատ չեն, բայց կարծում ենք՝ որոշ չափով համոզիչ են:

Պատմական տվյալներից ակներև է, որ Արշակունյաց դինաստիայի անկումից հետո Պարսկաստանի գերիշխանության տակ անցած Հայաստանը հարկ էր վճարում Սասանյան թագավորներին, մարզպանների միջոցով: Վասակ Սյունին, որ մարզպանն էր, ասում է. «Հարկքս ամենայն աշխարհիս Հայոց առ իս են, և գործակալք ամենայն յիմում ձեռին են» (Ղփ, դլ. **ԻԵ**, 179):

Ինչպես ակնարկել ենք վերը, Հայաստանի պարսկական մասում Սասանյան թագավորները նախարարական սիստեմն ու վարչա-պետական կազմը գրեթե անփոփոխ եյին թողել: Միայն հայ թագավորի իշխանության վերացումից հետո, Սասանյան

թագավորների, որպես Հայաստանի գերագույն սյուզերենի կողմից նշանակված մարզպանները, որոնք հանդիսանում էին պարսկական գերիշխանության ներկայացուցիչը Հայաստանում, կատարում էին տեղական նախկին կենտրոնական իշխանության ֆունկցիաները: Հետևապես, եթե «գործակալք ամենայն» ու «հարկք ամենայն աշխարհի Հայոց» մարզպանի ձեռքին էին, ապա այդ իրավունքը ժառանգություն էր մնացել նախորդ Արշակունի թագավորներից և փոխանցվել էր ավտոմատիկ կերպով մարզպաններին: Նկատի առնելով նախարարական սիստեմի խիստ ֆեոդալական բնույթը, երբ յուրաքանչյուր նախարար իր երկրի լիակատար տերն էր վարչական ու տնտեսական ասպարեզում, մանավանդ հողային ռենտայի, պետք է ենթադրել, որ Սասանյանները Հայաստանից պահանջվող հարկը հավաքում էին ո՛չ թե իրենք անմիջապես տեղական բնակչությունից, այլ ստանում էին նախարարներից, որոնք, անշուշտ, այդ հատուցանում էին, իրենց շինականներին շահագործելով: Այդպիսի ենթադրության հիմք են ծառայում Ղազար Փարպեցու բնորոշ խոսքերը, որոնք գրված են պարսից Հազկերտ թագավորի բերանը: Վերջինս մեղադրում է մարզպան Վասակ Սյունիին, որ սա պատճառ է եղել Վարդան Մամիկոնյանի և այլ նախարարների անկման հակապարսկական պատերազմում, որի հետևանքով ինքը զրկվել է նրանցից ստանալիք հարկերից, ուստի այդ հարկերը հրամայել է գանձել Վասակից. «Եւ զհարկեր զիմոյ աշխարհին Հայոց... զոր սպաներն, և զկարասին այնչափ զոր հանէր՝ հրամայեցաք խնդրել 'ի տանէ քումմէ յորդւոց քոց՝ մինչև վճարեսցի ամենայն» (ՂՓ, գլ. ԽԶ, 182):

Թեև հայ թագավորներն Արարատյան Ոստանում՝ իրենց անձնապես պատկանող ֆեոդալական երկրում, հարկերն անմիջորեն ստանում էին իրենց շահագործման ենթակա իսկական արտադրողներից, ապա միանգամայն հավանական է, որ վասալ ֆեոդալական երկրներում նրանք հարկեր չէին կարող ստանալ բնակչությունից, այլ նրանց վրա իշխող նախարարներից, որոնք իրենց հողային ռենտայից որոշ մասը վճարում էին սյուզերեն թագավորին հողատիրության պայմանականության հիման վրա:

Այդ հարկերը նախարարներից, ըստ յերևույթին, պահանջվում եյին նրանց հողերի ու բնակչության քանակի համեմատ: Դրանով պետք է բացատրել, վոր Սասանյան Կավադ և ապա Խոսրով թագավորները ձեռնարկել եյին հողերի ու ազգաբնակության ընդհանուր համարակալությանը:

Մի այլ ժամանակագրական վկայությունից նույնպես կարելի յե յեզրակացնել, վոր հարկերը վճարում եյին Պարսից թագավորներին հենց իրենք նախարարները: Հազկերտ Սասանյանի մահից հետո հայ ապստամբ նախարարները ջարդում են Հայաստանում յեղած պարսկական զորքերին և սպանում նրանց զորապետին, ապա իրենք ցրվելով, ապավինում են ամրոցներում և սարերում: Դրա հետևանքով Հայաստանում յերեք տարի անիշխանություն եր տիրում, «վասն որոյ պակասեալ լինէին հարկք արքունի» (Մխ, III, գլ. ԾԶ, 341—342):

Վերջապես նշենք մի ուշագրավ պարագա, վոր ղարտուղի ապացույց է նախարարների կողմից թագավորին վճարվող վասալական հարկի: Արշակունի թագավորները, բացի իրենց սեփական Արարատյան յերկրում ունեցած ամրոցներից, ուր պահվում եյին արքունի գանձերն ու հարստությունները, ունեյին նաև այդպիսի ամրոցներ զանազան նախարարական յերկրներում. Անգեղ բերդը՝ Անգեղատան գավառում (ՓԲ, IV, գլ. ԻԴ, 146), Անի՝ Դարանաղյաց գավառում (ՓԲ, Անդ.), Արտագերս (ՓԲ, IV, գլ. ԺԹ, 133. գլ. ԾԷ, 174), Դարյունից կամ Դարոնից բերդ՝ Կովգա յերկրում (ՓԲ, III, գլ. Է, 16. V, գլ. Ա, 191), Ողական՝ Տարոնում (ՓԲ, V, գլ. Գ, 195): Անտարակույս, այս թագավորական ամրոցները, ուր պահվում եյին թագավորական գանձերն ու հարստությունները, այն կենտրոններն եյին նախարարական յերկրներում, վորոնք ծառայում եյին իբրև տեղական իշխաններից հավաքված արքունի տուրքերի պահեստներ:

Վերն արծարծված մեր կարծիքն ավելի ևս հաստատվում է, յեթե ուշադրության առնենք նաև Հայաստանի այն մասը, վոր Արշակունիների անկումից հետո անցել եր Բյուզանդական իշխանության ներքո: Թեև մեզ հասած պատմական տեղեկությունները այն արքունի տուրքի մասին, վոր նախարարները (սասա–

րապները) վճարում էին բյուզանդական կայսրին, այնքան էլ պարզորոշ չեն հռոմեական աղբյուրներում, այնուամենայնիվ նրանք հիմք են տալիս հավանական ենթադրություններ անելու: Հայ նախարարները, ինչպես Բյուզանդիոնին ենթակա այլ վասալ թագավորներն ու իշխանները, պարտավոր էին տալ Բյուզանդական կայսրին այսպես կոչված aurum coronarium— «Թագի կամ պսակի ոսկի»: Ն. Ադոնցը, հիմնվելով հռոմեական մի դեկրետի[126] բովանդակության լոկ արտաքին իմաստի վրա, որ Ծոփքի նախարար Գադդանից ապօրինի էր վերցված հիշյալ ոսկին, կարծիք է հայտնում, թե դա կամավոր նվեր էր վասալներից (AAЮ 113—114): Նույն տեսակետին է հարում նաև Հ. Մանանդյանը: Սակայն վերոհիշյալ կայսերական դեկրետից ակնհայտ է, որ aurum coronarium-ը հին սովորույթով սահմանված պարտավորություն էր, որ «ի նշան անձնվիրության դեպի հռոմեական կայսրությունը՝ բոլոր սատրապները (նախարարները) իրենց սեփական միջոցներից պետք է պատրաստեն ոսկու պսակը»[127]: Կարիք չկա ապացուցելու, որ այստեղ խոսքը ո՛չ թե կամավոր նվերի, այլ սահմանված պարտավորության մասին է. այն իր էությամբ քողարկված հարկ էր, անկախ նրա քանակային չափից, որով բնորոշվում էր նախարարի (սատրապի) հպատակությունը կայսրին, վասալական կախումը գերագույն սյուզերենից: Որ aurum coronarium-ը պարտադիր հարկի մի ձև էր, երևում է նաև նրանից, որ բյուզանդական աղբյուրներում հիշատակվում են նաև սատրապների կողմից վճարելի երկու հոմանիշ հարկերի մասին: Անաստասիոս կայսրի մի հրովարտակում (496 թ.) հիշատակվում են այսպես կոչված τὰ ἀρμενιακὰ δημόσια— «հայկական տուրքեր», հարկեր: Թե ինչ հարկեր էին դրանք, մեզ անհայտ է, բայց մի բան պարզ է, որ այդ հարկերն, ամենայն հավանականությամբ, վերցվում էին հայ սատրապներից: Մյուս հարկի մասին հաղորդում է Պրոկոպիոս պատմագիրը (Proc. Aed., էջ 249), որից պարզվում է, որ սատրապները պետական հարկ, φόρους δημοσίους, էին վճարում: 502 թ., երբ պարսկա-բյուզանդական պատերազմ էր, Ծոփքի սատրապը (նախարարը, իշխանը), կամենալով փրկել իր երկիրն և հպատակվել պարսից Կավադ թագավորին,

նրա առաջ է դուրս գալիս, ունենալով իր հետ յերկու տարբեր պետական հարկերը, վոր վճարում եր բյուզանդական կայսրին:

Այսպես ուրեմն, մի կողմից՝ այն փաստը, վոր Պարսկական Հայաստանում և Բյուզանդական Հայաստանում նախարարները վճարում եյին, իբրև վասալներ, արքունի հարկ, իսկ մյուս կողմից՝ այն հանգամանքը, վոր Պարսկական Հայաստանում և սկզբնական ժամանակաշրջանում նաև Բյուզանդական Հայաստանում անփոփոխ եր մնացել նախարարական սիստեմն իր բոլոր իրավական ինստիտուտներով, կռվան են հանդիսանում կարծելու, վոր այդ արքունի հարկն ավտոմատիկորեն փոխանցվել եր Արշակունյաց Հայաստանից: Այդ միանգամայն հավանական է, մանավանդ վոր մեզ հասել են տվյալներ, վորոնք ակնարկում են նախարարների կողմից Արշակունի թագավորներին արքունի հարկ վճարելու մասին: Վոր իրոք այսպիսի պարտադիր սովորույթ կամ օրենք գոյություն է ունեցել, այդ ակներև է, ինչպես կտեսնենք ստորև, Բագրատունյաց Հայաստանի թագավորի ու նախարարների վասալական հարաբերություններից, վոր Բագրատունիները սահմանել եյին Արշակունյաց թագավորության կարգերի հետևողությամբ:

5. ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ.—Յեթե նախարարներն, իբրև վասալներ, վորոնց հողատիրությունը պայմանավորված եր վորոշ ծառայությամբ առ թագավորն և այդ ծառայությամբ նրանք համարվում եյին կենտրոնական իշխանության, այն է՝ թագավորի գործակալներ, ապա իրենց յերկրների ներքին գործերում նրանք վայելում եյին լիակատար իրավունք: Այստեղ է, վոր նախարարական իրավունքը հանդես եր գալիս իր բնորոշ հատկություններով: Տանուտերն իր նախարարական տերիտորիայում, վորպես նախարարական տոհմի գլխավոր, նույն դեսպոտական իշխանությամբ եր օժտված, նույն գերագույն իրավունքի տերն եր համարվում, նույն սենյորն եր վասալ կրտսեր նախարարների ու ազատների, ինչպես և թագավորն ամբողջ պետական տերիտորիայում: Տանուտերն եր հոգում իր նախարարության մեջ հարկեր հավաքելու մասին, այսինքն՝ տնօրինում եր իրեն պատկանող հողային ռենտան, դատ եր տեսնում իր

հպատակների վրա, զորք էր ժողովում, վորի հրամանատարությունն ինքն էր կատարում և այլն:

Նախարարական այդ իրավունքը, վոր կենտրոնացած էր տանուտերի ձեռքին, ծագել էր ու զարգացել դարերի ընթացքում՝ նախորդ տոհմային պատրիարխատական հասարակակարգից: Հենց «տանուտեր» տերմինը նույնանիշ է տոհմապետ բառին, վոր վերապրուկային ձևով պահպանվել է տոհմային կազմակերպությունից, յերբ վերջինս, սոցիալապես տրոհվելով ու դասակարգայնորեն կառուցվելով, դարձել էր ֆեոդալական հասարակություն: Արխայիկ տոհմապետի, այն է՝ տոհմի ավագագույնի, տոհմի ներքին գործերի ու հարաբերությունների ղեկավարի, ռազմական առաջնորդի՝ բոլոր հասարակական ֆունկցիաներն ու պարտականությունները կենտրոնանում են դասակարգայնորեն վերասերված բովանդակությամբ այն իրավունքի ու իշխանության մեջ, վոր յուրացրել էր սոցիալ-տնտեսապես ուժեղացած ու քաղաքական նշանակություն ձեռք բերած նախկին տոհմապետը, զատվելով տոհմային մնացյալ մասսայից:

Վոր նախարարական ֆեոդալիզմը, մանավանդ իր վաղագույն շրջանում, պահպանել էր նախորդ տոհմային հասարակակարգի մնացուկներն ու վերապրուկները, այդ ակներև է մի այլ հետաքրքիր փաստից, վոր հայտնի յե հայ մատենագրության մեջ «աշխարհաժողով» անունով: Դա նախկին տոհմային հասարակության մեջ գոյություն ունեցող ավագների կամ տոհմապետների խորհուրդները կամ ժողովներն եյին, ուր քննվում եյին տոհմին վերաբերող գործերը: Ահա այդ «աշխարհաժողովը» կոչված նախարարական ժողովներում, վոր սովորաբար լինում էր թագավորի ղեկավարությամբ, իսկ թագավոր չեղած ժամանակները՝ կաթողիկոսի նախագահությամբ, բոլոր նախարարների և այլ ֆեոդալ իշխանների մասնակցությամբ քննվում եյին ու խորհրդածության առնվում պետության վերաբերյալ գործերը, քաղաքական ճգնաժամերին ծագած կարևոր հարցերը և այլն: Այդ ժողովների մասին մեր հին պատմագիրները սովորաբար գործ են ածում «խորհուրդ արարեալ» կամ «խորհեցան աշխարհօրէն խորհուրդ» դարձվածքները: Այդ ժողովներն աշխարհիկ բնույթ ունեյին և տարբերվում եյին այն ժողովներից, վորոնք

*հայտնի էին «յեկեղեցական» անունով և գումարվում էին դանազան յեկեղեցական-վարչական ու կրոնա-դավանաբանական հարցեր լուծելու, ինչպես և կանոնական իրավանորմներ սահմանելու նպատակով:*

*Նախարարական ժողովների մասին բավականաչափ հիշատակումներ կան մեր մատենագրության մեջ, վորոնցից առաջ բերենք միքանի որինակներ:*

*«Արդ միաժողով եղեալ մեծամեծք նախարարացն և 'ի մի վայր եկեալք,* խորհուրդ խորհեցան. *հաւանեցուցին զթագաւորն, ածել զծերունին զԴանիէլ յիւրեանց բնակէն, զի ածցեն կացուսցեն զնա իւրեանց գլուխ առաջնորդ, զի նստցի նա յաթոռն հայրապետական»* (*ՓԲ*, III, *գլ. ԺԴ*, *եջ* 38):

*«Ապա յայնմ ժամանակի միաբան խորհեցան* աշխարհօրէն խորհուրդ, *եթէ ո՛ւմ պարտ իցէ զհայրապետութեան զկաթողիկոսութիւն ունել»* (*ՓԲ*, III, *գլ. ԺԷ*, *եջ* 45):

*«Ապա առաւել ժողովեցան ի* մի ժողով *միաբանութեան մարդիկ աշխարհին Հայաստան երկրին, նախարարք մեծամեծք, աւագք, կուսակալք, աշխարհակալք, ազատք, զօրագլուխք, դատաւորք, պետք, իշխանք. բայց 'ի զօրավարացն, այլ և ի շինականաց անգամ ռամիկ մարդկանն»* (*ՓԲ*, III, *գլ. ԻԱ*, *եջ* 54):

*«Ապա* ժողով *լինէր նախարարացն և իշխանացն, գործակալք և զօրագլուխք, պետք և ամենայն* աշխարհաժողովք *բազմութեանն եկելոց կուտելոցն»* (*ՓԲ*, III, *գլ. Ի*, *եջ* 54), *յերբ Տիրան Թագավորի դերության և նրան կուրացնելու մասին լուր հասավ Հայաստան:*

*«Եւ* ժողովեցան *եկին ամենայն իշխանքն Հայոց մեծամեծք 'ի մի վայր 'ի միասին, և Մուշեղ սպարապետն և Հայր մարդպետ, և ամենայն իշխանքն առէին. Զի՞նչ արասցուք կամ զի՞նչ գործեսցուք, խնդրեսցո՞ւք զվրէժ թագաւորին մերոյ, թէ ոչ: Եւ ապա հաստատեցաւ այս բան 'ի* խորհրդեանն, *և ասեն. Ոչ կարեմք հեթանոսաց 'ի պարսկաց 'ի ծառայութիւն մտանել, և թշնամի առնել զթագաւորն Յունաց. և ոչ զերկոսեան թշնամի առնել, և ոչ առանց միոյ թիկանց կարեմք կեալ»* (*ՓԲ*, V, *գլ. ԼԳ*, *եջ* 240):

*«Զկարացեալ այսպիսի զեղխ և մոլեկան վարուց թագաւորին*

Արտաշէսի տանել նախարարքն Հայոց՝ ժողովեցան միահամուռ առ մեծ քահանայապետն Հայոց... և ասեն ցնա՝ ոչ ևս կարեմք այսպիսի անօրէն և պիղծ գործոց թագաւորին համբերել... Արդ՝ քեզ նախ պարտ է այսպիսի անհնարին աղէտից խնդրել հնարս և բառնալ ի միջոյ պղծոյ զայնպիսի ամբարշտեալ թագաւոր» (ՂՓ, I, գլ․ ԺԲ, էջ 39—40)։

«Ժողովեցան այնուհետև ըստ հրամանի տանուտերացն Հայոց սուրբ եպիսկոպոսք ըստ գաւառաց աշխարհին Հայոց... Այսոքիկ ամենեքեան աւագ տանուտեարք, հանդերձ աւագ սեպհօք և բարեպաշտ եպիսկոպոսօք... պատասխանի հրովարտակին գրէին առ թագաւորն Յազկերտ» (ՂՓ, II, գլ․ ԻԳ, էջ 91—92)։

«Առնոյր այնուհետև խորհուրդ հաւանութեան ընդ թագաւորին և ընդ իշխանսն, նախարարօքն և զօրօքն հանդերձ՝ վասն խաղաղութեան հասարակաց, քակել, կործանել, բառնալ զգայթակղութիւնսն ի միջոյ, ի բաց կորուսանել» (Աց․, ԾԸ, էջ 394)։

Վերևում բերված օրինակները վկայում են, որ նախարարները, չնայած իրենց կենտրոնախույս տենդենցներին ու տեղական ֆեոդալ իշխանության ինքնուրույնությունը պահպանելու ձգտումներին, այնուհանդերձ կարիք էին զգում հատուկ ժողովներ գումարելով «աշխարհօրէն խորհուրդ» անելու՝ ընդհանուր պետական հարցերի մասին, այն է՝ թագավորական իշխանության, պատերազմի, հասարակական անդորրության, նաև կաթողիկոսի ընտրության հարցերի մասին, վորոնք կարևոր էին նրանց դասակարգային շահերի տեսակետից։

6․ ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՀԻԵՐԱՐԽԻԱՆ ԵՎ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆԸ ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ.—Ֆեոդալական հիերարխիան Հայաստանում շարունակում էր գոյություն ունենալ նաև Արշակունիների անկումից և նույնիսկ Սասանյան տիրապետության վերացումից հետո։ Սակայն այդ հիերարխիան արատության վերացումից հետո։ Սակայն այդ հիերարխիան արաբական իշխանության ներքո, յերբ նախարարական սիստեմը

քայքայվում էր, կորցրեց իր նախկին յուրահատուկ բնույթը, վոր կազմակերպվել էր դարավոր տրադիցիաների և սովորութական իրավունքի համաձայն՝ նախարարական հասարակական-քաղաքական պայմաններում։ Մի կողմից՝ արաբները և մյուս

կողմից՝ Բյուզանդիան ներմուծում էին նոր կարգեր Հայաստանի դասային հարաբերություններում և նոր հիմքերի վրա դնում ֆեոդալական դասակարգի վասալական կախումը խալիֆայի կամ Բյուզանդիայի սուվերեն իշխանությունից:

Ֆեոդալական նոր կարգեր էին մտցվում Հայաստանի հասարակական-քաղաքական կառուցվածքում նաև արաբների տիրապետության հաջորդ դարաշրջաններում, երբ ամեն մի նոր նվաճող՝ սելջուկյան, մոնղոլական, թյուրք-պարսկական իշխանություն հաստատում էր իր կարգ ու կանոնները, երբ տեղական սովորութական ու ազգային իրավունքին առընթեր սկսում էր գործել մուսուլմանական իրավունքը: Այս պայմաններում հետզհետե վերանում էին նախարարական կարգի ֆեոդալական տերմինները, տեղի տալով նոր տերմիններին ու անուններին, որոնք հատուկ էին նվաճողների բերած քաղաքական-հասարակական կառուցքի իրավաբանական նորմերին:

Այսպիսով, արաբական տիրապետության շրջանում Հայաստանի ֆեոդալական հիերարխիան ընդունեց նոր կերպարանք: Ֆեոդալական հիերարխիան, որի գերագույն աստիճանը ներկայացնում էր սուվերեն սենիորը հանձին թագավորի, նոր պայմաններում կերպարանափոխվեց այն ուղղությամբ, որ ցաքուցրիվ եղած, ստորացված և ուժասպառ հին ֆեոդալներն, ինչպես և սոցիալ-քաղաքական իրադարձություններում նորելուկ հայ ֆեոդալները, ձգտում էին իրենց գոյությունն ապահովել հզոր և ազդեցիկ իշխանների հովանու տակ: Այդպիսի իշխաններ էին արաբական տիրապետության շրջանում Բագրատունի, Արծրունի և Սյունի նախարարական տոհմերը: Սրանք ընդունակ եղան պահելու ո՛չ միայն իրենց վաղեմի հասարակական-քաղաքական նշանակությունը, այլ և սկսեցին այժմ ղեկավար դեր խաղալ հայ ֆեոդալական միջավայրում՝ շնորհիվ իրենց տնտեսական հզորության ու քաղաքական ազդեցության: Նրանք դարձան ինքնուրույն սենիորներ, ունենալով իրենց ձեռքի տակ վասալական ու յենթավասալական ֆեոդալ իշխաններ, որոնց թիվը միշտ ավելանում էր՝ վերոհիշյալ խոշոր իշխանների ֆեոդալական էքսպանսիայի շնորհիվ:

Այս պայմաններում դերիշխող դիրք գրավեցին սկզբում

Բագրատունիները, որոնց ժամանակ ֆեոդալական հիերարխիան գլխավորում էր ավագագույնն այդ տոհմից: Նրանք, ինչպես և մյուս նախկին նախարարները, սկսեցին կոչվել իշխան: Բագրատունի տոհմի ավագը, որպես սենյոր մնացյալ վասալ իշխանների, կոչվում էր «իշխանաց իշխան», իսկ նույն տոհմի մյուս անդամները, որպես վերիշխող տոհմին պատկանողներ, կրում էին «մեծ իշխան» տիտղոսը: Հետագայում արդեն, երբ կազմակերպվեց Բագրատունյաց թագավորությունը, «իշխանաց իշխան» տիտղոսն անցավ թագաժառանգին: Երբեմն պատմական հուշարձաններում «իշխանաց իշխան» տիտղոսի փոխարեն հանդիպում ենք նույնանիշ անունով «տէրանց տէր»: Այդպես է իրեն անվանում Վանևանի 903 թ. արձանագրության մեջ Բագրատունյաց թագավորության սպարապետ Շապուհ Բագրատունին, Աշոտ թագավորի որդին և Սմբատ թագավորի եղբայրը (ՎՏ, էջ 6):

Նույն երևույթն ենք նկատում Արծրունյաց և Սյունյաց ֆեոդալական իշխանություններում, որոնք սկզբում վասալներ էին Բագրատունի թագավորների և ապա, անջատվելով, հանդես եկան որպես նրանցից անկախ թագավորություններ:

Երբ Բագրատունյաց տոհմի տիրապետությունն այնքան ուժեղացավ, որ «իշխանաց իշխան» Աշոտ Ա. արաբական խալիֆայի համաձայնությամբ իր ֆեոդալական երկիրը թագավորություն և իրեն էլ թագավոր հռչակեց, ապա նրա որդի Սմբատն և թոռ Աշոտ Երկաթն սկսեցին կրել Արևելքում ընդունված «թագավոր թագավորաց» կամ «շահինշահ» տիտղոսը: Այժմ ֆեոդալական հիերարխիայի աստիճանականությունը երկարեց: «Թագավորաց թագավորից» հետո երկրորդ աստիճանում կանգնած էին Բագրատունիների գերիշխանությունը ճանաչող Արծրունի և Սյունի «իշխանաց իշխաններն» իրենց վասալներով հանդերձ, որոնք, ինչպես Բագրատունիների նախկին այլ ենթավասալները, այժմ բռնում էին երրորդ աստիճանը: Վերջապես չորրորդ աստիճանը բռնում էին ազատները, որպես մանր կալվածատեր ազնվականներ, որոնք, ինչպես և նախարարական շրջանում, կազմում էին «ազատագունդ» հեծյալ զորքը[128]:

Բագրատունյաց դինաստիայի թագավորները ձգտում էին իրենց արքունիքում վերականգնել նախկին Արշակունյաց կարգերն ու ծառայությունները, վորոնք, ի հարկե, նոր քաղաքական պայմաններում ստանում էին ժամանակին և սովորույթներին համապատասխան բնույթ։ Վերականգնվեց նաև ֆեոդալական հիերարխիային այնքան հատուկ գահերեցության ինստիտուտը, վորի արտահայտիչ հատկանիշն էր «բարձ և պատիվը»։ Այդ բացահայտ է 1001 թ. մի վիմական արձանագրությունից. «Ես Աշոտ իշխանաց իշխան, որդի Գէոր.... առն քաջի և պատերազմողի, հաւատարիմ եղեալ տանս Հայոց, առի բարձ և պատիւ 'ի Աշոտոյ Շահնշահէ և յորդւոց իւրոց»... (ՎՏ, 12)։ Այդօրինակ բավականաչափ տվյալներ գտնում ենք Թովմա Արծրունու Պատմության մեջ, վորից բերում ենք հետևյալ քաղվածքները.

«Իբրև եհաս թագաւորն [Սմբատ Բագրատունի] յաշխարհն իւր՝ ետ բերել պարգևս և պատիւս Աշոտի ըստ իշխանական յօրինուածի, և զԳագիկ ձգեալ ի պատիւ զօրավարութեան Հայոց մեծաց, ըստ օրինի թագաւորացն Յունաց՝ տալ առաջի նորա նշանակս խաչադրօշս։ Եւ Գուրգէնի նորին եղբօրն զպատիւ մարզպանութեան դահակալութեան հաւաստացեալ, ըստ կարգի բարձաբերձութեան թագաւորացն Հայոց, մանաւանդ մեծին Տրդատայ թագաւորի» (ԹԱ, III, դլ. ԻԴ, 384)։

Նույնիսկ արաբական վոստիկաններից ու հրամանատարների կողմից առաջարկվում էին հայ իշխաններին խալիֆի անունից «բարձ և պատիվ», յեթե նրանք ընդունեյին մուսուլմանական կրոնը։

«Սկսաւ խօսել բռնաւորն բանիւք ողոքանօք, և պարգևս և պատիւս մեծամեծս հրամայէ բերել առաջի, և խոստանայր շքեղ և երևելի կացուցանել ի մէջ աշխարհակոյտ ամբոխից ի դրան արքունի, և ընդ առաջին իշխանացն լինել առաջի թագաւորին և բարձակից լինել մեծամեծացն արքայի ի գլխաւոր բազմականի անդ, յորժամ ատեանն արքունական յարդարիցի» (ԹԱ, III, դլ. Բ, 216)։

«Իսկ զօրավարն խոստացաւ երդմամբ տալ նմա զինչ և խնդ-

րիցէ, մինչև հաւասար իւրոյ տէրութեանն բարձակից և պատուակից կացուսցէ» (ԹԱ, III, գլ. Բ, 230):

Բագրատունյաց թագավորության իշխանների վասալական ծառայությունը պահպանում եր ընդհանուր գծերով նախկին նախարարական սիստեմի տրադիցիաները, իհարկե, ժամանակին համապատասխան փոփոխություններով:

Պահպանվել եյին սպարապետությունն ու հազարապետությունը: Սպարապետությունն, ինչպես և սպասելի յեր, այլևս Մամիկոնյան տոհմի առանձնաշնորհ իրավունքը չեր, քանի վոր Մամիկոնյանները վերացել եյին քաղաքական ասպարեզից: Այդ իրավունքն անցել եր Բագրատունյաց տոհմի ձեռքը: Սովորաբար այդ պաշտոնը վարում եր ամենամերձավոր ազգականը, գլխավորապես թագավորի յեղբայրը, յերբեմն ել թագաժառանգը: Դրանով Բագրատունիներն ամրապնդում եյին իրենց քաղաքական դիրքն ու ազդեցությունը և պահպանում եյին իրենց սենյորական իրավունքները ֆեոդալական պետության պայմաններում, վորտեղ տակավին մեռած չեյին վասալական իշխանների կենտրոնախույս տենդենցները:

Ինչ վերաբերում ե հազարապետությանը, թեև այդ մասին տվյալ դարերի մատենագրության մեջ վոչինչ չի ավանդվում, բայց պետք ե յենթադրել, վոր նա վո՛չ միայն պահպանել եր իր նախկին եյությունը, այլ և ստացել եր ավելի կարևոր նշանակություն: Առևտրական կապիտալի մուտքով՝ ժողովրդական տնտեսությունն և ֆինանսական քաղաքականությունը Բագրատունյաց թագավորության պետական ու վարչական պայմաններում զգալիորեն բարդացել եր: Այստեղ անհրաժեշտ ե ուշադրություն առնել մի եյական նշանակություն ունեցող հարց: Ինչպես վերն ակնարկել ենք, հայ պատմագիտության մեջ տիրում եր կարծիք, վոր նախարարական Հայաստանում վասալական իշխանները հարկա-տուրքային հարաբերություններ չունեյին իրենց սուվերեն թագավորի դիմաց: Այդպիսի կարծիքը գլխավորապես հիմնվում ե այդ հարցի մասին մեր մատենագրության մեջ տիրող լռության վրա: Սակայն Բագրատունյաց շրջանի նկատմամբ արդեն կան, թեև սուղ, տեղեկություններ, վորոնցից կարելի յե յեզրակացնել, վոր վասալ իշխանները պարտավոր եյին թագավորական գանձարանին վորոշ տուրքեր հատուցանել: Անշուշտ,

այդ տուրքերն ու հարկերը վասալական յենթակայության հատկանիշներից մեկն եյին: Թովմա Արծրունին պատմում ե, թե ինչպես Սմբատ I թագավորն իր զորքի և Վրաց ու Աղվանից իր վասալ իշխանների գլուխն անցած՝ արշավում ե դեպի Ապահունիք, վորի տեղական ֆեոդալ Աբլահմանի վորդիները ապստամբել եյին, հրաժարվելով «տալ հարկս և պէնուրել որպէս օրէն էր» (III, գլ. ԻԸ, 394): Նույնանման դեպքի առթիվ ե ավանդվում Սյունյաց Սմբատ իշխանի մասին, վոր ըմբոստանում ե Բագրատունյաց թագավոր Սմբատի՝ իր սյուզերենի դեմ, «արգել առնելով հարկացն տալ թագաւորին»: Այստեղ ևս Սմբատ թագավորն իր գերագույն իրավունքը պաշտպանելու նպատակով արշավում ե Սյունիք և, հնազանդեցնելով Սյունիքի իշխան Սմբատին, ստիպում ե վճարել հարկերը (Անդ., 397—398): Նույն Սմբատ թագավորը ռազմական արշավանք ձեռնարկելիս ընդդեմ Ահմատ Եմիրի՝ դեսպաններ ե առաքում Հայաստանի, Վրաստանի և Աղվանից սահմաններն և այն ամենքին, «որք սիրողաբար առ նա զհնազանդութեանն հարկ հարկանէին» (ԹԱ, III, գլ. ԻԳ, 381):

Թովմա Արծրունու Պատմության մեջ հիշատակվում են նաև մի քանի նույնօրինակ փաստեր, թե ինչպես Բագրատունի թագավորները խստիվ հետևում եյին, վոր վասալ իշխանները հարկերը մուծեյին անմիջորեն թագավորի գանձարանը և վո՛չ թե արաբներին: Մինչդեռ յենթակա ֆեոդալ իշխանները հաճախ, տարված լինելով կենտրոնախույս ձգտումներով, հրաժարվում եյին հարկեր վճարել թագավորին, վորպեսզի թուլացնեն կենտրոնական իշխանության ուժն ու թոթափեն իրենց վասալական կախումը Բագրատունիներից: Տվյալ դեպքում հնարավոր ե գուցե կարծել, թե խոսքը վերաբերում ե այն հարկերին, վոր Հայաստանը վճարում եր արաբներին: Ճիշտ ե, սկզբնական շրջանում արաբական խալիֆները ստանում եյին հարկերը հայ իշխաններից իրենց վոստիկանների, այսինքն՝ խալիֆական փոխարքաների միջոցով, ինչպես վոր անցյալում Սասանյան թագավորները ստանում եյին հարկը նախարարներից՝ մարզպանների միջոցով: Սակայն Բագրատունյաց թագավորության հիմնադրությամբ՝ այդ հարկն արդեն խալիֆին ներկայացնում եյին, իբրև

տուրք, իրենք հայ թագավորները, որպես խալիֆի անմիջական վասալներ: Իսկ այդ տուրքը հարկահանվում էր անմիջական արտադրողներից՝ թե՛ թագավորի ձեռքով իր անմիջական կալվածքներից և թե՛ վասալ ֆեոդալների կողմից իրենց յենթակա շինականներից, ընդ որում այդ հարկերի մեծ մասը դառնում էր ֆեոդալների սեփականություն և միայն որոշ մասը մտնում էր թագավորի գանձարանը: Բագրատունի թագավորները, հենվելով իրենց ֆեոդալական սյուզերենիտետի և քաղաքական ուժի, նմանապես խալիֆայի կողմից հաստատված իրավունքի վրա, իրենք էին ստանում պետական ռենտան, այսինքն՝ հարկերն ստանում էին ոչ միայն իրենց կալվածքների անմիջական արտադրողներից, այլ և վասալ ֆեոդալներից, որոնք, իրենց հերթին, հարկեր էին ստանում սեփական կալվածներում անմիջական արտադրողներից: Բագրատունի թագավորներն այդ տեսակ հարկային քաղաքականությամբ թե՛ իրագործում էին ֆեոդալական շահագործումը և թե՛ ամուր կախման մեջ էին պահում իրենց յենթակա վասալ իշխաններին: Ահա այդ հողային ռենտայի հետ կապված ու բարդացած հարկային սիստեմը, նմանապես առևտրա-վաշխառուական կապիտալի հետևանքով զարգացող վաճառականությունն ու մաքսային քաղաքականությունը բնականորեն ստեղծում էին պետական ֆեոդալական տնտեսություն, որը դառնում էր Հազարապետի գերատեսչության ներքո:

Բացի սպարապետությունից ու հազարապետությունից, մենք գտնում ենք Բագրատունյաց ֆեոդալական պետության մեջ նաև մի այլ ծառայություն՝ մարզպանություն, որի մասին տեղեկություններ չունենք նախարարական Հայաստանում: Այդ ծառայությունը պատկանում էր մի ժամանակ Գահլավունի տոհմին, մարզպան էր կոչվում իշխան Ապլղարիպ (ՎՏ, 16, 19, 20, 21), այնուհետև հիշատակված է իշխան Աշոտը (ՎՏ, 23), նմանապես իշխան Գուրգենը մարզպանի տիտղոս է ստանում Սմբատ Բագրատունի թագավորից (ԹԱ, III, գլ. ԻԴ, 384): Բագրատունյաց շրջանի պատմագիրները որոշ տեղեկություններ չեն տալիս այդ պաշտոնի էության մասին, ուստի այդ ծառայության ֆունկցիաները կարելի չէ որոշել յենթադրաբար:

Այդ ծառայությունը մի վերապրուկ է Սասանյան տիրապե-

տուԹյան դարերից, երբ Սասանյան Թագավորները Հայաստանում նշանակում էին վորպես իրենց տեղակալ ու ներկայացուցիչ, փոխարքա՝ մարզպաններ։ Մարզպանների միջոցով եր պահպանվում հայ նախարարների վասսալական կախումը Սասանյան Թագավորից, մարզպանների միջոցով եյին հավաքվում տուրքերն ու հարկերը Հայաստանի նախարարներից՝ Սասանյան գանձարանին ներկայացնելու համար։ Սասանյան մարզպանուԹյան այդ բնորոշ գծերը հիմք են տալիս կռահելու, վոր Բագրատունյաց Հայաստանում այդ ծառայական տիտղոսը կրում եյին ոտար Թագավորների հետ հարաբերուԹյունների գործը վարող իշխանները։ Սրանք յուրատեսակ արտաքին գործերի մինիստրներն եյին, յեԹե այն անվանենք արդիական առումով։

Հերավի, հիշատակված Ապլղարիպ մարզպանը Սմբատ Թագավորի հրովարտակով, վորպես արտակարգ դեսպան, ուղարկվում է Բյուզանդիոն, Միքայել կայսրի մոտ, հատուկ հանձնարարուԹյամբ (ՎՏ, 19)։

Վերջապես Բագրատունյաց շրջանի մատենագրուԹյան մեջ հիշատակվում է իբրև բարձրաստիճան ծառայուԹյուն՝ տանուտերություն (ԹԱ, III, գլ. Բ, 218, գլ. ԺԸ, 346)։ Այդ ծառայուԹյունը հաստատվել եր Արշակունյաց անկումից հետո, Սասանյան տիրապետուԹյան ժամանակ, և բարձրագույն պաշտոն համարվելով, հանձնվում եր ավագագույն նախարարին, վոր գլխավորում եր բոլոր նախարարներին և հանդիսանում նրանց ստենիրը։ Այստեղ նկատում ենք հետևյալը. Արշակունյաց շրջանում տանուտերն, այլապես նահապետը, միայն նախարարական տոհմի ավագագույն ներկայացուցիչն եր տվյալ կալվածքի սահմաններում, իսկ Սասանյան շրջանում այդ տերմինի նշանակուԹյունը լայնանում է, դառնալով համահայաստանյան պետական տիտղոս, վոր վերապահվում եր ավագագույն նախարարին, իբրև Հայաստանի ներկայացուցչին Սասանյան արքունիքում։ Այդ առումով եւ Սասանյան Հայաստանը, մինչև սրա յերկրորդ բաժանումը Բյուզանդիայի ու Պարսկաստանի միջև (591 Թ.), կոչվում եր նաև յերկիր տանուտերական։

Խիստ բնորոշ է, վոր Թովմա Արծրունին վերոհիշյալ ծառայուԹյուններն, այն է՝ զորավարուԹյուն (սպարապետուԹյուն),

մարզպանություն, տանուտերություն որակվում է պատիվ տերմինով (III, գլ. Բ, 218. գլ. ԺԸ, 346. գլ. ԻԳ, 384), վորպիսի պարագան ցույց է տալիս նրա սերտ աղերսը ֆեոդալական հիերարխիական սիստեմի հետ: Յերբեմն էլ, ըստ Թովմա Արծրունու, բարձրագույն աստիճանի պաշտոնյաները կոչվում են սեպուհական՝ «սեպուհ թիկնապահ իշխան», «այլք ՚ի սեպուհ պաշտոնէից» (ԹԱ, III, գլ. Բ, 219):

Հիերարխիական ավելի ստորին աստիճաններում կանգնած իշխանները և նրանցից կախված ազատները Բագրատունյաց պետության մեջ վարում եյին համապատասխան աստիճանի պաշտոններ, վորոնք կոչվում եյին գործակալություն (ԹԱ, III, գլ. ԺԵ, 339, գլ. Ի, 362), մի տերմին, վոր, ինչպես տեսանք, գոյություն ուներ տակավին նախարարական շրջանում: Այդ գործակալների շարքում տեսնում ենք մարզպետներ, այսինքն՝ մարզերի պետեր, կողմնակալներ, կուսակալներ, գավառակալներ կամ գավառապետներ, քաղաքապետներ, զորագլուխք աշխարհի, վորոնք տեղական մարզային զորքի հրամանատարներն եյին (ԹԱ, III, գլ. Ա, 210. գլ. Բ, 223, գլ. Ի, 369):

**7. ԿԱՌԱՎԱՐՉԱԿԱՆ ՊԱՇՏՈՆՆԵՐ ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻՑ ՀԵՏՈ.** — Ինչպես ակներև է վերևում բերված փաստերից, Բագրատունյաց ֆեոդալական պետության ծառայությունները Արշակունյաց նախարարական շրջանից փոխ առնված անուններ են կրում, վորոնք մեծ մասամբ պարթևա-իրանական ծագումն ունեն: Սակայն այդ անունների հետ միասին Բագրատունյաց թագավորության մեջ յերևում են նաև ծառայությունների հունական անուններ: Այդ բնական եր, քանի վոր Հայաստանի բաժանումով Բյուզանդիայի ու Պարսկաստանի միջև, Բյուզանդիոնի քաղաքական ազդեցության զարգացումով՝ մուտք են գործում Հայաստան պետական ու վարչական իրավունքի հունական տերմիններ: Փոքր Հայքում, վոր վաղուց Բյուզանդական կայսրության տերիտորիալ անբաժան մասն եր կազմում, տիրապետում եյին արդեն բացառապես բյուզանդական անուններ: Այդ հունական անունները հետզհետե թափանցում եյին նաև Մեծ Հայքի սահմանները, մանավանդ, յերբ նրա մի մասն ընկավ Բյուզանդիոնի տիրապետության տակ, և առավե-

ինչպես արաբական տիրապետության շրջանում, երբ խալիֆատի թուլացումով, բյուզանդական ազդեցությունն ուժեղացավ Մեծ Հայքում: Այդ բյուզանդական տերմինները դեռևս այնքան էլ աչքի չեն ընկնում Բագրատունյաց թագավորության օրով, երբ հայ թագավորները ձգտում էին վերականգնել նախկին նախաարաբական շրջանի ֆեոդալական տերմինները: Միայն Բագրատունյաց անկումից հետո, երբ Հայաստանն ընկավ բյուզանդական կայսրների կողմից նշանակված վարչապետների ձեռքը, հունական տերմինները բացարձակ քաղաքացիություն ստացան, և հետագայում, նույնիսկ սելջուկյան ու մոնղոլական տիրապետությունների ժամանակ, լայն կիրառումն ունեին հայ ֆեոդալական միջավայրում:

Բագրատունյաց շրջանում հաճախ հանդիպում ենք կուրոպալատ տերմինին, որ, ըստ երևույթին, համապատասխանում է հայկական «իշխան իշխանաց» տիտղոսին: Այդպես էր կոչվում Վասպուրականի «իշխանաց իշխան» Աշոտ Արծրունին (ՏԱ, III, գլ. ԺԹ, 353): Նաև հանդիպում է «անթիպատ-պատրիկ» տերմինը, որպիսի տիտղոսով է անվանվում «իշխանաց իշխան» Վահրամ Պահլավունին (Մարմաշենի արձանագր. 1029 թ., ՎՏ, 16):

Այնուհետև բավականին հաճախ հանդիպում են այնպիսի տիտղոսներ, ինչպես՝ մագիստրոս, հյուպատոս, ապոհյուպատոս, դուկ, վեստես, կատապան: Մեր մատենագրական աղբյուրները բնավ չեն պարզում, թե այդ տիտղոսները կրող հայ ֆեոդալների ի՞նչ տեսակ ծառայություններին կամ պաշտոններին էին համապատասխանում հունական տերմինները: Մեզ թվում է, որ հայ ֆեոդալական միջավայրում այդ տիտղոսները ո՛չ թե պաշտոնեական կոչումներ էին, ինչպես Բյուզանդիայում, այլ միայն սոցիալ-հիերարխիկական նշանակություն ունեին՝ տիրապետող իշխանական դասին պատկանողների աստիճանը որոշելու համար: Այսպես օրինակ՝ հիշատակվում են «Գրիգոր Մագիստրոս», (ՎՏ, 14, 18, 22, 23 և այլն), «Սարգիս դուկ արևելից» (ՎՏ, 17, 20), որը նմանապես կոչվում էր «արևելից վեստ» (ՎՏ, 22) և այլն:

Երբ Բյուզանդիոնը վերջին Բագրատունիների, Անիի թա-

գավորության, անկումից հետո գրավեց Հայաստանը, նա նշանակում էր իր կողմից Հայաստանի ընդհանուր կառավարիչ, որ կոչվում էր մագիստրոս: Այդ մագիստրոսները, որոնք հայեր չէին և նստում էին Անի քաղաքում, երբեմն կոչվում էին նաև կատապան[129]: Այդպիսի մի քանի կառավարիչների անուններ մեզ հայտնի են վիմական արձանագրություններից, ինչպես օրինակ՝ Մագիստրոս Արոն (1054 թ.), ազգով բուլղարացի (ՎՏ, 27), Մագիստրոս Բագրատ, որ միաժամանակ կոչվում էր և կատապան (1064 թ.), ազգով վրացի (Ibid.), այնուհետև Մագիստրոս Յոհան Մոնաստերիոտ[130]:

Անտարակույս, վերոհիշյալ անձերի տիտղոսները պաշտոնեական էին և որոշում էին Հայաստանի կառավարչին որպես գերագույն աստիճան ունեցող բյուզանդական պաշտոնյայի: Մագիստրոս, դուկ, կոմս և այլ տերմինները նոր բան չէին Հայաստանի համար, երբ վերջինս բաժանվեց Սասանյան Պարսկաստանի ու Բյուզանդիայի միջև: Բյուզանդական Հայաստանում հետզհետե մուծվում էր պետական-վարչական սիստեմը բուն բյուզանդականի, որ առանձնապես կտրուկ կերպով արտահայտվեց 531 թ. Հուստինիանոս կայսրի ժամանակ, երբ Հայաստանի զինվորական ու քաղաքական կառավարումը հիմնովին վերափոխվեց: Հայաստանի բյուզանդական մասի գերագույն կառավարիչը նշանակվում էր կայսրի կողմից և կոչվում էր magister militum = զինվորական մագիստրոս, կամ ստրատեգ: Սրան ենթակա էին տեղական կառավարիչները, որոնք կոչվում էին դուկ: Իսկ մինչև Հուստինիանոսը Հայաստանի գերագույն կառավարիչը կոչվում էր comes Armeniae: Ուշագրավ է, որ այդ comes-ի մասին հիշատակում է Մովսես Խորենացին. «Եւ այնուհետև ոչ ևս կացուցին Յոյնք 'ի բաժնի իւրեանց թագաւոր, այլ առաջնորդ էր նախարարացն այնր կոչման քաջն Գազաւոն. և աշխարհին իւրեանց մասինն կացուցին Յոյնք կոմէս 'իշխան» (III, գլ. ԽԶ, 321): Բյուզանդական comes տերմինը, որ հայերեն կոմս էր հորջորջվում, պահպանվել էր նույնիսկ մեր միջնադարյան ֆեոդալական միջավայրում: Ծարա վանքի 1301 թ. արձանագրության մեջ Սյունյաց իշխան Տարսաիճը կոչվում է «մեծ կոմս»: Կասկածից դուրս է, որ այստեղ հին բյուզան-

դական comes տերմինը կորցրել է իր նախկին իմաստավորումն ու հանդես է գալիս սոսկ իբրև սոցիալ–հիերարխիական աստիճանը վորոշող տիտղոս, վոր յուրացվել եր այդ ֆեոդալ–իշխանի կողմից։ Նույնն եր կատարվում, ուրեմն, մագիստրոս, դուկ և այլ տերմինների հետ, վորոնք, իբրև տիտղոսներ, գործադրում եյին հայ ֆեոդալ իշխանները միջին դարերում, Բագրատունյաց թագավորության անկումից հետո։

Սակայն սելջուկյան արշավանքների հետևանքով, յերբ հայ ֆեոդալականությունն ուժասպառ եր յեղել և հյուծվել, տեղի տալով մուսուլման նվաճող ֆեոդալներին, վորոնք հաստատվեցին այստեղ, սկսեց արմատանալ թյուրք–պարսկական ֆեոդալական տերմինաբանությունը։ Այդ նորամուտ ֆեոդալական տերմինները հայ միջավայրում առանձնապես արտահայտություն ունեցան, յերբ սելջուկներից ազատված Հայաստանն իր վերականգնված և մի շարք նորելուկ ավատական իշխաններով, դարձավ Զաքարյան տոհմի սեփականատիրություն։ Այստեղ տեսնում ենք՝ ամիր (եմիր), սպասալար, աթաբակ (աթաբեկ), հեջուբ անունները, վորպես բարձրագույն աստիճանի տիտղոսներ։ Այս տերմիններն արդեն հայ ֆեոդալական միջավայրում իմաստավորում եյին վորոշ ծառայություն, բովանդակում եյին պաշտոնի նշանակություն։

Ամիր կամ եմիր եր կոչվում ծառայության գերագույն աստիճանի վրա կանգնած ֆեոդալ իշխանը, այն է՝ բարձրագույն կառավարիչը, փոխարքան, իսկ հետագայում խալիֆատի քաղաքայնմով՝ գերագույն տերը, յերկրի հրամայողը, վորի փոխարքան եր առաջ։ Զաքարե իշխանը, վոր իր յեղբայր Իվանեյի հետ միասին վերականգնեցին Հայաստանը իբրև ինքնավար, թերևս ինքնուրույն մի պետություն, կրում եր ամիր տիտղոսը, վորպես գերագույն վրացական կառավարիչ և հետո վորպես փոխարքա Հայաստանի, վոր համարվում եր ձևականորեն Վրաստանի վասալական պետություն։ Հայ մատենագրական աղբյուրներում, մանավանդ վիմական արձանագրություններում, Զաքարեն ամիր տիտղոսի հետ՝ հաճախ կոչվում եր շահինշահ, թագավոր։ Այդ հանդամանքն արդեն ցույց է տալիս, թե ինչ մեծ նշանակություն ուներ ամիր տիտղոսը։ Նույն այդ Զաքա–

թյան դարաշրջանում Անի քաղաքի գերագույն կառավարիչները, վորոնք նշանակվում եյին վրաց Թագավորների կամ Զաքարյաններ կողմից, կոչվում եյին ամիր: Այդպիսի տիտղոս եր կրում Անիի Փեոդալ իշխաններից մեկը՝ Վահրամ Պահլավունին[131]: Ուրեմն ամիր տիտղոսը համապատասխանում է բյուզանդական տիրապետության ժամանակվա կատապանին: Այնուհետև հիշատակվում է Կայենի Մահկանաբերդի Փեոդալ իշխան Քուրդը, վոր վրաց Գեորգի Թագավորի որով յեղել և Թբիլիսիի ամիր, այսինքն՝ քաղաքի վարչապետ:

Սպասալար արաբ-Թյուրքական բառը նշանակում է սպարապետ, պետության բոլոր զորական ուժերի գլխավոր հրամանատար: Իշխան Զաքարեն, վոր ստացել եր վրաց Թամարա Թագուհուց Վրաստանի սպասալարի աստիճան, չարունակում և այդ տիտղոսը կրել, յերբ իր յեղբոր՝ Իվանեյի հետ դառնում է ամբողջ Հայաստանի տերն ու հրամայողը: Հայ մատենագրության մեջ և արձանագրություններում Զաքարեյի ամբողջական տիտղոսը յեղել է մեծ մասամբ ամիր-սպասալար, վոր համապատասխանում է վրաց մանդատորտա-խուցե տիտղոսին: Այդ կրկնակի տիտղոսը վկայում է, վոր մի անձնավորության մեջ կենտրոնացել եյին քաղաքացիական և զորական գերագույն իշխանությունները: Բնորոշ է, վոր հայկական աղբյուրներում Զաքարեն սպասալար տերմինի փոխարեն, հորջորջվում է հայկական սպարապետ անունով:

Աթաբակ կամ աթաբեկ տերմինը նույնպես բարձրագույն ծառայության աստիճանին է պատկանում և գրեթե համազոր է ամիր տիտղոսին: Զաքարեյի յեղբայր Իվանեն կրում եր աթաբակ տիտղոսը, լինելով վրաց արքունիքի Թիկնապահ զորքի հրամանատար: Այդ անունը նա չարունակում է պահել, յերբ իր յեղբայր Զաքարեյի հետ միասին տիրում եր Հայաստանին: Հայ աղբյուրներում շատ հաճախ Իվանեն աթաբակ տիտղոսի հետ աղբյուրներում... կրում եր նաև շահինշահ տիտղոսը: Աթաբակ բառի համեմատական ստուգաբանությունը մենք տվել ենք վերը (տե՛ս եջ (217—218) իբրև հոմանիշ հին հայկական մարդպետ և հունական πατρίκιος տերմիններին:

Վերջապես հեջուր տերմինը պետք է վերևում բերված տերմինների համեմատությամբ ավելի ցածր աստիճանի դասել:

Հեջուր էին կոչվում պալատական կառավարիչները կամ վերակացուները: Պրոֆ. Ս. Յեղիազարյանի կարծիքով՝ հեջուր նշանակում է արքունի սենեկապետ[132]: Հետևապես, ըստ ֆեոդալական հիերարխիայի, հեջուրը ենթարկվում էր աթաբակին: Հայ աղբյուրներում հիշատակվում է հեջուր Գրիգոր, որ Խաչենի իշխաններից էր և Իվանեի ու սրա որդի Ավագի պալատական կառավարիչն էր: Աթաբակ Իվանեն իր մահվան ժամին այդ հեջուր Գրիգորին հանձնեց վերակացությունն իր անչափահաս որդի Ավագի և արքունիքի վրա: Իսկ Իվանեի այդ որդի Ավագը, երբ պաշարված էր Կայեն ամրոցում մոնղոլների կողմից, ուղարկում է այդ հեջուրին հաշտության բանակցություն վարելու թաթարական զորապետ Չարմաղանի հետ: XIII դ. առաջին քառորդում վերջին Զաքարյանների մոտ հեջուր էր իշխան Զաքարիա Պահլավունին[133]:

Բացի վերոհիշյալ թյուրք-պարսկական ծագում ունեցող ֆեոդալական տերմիններից, որոնք վերաբերում են պալատական ծառայության տեսակները Զաքարյան Հայաստանում, մենք հանդիպում ենք նաև հայկական բնույթ ստացած պարոն և պատրոն տերմիններին: Այս երկու տերմինները միանգամայն վերացրին հայ ֆեոդալական միջավայրից նախարար տերմինը և մասամբ էլ հետ մղեցին իշխան ու տեր բառերը: Թեև վերջին երկու տերմինները շարունակում էին որոշ չափով կիրառվել միջնադարյան հայ ֆեոդալականության մեջ, սակայն այդ կատարվում էր ավանդաբար և հետզհետե սահմանափակվելու տենդենցով: Սկսած Զաքարյան տիրապետությունից և մանավանդ մոնղոլական նվաճումից հետո իշխան և տեր բառերը որոշ չափով փոխում են իրենց սկզբնական, նախկին իմաստն ու համարվում նոր սոցիալ-քաղաքական իրողություն: Տեր բառը իրավաբանական առումով սկսում է նշանակել սեփականություն ունեցող, ինչք-առարկա իր ձեռքում բռնող, իսկ իշխան ասելով ներկայացնում էին ընդհանուր առմամբ ազնվական դասը, տիրապետող դասակարգի վերնախավը, որը օժտված է արտոնյալ իրավունքներով: Այդ վերջին առումով, XIII դարից սկսած՝ գրականության մեջ և վիմական արձանագրություններում սովորական են այնպիսի դարձվածքներ, ինչպես «մի՛ ոք իշխեսցէ», այսինքն՝ ոչ

վոք իրավունք չունի (ՎՏ, 8, 7, 65. 67), կամ «իշխանություն ունի» (ՎՏ, 72), այսինքն իրավունք ունի: Մխիթար Գոշի Դատաստանագրքում տեսնում ենք հաճախ՝ «իշխան լիցի»— իրավունք ունենա (II, էջ 407, 409) ձևը:

Պատրոն և պարոն տերմինները, թեև հայացած բնույթ են ստացել, բայց նույնպես օտար յուրացումներ են: Պատրոն բառը, որ հունական ծագում ունի, ժառանգություն է մնացել Բյուզանդիայի քաղաքական ազդեցությունից և մուտք է գործել Հայաստան Բագրատունյաց շրջանում: Տակավին XI դարի մի արձանագրության մեջ, Կեչառիսի վանքի, կարդում ենք պատրոն բառը (ՎՏ, 18): Իսկ պարոն տերմինը, որ արդիական հայ լեզվում ստացել է բուրժուական քաղաքավարական դիմումի նշանակություն, Արևմտյան Եվրոպայի միջնադարյան ֆեոդալական բարոն— baron բառի հնչյունաբանական ձևափոխումն է: Ամենայն հավանականությամբ՝ այդ տերմինը փոխանցվել է Զաքարյան Հայաստան Կիլիկյան հայ թագավորությունից: Վերջինս, սերտ քաղաքական ու տնտեսական հարաբերություններ պահպանելով միջնադարյան Եվրոպայի ֆեոդալական հասարակությունների հետ, նմանապես անմիջական շփում ունենալով Կիլիկիայի վրայով անցնող խաչակրաց զորքերի հետ, յուրացրել և հարմարեցրել տեղական հայ ֆեոդալական սիստեմին Արևմտյան Եվրոպայի ֆեոդալական բազմաթիվ տերմիններ: Այդ տեսակետից բնորոշ է Սմբատ Գունդստաբլի Կիլիկյան հայ Դատաստանագիրքը, որ հագեցված է արևմտաեվրոպական ֆեոդալական տերմիններով, ուր շատ հաճախ իշխան և տեր բառերի փոխարեն գործածվում են պարոն և պատրոն տերմինները:

Մատենագրական ու արձանագրական աղբյուրներից կարելի է եզրակացնել, որ պարոն տերմինը նույնանիշ է իշխան բառին: Այստեղից էլ մի շարք ածանցական բառեր՝ պարոնություն. իշխանության առումով, պարոնահող (ՎՏ, 135)— իշխանին պատկանող հող, մեծ պարոն— մեծ իշխան (ՎՏ, 62, 122): Պարոն տիտղոսը կրում են նաև ազնվազարմ կանայք: (ՎՏ, 128, 149):

Պատրոն տերմինը հոմանիշ է հին հայկական տեր բառին և, ինչպես ակներև է միջնադարյան պատմական աղբյուրներից,

ֆեոդալական իրավունքի իմաստով նշանակում էր սյուզերեն: Կեչառիսի արձանագրության մեջ (1214—1224 թ. թ.) Խաչենի ֆեոդալ իշխան Վասակ Խաղբակյանը, լինելով Զաքարյանների վասալ, Աթաբեկ Իվանեյին և նրա որդիներին «իր պատրոն» է անվանում[134]: Վաչուտյան իշխանական տոհմի հիմնադիր իշխան Վաչեն Սաղմոսավանքի արձանագրության մեջ (1215 թ.) իր պատրոնն է համարում Զաքարեյին և Իվանեյին (ՎՏ, 58). Գրիգոր Մագիստրոսը, Անիի Պահլավունի իշխաններից, Գագիկ Բագրատունու թագավորության ժամանակ կառուցում է (1033 թ.) եկեղեցի «ի բարեխոսութիւն» և իմ պատրոնի» (այսինքն՝ Թագավոր Գագիկ) և իմ որդեացն» (Կեչառիսի արձ., ՎՏ, 18): Հոռոմոսի մի արձանագրությունը (1336 թ.) ավելի ես հաստատում է մեր ասածը. «Ես Վահրամ Աթաբակ, պարոնաց պատրոն, որդի Իւանէի, թոռն մեծին Շահնշայի, որդի ամիր սպասալար Զաքարիայի...» (ՎՏ, 156): «Պարոնաց պարոն» տիտղոսը պարզորոշ իմաստավորում է այն սոցիալ-ֆեոդալական կացությունը, որ պատրոնը համարվում է պարոնների սյուզերեն, սենիոր: Նույն այդ ֆեոդալական հիերարխիայի աստիճանն ու յենթակայությունն է արտահայտվում, երբ վիմական արձանագրությունների մեջ իշխանները—պարոնները, հիշատակելով վանքերի ու եկեղեցիների կառուցման և այդ վանքերին ու եկեղեցիներին նվիրաբերություններ անելու մասին, սովորաբար ընդգծում են, թե իրենք այդ կատարում են «ողորմութեամբ պատրոնին» (ՎՏ, 58—166), կամ «յաւդնութիւն կենաց իմ պատրոնացն Իւանէ Աթաբակի և արեան հարազատի իւրոյ Շահանշահի և Աւագին» (ՎՏ, 144) և կամ «հրամանաւ պատրոնաց» (ՎՏ, 77, 70):

Պատրոն տերմինից ածանցվում է նաև պատրոնություն բառը, որ սյուզերենության իմաստն է արտահայտում:

Սակայն յերբեմն պատմական հուշարձաններում, մանավանդ XIV—XV դարերի արձանագրություններում, պարոն և պատրոն տերմինները խառնում են և նրանց տալիս են նույնանիշ իմաստ: Այդ խառնումը, որ բնավ չի համապատասխանում այդ երկու բառերի իրական բովանդակությանը, պետք է բացատրել նրանով, որ Զաքարյան շրջանի վերջերին և մոնղոլների տիրապետու-

թյան ժամանակ չափազանց մեծ ծավալ են ընդունում հայ ֆեոդալների կենտրոնախույս ձգտումները և խախտվում է Զաքարյանների կառուցած ամբողջ ֆեոդալական սիստեմը. քայքայվում է այն պատվանդանը, որի վրա էին խարսխված սյուզերենության ու վասալության կապերը: Ահա, ֆեոդալական հիերարխիայի այդ ավերակներում, յուրաքանչյուր իշխան, այն է պարոն, սկսում է իրեն մեծարել ու համարել «պարոն» իր ֆեոդալական կալվածքի սահմաններում:

Խիստ բնորոշ է, որ Մխիթար Գոշն իր Դատաստանագրքում չի կիրառում պատրոն և պարոն տերմինները, որոնք նրա ժամանակ արդեն արմատացել էին հայ ֆեոդալական միջավայրում, այլ այդ տերմինների փոխարեն գործածում է հնուց գոյություն ունեցող իշխան և տէր բառերը: Մխիթար Գոշը Դատաստանագիրքը կազմելիս՝ հետևել է հին գրական աղբյուրներին և կառչում է հին իրավաբանական տերմինաբանությանը՝ զանց առնելով իր ժամանակակից կենցաղում տիրող տերմինները:

Միջնադարյան հայկական ֆեոդալիզմի, այն է՝ պարոնության շրջանից մեզ հասել են մի քանի պաշտոնյաների տիտղոսների վերաբերյալ տերմիններ, որոնք մոտավոր կերպով բնորոշում են այն ժամանակվա ֆեոդալական վարչությունը: Համեմատաբար հաճախ է հիշատակվում ձեռնաւոր բառը, որ, անտարակույս, հին հայկական գործակալ տերմինի վերափոխված ձևն է: Թեև գործակալ տերմինը երբեմն հանդիպում է միջնադարյան հուշարձաններում, բայց այն, ըստ երևույթին, բարձրագույն պաշտոնեության նշանակությամբ է ունեցել և վերաբերվել է իշխան-ֆեոդալներին: Այդ ակներև է Տարսայիճ Օրբելյանի մահարձանի արձանագրությունից (1289 թ.). «՚ի թվիս ՉԼԸ. այս է հանգիստ արքայաշուք կողմնակալին, հզաւր և մեծ գործակալին և քաջապահ մենամարտին Աթաբակ Տարսայիճին» (ՎՏ, 131): Ձեռնավոր են կոչվել, ամենայն հավանականությամբ, շարքային պաշտոնյաները, որոնք նշանակվում էին պարոնների կողմից: «Ձեռնավոր» և «ձեռնավորություն» առաջին անգամ հանդիպում ենք X դարում Տաթևի մի արձանագրության մեջ. «Եթէ ոք ընդ հակառակս եղանէ ի մերոց կամ յաւտարաց, յառաջաց կամ ՚ի ձեռնաւորաց և ի խոստովանաց կամ

՚ի տանուտէրաց...» (ՄՕ, գլ. ԽԳ, էջ 233)։ Մեզ հասած արձանագրական տվյալներից կարելի է եզրակացնել, որ ձեռնավորները պարոնից կախում ունեցող պաշտոնյաներ էին, որոնք կատարում էին նրա կողմից հանձնարարված վարչական պարտականություններ, ընդ որում նաև հարկահավաքություն (ՎՏ, 51, 129, 130, 149—150)։

Այնուհետև հանդիպում ենք վերակացություն գավառի պաշտոնին։ Այդպիսի պաշտոն է տրվել իշխանաց իշխան Վաչեյին «Վասն հաւատարիմ ծառայութեան» Զաքարեի և Իվանեի որդիների՝ Շահնշահի Ավագի կողմից (ՎՏ, 61)։

Կանգ չենք առնում այս շրջանում հանդիպող մի շարք պաշտոնեական անունների վրա, որոնք օտարամուտ բառեր են և օտար իշխողների կողմից կիրառվել են տեղական հայ իրականության մեջ. օրինակ՝ եվան, եվանություն (արաբական ծագումով)—ոստիկանական պաշտոնյա, ֆեթոռար—նոտար, հարկեր ցուցակագրող, մունուր, մունուրություն—մթերանոցի պետ և այլն։

8. ԿԱՆԱՆՑ ԻՐԱՎՈՒՆՔԸ.— Մենք վերը հիշեցինք, որ իշխանազն կանայք նույնպես կրում էին պատրոն կամ պարոն կոչումները, ինչպես այդ բացահայտ է վիմական արձանագրություններից։ Դա խիստ հետաքրքիր երևույթ է հայ ֆեոդալական իրավունքի բնագավառում, ուր բնորոշում է կնոջ սոցիալ-իրավական դրությունը։ Մեզ հասած պատմական աղբյուրներում, մանավանդ վիմական արձանագրություններում, բացահայտ է, որ տիրապետող ֆեոդալ դասակարգի կանայք միջնադարյան Հայաստանում որոշ ազատություն էին վայելում քաղաքացիական-իրավաբանական հարաբերություններում։ Կրելով պարոն և պատրոն տիտղոսները՝ այդ կանայք ոչ թե սոսկ անվանապես կամ ձևականորեն էին իմաստավորում իրենց սոցիալական պատկանելությունը տիրապետող ազնվական դասին, այլև փաստորեն ցուցաբերում էին իրենց տիրական իրավունքները ֆեոդալական կալվածների վերաբերմամբ և այն իրավաբանական հետևանքները, որոնք բխում էին գույքային տիրության պայմաններից։ Այդ իրավաբանական առումն է պարունակում 1228 թ. Հոռոմոսի մի արձանագրություն հետևյալ խոսքերով. «պատրոնով լինի այս տիտղոս 'ի յարանց կամ 'ի կանանց» (ՎՏ,

71). Մի այլ արձանագրության համաձայն (1320 թ., Անի) Աթաբակ Շահնշահի այրի իշխանուհի Խուանդզեն ազատում է Անիի քաղաքացիներին մի շարք հարկերից (ՎՏ, 160. MA, 41): Կատրամիդե թագուհին, Աշոտ թագավորի ամուսինը, ազատում է (1008 թ.) Տեկորի վանքը չարխափի հարկերից, որպիսի որոշումը հաստատվում և վավերացվում է հիշյալ թագավորի կողմից (ՎՏ, 13): Նմանապես իշխանուհի Սեդան, իշխանաց իշխան Վահրամի կինը, նվիրում է Բագնայրի վանքին տասանորդ տուրքը իր սեփական Գաղա գյուղի բերքից[135]: Նույնպիսի փաստեր են արձանագրված մի շարք հուշարձաններում (ՎՏ, 132. 138 և այլն, ՍՕ. գր. Խ, էջ 218—219):

Վերևում բերված օրինակները վկայում են, որ կանայք օժտված էին հողատիրության իրավունքով համահավասար այր մարդկանց հետ: Հիրավի, տիրապետող ֆեոդալ դասակարգի կանայք հանդիսանում էին ինքնուրույն տերեր «հայրենիք» կոչված հողերի, այսինքն ժառանգական կալվածների (ՎՏ, 48, 84, 157), ինչպես և «գանձագին» հողերի (ՎՏ, 105. 161), գյուղերի (ՎՏ, 122), այգիների (ՎՏ, 134. 136) և այլ անշարժ գույքերի (ՎՏ, 10. 11. 48. 66. 74): Իրենց այդ գույքերի վերաբերմամբ կանայք օժտված էին լիակատար տնօրինության իրավունքով: Նույնպիսի իրավունքով նրանք տնօրինում էին ամուսնու տունը բերած իրենց օժիտը, նվիրաբերելով վանքերին ու եկեղեցիներին գյուղեր, այգիներ և հողեր (ՎՏ, 48. 122): Մենք այստեղ չենք թվում բազմաթիվ փաստեր, թե ինչպես կանայք իրենց սեփական միջոցներով կառուցում էին վանքեր, եկեղեցիներ, կամուրջներ և այլ հասարակական շենքեր: Նմանապես հետաքրքրական է, որ տիրապետող դասակարգից մի քանի անեցի կանայք իրենց դրամական միջոցներով կառուցել են Անի քաղաքի պարիսպների բուրգերից մի քանիսը, որոնց վրա հավերժացրել են իրենց անունները[136]:

Այս հետաքրքրական տվյալները, որոնք բնորոշում են միջնադարյան Հայաստանի ֆեոդալ դասակարգի կանանց գույքային իրավունքը, բնականորեն հարց են հարուցում, թե արդյոք գոյություն ունեի՞ն նույնպիսի իրավունքներ նախարարական հասարակակարգում: Այդ հարցին դժվար է պատասխանել, քանի

որ մեր հին մատենագրության մեջ չենք գտնում համապատասխան տեղեկություններ: Պետք է ենթադրել, որ այդպիսի իրավունք հին Հայաստանի նախարարական պայմաններում գոյություն չի ունեցել: Այդ մեր կարծիքը բխում է նրանից, որ հայ մատենագրության մեջ եղած աղոտ նկարագրությունները ֆեոդալական հասարակության ընտանեկան կենցաղի մասին, այնուհետև կանոնական իրավունքի նորմերն և, վերջապես, հենց Մխիթար Գոշի Դատաստանագիրքն այդ մասին որոշ տեղեկություններ չեն տալիս: Բնորոշ է, որ Մխիթար Գոշի Դատաստանագիրքը, հորինված լինելով XII դարում, երբ տիրում էին կանանց վերոհիշյալ գույքա-իրավական սովորույթները, իր հոդվածներում բնավ չի արտացոլել միջնադարյան այդ իրավունքը: Ընդհակառակն, Մխիթար Գոշի Դատաստանագրքի իրավաբանական նորմերը կանանց գույքային և անձնական իրավունքի մասին տոգորված են մեծ սահմանափակումներով: Այդ բացատրվում է նրանով, որ Դատաստանագրքի հեղինակն այդ հարցում օգտագործել է հին իրավաբանական աղբյուրներ, գլխավորապես կանոնական որոշումներ և կղերի բարոյախոսական խրատներ, որոնք համակված են ռեակցիոն կրոնա-եկեղեցական պահպանողականությամբ: Մխիթար Գոշի Դատաստանագիրքն, ինչպես կտեսնենք հետո, կանանց իրավունքի վերաբերմամբ արտացոլել է վաղեմի տոհմա-պատրիարխատական դերդաստանական կարգի վերապրուկները, ուր կինը գտնվել է ստորացված, իրավազուրկ կացության մեջ, իսկ միջնադարյան իրավական սովորույթներում, որոնք արտացոլել են վիմական արձանագրություններում, ակնբախ է այն բեկումը կնոջ իրավական վիճակում, որ սկսել է զարգանալ ֆեոդալական հասարակության մեջ առևտրական կապիտալի ազդեցությամբ:

## V· ՇԻՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1· ՀՈՂԱՅԻՆ ՌԵՆՏԱ ՅԵՎ ՃՈՐՏԵՐ.— Նախորդ գլուխներում տեսության առանք Հայաստանի ֆեոդալական հասարակության տիրապետող դասակարգը, որ հանդես է գալիս, իբրև միակ իրավատեր, մի դասակարգ, որի շահերին են բացարձակապես ծառայում գոյություն ունեցող իրավական ինստիտուտներն և գործող իրավաբանական նորմերը: Սակայն այդ ֆեոդա-

լական հասարակությունը, լինելով իր եյությամբ դասակարգային, ուներ նաև իրեն ներհատուկ սոցիալական մասսան, իսկական արտադրողների դասակարգը, որի շահագործման վրա էր խարսխված տիրապետող ֆեոդալ դասակարգի գոյությունը, և որին տիրելու և հպատակության մեջ պահելու նպատակին եր ծառայում ֆեոդալական իրավունքը: Այդ ներհատուկ դասակարգը, շահագործվող սոցիալական մասսան, կազմում եյին հողին ամրացված գյուղացիները—ճորտերը, որ հայ պատմական իրականության մեջ հայտնի եյին շինական անունով, և ապա ստրուկները: Այդ շահագործվող յերկու սոցիալական խավերը հանդիսանում եյին իսկական, անմիջական արտադրողներ, և ահա անհրաժեշտ ե պարզել նրանց իրավական դրությունը, յերևան հանել այն իրավաբանական նորմերը, որոնք կարգավորում եյին յերկու հակոտնյա դասակարգերի հասարակական-արտադրական հարաբերությունները, կամ, ավելի ճիշտ ասած՝ նշել ֆեոդալական իրավունքի այն նորմերը, որոնք սահմանափակում եյին շահագործվող դասակարգի իրավունքները և նրան դնում կախման վիճակում:

Ֆեոդալական հասարակության մեջ շահագործման հիմնական ձևը հողային ռենտան ե, այսինքն՝ հողատիրության իրացումը հողին կապված արտադրողների հավելյալ աշխատանքի յուրացումով՝ արտատնտեսական ճնշման պայմաններում: Հողային ռենտան, ինչպես ապացուցել ե Կ. Մարքսը, անցնում ե արտադրության ֆեոդալական յեղանակի զարգացման յերեք հիմնական ետապներով և ըստ այնմ ել արտահայտվում ե յերեք հաջորդական ձևով— աշխատապարտ ռենտա, արդյունավճար ռենտա և դրամական ռենտա: Այս յերեք ձևի ռենտայով ել բնորոշվում ե ֆեոդալական հասարակության արտադրական հարաբերությունների բովանդակ սիստեմը: Ահա հողային ռենտայի այս յերեք հիմնական ձևերն ել գոյություն են ունեցել հին և միջնադարյան Հայաստանի հասարակական կառուցվածքում:

Մենք քանիցս առիթ ունեցանք վերը նշելու, որ հայկական ֆեոդալիզմը, իբրև մի մասն Առաջավոր Ասիայի ֆեոդալական սիստեմի, ներկայացնում ե ընդհանրապես ֆեոդալիզմի արևելյան կամ ասիական ձևը: Ասիական ֆեոդալիզմի բնորոշ հատկա-

նիշներից մեկն ել այն ե, վոր ռենտան և հարկը միևնույն եյությունն են պարունակում: Այս կարևոր պարագայի վրա յե շեշտում Կ. Մարքսը· «Ռենտան և հարկը համընկնում են, կամ, ավելի ճիշտ, գոյություն չունի վոչ մի հարկ, վոր տարբեր լիներ հողային ռենտայի այդ ձևից»[137]:

Ուրվագծենք համառոտ, թե վորոնք են հողային ռենտայի յերեք հաջորդական ձևերը:

Աշխատապարտ ռենտա — դա ֆեոդալական շահագործման ամենասկզբնական ձևն ե և հատուկ ե ֆեոդալական հարաբերությունների վաղագույն ձևին: Այդ ռենտայի մեջ արտահայտվում ե արտատնտեսական ճնշումն ամենացայտուն ձևով, իր անմիջական պրիմիտիվ յեղանակով, «յերբ իսկական արտադրողը շաբաթվա մի մասը մշակում ե փաստորեն իրեն պատկանող հողը աշխատանքի փաստորեն և իրավաբանորեն իրեն պատկանող գործիքների (արոր, անասուն և այլն) ոգնությամբ, իսկ շաբաթվա մնացած որերը նա աշխատում ե հողատիրոջ կալվածքում, տիրոջ համար՝ ձրիաբար»[138]: Դա ռուսական барщина-ն ե, կամ արևմտա-յեվրոպական միջնադարյան ֆեոդալիզմի corvée և Frohndieenst-ը, իսկ հին Հայաստանում՝ կոռ ու բեկարը, վորոնց առաջին հիշատակումը գտնում ենք VII դարի սկզբներում: Սակայն այս դեռ չի նշանակում, վոր այդ ռենտան դրանից առաջ չի յեղել: Ընդհակառակը, քանի վոր ֆեոդալիզմը, այն ել նախարարական սիստեմը, գոյություն ե ունեցել շատ վաղուց, բնականորեն կոռ և բեկարն ել, իբրև աշխատապարտ ռենտա, այդ վաղագույն դարերում ավելի մեծ չափերով եյին գործադրված: Բավական ե հիշել խաշարը, վորի մասին ակնարկում ե Փավստոս Բուզանդացին (III, գլ. Ը, եջ 18):

Մխիթար Գոշի Դատաստանագրքումն ել նշվում ե աշխատապարտ ռենտայի մասին այն իմաստով, վոր գյուղացին պարտավոր ե շաբաթվա 7 որից մեկը աշխատել իշխանի մոտ (II, հոդ. Ա, եջ 315):

Արդյունավճար ռենտա — Յերբ ֆեոդալական հասարակության արտադրական հարաբերությունները փոխվում են ավելի զարգացած ու բարձր ձևերի, աշխատապարտ ռենտան ել վերափոխվում ե արդյունավճար ռենտայի, վորը, ինչպես Կ. Մարքսն ե ասում, «տնտեսական տեսակետից վոչինչ չի փոխում հողային

ռենտայի էության մեջ»[139]: Դա բնատուրքն է, որ ֆեոդալական արտադրողը վճարում է կալվածատեր ֆեոդալին նախկին աշխատապարտության փոխարեն:

Սակայն աշխատապարտ ռենտան միևնույն ժամանակ չի անհետանում և իսպառ վերանում: Նա մասամբ պահպանում է իր գոյությունն արդյունավճար ռենտայի կից, մի բնորոշ երևույթ, որ տեսնում ենք անխախտորեն Հայաստանի ֆեոդալիզմի ամբողջ պատմության մեջ: Նկատի ունենալով այն, որ Հայաստանը ֆեոդալիզմի ասիական ձև էր ներկայացնում, ապա և ռենտան հատուցվում էր հարկի ձևով, կամ, ըստ Կ. Մարքսի, «ռենտան ու հարկը» համընկնում են, ուրեմն հարկը բնական արդյունքով էր վճարվում, այսինքն բնահարկ, բնատուրք էր: Մատենագրական աղբյուրներում Հայաստանի բնատուրքի ամենահնագույն հիշատակումը գտնում ենք Քսենոփոնի Անաբասիսում, մի փաստ, որ վերաբերում է Հայաստանի IV դարի (Ն. Ք. մեր տարեթվ.) պատմությանը: Այդ բնահարկը, ինչպես հայտնի է, շարունակում էր գոյություն ունենալ Հայաստանում վաղագույն միջնադարում շարիաթ ընդհանուր անունով և ապա ուշ միջնադարում խանական տիրապետության ժամանակ և նույնիսկ XIX դարի առաջին կեսում բահրա անունով:

Դրամական ռենտա.— «Դրամական ռենտա ասելով՝ հասկանում ենք հողային ռենտա, որ ծագել է արդյունավճար ռենտայի փոխարկվելուց, որն իր հերթին սոսկ փոխարկված աշխատապարտ ռենտա էր»[140]: Կ. Մարքսը պարզաբանում է, որ «արդյունավճար ռենտայի փոխարկվելը դրամական ռենտայի, ենթադրում է արդեն առևտրի, քաղաքային արդյունաբերության, ապրանքային արտադրության համեմատաբար ավելի նշանակալի զարգացում» (Անդ): Դրամական ռենտան ամուր ոտք է դնում Հայաստանում արաբական տիրապետության օրով, երբ այդ նվաճողների հետ մուտք է գործում առևտրա-վաշխառուական կապիտալը: Ինչպես վկայում են մատենագրական աղբյուրները, արաբական տիրակալները սովորական բնահարկը փերածում են դրամական հարկի, որ ահագին տնտեսական հեղաշրջում է առաջացնում Հայաստանում խիստ մեծ կրիզիսով սկզբնական շրջանում, երբ դրամական ռենտայի ձևերով մե-

տաղե դրամների սղությունն էր զգացվում: Սակայն, դրամական ռենտայի հետքերը մեզ տանում են մինչև Հայաստանի պատմության VI դարը նախքան մեր թվարկությունը, Աքեմենյան տիրապետության դարաշրջանը, յերբ, Հերոդոտ (Herod. III, 94) և Քսենոֆոն (Cyropaidea, III, 1, § 34) պատմագիրների համաձայն, հայերը բնատուրքի հետ միասին Աքեմենյան թագավորներին վճարում էին նաև դրամական հարկեր:

Ահա այդ հողային ռենտան իր հիմնական յերեք տեսակներով արտահայտում է արտադրական հարաբերությունների ֆեոդալական ձևը, որտեղ հողը հանդիսանում է արտադրության հիմնական միջոց:

Արտադրության այդ պայմաններում ստեղծված հասարակական հարաբերություններում ֆեոդալական տիրապետող դասակարգը յուրացրել էր հողի տիրության ու տնօրինության մենաշնորհ իրավունքը, իսկ այդ հողը շահագործումով իրացնելու համար նա ձեռք էր բերել իրավունք իրեն յենթարկելու իսկական արտադրողների աշխատանքը, որոնք կարող էին տեր լինել արտադրության բոլոր միջոցներին, բացի միայն հողից: Հենվելով իր այդ ֆեոդալական իրավունքին՝ տիրապետող դասակարգը գործադրում էր արտատնտեսական ճնշում, ավելի պարզ ասած՝ բռնի հարկադրանք, որով անմիջական արտադրողն ընկնում էր անձնական կախման վիճակի մեջ, այն է՝ ամրացվում էր ֆեոդալի հողին: Այսպիսով առաջանում էր ճորտությունը, որը տեղական սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմանների համեմատ՝ ստանում էր զանազան առանձնահատկություններ: Այդ շահագործվող դասակարգը հանձինս ճորտերի, բաղկացած էր գլխավորապես գյուղացիական զանգվածներից, որոնք պարտավոր էին կատարել կալվածատերերի օգտին իրենց վրա դրված պարտականներն այն հարաբերություններով, որոնք կաղապարվում էին հողային ռենտայի մեջ:

Թեև հայկական աղբյուրները չափազանց սուղ; յերբեմն և հակասական տեղեկություններ են հաղորդում Հայաստանի ճորտերի մասին, այնուամենայնիվ հնարավոր է մոտավոր պատկեր կազմել այդ շահագործվող դասակարգի իրավական դրության վերաբերյալ:

— Մեր պատմական մատենագրության մեջ տիրապետող Փեոդալ դասակարգին, ազատանիին, միշտ հակադրվում է շինականների դասակարգը, որոնք հին հայ իրականության ճորտերն էին։ Շինականները— գյուղացիներ էին։ Ուստի մեր հին գրականության մեջ հաճախ հանդիպում ենք շինական տերմինին զուգահեռ կամ հոմանիշ առումով նաև գեղջուկ և ռամիկ բառերին։ Այս հանգամանքն առիթ էր տվել մեր պատմագիտության մեջ անհաջող փորձեր անել ապացուցելու, որ իբր թե շինական, գեղջուկ և ռամիկ տերմինները բնորոշում են ճորտության զանազան կատեգորիաներ։

Գեղջուկ— բառացի նշանակում է գյուղացի. սակայն այդ տերմինը, որ ծագում է գյուղ, գեող բառից, կրում է ո՛չ թե տնտեսա-սոցիալական իմաստ, այլ իմաստավորում է տեղական բնակություն, այսինքն պետք է հասկանալ գյուղի բնակիչ կամ գյուղական համայնքի անդամ, անկախ նրա արտադրական նշանակությունից։ Նույնը պետք է ասենք ռամիկ տերմինի մասին, որը բնավ չի ներկայացնում հատկապես սոցիալական նշանակություն այն առումով, որ նա հողի հետ կապված իսկական արտադրող լիներ։ Հայտնի հայագետ Հ. Հյուբշմանի ստուգաբանությամբ հայկական ռամիկ տերմինը ծագում է պարթևական ramik բառից և համապատասխանում է նոր-պարսկական ram և rama բառերին, որ նշանակում է «խումբ, հոտ»[141]։ Ուստի նա թարգմանում է այդ տերմինը—հասարակ ժողովուրդ, խառնամբոխ։ Նույն կարծիքին է պրոֆ. Հ. Մանանդյանը, որ թերևս ավելի շեշտակի է ընդգծում շինական ու ռամիկ տերմինների տարբերությունը։ «Ռամիկ»-ները կազմել են հին Հայաստանի բնակչության ստորին խավն և որպես այդպիսին հակադրվել են, ինչպես և շինականները, նախարարներին, սեպուհներին, ազատներին, նաև հոգևորականներին ու ոստանիկներին»[142ա]։

Ակադեմիկոս Ն. Մառն և Ն. Ադոնցը ռամիկ բառը մեկնաբանում են ազգաբանական իմաստով, դա այն սոցիալ-էթնիկական տարրն է, «արամիկ», «արամեացիք», որ նվաճվելով հայերի կողմից՝ ստորացվել է ստրկական, ընկճված աստիճանի[142բ]։

Հիրավի, հայկական աղբյուրներում ռամիկ տերմինը մերթ հանդիպում է շինական բառի հետ կապված[143], մերթ իբրև ինքնուրույն բառ՝ ազգաբնակչության զանազան դասերը թվելիս[144]: Առաջին դեպքում ռամիկ բառն ստանում է վորոշիչ նշանակություն, այն է՝ շինականը իբրև հասարակ մարդ, վորից, ի հարկե, չի կարելի յեզրակացնել, թե յուրաքանչյուր ռամիկ անպայման լինելու յեր շինական: Յերկրորդ դեպքում կարելի յե հետևցնել, վոր ռամիկներ կարող եյին լինել և քաղաքացիները, ի հարկե, ստորադաս խավերից: Ուրեմն փեղջուկ և մանավանդ ռամիկ տերմինները համանուն չեն շինական տերմինին, և յերբ մեր մատենագրության մեջ խոսքը վերաբերում է կախում ունեցող գյուղացիներին, այն է ճորտերին, անշեղորեն գործածվում է շինական տերմինը:

Շինական բառը նույն արմատն ունի, ինչ վոր շինել և շեն (շէն) բառերը: Հ. Հյուբշմանի ստուգաբանությամբ հայերեն շեն բառը փոխառնված է զենդական sayana (Ավեստա) բառից[145] և նշանակում է բնակատեղ, մշակված, շինված տեղ, ավան, գյուղ[146]: Ահա այդ շեն բառից են ածանցել մեր պատմագետներից շատերը շինական տերմինը, իբրև շենի բնակիչ, շենը յենթադրելով գյուղ: Այս բացատրությունը, մեր կարծիքով, այնքան էլ ուղիղ չէ: Հին հայ մատենագրության մեջ «գիւղ» կամ «գեօղ» ունեցել է իր առանձնահատուկ սոցիալ-տնտեսական նշանակությունը. այստեղից էլ գյուղացու, այն է գյուղի բնակչի, գյուղականի առումով է գործածվել փեղջուկ տերմինը: Իսկ շեն տերմինն այդ գրականության մեջ հանդես է գալիս ինքնուրույն առումով և միանգամայն անջատ գյուղից, ունենալով ավելի ընդարձակ նշանակություն և իմաստավորելով ընդհանրապես շինված, մշակված տեղ գաղափարը: Շեն կարող է լինել և՛ գյուղը, և՛ ագարակը, և՛ ավանը, և՛ գյուղաքաղաքը[147]: Բնորոշ է, վոր Փավստոս Բուզանդացու, մեր պատմագիրներից այդ ամենահնի մոտ, չենք հանդիպում ընդհանրապես շեն տերմինին գյուղի առումով, այլ միշտ հիշատակվում է գյուղ: Ընդհակառակն, ավելի հետնագույն գրողների, ինչպես որինակ, Թովմա Արծրունու կամ Ստեփան Որբելյանի մոտ, շեն տերմինը հաճախակի յե-

բնույթ և. Թովմա Արծրունու մոտ երբեմն նույնիսկ շեն և գյուղ բառերը նույնանիշ իմաստ են պարունակում:

Գյուղ և շէն բառերի իմաստն ավելի պարզ կացուցանելու համար մեջ բերենք հետևյալ կտորը Ստ. Օրբելյանի Պատմությունից: Սյունյաց իշխան Հրահատը, Տաթևի վանքին նվիրելով կալվածք, իր վճռագրի մեջ այսպես է արձանագրում. «... Եւ գեօղ մի ի Կովսական գաւառի Նորաշինիկ անուն... ապրպատրեցի իւր բոլոր սահմանօք, լեռամբ և դաշտաւ, ջերմաւ և ցրտով, ծառով և անկով՝ որոյ սահմանքն են... և յայսմհետէ իշխան ես դու Տէր Դաւիթ՝ Սիւնեաց եպիսկոպոս, և որք յետ քո այլ հայրապետք լայդ աթոռդ յաջորդին մի լուռ միոջէ, դայդ շէնդ ունել և վայելել, պահել և ունել, գնոյ տալ և գրաւական դնել և զինչ կամք են՝ առնել մինչև յաւիտեանս ժամանակաց...» (գլ. ԼԹ, էջ 209—210): Նույնպիսի իմաստ է պարունակում Ստ. Օրբելյանի մեջ բերած մի այլ վճռագիր (գլ. Խ, էջ 219): Վերևում բերված ցիտատից ակներև է, որ հեղինակը, շեն ասելով, նկատի չի ունեցել ո՛չ թե միայն գյուղը, այլ գյուղն և նրա շրջակա դաշտերը, ձմեռային ու ամառային արոտավայրերն և ընդհանրապես մշակված հողամասերը:

Հովհաննես Դրասխանակերտցին շատ հազվադեպ է հիշատակում շեն բառը և այն էլ ո՛չ թե գյուղի առումով, որի համար նա միշտ գործածում է իսկական գյուղ տերմինը, այլ կառուցքի, շինվածքի և մշակված տեղի իմաստավորումով[148]: Նույնն ենք նկատում Ագաթանգեղոսի Պատմության մեջ, ուր հանդիպում են «շէնս» և «յանշէնս» բառերը, առաջինը շինավայրի, բնակավայրի և մշակված վայրերի, իսկ երկրորդը՝ անմշակ ու անբնակ տեղերի առումով:

Այս տվյալներից եզրակացնում ենք, որ շինական բառը, իբրև ճորտ գյուղացի նշանակող տերմին, ստուգաբանորեն ածանցվում է ո՛չ թե շեն բառից, այսինքն, չի նշանակում շենի բնակիչ, ինչպես շատերն են կարծում, այլ շինել բայից, որ նշանակում է կառուցել, մշակել: Ուստի շինական նշանակում է կառուցող, մշակող, արտադրող՝ հողի վրա: Այդ առումով, իհարկե, շինականները կարող էին բնակություն ունենալ շեներում, ավաններում և հատկապես գյուղերում[149]:

Սակայն շինական հոմանիշ իմաստով մեր գրականության մեջ կան և այլ տերմիններ, այն է՝ ճորտ և ժողովուրդ: Առաջինը գործածական է միջին դարերի հուշարձաններում, դուրս է վանել շինական տերմինը, և պահպանում է իր նշանակությունը մինչև այսօր էլ: Երկրորդը սովորական տերմին էր յեկեղեցական-կղերական միջավայրում: Այն առավել մեծ չափերով հանդես է գալիս միջնադարյան վիմական արձանագրություններում, երբ հողային կամ կալվածային նվիրաբերություններում հիշատակվում են «գյուղեր իրենց ժողովրդով» (ՎՏ, էջ 100. 102. 124):

2. ՃՈՐՏԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆ — Այն հարաբերությունը, որով բնորոշվում է գյուղացիների կախումը կալվածատեր ֆեոդալներից, հայ մատենագրության մեջ նշված է ծառայություն բառով: Այդ բառի նշանակությունն ակնբախ յերևան է գալիս Դվինի յեկեղեցական ժողովի սահմանած կանոնների 9-րդ հոդվածից, որտեղ ասված է. «յորժամ ազատք գիւղեանց զերդ և զմարդ բաժանեն՝ յոլովք չարակնութեան առնեն, զժառանգաւորս եկեղեցւոյ ջանան ի ծառայութիւն և ի սարկութիւն արկանել» (ԿՀ, հոդ. Թ, էջ 126): Սույն հոդվածի շարունակության բովանդակությունից հետևում է, որ «երդ և մարդ» բառերը վերաբերում են շինականներին: Ուրեմն ամբողջ հոդվածի իմաստն այն է, որ ազատները շինականներին իրենց միջև բաժանելիս՝ չարամտորեն նաև գյուղի քահանաներին արկանում են կամ «՚ի սարկութիւն» կամ «՚ի ծառայութիւն», այսինքն դասում են շինականների շարքը, մինչդեռ քահանաները պետք է ազատ լինեյին:

Վերը տեսանք, որ նախարարների վասալական կախումն, ըստ մատենագրական աղբյուրների, նույնպես որոշվում է ծառայություն տերմինով: Սակայն նախարարների և ընդհանրապես հայ ֆեոդալ իշխանների, իբրև ազատանու, տիրապետող, ազնվական դասակարգի, ծառայությունը միշտ շեշտվում է որպես միանգամայն տարբեր ու սոցիալապես անհարիր այն ծառայությանը, որ վիճակված է յենթակա դասակարգին, շահագործվող շինականությանը: Այս դեպքում շինականների ծառայությունը բնորոշվում է «ծառայութիւն ընդ հարկօք» կամ «՚ի հարկի ծառայութիւն» բառերով, այսինքն՝ ծառայություն հարկադրական

պարհակով, իսկ ազատանու ծառայությունը, որ պարհակությունից ազատ է, սովորաբար կոչվում է «'ի սպասու ծառայութիւն» բառերով:

Շինականների «ծառայութեան» իրական արտահայտությունը կայանում էր հողային ռենտայի մեջ, որ նրանք պարտավոր էին վճարել իրենց կալվածատերերին: Կալվածատեր իշխանները, որպեսզի ապահովեին իրենց հողերի շահագործումը գյուղացիների աշխատանքով, կիրառում էին արտատնտեսական հարկադրանք, ճնշում: Այդ ճնշումն իրականացվում էր նրանով, որ շինականները ամրացվում էին հողին, այն է՝ ճորտացվում էին: Որ հենց այդ ճորտական վիճակը, հողին ամրացված լինելու կացությունն էր շինական դասի սոցիալական էությունը՝ որպես շահագործվող դասակարգի, այդ բացահայտ է մի շարք պատմագրական տվյալներից:

Ճորտության, այն է՝ հողին ամրացված լինելու ցայտուն պատկերը Հայաստանի պատմության Սասանյան տիրապետության շրջանից (սկսած V դարից) գտնում ենք Դվինի կանոնների վերոհիշյալ 9-րդ հոդվածում: Այստեղ քահանաների սոցիալական իրավունքները պաշտպանելու առթիվ ակնարկված է, որ «ազատները» իրենց պատկանող «երդն ու մարդը» բաժանում են. իսկ մեկնելով այդ հոդվածի ամբողջ իմաստից, որ «երդ ու մարդ» խոսքերը վերաբերում են շինականներին, պետք է եզրակացնել, որ շինականի տունն ու հողը—«երդը» և ինքը շինականն էլ—«մարդը» հանդիսանում էին ժառանգական բաժանքի առարկա: Աներկբա է, որ տվյալ հոդվածում արձագանք է գտել հնավանդ ֆեոդալական իրավունքը ճորտացած գյուղացու՝ շինականի անձնավորության վրա, որ ամրացված էր հողին:

Շինականի վրա ծանրացած ֆեոդալական իրավունքի նույն իմաստն ենք գտնում պատմագիր Մովսես Կաղանկատվացու մոտ (VII դար): Աղվանից Թագավոր Վաչեն, հրաժարվելով գահից, «հանճեցաւ միայն զսեպհականն առնուլ բաժին իւր, զոր 'ի հօրէն էր առեալ հազար երդ, առ զայն 'ի Թագաւորէն (պարսից Պերոզից) և նստաւ 'ի նմա...» (գլ. Ժ, էջ 24): Ուրեմն 1000 երդ, այսինքն 1000 տուն շինականներ ամրացված էին հողին, եթե Վաչեն իր իրավունքն էր համարում ստանալ ժառանգական հող այդ շինականներով հանդերձ:

Նույնիսկ հողերը վանքերին ու եկեղեցիներին նվիրաբերելու դեպքերում շինականները չէին բաժանվում հողից: X դարի վիմագիր մի արձանագրությունից, որ հայտնաբերել է Յա. Ի. Սմիրնովը Գեղամա լեռներում, երևում է, որ իշխան Տիրոց Գնթունին իր կառուցած վանքին նվիրում է սեփական Անձավ գյուղն իր շինականներով, «որպեսզի նրանք [անձավցի գյուղացիները] ծառայեն ո՛չ թե մարմնավոր տերերին, այլ միայն այս սուրբ խաչին հավիտյան»150:

Դվինի վերոհիշյալ 9-րդ կանոնի «երդ և մարդ» բառերը առիթ են տալիս մեզ ուշադրություն առնել Աղաթանգեղոսի Պատմության մեջ հանդիպող հոմանիշ դարձվածքը. «... (Տրդատ) թագաւորն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ՝ ընտրեաց չորս-չորս հողս երդոյ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն-եօթն հողս երդոյ՝ ի ծառայութիւն սպասաւորութեան քահանայութեանն» (գլ. ՃԺԹ, էջ 423): Քանի որ երդը, ինչպես Դվինի կանոնադրության մեջ, նույնպես էլ այստեղ նշանակում է շինականական տուն—ծուխ, ապա «հողս երդոյ» պետք է հասկանալ շինականի հողաբաժին: Հետևապես, քանի որ այդ հողերը բաշխվում էին քահանաներին «՚ի ծառայութիւն», պարզ է, որ այս դեպքում այդ «ծառայությունը» կատարելու էին շինականները, որոնք ամրացված էին այդ «երդոյ հողերին»: Այդ միանգամայն հատկանշական է. Հողատիրականությունը համարվում էր արտոնյալ դաս, որ պատկանում էր ֆեոդալ դասակարգին և հողատիրության իրավունքներ էր վայելում, որպեսզի շահագործի այդ հողերն և ստանա հողային ռենտա՝ յուրացնելով շինականների աշխատանքը:

Ավելի ակնբախ է շինականների ճորտական դրությունը Մխիթար Գոշի Դատաստանագրքում, որտեղ արտացոլել է ֆեոդալական իրավունքը, պահպանելով իր մեջ ավելի հին, թերևս Բագրատունյաց շրջանի, իրավաբանական նորմերն ու սովորութական հարաբերությունները:

Մխիթար Գոշն իր Դատաստանագրքի II մասի Դ. գլխում, որ կրում է «Յաղագս դատաստանաց շինականաց» խորագիրը, ասում է. «Ազատ Արարչէն եղև մարդկային բնութիւն, այլ ծառայել տէրանց յաղագս պիտոյից եղև հողոյ և ջրոյ: Եւ

զայս պատշաճ կարծեմ դատաստան—զի թողեալ զանէրունիսն ապատ է ուր և կամեսցի կալ: Ապա թէ այժմ ոչ ներէ ոք ի տէրանցն և բռնադատէ զգնացեալսն անդրէն դառնալ, գինի մահուան հօրն ազատ են որդիք ծնեալք այլուր և ոչ անդ» (էջ 320—321): Այս հոդվածում պարզորոշ երևում է շինականի բացարձակ կախումը ֆեոդալից և ամրացված լինելը տիրոջ հողին: Թեև մարդս ազատ է ստեղծվել «արարչէն», բայց «հողի և ջրի» կարիքից նա պետք է ծառայի իր տերերին: Այդ կախումը չի վերանում, եթե նույնիսկ շինականը, թողնելով հողն ու ջուրը, հեռանա. այս դեպքում, եթե նա հեռացել է տիրոջ կամքի հակառակ, վերջինս իրավունք ունի նրան բռնությամբ ետ դարձնելու: Այդ կախումը շարունակվում է տարածվել շինականի մահից հետո նաև նրա ժառանգների վրա, որոնք ծնվել են տիրոջ հողի վրա, իսկ եթե ժառանգները ծնվել են շինականի հեռանալուց հետո «այլուր», դրանք ազատ են:

Որ շինականն անազատ էր, այսինքն ամրացված էր հողին, այդ ակներև է նույն Դատաստանագրքի մի այլ հոդվածից, որի համաձայն շինականը չի կարող ընդունել հոգևոր կոչում, այն է՝ մտնել ազատների դասը, մինչև որ նախորոք չստանա տիրոջ կամքն ու համաձայնությունը յուր «ծառայությունից» ազատվելու մասին (ՄԳ, II, հոդ. ժէ, էջ 333): Բացի վերոհիշյալներից, Մխիթար Գոշն իր Դատաստանագրքի մեջ մտցրել է փոքրիկ խմբագրական փոփոխություններով նաև Դվինի ժողովի կանոններից մեզ արդեն ծանոթ 9-րդ հոդվածը, որով ուրեմն նա ճանաչում է շինականների ամրացումը հողին:

Շինականների կախումը կալվածատիրոջից և ամրացված լինելը հողին՝ ավելի պարզորոշ արտահայտվում են XII և XIII դարերի վիմական արձանագրություններում: Ֆեոդալ իշխանները, իրենց արձանագրություններում հիշատակելով վանքերին և եկեղեցիներին նվիրաբերած հողերը, նշում են գյուղերի, այգիների, արտերի հետ միասին նաև շինականներին: Նվիրաբերվում են կամ անհատ գյուղացիներ, թվելով նրանց քանակը, երբեմն էլ անունները[161], կամ ամբողջական գյուղեր՝ բոլոր շինականներով հանդերձ: Առաջին դեպքում նկատում ենք առանձին շինականների անձնական կախումը ֆեոդալից, երբ նա կարող է

ճորտին տալիս իբրև սեփականություն, ուրեմն գնել ու ձեռք բերել, ի հարկե հողի հետ միասին: Երկրորդ դեպքում տեսնում ենք ճորտացած գյուղական համայնք, որի անդամներն անխզելի չեն համայնական հողից: Առաջ բերենք մի քանի արձանագրություններ ամբողջական գյուղերի նվիրաբերության մասին հանդերձ բոլոր շինականներով, որոնք ըստ յեկեղեցական տերմինաբանության, հաճախ հորջորջվում են ժողովուրդ անունով:

«Ի թուիս ՉԵ (1256 թ.)... Ես տէր Համազասպ, առաջնորդ սուրբ ուխտիս Հաղբատայ, աւրհնեցի յեկեղեցիս և տուի զգեղ ժողովուրդ կամակցութեամբ Հաղբատայ միաբանիցն առաջնորդութեամբ Գէորգ վարդապետի» (ՎՏ, էջ 100):

«Թվ. ՉԸ (1259): Ես Ստեփաննոս Սիւնեաց արքեպիսկոպոս գներ հայրենի գիւղն Վակոչ ի վանս սուրբ ուխտիս տուաք հայրենիք իւրով ժողովրդով...» (ՎՏ, էջ 102):

«Թուին ՉԼԲ... ես Հասան իշխան... տուաք ես և եղբայր իմ Դաւիթ զմեր գանձագին գեղն զՎահրամաշեղ և զՂամազանցն իւրեանց ամեն հող ու ջրով և բնորդի մարտկաւք...» (ՎՏ, 124):

Նույնպիսի իմաստ են պարունակում միջնադարյան մեր մատենագրության մեջ հիշատակված մի շարք փաստեր:

«Եւ ընծայեցի ի սոսա զիմ հալալ հայրենիքն և զգանձագին գիւղն Ջուաշ իւր ամեն սահմանօքն, հողով և ջրով և այգեստանօք և բոլոր բնակչօք, զոր գնեալ է իմ յիմ եղբօրէն Ջալալէն ազատ յամենայն հարկաց...» (ՍՕ, գլ. ՀԱ, էջ 493):

Այս արձանագրության մեջ բնորոշն այն է, որ ընծայված գյուղը գնված է եղել «բոլոր բնակչօք». ինչպես տեսնում ենք, թե՛ գնման և թե՛ ընծայաբերության դեպքերում հիշյալ գյուղն անբաժանելի է համարվում բնակիչներից, այսինքն շինականներից, որոնք ուրեմն ամրացված են եղել հողին:

Բերենք մի այլ նույնանման օրինակ: Սյունյաց իշխան Վասակի ամուսին իշխանուհի Մարիամը «գնեալ ի Հաղարցի մարդկանէ զգեօղն Տողուալայ ընդ 60,000 դրամի ազատ յամենայն աշխարհական հարկաց՝ ընծայէ ի սեպհական ժառանգութիւն սուրբ եկեղեցւոյն. նմանապէս և զգեօղ մի 'ի Մաղաղ գաւառի ընդ 3000 դահեկանի գնէ և տայ ի սուրբ եկեղեցին, որոյ անուն գեղջն Դնէր» (ՍՕ, գլ. ԼԷ, էջ 174): «Ազատ յամենայն աշխարհական

Հարկաց» խոսքերը հիմք են տալիս ենթադրելու, որ գյուղը նվիրաբերվում էր շինականների հետ միասին, որովհետև հարկ տվողները, այսինքն անմիջական վճարողները կարող էին լինել տվյալ դեպքում միայն նույն գյուղացիները:

Շինականների հետ միասին ամբողջ գյուղերի այդօրինակ նվիրաբերություններ գտնում ենք նույնպես հետագա արձանագրություններում — 1211 թ. Հաղպատի (ՎՏ, 51), 1214 թ. Սանահինի (ՎՏ, 54) և դարձյալ Սանահինի (ՎՏ, 248—249):

Վերևում բերված փաստերը, կարծում ենք, միանգամայն ապացուցում են շինականների ճորտական կախումը ֆեոդալից և ամրացումը հողին: Այլապես չէր էլ կարող լինել ֆեոդալական հասարակության մեջ, որտեղ արտադրության եղանակը և շահագործման ձևը խարսխված էր արտատնտեսական ճնշման վրա, որպեսզի հնարավոր լինի ստանալու շինականի աշխատանքի հավելյալ արդյունքը հողային ռենտայի ձևով:

3. ՇԻՆԱԿԱՆՆԵՐԻ ԻՐԱՎԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ — Շինականները, գտնվելով ճորտական դրության մեջ, այնուամենայնիվ վայելում էին որոշ քաղաքացիական իրավունքներ: Չնայած մատենագրական տվյալների սղության և անորոշության՝ կարելի է մասամբ կերպով պատկերացնել այդ իրավունքները: Իհարկե, շինականների գույքային ու անձնական իրավունքները պետք է հարաբերական իմաստով պատկերացնել, քանի որ նրանք, լինելով շահագործվող մասսա ու ենթակա արտատնտեսական ճնշման, փաստորեն զուրկ կարող էին լինել իրենց պատկանած իրավունքներն օգտագործելու հնարավորությունից, երբ իրականում իշխում էր ուժեղի բռունցքը, տիրապետող ու շահագործող դասակարգի կամայականությունը և այդ տիրապետող դասակարգին ծառայող պետական-վարչական ապարատը: Սակայն շինականների այդ իրավունքների ախոյանն ու զորավոր պաշտպանն էր հանդիսանում գյուղական համայնքը, որն, ինչպես Ֆր. Էնգելսն է նշում, գյուղացիների համար միշտ յեղել է ուժեղ զենք ֆեոդալների ճնշման դեմ և սահման է դրել նրանց շահագործմանը:

Տարակույս չկա, որ շինականներն ունեյին գույքային սեփականության իրավունք, բացառյալ հողից ու ջրից: Արդեն

այն փաստը, որ չինականը հարկատու չեր, այսինքն ռենտա վճարող, նա ունենալու չեր, իբրև սեփականություն, որոշ գույք և արդյունքներ, որոնցից կարողանար կատարել իրեն վրա բարդված վճարումները: Բավական է այստեղ հիշատակել, որ չինականները քրեական հանցանքների դեպքում դատական վճռով յենթարկվում եյին նաև դրամական տուգանքների, ուրեմն չինականը պետք է ունենար սեփական ինչք, որից կարելի յեր վճարել: Այդ գույքը կարող եր լինել անշարժ, ինչպես օրինակ՝ խրճիթը և նրան հարակից տնտեսական շենքերը, նաև շարժական, այն է՝ արտադրության միջոցներ (անասուններ, գործիքներ), ստացած բնական արդյունքներ և այլն: Պետք է յենթադրել, որ յեթե չինականն, իբրև հողին ամրացված ճորտ, կարող եր վաճառվել և տարվել կալվածատեր Փեոդալի կողմից իրեն ամրացված հողի հետ, ապա և նրանից չեր զատվում իր սեփական գույքը: Միմիայն անժառանգ, այսինքն՝ որդիք չունենալու դեպքում, չինականի մահից հետո նրա ամբողջ գույքը, համաձայն «մեռյալ ձեռքի» — manus mortua սկզբունքի, անցնում եր կալվածատիրոջը. Նույնը տեղի յեր ունենում նաև չինականի ինքնակամ հեռանալու կամ փախչելու դեպքում: Հետևապես չինականներն ունեյին նաև ժառանգական իրավունք:

Ինչ վերաբերում է ընտանեկան-ամուսնական իրավունքին, այդ կարգավորվում եր կանոնական իրավունքի նորմերով: Ըստ այդ իրավունքի՝ խտրություն չեր դրվում «ազատների» ու չինականների միջև: Միայն ամուսնական հանցանքների (առևանդություն, պոռնկություն, ամուսնական անհավատարմություն և այլն) համար չինականները պատասխանատու եյին տուգանք վճարել՝ կես չափով՝ համեմատած ազատների հետ, բայց և միևնույն ժամանակ յենթակա եյին մարմնական պատժի, որից, իհարկե, զերծ եյին ազատները: Նույնպես եր նաև ամուսնալուծության դեպքերում (Շահապիվանի ժողովի կանոնները՝ ԿՀ., հոդ. Գ, Դ, Ե, Է, էջ 62—66):

Ահա այդ գյուղացիական իրավունքին պետք է վերագրել այն հետաքրքրական յերևույթը, որ, ըստ մեր պատմագիրների ավյալների, չինականներն յերբեմն քաղաքական սուր ճգնաժա-

մերի ժամանակ և կարևոր դեպքերում վորոշ նշանակություն են տացել իբրև քաղաքացիներ:

«Տրդատիոս Հայոց մեծաց արքայ, առ աշխարհս և առ դաւառս, առ նախարարս և առ զօրս և առ շինականս և առ ամենեսին ողջոյն» (Ագ. ԺԲ, 76):

«Իսկ նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ ոչ երբեք դադարէր գրել նամականի առ իշխանս և շինականս...» (Գ.Փ, II, ԼԶ, 143):

Նույնիսկ հիշատակվում է, որ երբեմն շինականները մասնակցում էին աշխարհաժողովներին կամ անմիջաբեն անձամբ (ՓԲ, III, ԻԱ, 54), կամ իրենց գյուղապետների միջոցով, վորոնք կոչվում էին դասապետք շինականաց (ՓԲ, IV, ԾԱ, 165):

Ինչպես կարելի յե կռահել սակավաթիվ մատենագրական տվյալներից, շինականների հարաբերությունները իրենց ֆեոդալ կալվածատիրոջ հետ պահպանվում էին գյուղապետների միջոցով: Յուրաքանչյուր գյուղական համայնք, վոր բաղկացած եր շինականներից, ուներ իր ավագը, վոր մեր մատենագրության մեջ հորջորջվում է «դասապետք շինականաց» (ՓԲ, գլ. ԾԱ, 165), «դեղջաւագ», «աւագ շինին» (Մխ, 101), «գիւղապետ» անուններով: Վերջին տերմինը գտնում ենք նաև Քսենոֆոնի՝ հայ գյուղի նկարագրի մեջ (IV դ. ն. ք. մեր տարեթվ.) κωμάρχης, ἄρχων τῆς κώμης. վոր բառացի նշանակում է գյուղապետ: Հետաքրքիր է, վոր XIII դ. վիմական արձանագրություններում նույն նշանակությամբ հանդիպում ենք ռայիս (հետագայում ուշ միջնադարից մինչև XIX դարը մեր գյուղերում փոխվել է ռես. բառի) տերմինին, վոր լեզվաբանորեն, անշուշտ, թյուրք-թաթարական ծագում ունի (ՎՏ, 50, 52, 68, 226): Միաժամանակ նույն միջնադարյան արձանագրություններում գործածվում է համանիշ իմաստով նաև գյուղական հայերեն տերմինը (ՎՏ, եջ 51):

Դասապետը համարվում եր գյուղական համայնքի ներկայացուցիչ, շինականների ավագ, վորի վրա յեր դրված շինականներից հարկ հավաքելը, թերևս նաև դատական իշխանությունը: Իբրև շինականների ներկայացուցիչ՝ նա մասնակցում է աշխարհաժողովներին (ՓԲ, անդ): Իսկ հարկահավաքի պարտականության մասին կարելի յե յեզրակացնել Քսենոֆոնի «10 հազարի

նահանջի պատմությունից» (Anabasis, V, 7, 13)։ Գյուղապետը, որի հետ հույն զինվորներն ու Քսենոֆոնը բանակցում էին և նրա մոտ գիշերում, իր մոտ ուներ գյուղից հավաքած 17 հավատակներ, որոնք կազմում էին արքունի թագավորին հատկացված տարեկան հարկի մի մասը։ Նույն իմաստով պետք է հասկանալ Աղվանից Վաչագան թագավորի կանոնների մեջ հիշատակված հետևյալ խոսքերը. «Եւ այդ չինին կալցէ զմարդոյն եզն և երկուս տայցէ» (ԿՀ, հտ. ԺԳ, էջ 195)։ Գեղջավագի մասին հիշատակվում է Պարտավի ժողովի (768 թ.) կանոններում. նրան վերապահված է նաև գյուղից հարկեր հավաքելը— «Գեղջաւագ, որ յաղագս արքունի հարկաց զդուռն եկեղեցւոյ փակել տայ» (ԿՀ, հտ. ԻԲ, էջ 172)։ Նույնը պետք է ասել և վերահիշյալ գյուղականի մասին, իբրև հարկահավաքի. «Եւ է այս գեղ ազատ յամենայն հարկէ ի պատրանաց, 'ի ձեռնասրաց, ի գիւղականաց...» (ՎՏ, էջ 51)։

Ճորտական կախումը, որպես հետևանք տիրապետող ֆեոդալ դասակարգի արտատնտեսական ճնշման, իր կնիքն էր դրոշմում շինական դասի սոցիալ-իրավական կացության վրա։ Այստեղ գործում էին, իհարկե, սովորութական իրավունքի նորմերը, որոնք կարող էին ավելի կամ նվազ չափով տարբերվել կանոնական նախադրություններում, իսկ հետագայում՝ ֆեոդալական իշխանություններում, նայած նրանց յուրաքանչյուրի իրական ուժին և ազդեցությանը։ Սակայն դասակարգային ներհակության սոցիալական շեշտն ամեն դեպքում և ամեն տեղ դրսևորվում էր միատեսակ։ Այդ պարագան բնորոշ կերպով անդրադարձել է նաև մեր մատենագրության մեջ։ Մովսես Խորենացին դասակարգային հարաբերությունների կարգավորումը վերագրում է հայ Արշակունյաց դինաստիայի հիմնադիր Վաղարշակ (իսկապես՝ պատմականորեն ճշտված՝ Տրդատ Ա.) թագավորին. «Հրաման տայ քաղաքացեաց մարդկան արգոյ և պատիւ գինել քան զգեղջկաց, և գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս. և քաղաքացեաց մի՛ կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարել» (ՄԽ. II, գլ. Ը, էջ 110)։ Այդ իրավաբանական դրույթն ավելի ցայտուն է արտահայտում Մխիթար Գոշն իր Դատաստանագրքում, համարելով այդ հին հայ թագա-

վորների սահմանած օրենք. «Արք քաղաքացիք տաւել քան զգեղջուկս պատուիցին և գեղջկաց նմանապէս տաւել պատիւ լիցի քան բնակչաց ագարակի. սոյնպէս լիցի բերդի բնակչաց և աւանի. զի և կարգ առաջնոցն ի մերոց Թագաւորացն այդոքիկ» (ՄԳ, II, հոդ. Ա, եջ 318):

Շինականների ու «ազատ»-ների այդ չեշտակի հակադրությունն արտացոլել է նաև հայ յեկեղեցական ժողովների կանոնական վորոշումներում: Շահապիվանի ժողովի (443 թ.) կանոններում (ՀԿ, հոդ. 4-րդ, 5-րդ, 7-րդ, 10-րդ, 12-րդ. եջ 64—70) սահմանվում է, վոր միևնույն քրեական հանցանքների համար շինականներն ավելի խիստ պատիժների յեն յենթարկվում «ազատ»-ների համեմատությամբ:

Շինականների տնտեսական շահագործման ու արտատնտեսական ճնշման պայմաններից բղխող սոցիալ-իրավական զրկությունը սանձարձակ ազատություն եր տալիս ֆեոդալների ընչաքաղց ախորժակներին: Կալվածատեր ֆեոդալները, իհարկե, առօրյա իրականության մեջ սահմաններ չեյին ճանաչում իրենց յուրացրած իրավունքի և ջանում եյին դուրս կորզել յենթակա շինականներից վորքան կարելի յե շատ հավելյալ արդյունք, հաճախ կանգ չառնելով զանազան ու բռնի միջոցների առաջ: Այդ հանգամանքն, ըստ յերևույթին, այնքան սովորական է յեղել, վոր Մխիթար Գոշն ստիպված եր իր խմբագրած օրենքներում զգուշացնել ֆեոդալներին.

«Ի տարեմուտս բաց կարի ծառայեսցէ և յաւուրս տօնից: Մի՛ լիցի չկրուչէք[152ա] բազում, այլ չէք լիցին անիրաւ սովորութիւնքն, զի և սահմանդ բազում է յաւելորդ սովորութեանց եղև: Աստնոց դատաւորանի մի՛ տուգանեսցի, այլ բաց կարի լիցի թէ յանցաւոր է տէրունիան զացի, իսկ յայլս յանցաւոր գտեալ, դատաւորօք վճարեսցի» (II, հոդ. Ա, եջ 316—317):

«Եւ եթէ աւելի քան զօրէնն անզգամաբար հրամայիցէ գործել և այնու վնաս մահու հասցէ 'ի տերանց ընդ հարկիւ անկելոց, պարտապան լիցի արեան դատաւորանի գերագունից տերանց» (ՄԳ, II, հոդ. ԺԳ, եջ 300):

Հայ մատենագրության մեջ պատահում են թեև սակավաթիվ, բայց հետաքրքրական տեղեկություններ շինականների վրա

դիպվածորեն, մութ ակնարկներ կամ միառժամանակ կարճ հաղորդումներ են անում տիրապետող դասակարգի դեմ բարձրացած ժողովրդական շարժումների, մասնավորապես ըմբոստացումների մասին:

Այստեղ առաջին տեղն է բռնում շինականների փախուստը իրենց տերերից, որ մի սովորական ու ընդհանրացած երևույթ է եղել: Այդ ակներև է ո՛չ միայն մատենագրական աղբյուրներից, այլև այն իրավաբանական նորմերից, որոնք համակարգես ու սահմանված էին փախստական շինականների վերաբերմամբ:

Մովսես Խորենացին, իր «Ողբի» մեջ նշելով ժողովրդի ընդհանուր քաղաքական անկումը, ի միջի այլոց ակնարկում է նաև այնպիսիների մասին, որոնք են «փախուցեալ ի ծառայութենէ» (III, գլ. ԿԸ, էջ 364): Այստեղ «ծառայութիւն» պետք է հասկանալ հող[154], իսկ հողից փախչողները կարող էին լինել, ՚ի հարկե, ո՛չ թե ֆեոդալներն ու իշխանները, որը անհարիր ու անտրամաբանական բան կլիներ, այլ պարզապես շինականները, որոնք իրենց անտանելի վիճակից ազատվելու համար դիմում էին փախուստի այն հողից, որին ամրացված էին:

Փախստական շինականների մասին ունենք ավելի ուշագրավ տեղեկություններ չարաբաստիկ Արշակավան քաղաքի պատմության շուրջը, որ Մովսես Խորենացին (III, գլ. ԻԷ, էջ 287—288) և Փավստոս Բուզանդացին (IV, գլ. ԺԲ, էջ 109—110) ավանդում են միակողմանի ու տենդենցիոզ գույներով: Արշակ II թագավորը կենտրոնախույս նախարարների դեմ վարած պայքարի լարված մոմենտին հիմնադրել էր Արշակավան քաղաքը և ազատություն ու ապաստանի իրավունք ապահովել այնտեղ փախչողներին: Այստեղ փախուստ տվող ու ապաստան գտնողների շարքում, որոնց վերահիշյալ պատմագիրները որակում են իբրև «գողք, ավազակք, արյունահանք, սպանողք, մարդկերոյք» և այլ տեսակի «հանցագործներ», կային և շինականներ, որոնք փախուստ էին տվել իրենց հողերից՝ կալվածատերերի կեղեքումների պատճառով: Փախստական շինականների ապաստանումը Արշակավանում բացահայտ է նրանից, որ նախարարների պա-

բույթն Արշակավանի դեմ Հենց այդ Հողի վրա յեր: Այսպես է ավանդում այդ մասին Մովսես Խորենացին. «Եւ նախարարացն Հայոց ժողովեալ՝ պնդեցին ի վերայ արքունական ձեռակերտին Արշակաւանի, և Հարին զնա սրով սուսերի յառնէ մինչև ցկին, բայց ի տղայոց ստնդիեայց, քանզի գանգատեալք էին իւրաքանչիւրի վերայ ծառայից իւրեանց»: Վոչ մի կասկած, վոր այս դեպքում «ծառայք» այդ նախարարների շինականներն և ստրուկներն եյին:

Ինչ վերաբերում է իրավաբանական նորմերին, վորոնք ուղղված են շինականի փախուստի դեմ, այդ ակներև է Մխիթար Գոշի Դատաստանագրքից (II, Հոդ. Գ., էջ 320): Ֆեոդալ իշխանն իրավունք ունի բռնի ուժով վերադարձնել այն շինականին, վոր Հեռացել է Հակառակ նրա կամքի, այսինքն փախուստ է տվել, և վերստին նստեցնել իր Հողի վրա: Նույնն է արծարծված Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում (ՍԴ, Հոդ. ՃԻԳ, էջ 67):

Շինականների մասսայական ըմբոստացման մասին, վոր յերբեմն վերածվում եր ապստամբական արյունալի յելույթի ընդդեմ շահագործող կալվածատերերի, մեզ Հասել են թեև կցկտուր, բայց և այնպես բնորոշ տեղեկություններ, գլխավորապես VIII դարից: Այդ այն ժամանակներն եյին, յերբ արաբական տիրապետության տակ և դրամական ռենտայի ներմուծումով չափազանց ծանրացել եր արտադրող գյուղացիության սոցիալ-տնտեսական վիճակը:

Վերը Հիշատակված ասորական ժամանակագիր Դիոնիսիոս Տել Մահրեն պատմում է, վոր Տուտխ գավառի (Ծովք) Հանքահորերում աշխատող գյուղացիները, ծանր Հարկերի ու դաժան բռնության ներքո Հուսահատության Հասնելով, ապստամբում են: Այդ ապստամբությունը, վոր տեղի յե ունեցել մոտավորապես VIII դարի յերկրորդ կեսում, ճնշվել է արյան Հորձանքներում:

Պատմագիրներ Հովհաննես Դրասխանակերտցին (X դար) և Ստեփանոս Օրբելյանը (XIII դար) Հաղորդում են յերկու գյուղացիական մասսայական ապստամբությունների մասին, վորոնցից մեկը յեղել է Բագրատունյաց թագավորության մեջ, իսկ

մյուսը Սյունյաց իշխանության սահմաններում X դարի սկզբնե-րին: Այդ ապստամբությունները խիստ ուշագրավ են սոցիալա-կան տեսակետից, որովհետև նրանք բռնկել են այն ժամանակաշրջա-նում, երբ Հայաստանում կատարվում էին սոցիալ-տնտեսական տեղաշարժեր, որոնք հասցրել էին շինականներին նյութական սուր ճգնաժամի և անտանելի ճնշման: Նվաճող արաբների հետ Հայաստան մուտք էր գործել առևտրա-վաշխառուական կապի-տալը, որ իր հերթին առաջ էր բերել դրամական ռենտայի ու-ժեղ թափ: Այդ ժամանակ սկսվեց նախկին նախարարական հո-ղերի կենտրոնացումը փոքրաթիվ ֆեոդալական ուժեղացած իշ-խանների ձեռքում, որոնք, գույքային կուտակման հետևից ընկնելով, գործուն մասնակցություն ունեին նորամուտ առևտրա-կան կապիտալի վերելքի մեջ: Արագ թափով զարգացող դրա-մական շրջանառությունը նրանց խթանում էր ավելի ուժգին զարկ տալ դրամական ռենտային, որ անշուշտ քայքայիչ կեր-պով էր ազդում շինականների առանց այն էլ խղճուկ տնտեսու-թյան վրա ու ծանրացնում նրանց ճորտական կախման դրու-թյունը:

Ահա այս պայմաններումն էր, որ Բագրատունյաց Հայաս-տանում բռնկեց գյուղացիական ապստամբություն: Այդ ապըս-տամբությունը տեղի ունեցավ Սմբատ I թագավորի օրով, երբ հարկերը բարձրացել էին ու շահագործումն էլ հասել էր ծայ-րագույն աստիճանի, և երբ հայ- արաբական անվերջ ընդհա-րումներն էլ մյուս կողմից՝ ավերում էին երկիրը, որի հե-տևանքով «երկրագործք մեր սպառեցան և սուգ զգեցան», ասում է պատմագիրը (ՅԴ, էջ 257): Կանգ չառնելով այդ ապստամ-բության մանրամասնությունների վրա, բավականանանք մի քանի հետաքրքիր քաղվածքներ անելով Հովհաննես Դրասխանակերտ-ցուց, որոնք բնորոշում են տիրապետող ֆեոդալ դասակարգի հայացքներն այդ շարժման նկատմամբ, դասակարգի, որին պատկանում է նաև վերոհիշյալ պատմագիրը: «Վասն զի նուա-ղունքն քան զմեծամեծսն ձեռներէց լինել ջանային, և ծառայքն ըստ Սողոմոնի հնարէին, զի զտեարս տրեխաւորեալ՝ ի գետնի գնացուցեն և ինքեանք ելցեն յերիվարս ահեղարանցս և առա-թուր հարցեն՝ խրոխտացեալք և սնքացեալք մեծաւ ապստամ-

րութեամբ» (ՑԴ, 258)։ Ամենայն հավանականությամբ այդ ա-պստամբական ելույթները տեղի էին ունենում հարևան ժո-ղովուրդների հարձակումների ժամանակ, «և ապա խառն ընդ նո-սին եւ աւազակք և սրիկայք ի մայր ընդ երկրի մերում» (ՑԴ., էջ 257)։ «Աւազակ» և «սրիկա» էին անվանվում մեր պատ-մագրի կողմից ապստամբ «ծառայք»։

Մյուս ապստամբական շարժումը, որ նկարագրում է Ստ. Օրբելյանը, ծայր էր առել գրեթե նույն ժամանակներում Սյունի-քում։ Սյունյաց քաղկեդոնական աթոռանիստ Տաթևի վանքին պատկանող Ցուրաբերդ, Արևերգաշտ և Տամալեք գյուղերն ե-յին գլուխ բարձրացրել իրենց չհաղորդող հոգևոր ֆեոդալների դեմ, հարձակվել վանքի վրա, սպանել մի քանի միաբանների, իսկ մյուսներին դուրս քշել և ապա գրավել էին թեմերի իրենց պատկանած, իսկ հետագայում Սյունիքի իշխանաց իշխանի կող-մից վանքին նվիրված հողերը։ Շնորհիվ Սյունյաց իշխանի մի-ջամտության՝ շարժումը ճնշվում է և գրաված հողերը նորից վերադարձնում են վանքին։ Սակայն գյուղացիները չէին հան-դարտվում, ամբողջ X դարում նրանք մի քանի անգամ վերստին ապստամբում էին (ՍՕ, գլ. ԽՀ, ԽԱ, ԽԲ)։

Սոցիալական պայքարն ընթացք էր ստանում նաև այլ ուղիներով։ Շահագործվող ու ճնշվող դասակարգի ներհակ տրամադրու-թյունները վերածվում էին մասսայական շարժումների՝ կրոնա-կան կեղևով։ Այդ կրոնական շարժումները, որոնք տիրապետող հոգևոր պետերի կողմից հերձվածներ էին անվանվում և ծայր էին առել սկսած V դարից, ինչպես մանիքեցիների, պավլիկյան-ների, թոնդրակյանների և այլն, ոչ այլ ինչ էին, եթե ոչ մասսայական բողոք, ըմբոստացում տիրող հասարակական կար-գերի դեմ, որոնք սրբագործվել էին իշխող եկեղեցու կողմից։ Այդ «հերձվածողական» շարժումները խմորվում էին սոցիալա-կան պայմաններում և կրում ցայտուն դասակարգային բնույթ, ներգրավելով ժողովրդական ստորին խավերը, մասնավորապես գյուղացիական՝ շինականական զանգվածները, որոնք ամենից ավելի էին հեծում իրենց տերերի շահագործումների և բռնու-թյունների լծի տակ։ Այդ շարժումների դասակարգային էու-

*թյունն արտահայտվում էր նաև այն դաժան ճնշումներով և արյունալի դատաստաններով, որ տիրապետող ֆեոդալ դասակարգը անում էր ապստամբների գլխին: Այդ տեսակետից ուշագրավ է թոնդրակյանների շարժումը, որ ընդմիջումներով տևում է սկսած IX դարի կեսերից մինչև XI դարի կեսերը: Առանձնապես կատաղի թափ էր ստացել նա X դարում, զուգադիպելով Բագրատունյաց թագավորության ժամանակ բռնկած գյուղացիական ապստամբական շարժմանը:*

*Հետևապես, կրոնական քողի տակ ծավալվող թոնդրակյան շարժումը պարունակում էր իր մեջ նույն սոցիալ-տնտեսական նախադրյալները, ինչ որ Բագրատունյաց կամ Սյունյաց իշխանություններում զարգացող ապստամբությունները: Թոնդրակյան շարժումները ճնշվում էին տիրապետող դասակարգի կողմից հրով և սրով: Հետաքրքրական է, որ թոնդրակյանների երկրորդ շարժման ճնշումը կատարվեց հայտնի Պահլավունի իշխանական տան ներկայացուցիչ Գրիգոր Մագիստրոսի ձեռքով, որին ակնառու դեմք է մեր պատմության մեջ, թե՛ իր քաղաքական դերով, թե՛ իր կրթական մեծ հարստությամբ և թե՛ իր գիտական-մտավոր զարգացումով: Նա իր աշխատություններում նկարագրում է ձեռնարկած խիստ միջոցներն ու դաժան հալածանքները, որոնցով անխնա ճնշել է ամբողջ շարժումը:*

*Այդպես էին հաշիվ տեսնում տիրապետող ֆեոդալական դասակարգի շահագրգռված ներկայացուցիչներն այն գյուղացիների՝ շինականների հետ, որոնք հանդգնում էին փորձ անել՝ բողոքելու անլուր շահագործումների դեմ և թոթափելու ճորտական լուծը:*

## IV. ՍՏՐԿՈՒԹՅՈՒՆ

1. *ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱԿՆԱՐԿ.— Ստրկությունը հանդիսանում է շահագործման ամենասկզբնական ձևը, որով մարդն սկսում է շահագործել մարդուն: «Ստրկատերերն ու ստրուկները,— գրում է Լենինը,— դասակարգային առաջին խոշոր տրոհումն է»*155:

*Հայ պատմագետները մինչև վերջին ժամանակները չեն զբաղվել այդ պրոբլեմով, յենթադրելով, թերևս, որ այդպիսի հարց չի կարող լինել: Նրանք անտեսել են այդ կարևոր հարցը, կուրորեն հետևելով մեր հին պատմագիրների ավանդին,*

վորոնք այդ ինստիտուտի գոյության մասին պարզորոշ վոչինչ չեն ասում: Սակայն, յեթե հին հայ պատմությունը համառոտությամբ է անցել այդ հարցի վրայով, այդ դեռ չի նշանակում, վոր ստրկությունը բնավ չի գոյացել Հայաստանում: Չէ՞ վոր մեր հին պատմագիրները, առավելին երկեր ձոնելով տիրապետող աշխարհիկ ու հոգևոր իշխանական տներին, իրենց կրոնա-դավանաբանական մոտեցմամբ, մերթ ջատագովելով ու մերթ պարսավելով այս կամ այն իշխողների քաղաքական ու այլ գործերը, համր ու պապանձված են մնացել իրենց ժամանակակից բազմաթիվ սոցիալ-տնտեսական հարցերի նկատմամբ, վորոնք այսոր խիստ մեծ դժվարությամբ է հնարավոր յերևան հանել ու լուսաբանել: Այդպիսի լռության մատնված հարցերից է նաև ստրկությունը:

Նահապետական ստրկությունը, կամ, ինչպես Լենինն էր անվանում՝ «ստրկության նախնադարյան ձևը», տոհմային հասարակության քայքայման ազդակը հանդիսացավ, վորով պարզանում էր մարդը մարդուն շահագործելու յեղանակը: Ստրկական աշխատանքի շահագործումն էր, վոր հնարավորություն էր տվել գյուղական համայնքի տնտեսապես զորեղ ընտանիքների նահապետներին, առաջին հերթին համայնքների ավագներին, գյուղապետներին, ղեկավարներին, ռազմական առաջնորդներին և այլոց՝ կուտակել իրենց ձեռքում նյութական հարստություն և համայնական հողերի ուզուրպացիայով նույն ստրկական աշխատանքի յեղանակները տարածել նաև գրաված հողերի նստակյաց ազատ գյուղացիների վրա ու այդպիսով նրանց դնել կախման վիճակում: Սակայն ֆեոդալական տիրապետությամբ, յերբ որենք դարձավ շինականների արտատնտեսական ճնշումը, ստրկական աշխատանքը չվերացավ իրականությունից: Նա շարունակում էր իր գոյությունը նաև ֆեոդալ հասարակության մեջ և ստանում էր առանձնահատուկ բնույթ Հայկական լեռնաշխարհի տնտեսական պայմաններում:

Քանի վոր Հին Հայաստանում արտադրության ձևը կրում էր ֆեոդալական բնույթ, ինքնին պարզ է, վոր ստրկական աշխատանքն այստեղ այն նշանակությունը չուներ ու այն դերը չէր խաղում, ինչ վոր Հին Հունաստանի, Հռոմի և ընդհանրապես

Միջերկրածովյան աշխարհում, «անտիկ ստրկության» հասարա-կություններում: Հայաստանի հասարակությունը, ընդհա-կառակը, խարսխված էր չինականների շահագործման, ճորտա-յին արտադրական հարաբերությունների վրա: Սակայն միևնույն ժամանակ ստրկական աշխատանքը չէր վերանում. նա պահպան-վում էր և շահագործման հարուստ աղբյուրներ էր բաց անում: Տնտեսության որոշ ճյուղերում և մարդկային աշխատանքի ան-գութ շահագործման որոշ բնագավառներում այն թերևս ա-ռաջնակարգ նշանակություն էր ստանում՝ ճորտական աշխատան-քի հետ համեմատած: Դրանով պետք է բացատրել, որ ստրկու-թյունն Առաջավոր ու Փոքր Ասիայի հին Ֆեոդալական պետու-թյուններում ծաղկում էր մեծ չափերով ու դարձել էր տիրապե-տող դասակարգի շահագործման առարկա: Այսպիսով, Առաջա-վոր Ասիայում, ինչպես նաև Հայաստանում, Ֆեոդալական հա-սարակությունների մեջ ճորտության հետ միասին պահպանվում էր նաև ստրկությունը, մինչդեռ Արևմտյան Եվրոպայի միջնա-դարյան Ֆեոդալական Ֆորմացիայում, որ առաջացել էր անտիկ Ֆորմացիայի քայքայման հետևանքով, գոյություն չուներ ստրկական աշխատանքը: Այն արդեն X դարում վերացել էր Ֆեո-դալական Ֆրանսիայում, իսկ մի փոքր ուշ՝ նաև գերմանական Ֆեոդալիզմի երկրներում: Եվրոպական Ֆեոդալիզմի դարգաց-ման պրոցեսն ընթանում էր այնպես, որ ստրկությունն այնտեղ արդեն վաղ շրջանում համաձուլվում էր ճորտության հետ ու ան-հետանում: Ահա այստեղ է Արևելքի Ֆեոդալիզմի այն առանձնա-հատկություններից մեկը, որ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսն ան-վանում էին ասիական Ֆորմացիա, որը ոչ այլ ինչ է, բայց եթե Ֆեոդալիզմի ասիական ձև:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը միշտ շեշտում էին Արևելքի երկրների զարգացման ինքնահատուկ գիծը, նշելով արևելյան երկրների անշարժությունը, դանդաղությունը սոցիալ-տնտե-սական զարգացման մեջ: Այդ անշարժությունը, նրանց կարծի-քով, սկսվում է հենց այն շրջանից, երբ արխայիկ Ֆորմացիան, այն է՝ առհամային հասարակությունը, գյուղական համայնքի ե-տապում քայքայվելով, փոխանցվում է դասակարգային հասա-րակության, այսինքն Ֆեոդալիզմի, որտեղ սակայն, գյուղա-

կան համայնքը շարունակում է պահպանել իր հարատև գոյու-
թյունը: Այդ անշարժությունը Կ. Մարքսը բացատրում է ո՛չ թե Արևելքի ժողովուրդների ինչ-որ բնածին անշարժությամբ, այլ այդ հասարակությունների տնտեսական կառուցվածքով: «Այս ինքնաբավ համայնքի արտադրողական պարզ օրգանիզմը, որը մշտապես վերարտադրվում է միևնույն ձևով և որը պատահաբար կործանվելու դեպքում կրկին վերականգնվում է միևնույն տեղում, միևնույն անունով, բանալի է տալիս ասիական հասարակությունների անփոփոխության գաղտնիքը լուծելու, անփոփոխության, որը այնպես ակնբախ հակապատկեր է կազմում ասիական պետությունների մշտական խորտակման ու նորաստեղծման և դինաստիաների անդադար փոփոխվելու հետ համեմատած»[156]: Այդ անշարժության շնորհիվ դասակարգային հասարակության գոյացման պրոցեսում դերևան են գալիս երկու պայքարող տենդենցներ՝ ստրկական ու ֆեոդալական, որոնցից ոչ մեկը երկար ու ձիգ դարերի ընթացքում չի կարողանում գերակշռություն ստանալ[157]:

Դառնանք Հայկական լեռնաշխարհին և նրա հարևան երկրներին, որտեղ տիրում էր ասիական տիպի ֆեոդալիզմն իր բնապետական իշխանությամբ: Ստրկական աշխատանքը լայն չափեր էր ընդունել Հաթական երկրներում, ինչպես այդ ակներև է հաթական օրենքներից, որոնք մի շարք իրավական նորմերով կարգավորում էին այդ ձրի ու անխնա կեղեքվող աշխատավորների սոցիալ-տնտեսական հարաբերությունները: Հաթական Subbiluljum թագավորը, որ նվաճել էր Միթանի թագավորությունը (Հայկական լեռնաշխարհում), պարբերաբար վերցնում էր ռազմական տուրքի ձևով այդ երկրի ազգաբնակչությունից անհաշիվ թվով մարդիկ, որոնք իբրև ստրուկներ քշվում էին Հաթական պետության սահմաններն ու այնտեղ բռնի ճնշմամբ գործադրվում էին անասնապահության ու երկրագործության աշխատանքներում: Հաթական բոլոր միջազգային դաշնագրերում, նաև հատուկ օրենքներում, շեշտակի հիշատակվում էր, որ եթե ստրուկները փախչեին որևէ վասալական կամ հարևան երկիր, վերջինների իշխանները պարտավոր էին փախստականներին բռնել ու վերադարձնել ըստ պատկանելության[158]:

Ստրկության ու ստրկական աշխատանքի մասին մանրակրկիտ կանոններ էին սահմանված Բաբելոնում՝ Համմուրաբիի օրենսգրքում: Ստրկատիրությունը զարգացած էր Ասորեստանում, որտեղ մինչև անգամ, ինչպես հայտնի է պատմական հուշարձաններից, տեղի էին ունենում ստրկական ապստամբություններ:

Չնայած որ աշխատանքի շահագործման տեսակետից ճորտերի կացությունը Արևելքում գրեթե մոտենում էր և նույնիսկ երբեմն հավասար էր ստրուկների վիճակին, բայց և այնպես նրանց միջև էական տարբերություն կար: Ստրուկը միանգամայն զուրկ էր արտադրության միջոցներից, մինչդեռ ճորտն իր տրամադրության տակ ուներ, բացի հողից, սեփական արտադրական միջոցներ: Եթե շահագործվող ճորտի արտադրության արդյունքների որոշ մասն էր դառնում ֆեոդալի սեփականություն, ապա ստրկական աշխատանքի արդյունքներն ամբողջովին մտնում էին նրա տիրոջ ամբարները: Ուստի ստրուկները, չունենալով արտադրության որևէ մի միջոց, լինելով անձնապես անազատ, միանգամայն յենթակա էին տիրոջ բացարձակ տիրապետությանն ու բռնությանը. նրանք անմիջորեն աշխատում էին ֆեոդալի սեփական տնտեսության մեջ, որպես նրա անձնական մշակները:

2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՖԵՈԴԱԼԻԶՄՆ ՈՒ ՍՏՐԿՈՒԹՅԱՆ ԲՆՈՒՅԹԸ.— Հայոց պատմության դուռը Հայաստանում բացվում է ֆեոդալական հասարակական կարգով: Սոցիալ-տնտեսական շերտավորումը Հայկական լեռնաշխարհում սկսվել էր տակավին նախահայկական շրջանում և ապա իր դասակարգային ներհակության արտահայտությունը գտել էր այն ֆեոդալ հասարակության մեջ, որը ներկայացնում էր Խալդական (Ուրարտական) պետությունը: Ուստի հայ էթնիկ տարրը, իր կազմավորման պրոցեսում Հայկական լեռնաշխարհի սոցիալ-տնտեսական իրականության մեջ, դուրս գալով քայքայվող տոհմային հասարակակարգի շրջանակներից, խմորվում էր արդեն վաղուց տեղում գոյություն ստացած ֆեոդալական հարաբերություններում: Այսպիսով, խալդական ֆեոդալիզմին հաջորդել էր հայկական ֆեոդալիզմը: Հայկական ֆեոդալիզմն, ինչպես վերը տե-

տանք, անցել է զանազան էտապներ և արտադրողական ուժերի հարաճուն զարգացման ընթացքում, յուրահատուկ սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմաններում կաղապարվում էր համապատասխան ձևերով, դրսևորվում էր առանձնահատուկ բնորոշ գծերով, սակայն հիմնականում անփոփոխ էր մնում արտադրության ֆեոդալական եղանակը: Այդ տեսակետից հայկական ֆեոդալիզմի զարգացման պատմության մեջ նշեցինք երեք հիմնական շրջան: Ըստ այդ շրջանների սոցիալ-տնտեսական հարաբերությունների և բնորոշվում է ստրկատիրությունը հին ու միջնադարյան Հայաստանում, որ այդ ինստիտուտը թեև չէր հանդիսացել բովանդակ արտադրության հիմքը, ինչպես անտիկ ֆորմացիայի Հունաստանում և Հռոմում, բայց և այնպես նկատելի տեղ էր գրավում արտադրության մեջ, հանդիսանալով տիրապետող ֆեոդալ դասակարգի շահագործման միջոցներից մեկը, ճորտական աշխատանքի շահագործման կից:

Հայկական վաղ ֆեոդալիզմի էտապում, որը մոտավորապես սկսվում է Աքեմենյան տիրապետության ժամանակաշրջանից և տևում է մինչև Արշակունիների հաստատվելը Հայաստանում, հայկական ֆեոդալիզմը դեռևս գտնվում էր իր կազմավորման պրոցեսում, երբ տոհմային հասարակակարգն իր վերջնական քայքայման ընթացքն էր ապրում ու արագ թափով կատարվում էր դասակարգային շերտավորումը գյուղական համայնքի ներսում: Նահապետական ստրկությունը, որը գոյություն ուներ Հայաստանի նախաֆեոդալական պայմաններում, այս շրջանում ավելի ևս զարգանում է, կորցնելով իր նահապետական բնույթը, և աճում է շնորհիվ ֆեոդալիզացիայի պրոցեսի, երբ քայքայված համայնական սեփականատիրության ավերակների վրա բարձրանում է մասնավոր սեփականությունը, և արտադրության գլխավոր միջոցները, առավելապես հողը, կենտրոնանում են տիրապետող դասակարգի ձեռքին, հանձին ֆեոդալ-կալվածատիրական հասարակական վերնախավի: Կալվածատերը, միանգամայն խզելով իր կապերը գյուղական համայնքից, կարող էր սկզբնական շրջանում տնտեսությունն առաջ տանել միայն անմիջորեն իր ձեռքի տակ ունեցած ստրուկների աշխատանքով, որը նրան հնարավո-

բություն էր ընձեռում տիրապետել հողերին իբրև անձնական սեփականության, համայնքից դուրս:

Չնայած վոր ստրկատիրությունը հենց այս ժամանակում էր ավելի զարգացած լինելու, բայց այդ մասին խիստ աղոտ տեղեկություններ ունենք առայժմ մեզ հասած գրավոր հուշարձաններում: Քսենոփոնը 10.000 հույների նահանջի պատմության մեջ հիշատակում է, վոր Հայաստանի ճանապարհներում հույներին ուղեկցում էին գումակի հետ միասին նաև ստրուկներ՝ ἀνδράποδα, իբրև բեռնակիրներ: Անշուշտ, այդ ստրուկները տեղական պարսիկ, գուցե նաև հայ, տարրերից էին: Մովսես Խորենացու մեջ ավանդված ժողովրդական վեպի ասելով՝ հայ Արտաշես Ա․ Թագավորի Թաղման ժամանակ նրա գերեզմանի վրա բազմաթիվ մարդիկ զոհաբերվեցին ըստ տիրող սովորույթի (ՄԽ, II, գլ. Կ և ԿԱ): Անտարակույս, այդ կենդանի զոհերը ստրուկներ էին լինելու, վորոնք գնում էին «հանդերձյալ կյանքը» իրենց տիրոջ հետ միասին. մի հնավանդ սովորույթ, վորի մասին վկայում են հնագիտական պեղումները Հայաստանում Սևանի մարզից[159] և Թոփրակ-կալեյից[160]:

Այս դարաշրջանում Հայաստանի քաղաքական ու տնտեսական կյանքը սերտորեն կապված էր Փոքր Ասիայի հետ, վորտեղ, մանավանդ Իոնիական գաղութներում, ծաղկում էր հին հունական ստրկատիրական տնտեսությունն և վորտեղ այդ ժամանակներն սկսել էր իր աշխարհակալական էքսպանսիան նոր-նոր տարածել նույնպես ստրկատիրական տնտեսության հիմունքներով զարգացող Հռոմը:

Ստրուկների դերը Փոքր Ասիայում խիստ նկատելի կերպով հանդես է գալիս այսպես կոչված Նաբիսի բռնակալ իշխանության ներքո և Արիստոնիկոսի փոքր-ասիական ապստամբության մեջ (Strabo, XIV, 646):

Կան նաև վկայություններ, վոր Սելևկյան տիրապետության ժամանակ Փոքր Ասիայում, որինակ՝ Փռյուգիայում, Ֆեոդալական կալվածատիրություններում ստրկական աշխատանքն էր շահագործվում:

Ստրուկը համարվում էր նաև արժեքավոր ապրանք թե՛ միջազգային առևտրի ասպարեզում և թե՛ պետությունների ու ժո-

գավառների անտեսության մեջ, երբ ամենակարևոր ու ան-հրաժեշտ «արտադրական ուժերը»: Տիգրան Մեծը, վոր հին արևելյան աշխարհակալների տիպի բռնապետ– ֆեոդալ եր, լայ-նացնում եր Հայաստանի պետական սահմանները և լցնում յեր-կիրն անվերջ գերիների և ստրուկների շարքերով ու դրանց մի-ջոցով զարկ տալիս յերկրի արտադրողական ուժերին: Նա, մի-նալով իր դաշնակից Միհրդատ Պոնտացու, հին Հռոմի այդ քա-ջամարտիկ ախոյանի, ու հռոմեյական էքսպանսիայի Արևելքում այնքան ակտիվորեն դիմադրողի հետ, ինքն էլ կատարյալ պայ-քար եր մղում Հռոմի դեմ: Նրանք յերկուսը նույնիսկ Փոքր Ա-սիայի ստրուկներին օգտագործում եյին ընդդեմ Հռոմի: Միհր-դատը Հռոմի դեմ իր վարած պատերազմներում հաջո-ղություն եր ունենում Փոքր Ասիայի հունական քաղաքներում շնորհիվ այն բանի, վոր, գրավելով այդ յերկրները, անմիջապես ազատություն եր տալիս ստրուկներին, իսկ տեղ– տեղ ստրկա-տերերին դարձնում եր ստրուկ և հանձնում ի սեփականություն նախկին ստրուկներին[161]: Այդ ստրկական շարժումը վկայում ե, թե ինչ մեծ չափերի յեր հասել ստրկատիրությունը Փոքր Ասիայում, վորին հարևան եր և վորի հետ քաղաքական–տնտե-սական հարաբերություններով կապված եր Հայաստանը. այստեղ էլ, անտարակույս, նույն պայմաններում զարգանում յեր ստրկական ինստիտուտը:

Յերկրորդ շրջանը՝ նախարարական ֆեոդալիզմն է իր նա-խարարական իրավունքով, վոր սկսվում է Արշակունիներից և ձգվում մինչև արաբական տիրապետության դարաշրջանը: Այս ետապում ֆեոդալիզմն արդեն վերջնականապես ձևավորվել եր, ներծծելով իրանա-պարթևական ֆեոդալիզմի բնորոշ գծերը, վո-րոնցից մեկն էլ, ինչպես վկայում են հին պատմական աղբյուր-ները, ստրկատիրությունն եր: Արշակունիների դինաստիան, հաստատվելով Հայաստանում, ձգտում եր ստեղծել այստեղ նախարարություններին փոխարինող թագավորական կենտրոնա-ձիգ իշխանություն ըստ պարթևական ֆեոդալական ձևերի, վորտեղ սոցիալ– տնտեսական հարաբերությունները մեծ չափե-րով խարսխված եյին ստրկական աշխատանքի շահագործման վրա: Հիրավի, հին պատմագիրներ Պլուտարքոսը և Յուստինը

հիշատակում են պարթևների մոտ զարգացած ստրկության մասին։ Իրանա-պարթևական ֆեոդալիզմը, շնորհիվ արևելյան երկրների յուրահատուկ անշարժության, որը շեշտել են Կ. Մարքսը ու Ֆ. Էնգելսը, բնորոշվում է նրանով, որ երկրի սոցիալ-տնտեսական կառուցվածքում ֆեոդալական շահագործման ձևերը շաղկապվել էին ստրկության հետ։

Սակայն, մյուս կողմից, երբ 387 թ. Հայաստանն Արշակունյաց հարստության վերացումով բաժանվեց Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև, Հայաստանի, մանավանդ նրա արևմտյան մարզերի, քաղաքական-տնտեսական կյանքի վրա սկսում է ներգործել բյուզանդական կուլտուրան։ Նախապարսկական ֆեոդալիզմը Բյուզանդիայի անմիջական իշխանության ներքո գտնվող մասում սկսում է ներծծել նաև բյուզանդական ֆեոդալիզմի տարրերը։ Իսկ Բյուզանդիոնը, այդ արևելյան Հռոմեական կայսրությունը, ինքնին ներկայացնում էր արևելյան տիպի բնորոշ ֆեոդալական պետություն։ Այստեղ արտադրության ֆեոդալական եղանակի հետ միասին ծաղկում էր ստրկական շահագործումը, որն իր եյական դերով այնքան էլ չէր տարբերվում Արևելքի մյուս ֆեոդալ երկրներում եղածից, մանավանդ, որ Բյուզանդիոնն իր ֆեոդալ-պետական կառուցվածքում վորոշ չափով յուրացրել էր Սասանյան ֆեոդալիզմի հիմնական տարրերը։

Մի շարք վավերագրեր, ինչպես Պրոկոպիոսի «Anecdota»-ն, կայսրների օրենսդրական նովելլաները, եգիպտական պապիրուսները, պատկերացնում են բյուզանդական յուրահատուկ ֆեոդալիզմի զարգացման պրոցեսը։ Այդ ֆեոդալիզմը գոյացել է ստրկատիրական հարաբերություններից վո՛չ թե սրանց վերացման պայմաններում, այլ սրանց վերասերմամբ, պահպանելով ստրկատիրական հիմքի վերապրուկները։

Հայաստանի պատմության այս երկրորդ շրջանում բացարձակապես տիրում է արտադրության ֆեոդալական եղանակը։ Անմիջական արտադրողներն էին հանդիսանում գյուղական համայնքները, վորոնք արդեն կորցնելով իրենց վաղեմի ազատությունն ու համայնական հողային սեփականությունը, դարձել էին նախարարներից կախված շինականներ։ Ուստի ստրուկները

սոցիալ-տնտեսական այս պայմաններում հետզհետե կորցնում են իրենց նախկին տնտեսական նշանակությունը: Նրանցից շատերը դառնում են ճորտեր և նույնպես յենթարկվում ֆեոդալական շահագործմանն իբրև չինականներ, վորոնք նստած են նախարարական հողերի վրա: Բայց և այնպես ստրկությունը չի վերանում իսպառ: Նա դեռևս առավելապես տնային տնտեսության մեջ և կալվածական տնտեսության վորոշ ճյուղերում շարունակում է մնալ վորպես «կենդանի գործիք»: Այս շրջանից մեզ հասած պատմագրական հիշատակարանները, չնայած իրենց սուղ և միջանկյալ տեղեկություններին, հաստատում են ստրկության ինստիտուտի գոյությունը Հայաստանում:

Յերրորդ շրջանը սկիզբն է առնում արաբական տիրապետությունից, յերբ նախարարություններն արդեն սկսել էյին ամրանալ, և Բագրատունյաց թագավորության անկումով նրանց փոխարինել էյին բազմաթիվ մեծ ու փոքր իշխանական ու ավատական տներ: Սրանք, իբրև տեղական ֆեոդալներ, ցրված էյին նախկին Հայաստանի տերիտորիայում, ուր հաջորդաբար կամ միջանկումներով տիրում էյին զանազան արաբական, թուրք-մոնղոլական, թաթարական և այլ նվաճողներ: Այս շրջանում է սկիզբն առնում նաև ֆեոդալիզմի առաջնային քայքայման պրոցեսը առևտրա-վաշխառուական կապիտալի առաջխաղացմանը զուգընթաց: Ստրկությունը կորցնում է իր նախկին նշանակությունն իբրև արտադրական «գործիք», քանի վոր ճորտ-գյուղացին այն ժամանակ ավելի շահավետ եր կալվածատեր-ֆեոդալի համար: Սակայն Հայաստանում ստրուկն այժմ ստանում է այլ արժեքի նշանակություն: Նա առևտրա-վաշխառուական կապիտալի հետզհետե ծավալման պայմաններում դառնում է ապրանք, տուր և առի առարկա, վոր արտահանվում եր Արևելքի ու Արևմուտքի համաշխարհային վաճառանոցները, վորտեղ միշտ կենդանի ապրանքների յեռուն առաջարկ ու պահանջարկ եր լինում: Ուստի այս շրջանում անվերջ պատերազմները, նվաճումները, ասպատակումները գերեվարության ու ստրկավաճառության հարուստ աղբյուրներ էյին: Այդ տեսակետից բնորոշ եր Կիլիկիան, վորտեղ մի ժամանակ վերականգնել եր հայ ֆեոդալական մի պետություն, վորը Արևմուտքի առևտրական կապիտա-

լի շահատակությունների լայն ասպարեզ էր դարձել համաշխարհային առևտրում աչքի ընկնող Վենետիկի և ապա Ջենովայի շնորհիվ:

Չնայած որ ստրկությունը վերջին շրջանում, կորցնելով իր վաղեմի տնտեսական ու սոցիալական նշանակությունը, նվազել էր, բայց և այնպես մեր մատենագրական հուշարձաններում պահպանվել է այս շրջանից համեմատաբար ավելի բազմակողմանի տեղեկություններ: Բավական է միայն հիշատակել, որ մենք ունենք մի շարք դատաստանագրքեր, ինչպես Մխիթար Գոշի, Սմբատ Գունդստաբլի, Անանիա Անտիոքա, Ասորա-Հռոմեական և այլն, որոնց մեջ ստրկության ինստիտուտին հատկացված են առանձին հոդվածներ, և որոնց նորմավորման են ընթարկվել ստրուկների ու տերերի փոխադարձ հարաբերությունները: Այդ օրենսդրական նորմերը, ինչպես օրինակ՝ Մխիթար Գոշի Դատաստանագրքում յեղածները, թեև մեծ մասամբ վերցված են օտար աղբյուրներից, մովսիսական, ասորա-հռոմեական և այլն, այնուամենայնիվ այստեղ, մանավանդ Սմբատ Գունդստաբլի Օրենսգրքում, գտնում ենք նաև հին հայկական կամ այս շրջանին համապատասխան սովորույթների հիման վրա ընդունված, զուտ տեղական ու ժամանակակից բնույթ կրող վորոշումներ ստրուկների վիճակի մասին:

Հին հայ մատենագիրները ստրուկների մասին հիշելիս՝ սովորաբար գործածում են ընդհանուր դարձվածքներ. «ստրկութեան ծառայութիւն», «ի կարգի ստրկութեան», «ի ստրկաց կարգի ծառայութեան», վորով նշում են նրանց սոցիալական դրությունը: Այս տերմինները ավելի ցայտուն են դառնում, յերբ նույն մատենագիրները Հին Հայաստանի մյուս դասակարգերի սոցիալական հարաբերությունների վերաբերմամբ գործածում են նրանց դրությանը համապատասխան դարձվածքներ, ինչպես օրինակ՝ հայ նախարարների ու ազնվականների մասին— «ի պատուոյ ծառայութիւն», վորով ընդգծվում է նրանց ֆեոդալական հիերարխիական փոխադարձ կախումը. իսկ շինականների կամ մյուս վոչ արտոնյալ դասակարգերի վերաբերմամբ— «ի հարկի ծառայութիւն», վոր ցույց է տալիս նրանց դրությունը, վորպես ճնշման, տանջման ներքո գտնվողների:

*Ինչպես նկատում ենք այս տերմիններից, վերոհիշյալ յերեք տեսակ ծառայությունները ներկայացնում են սոցիալական տարբեր հարաբերություններ, որտեղ «ծառայություն» բառը արտահայտում է փոքր կախումն, ստորադրյալ դիրքավորումն յերկու տարբեր աստիճանների վրա կանգնած անձերի միջև :*

*Այդ հիմունքով հայ պատմագիրները ստրուկների կախումն իրենց տերերից որակում եյին՝ «ծառայութիւն ստրկութեան» կամ «ի ստրկաց կարգի ծառայութիւն» բառերով: Այսպիսով, ստրկությունը ծառայություն եր համարվում, ուստի և ստրուկները հորջորջվում եյին «ծառայ» տերմինով, իսկ ստրուկ մասսան կոչվում եր «ծառայորեար», հավաքականով «աղատո-րեար»-ին, այսինքն ազնվական դասին:*

Ստրուկ *տերմինի լեզվաբանական վերլուծումը տակավին սպառված չէ: Կան մի քանի փորձեր զանազան բանասերների կողմից, բայց այդ բացատրությունները դեռևս անբավարար պետք է համարել: Հայկազյան Բառարանում* ստրուկ *տերմինը դուրս է բերվում* ստորին *բառից: Մի փոքր ընդունելի յե Մյուլլերի ստուգաբանությունը, ըստ որի* ստրուկ *բառը ծագում է սանսկրիտ* çatru *բառից, որ նշանակում է* թշնամի *կամ* star *(սանսկրիտ) բառից, որ նշանակում է ցրվել, գետին նետել, գետին խփել. ըստ այդմ, ուրեմն, «ստրուկ» նշանակում է* գետին զարնված, տապալված գերի *(«Հայերեն արմատական բառարան»)* :

*Սակայն «ստրուկ» տերմինի հետ միասին գտնում ենք հին հայ պատմագրության մեջ նաև մի այլ տերմին՝* ընդոծին :

*Մովսես Խորենացին, խոսելով հայերի ծագման մասին, առաջ է բերում առասպելական պատմություն, թե Հայկ նահապետը մտավ Արարատյան յերկիրը «հանդերձ որդւովք իւրովք և դստերօք և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք՝ թուով իբրև երեքհարիւր և, այլովք* ընդոծնօք, *և եկօք յարեցելովք ի նա, և բոլոր աղխիւ» (ՄԽ, I, գլ. Ժ, եջ 35): Այդ առասպելաբանության մեջ գտնում ենք մի հին ավանդություն տոհմա-ցեղային հասարակության մասին, որ յեղել է Հայաստանի արխայիկ շրջանի ազգաբնակությունը: Միևնույն ժամանակ այդ ավանդության մեջ արտացոլված է մի հիշատակումն, որ տոհմի կամ*

ցեղի մեջ քրել են նաև այնպիսի սոցիալական տարրեր, ինչպես ընդոծինները, որոնք, անշուշտ տոհմիկներ չէին, հակառակ պարագայում նրանք առանձնակի չէին հիշատակվի:

Մովսես Խորենացու նկարագրությունից պետք է հետևցնել, որ տոհմի մեջ, բացի արյունակից տոհմիկներից, կային նաև տոհմի հետ կապված այլ տարրեր, այն է՝ ընդոծինները: Այս բառի վերջին ածանցը ծին (այստեղից՝ ծնել, ծնունդ և այլն) լեզվաբանորեն համապատասխանում է հունական genos, լատինական gens և հին գոթական kuni բառերին, որ նշանակում է մեր առումով տոհմ: Հետևապես, ծին բառի իմաստավորումն է տոհմ: Թերևս այդ ծին բառի մեջ պետք է տեսնել ավելի հին հայկական տերմին, քան թե իրանական tauma բառից ծագած հայերեն տոհմ տերմինը կամ հոմանիշ zana բառից հայերեն-ազն տերմինը, որոնք այնքան գործածական էին հին Հայաստանում:

Ընդունելով, որ ծինը տոհմի իմաստավորումն է համեմատաբար ավելի հին տերմինով, հիմք կունենանք հետևցնելու, որ ընդոծին ասելով՝ պետք է հասկանալ այն բոլոր անձերը, որոնք պատկանում են տոհմին: Սակայն այդ պատկանող անձերը զտարյուն տոհմիկներ չէին, ապա թե ոչ միտք չկար Մովսես Խորենացու խոսքերում՝ «որդիների, որդիների որդիների և դուստրերի» կողքին, որոնք հարազատ տոհմակիցներ էին, առանձին հիշատակել նաև ընդոծիններին: Ուրեմն սրանք խորթ, օտար տարրեր էին: Սակայն ուշադրության առնելով տոհմային հասարակության սոցիալական կազմը, որի համայնքը բաղկացած էր սոսկ արյունակից ազգակցությամբ միացած տարրերից, պետք է կռահել, որ օտար մարդը չէր կարող այդ համայնքի մեջ իրավահավասար անձ լինել: Հետևապես, այդ օտարները, որոնք տոհմին խորթ էին ազգակցությամբ, կարող էին լինել այնպիսի տարրեր, որոնք կցվում, միացվում էին համայնքին իբրև դրսից ձեռք բերվածներ: Ահա այդ իմաստն է պարունակում ընդոծին տերմինը, որ բառացի նշանակում է տոհմին պատկանող: Իսկ ձեռք բերվել կարող էին միայն գերիներ, որոնք, եթե չէին ոչնչացվում, անշուշտ, դառնում էին ստրուկներ: Ուստի ընդոծին ասելով, պետք է հասկանալ ստրուկ-

ներ, նաև նրանք, վորոնք ծնվել էյին տոհմիկի և ստրկուհու սեռական հարաբերությունից, սնվել տիրոջ տանը և դարձել էյին տոհմին պատկանողներ: Ընդոծինների սոցիալական դրությունը պարզորոշ հետևում է Մովսես Խորենացու այն խոսքերից, թե Հայկը պարգևեց իր թոռ Կադմոսին «չիւրոց ընդոծնացն արս առուանիս». ուրեմն ընդոծիններին կարելի յեր նվիրաբերել, իսկ նվիրաբերել կարելի յեր վո՛չ թե տոհմիկ տարրերն, այլ օտարից ծնվածը, վորն, ինչպես ստրուկ, գույք էր և կարելի յեր օտարել: Ընդոծին տերմինի լեզվաբանական զուգահեռը գտնում ենք հին հունական οἰκογενής բառի մեջ, վոր նշանակում է տնածին: Այդպես էյին կոչվում Հին Հունաստանում այն ստրուկները, վորոնք ծնվել ու մեծացել էյին իրենց տիրոջ տանը: Նույն նշանակությունն ունի հին հռոմեյական domi natus տերմինը, վորով կոչվում էյին տիրոջ տանը ծնված ստրուկները:

Հին Հայաստանի իրականության մեջ ստրուկ կանայք սովորաբար կոչվել են աղախին: Սրա ծագումը, աղխ— alX. բառից է, վոր նշանակում էր կարասի, սեփականության առարկա, նմանապես տուն, իսկ աղխ— alX բառն էլ գոյացել է haXl արմատից, վոր փոքր-ասիական ծագումն ունի և նշանակում է տուն. այստեղից էլ վրացերեն saXl— տուն: Հետևապես անձն էլ, մասնավորապես կինը, վոր կապված է տան հետ, յերբ դառնում է սեփականության առարկա, դասվում է alX=աղխ-ի շարքում, այսինքըն՝ տանուտիրոջ պատկանող, ստրկացած, անազատ կինը ստանում է «ծառայի» հոմանիշ «աղախին» անունը, վոր նշանակում է տնային ստրկուհի: Հիրավի վրացերեն moaXle բառը, վոր նույն արմատից է, նշանակում է աղախին: Այս լեզվաբանական ակնարկը մեզ տանում է դեպի աղխ= աղախ= աղախին բառի սոցիալական մեկնակետին և հիմք է տալիս կռահելու, վոր «աղխ» ավելի հին լինելով, քան թե «աղախին» բառը, այնուհանդերձ նույն սոցիալական իմաստավորումն ունի և այդ իմաստով էլ գործածվել է Մովսես Խորենացու վերոհիշյալ պարբերության մեջ «ընդոծինների» հետ միասին: Մի այլ տեղ Մովսես Խորենացու գործածած աղխ տերմինը պարզապես ցույց է տալիս, վոր կանանց է վերաբերում. «Զի կամ մեռցուք, և աղխ մեր 'ի ծառայութիւն Բէլա կացցէ» (Մխ, I, գլ. ԺԱ, էջ 38):

Բնորոշ է, որ այր ու կին ստրուկները սովորաբար տարբերվում են սեռական անուններով այն բոլոր ժողովուրդների մեջ, ուր ընդհանրապես գոյություն է ունեցել ստրկությունը: Ինչպես հին Հայաստանում այր ստրուկները կոչվում էին «ծառա», իսկ կին ստրուկները «աղախին», այնպես էլ միջնադարյան Եվրոպայում՝ servus և ancilla. Թյուրք-մոնղոլական ժողովուրդների մեջ այր ստրուկները հայտնի էին gul, իսկ ստրկուհիները kun անունով. Նմանապես հին սլավ ժողովուրդների մեջ холоп և раба, իսկ հետագայում՝ раб և рабыня. Նախնական այդ роб (роба) բառը միևնույն արմատից է робить, робливать հին սլավոնական բառերի հետ, որոնց իմաստը կապված է երկրագործական աշխատանքի հետ (տե՛ս Даль-ի բառարանը) և նշանակում է վարել, հերկել, ցանել և այլն: Այս պարագան հիմք է տալիս ենթադրելու, որ ստրկության սոցիալական գենեզիսը պետք է փնտրել կնոջ մեջ: Ինչպես վաղ նախնադարյան առաջին երկրագործն եղել է կինը, նույնպես էլ առաջին ստրուկները եղել են կանանցից: Այս ենթադրությունն ավելի իրական է դառնում, երբ մտաբերենք, որ ստրկության նախնական ձևը կրել է տնային բնույթ, ասպարեզ գալով իբրև նահապետական ստրկություն:

Երբ համեմատության ենք առնում հայկական ֆեոդալիզմի ստրկության վերաբերյալ հիշյալ տերմինները Արևմտյան Եվրոպայի միջնադարյան ֆեոդալիզմի պայմաններում տակավին գոյություն պահպանած ստրկության հետ, գտնում ենք տերմիններ, որոնք նույն իմաստավորումն են ներկայացնում: Ինչպես հայտնի է, հին Հռոմում ստրուկը կոչվում էր servus, և ահա այդ լատինական բառից է գոյանում ֆեոդալական իրականության մեջ ֆրանկների servage տերմինը— ճորտություն, որի իմաստը նույնն էր, այսինքն՝ գյուղացին, ճորտը անազատ է: Իսկ ֆեոդալական ստրկությունն ուներ այլ տերմին՝ esclavage, որ բխում է sclavus բառից:

Այն տվյալները, որ գտնում ենք հայ մատենագրության մեջ Հայաստանի ֆեոդալական ստրուկների շահագործման վերաբերմամբ, մեզ հիմք են տալիս ստրուկներին բաժանել հետևյալ տեսակների. ա) արքունի ստրուկներ. բ) ճորտացած ստրուկներ.

գ) անային ստրուկներ՝ ծառաներ ու աղախիններ. դ) տաճարական կամ եկեղեցական ստրուկներ:

3. ԱՐՔՈՒՆԻ ՍՏՐՈՒԿՆԵՐ — Հին հայ պատմագրական մի քանի միջանկյալ տեղեկություններից երևում է, որ նախարարական Հայաստանում գոյություն են ունեցել այսպես կոչված արքունի ստրուկներ: Բերենք այդ վկայություններից երկու օրինակ:

«Այլ սուրբ կաթողիկոսն Ներսէս այլ ոչ ևս յաւել տեսանել զերեսս թագաւորին Արշակայ մինչև յօրն նորին կորստեան. այլ փոխանակ Ներսիսի զՉունակ ոմն անուն, և կացուցին փոխանակ նորա գլուխ քրիստոնէութեանն. և էր ստրուկ 'ի ստրկաց արքունի» (ՓԲ, IV, գլ. ԺԵ, էջ 127):

«Նա և ի մէջ բերէր զամբաստանութիւն նորա Մուշկան Նիւսալաւուրտ, և յայտ առնէր պատերազմակից ընկերօքն իւրովք, որ և յետ վճարելոյ պատերազմին բազում արիւն եւս յեղուլ Վասակ. թէ որպէս սուտ երդմամբք խաբէր և խնուցանէր յամրոցաց անտի. էր՝ զոր կոտորէր և էր՝ զոր գերի առնէր զծառայս և զաղախնայս արքունի» (ԵՂ, VII, 235):

Փավստոս Բուզանդացին ու Եղիշեն, ըստ հայ պատմագիրների սովորության, չեն բացատրում, թե ի՞նչ են արքունի ստրուկները կամ արքունի ծառաները: Այստեղ կարելի է երկու տեսակ ենթադրություն անել: Այսպես էին կոչվում կամ թագավորին անձնապես պատկանող ստրուկները և կամ արքունիքին, այսինքն մեր ներկա առումով պետության, թագավորի իշխանության ենթակա տերիտորիային պատկանող ստրուկները: Կարծում ենք, որ ավելի ընդունելի է երկրորդ ենթադրությունը: Եթե թագավորին անձնապես պատկանող ստրուկները կոչվեին արքունի, ապա պետք է սպասեինք, որ մյուս ֆեոդալներին պատկանողներն էլ հորջորջվեին իրենց համապատասխան ձևով, այն է՝ նախարարական ստրուկ, բդեշխական ստրուկ, կաթողիկոսական ստրուկ և այլն, մի բան, որ ընավ չենք գտնում հայ պատմագիրների մոտ: Ուստի պետք է այն հետևության հանգենք, որ այս դեպքում ստրուկները կոչվում էին «արքունի»— հասարակական-պետական առումով:

Իսկ արքունի սանլով՝ Հայ պատմագիրները միշտ նկատի յեն ունեցել թագավորի անմիջական իշխանության յենթակա տերիտորիան։

Այդ տեսակ սորուկների գոյությունը սովորական է յեղել Հին Արևելքի պատմության մեջ։ Բաբելոնաստանում, Ասորեստանում, Եգիպտոսում կային թագավորական սորուկներ, վորոնք աշխատեցվում եյին ջրանցքների, ճանապարհների, պետական-հասարակական շենքերի, բերդ-ամրոցների կառուցման և այլ նման հանրային շինարարական ձեռնարկությունների վրա։ Նույնն ենք տեսնում սորկատիրական Հունաստանում (իլոտները Սպարտայում) և Հռոմում, ուր քաղաքային համայնքները հանդիսանում եյին կոլեկտիվ տերեր այդպիսի սորուկների, վորոնք համարվում եյին վո՛չ թե անհատներին պատկանող, այլ համայնք- պետության։ Վերջապես Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմին եւ հայտնի յեն այսպես կոչված homines regii, վորոնք թեև սորուկներ չեյին նեղ առումով, այլ ավելի շուտ թագավորական-պետական ճորտեր, բայց նրանք ամենայն հավանականությամբ նախորդ, ավելի վաղ ֆեոդալիզմի շրջանում գոյություն ունեցող պետական կամ թագավորական սորուկներից եյին։

Այս կատեգորիայի սորուկների ծագումը պետք է վորոնել նախկին տոհմային հասարակության մեջ, յերբ դյուղական համայնքները, բացի առանձին տնտեսություններին պատկանող սորուկներից, իրենց կոլեկտիվ սեփականության ներքո ունեյին մյուս արտադրական միջոցների շարքում նաև սորուկներ։ Հետևապես հիմք ունենք կռահելու, վոր արքունի սորուկները Արշակունյաց հարստության շրջանում հանդիսանում եյին արքունական տերիտորիայի թագավորական սորուկներ, վորոնք գործադրվում եյին հասարակական-պետական կարիքներին ծառայող աշխատանքներում և, մանավանդ, թագավորի կալվածքներում գործող ձեռնարկությունների մեջ, այն է՝ զանազան հանքային ընդերքի, ջրաղացների, ձկնորսարանների և այլն։ Փավստոս Բուզանդացին հիշատակում է իր Պատմության մեջ թագավորական ձկնորսարանի մասին. «Եւ դիպեցան [Հայ և պարսիկ զորքերը] միմեանց առ ափն ծովուն Բզնունեաց, յԱռեստն աւանի, 'ի

ձկնատեսանսն արքունի ի վերայ գետակին» (III, գլ. Ը, էջ 19)։

Աղվանից յերկրում, որը իր սոցիալ-տնտեսական կուլտուրայով ու քաղաքական բախտով սերտորեն կապված էր Հայաստանի հետ, տեսնում ենք ստրուկներ, որոնք միանգամայն համանիշ են հայ պատմագիրների հիշատակած արքունի ստրուկներին և գործադրվում էին հասարակական-պետական աշխատանքներում։ Այդ մասին վկայում է Փավստոս Բուզանդացին իր Պատմության մեջ հայոց Արշակ թագավորի որդի Պապի իշխանության շրջանից։

«Բայց մինչ դեռ խռնեցեալ կային զօրքն Պարսից ի վերայ Հայոց և Ուռնայր արքայ Աղուանից իւրով գնդաւն ընդ նոսա, խօսէր թագաւորն Աղուանից ընդ այնոսիկ՝ որ ընդ իւրն էին, ասէր. Յանձն լիցի ձեզ, յիշելով ի ժամանակի՝ իբրև ձերբակալ արասջիք զզօրսն Յունաց, զբազումս ի նոցանէ արկեցուցջիք. զի կալեալս կապեալս տարցուք յաղթանս [մի այլ ձեռագիր օրինակում՝ յԱղուանս] ի գործ կաւագործութեան զաղատոս արմաշէնս պիտոյից մերոց քաղաքաց ապարանից և այլոց պիտոյից» (ՓԲ, V, գլ. Դ, էջ 197)։

Այս մեր յենթադրությունն արքունի ստրուկների մասին ավելի ևս հաստատվում է, յերբ ուշադրության առնենք Ղազար Փարպեցու և Եղիշեի վկայությունները Աբրահամ Խոստովանողի ու Խորեն յերեցի մասին, որոնք պարսից Հազկերտ Բ. Թագավորի (439—457 թ. թ.) հրամանով, մազդեզական կրոնը չընդունելու համար, աքսորվել էին Ասորեստան աշխատելու, որպես «արքունի մշակներ»։ Այստեղ «մշակ» բառը, մեր կարծիքով, ունի ստրկի իմաստ և ո՛չ թե շինականի, ինչպես յենթադրում է պրոֆ. Հ. Մանանդյանը[162]։ Աբրահամ Խոստովանողի ու Խորեն յերեցի մարտիրոսագրության մասին, որի առնչությամբ էլ գործածվում է «մշակ» բառը, առաջ բերենք հետևյալ հատվածները. «մտեալ ի ներքս Դենշապուհ պատմէր թագաւորին Յազկերտի զամենայն բանս և խնդիրս երանելի երիցանցն. և թագաւորն հրաման տուեալ ասէ... երկիր պագցեն արեգական և պատուել զկրակն՝ ... արձակեսցին յաշխարհն իւրեանց. ապա թէ չհաւանեսցին՝ պատուհաս կրեսցին խեղութեամբ և երթեալ յԱսորեստան մշակութիւն արասցեն ընդ արքունի մշակսն». այնու-

հետ՝ «կտրեալ զերկոցունց զականջսն՝ ետուն տանել յԱսորես-տան ի գաւառն, որ անուանեալ կոչի Տափուլ, կալ անդ նոցա ի հարկի և տանել մշակութիւն արքունի» (ՂՓ, II, գլ. ԾԸ, էջ 230, 231):

«Իսկ աշակերտք երանելեացն ի կապանս կային ի քաղաքին: Եկն դահճապետ մի արքունի և եհան զնոսա քաղաքէն անտի ար-տաքս... Զարչարեաց զնոսա գանիւ... կտրեաց զնոսա ունչս և զականջս և ետ տանել յԱսորեստան զի կայցեն ի մշակութեան արքունի» (Եղ., 237):

Այս հատվածներից հետևում է, որ Աբրահամ Խոստովա-նողն ու Խորեն երեցը ձերբակալված էին ու կապանքի մեջ ե-յին, բացի այդ՝ ենթարկվում էն ծեծի «գանիւ», ապա կտրում են նրանց ականջները (ըստ Եղիշեի՝ նաև քիթը) և վերջապես ար-տորում պարսկական Ասորեստան՝ «արքունի մշակության»: Ինչ-պես գիտենք հին աշխարհի ստրկատիրական կյանքից, ստրկու-թյունը կիրառվում էր նաև իբրև պատժական միջոց, նմանապես ստրուկներին խարում էին: Ուստի, պետք է ենթադրել, որ Աբրահամ Խոստովանողն ու Խորեն երեցը, իբրև քաղաքական հանցավորներ, թագավորի դեմ ըմբոստներ, ենթարկվում են խստագույն պատժի, այն է՝ ստրկության, որի համար էլ խարվում են (ականջները կտրվում) և ապա աքսորվում են այն-տեղ, ուր, ամենայն հավանականությամբ, դաժանագույն աշխա-տանքներ էին կատարվում «արքունի ստրուկների» միջոցով, վո-րոնց շարքում, ըստ վերոհիշյալ պատմագիրների վկայության, կա-յին նաև շատ քրիստոնյա «արքունի մշակներ»: Հիրավի, այդտեղ քրիստոնյա «արքունի մշակների» օգնությամբ Աբրահամն ազա-տություն է ստանում (Խորեն երեցն այդ միջոցում վախճան-վում է, չդիմանալով դաժան պայմաններին), փրկանք հատուց-անելով, որը հավաքել էին այդ «արքունի մշակներն» իրենց մեջ: Իսկ փրկանքով ազատվել կարող էին միայն ստրուկները և ոչ թե շինականները կամ ճորտերը, որոնք անպայման կապ-ված էին հողի հետ:

Պրոֆ. Հ. Մանանդյանը, հիմնվելով Ղազար Փարպեցու վե-րևում բերված՝ «կալ անդ նոցա ի հարկի» խոսքերի վրա, հակա-ռակ Ս. Մ. Փարազաշյանի կարծիքի, պնդում է, որ Աբրահամ

Աստվածորդի համար վճարված գումարը փրկանք չի լինել, այլ այն հարկն է, վոր նա, «ի հարկի ծառայութեան» մեջ գտնվելով՝ իբրև չինական, պետք է վճարեր ցմահ: Ընդհակառակը, Ղազար Փարպեցու «կալ անդ նոցա ի հարկի» պետք է հասկանալ վո՛չ թե հարուցանելի հարկի առումով, վորը գրված կլիներ «ի հարկի ծառայութիւն» խոսքերով, այլ նշանակում է հարկադրանք, բռնի սարքում, հարկադրական ճնշում: Յեվ վերջապես, յեթե այդ հարկ էր, ապա ի՞նչպես էր չափվելու այդ «հարկը» ցմահ, յերբ վոչ վոք չէր կարող կանխորոշել, թե վո՛րքան էր ապրելու նրա կյանքը, իսկ ազատագրումը կարող էր կիրառվել միմիայն ստրուկների նկատմամբ, յերբ հատուցվում էր այն փրկանքը, վորով չափվում էր ստրկի արժեքը:

«Մշակ» բառի ստրկի առումով կիրառելը գտնում ենք նաև Զենոբ Գլակի՝ «Պատմութիւն Տարօնոյ» յերկի մեջ: Հայոց կաթողիկոս Գրիգոր Լուսավորչին ուղղված մի նամակում, ի միջի այլոց, բերվում են հետևյալ խոսքերը.

«Բայց արդ աղաչեմ զքեզ, երջանիկ մշակդ աստուծոյ, զի հրամայեսցես միում ի պաշտօնէիցդ քոց՝ մեզ գրով առաքել զբացատրութիւն ձեռամբ ճանապարհորդութեան...» (գլ. ԶԳ, էջ 17): Այստեղ «մշակ աստուծոյ» բառերը գործածվում են իբրև համանիշ «ծառայ աստուծոյ» տերմինի, servus dei, раб божий— ստրուկ աստուծոյ իմաստով, վոր այնքան գործածական է մինչև մեր օրերը կրոնա-եկեղեցական տերմինաբանության մեջ իբրև տիտղոս հոգևոր անձերի:

Վերջապես «մշակ» բառի ստուգաբանական վերլուծումն էլ մեզ բերում է նրա «ստրուկ» իմաստավորմանը: «Մշակ» բառն ազգաբանական ծագումն ունի, հանդիսանալով ցեղական անուն, և բխում է Մասխ, Մոսխ, կամ Մուշկ ժողովրդի անունից (այստեղից էլ Մուշ քաղաքի հնագույն անունը Տարոնում), վորոնք ապրում էր Հին Հայաստանի սահմաններում: Արմենները, հետզհետե գրավելով Հայաստանը, նվաճում են տեղաբնակ ժողովուրդների շարքում նաև մոսխերին, վորոնք բոլորը չէին կարողացել ճողոպրել ու գաղթել այժմյան Վրաստանի սահմանները: Հաղթական նվաճողները շահագործում են այդ ստրկացված ու ճնշված ցեղը, վորին աշխատեցնում էր յերբեմնի

իրեն պատկանած, իսկ այժմ նվաճողների
զավթած հողերի վրա, անշուշտ, ստրկական միճո-կում: Այստեղից էլ Մոսխ-Մուսկ-Մուշկ ցեղային անունը լեզվաբանական հնչյունափոխությամբ դառնում է «մշակ», նշանակելով ընդհանրապես տարադաս աշխատող, ստրկացրած հպատակ, որ այնուհետև ստանում է հասարակ անվան իմաստ (ААЮ, էջ 436): Հիրավի, մինչև վերջին ժամանակներն, ինչպես վկայում են ազգագրական տվյալները, հայ գյուղական կենցաղում, մանավանդ արևմտահայերի մեջ, մշակ էյին կոչվում այն սևազործ բանվորները, վորոնք յերկարատև վարձվում էյին թե՛ տնային և թե՛ դաշտային ու այլ գյուղատնտեսական աշխատանքների համար:

4. ՃՈՐՏԱՑԱԾ ՍՏՐՈՒԿՆԵՐ. — Հին Հայաստանի արտադրության տիրապետող ճյուղերն էյին յերկրագործությունն ու անասնապահությունը, վորոնք բացարձակապես բնատնտեսություն էյին հանդիսանում: Ահա այդ ասպարեզումն էր չահագործվում գլխավորապես ստրուկների աշխատանքը: Սակայն միանգամայն տարբեր էր ստրկական աշխատանքի կիրառումը տոհմային հասարակության ու ֆեոդալական հասարակության մեջ: Նախաֆեոդալական հասարակության մեջ ստրուկը զուրկ էր արտադրության միջոցներից, ինքն էլ իր անձով դառնում էր յուրատեսակ արտադրական միջոց, «կենդանի» գործիք, վոր ստրկատերը — լիներ նա առանձին նահապետական գերդաստանը կամ գյուղական համայնքը — անխտիր կիրառում էր սեփական տնտեսության բոլոր ճյուղերում, մանավանդ գյուղատնտեսության բնագավառում, յերբ տոհմի քայքայումով դեռևս հողային հարստությունները այնքան մեծ չափերով չէյին կենտրոնացվել առանձին անհատների սեփականատիրության ներքո: Այստեղ ստրուկն անմիջորեն չահագործվում էր ստրկատիրոջ բովանդակ տնտեսության մեջ:

Այլ բան էր ֆեոդալ հասարակության մեջ, ուր արտադրական պայմանները վորոշ չափով փոխում էյին ստրուկների չահագործման նախկին յեղանակը: Ֆեոդալական հողատիրության հիմնական հատկանիշն այն է, վոր այստեղ խոշոր հողատիրությունը զուգակցվում էր մանր տնտեսության հետ: Ֆեոդալ

կալվածատերը, կենտրոնացրած ունենալով իր ձեռքին լայնածավալ հողային տերիտորիա, անկարող էր այդ ահագին տարածության վրա այն ժամանակվա արտադրողական ուժերի զարգացման պայմաններում սեփական խոշոր տնտեսություն վարել: Ուստի, ավելի շահավետ էր դառնում ֆեոդալ-կալվածատիրոջ համար ոչ թե շահագործել ստրկական աշխատանքն իր սեփական գյուղատնտեսության մեջ իբրև արտադրական միջոց, այլ ընդհակառակը, գործադրելով նույն արտատնտեսական ճնշումը,— դարձնել ստրուկին անմիջական արտադրող և օգտվել նրա արտադրած արդյունքներից:

Այդ նպատակով ստրուկներին հատկացվում էին հողաբաժիններ մշակույթի համար, որտեղ նրանք բնակություն էին հաստատում իբրև մանր երկրագործներ և հիմնում սեփական տնտեսություն: Թեև այս դեպքում ստրուկը ձեռք էր բերում որոշ ինքնուրույնություն և նյութական ավելի տանելի վիճակ, համեմատած այն դրության հետ, երբ նա անմիջորեն շահագործվում էր տիրոջ կողմից նրա տնտեսության մեջ իբրև արտադրական գործիք, բայց և այնպես նա անձնապես չէր ազատվում իր ստրկական սոցիալական դրությունից: Նա շարունակում էր կախումն ունենալ իր տիրոջից՝ ամրացված լինելով տիրոջ սեփականություն համարվող հողին ու կապված լինելով անձնական պարտավորություններով դեպի տերը, այն է՝ կոռով ու բահրայով, ֆեոդալական շահագործման այդ կաչկանդիչ շղթաներով: Այդ «վերաբնակ ստրուկները», որոնցից հետագայում գոյացան ճորտ գյուղացիները և միաձուլվեցին ճորտացած, նախկին ազատ գյուղացիության մասսայի հետ, միջնադարյան Եվրոպայի ֆեոդալիզմում կոչվում էին servi casati. այսինքն «խրճիթավոր ստրուկներ», սեփական խրճիթ (casa) ունեցող ստրուկներ: Servi casati-ներին հանձնված հողերը կոչվում էին ստրկական—mansi servites, իսկ իրենք servi casati-ները համարվում էին յուրահատուկ անշարժ գույք, անխզելի պատկանելիք հողի. Նրանց կարելի էր վաճառել միմիայն իրենց հողի հետ միասին, որին նրանք ամրացված էին:

Այսպիսով ստրուկների դասակարգը հետզհետե կերպարա-

յություններով։ Գյուղի ու ագարակի այդ տարբերության մեջ էլ պետք է փնտրել արտադրողների ֆեոդալական շահագործման յերկու տարբեր ձևերը։ Եթե գյուղի շահագործվողները շինականներ կամ ճորտեր էին, ապա ագարակի շահագործվողները կարող էին լինել միայն ստրուկներ, որոնք գտնվում էին տիրոջ անմիջական տնօրինության ու շահագործման տակ, որպեսզի հնարավոր լիներ վարելու ագարակային, այսինքն կալվածատեր ֆեոդալի սեփական տնտեսությունը։

Առաջ բերենք մի քանի օրինակներ գյուղի և ագարակի մասին։

Փավստոս Բուզանդացին պատմում է, թե ինչպես Ոհան եպիսկոպոսը, Փառեն կաթողիկոսի որդին, «խաղակատակ» էր անում և իր միմոսություններով զվարճացնում հայ թագավորներին, որպեսզի նրանցից կալվածներ ընծա ստանա. «Իսկ թագաւորքն զմուրհակս գիւղից կամ ագարակաց գրեալ և կնքեալ դնէին ի վերայ ողինն Յոհաննու փոխանակ ընդ մեղաց իրեանց. և ի թագաւորացն Հայոց առաւ իւր գեւղս եւ ագարակս եւ գանձս» (ՓԲ, VI, գլ. Ժ, էջ 277—278)։

«Որոց [իր քրոջ որդիներ Վարդան, Հմայակ ու Համազասպ Մամիկոնյանին] նա եւ կնքեաց սուրբ այրն Աստուծոյ Սահակ (կաթողիկոս) զստացուածս գեօղից իւրոց եւ ագարակաց եւ որ ինչ մի անգամ էր իւր՝ եւ նոցա ի ժառանգութիւն եւ զաւակի նոցա մինչև յյաւիտեան» (ՂՓ, I, գլ. ԺԸ, էջ 76)։

«Եւ գլխաւոր նախարարքս մեր յառաջահայեցեալք եւ հանդուցեալք ի հինից ապստամբաց՝ շինէին եկեղեցիս վկայարս հաստահեղոյս ձուլեալ կրով՝ ի մենաստանս եւ յաւանս եւ յագարակս»․ ...(ՅԴ., էջ 199)։

Ուշագրավ է Մխիթար Գոշի Դատաստանագրքի յերկրորդ մասի Ա. գլխում հիշատակված կանոնը, որ նա հորինել է հին հայ մատենագրական նյութերի հիման վրա (Մովսես Խորենացու Պատմություն, II, գլ. Ը. էջ 110) և որի մեջ նա ասում է. «Եւ դեղջկաց նմանապէս առաւել պատիւ լիցի քան բնակչաց ագարակի» (ՄԳ, էջ 318)։ Այստեղ ակներև տարբերվում է գյուղը, որի բնակիչներն, անտարակույս, շինականներ էին, ագարակից, որի բնակիչներն, ինչպես տեսնում ենք, իրենց նա-

ցիալական դրությամբ ավելի ստոր են լինել, քան գյուղի բնակիչները՝ շինականները, իսկ այգեպանները կարող էին լինել ստրուկները:

Նախարարական շրջանում, ինչպես կարելի է կռահել հայ մատենագիրների ավանդած սուղ տեղեկություններից, ստրուկները բնակեցնում էին նաև դաստակերտներում: Բնորոշ է, որ հայ մատենագիրներն այստեղ էլ հաճախ նշանակում են դաստակերտները գյուղի հետ միասին, ինչպես անում են ագարակի նկատմամբ: «Եւ գունդս և պահապանս դրան արքունի պատրաստել գնորսս, զմի մի իւրաքանչիւր, վառելովք ի նոյն հին զարմից Թագաւորացն՝ որ ի Հայկայ, որ ընդ ժամանակս ժամանակս ժառանգութեան ի հարանց ստացեալ գիւղս և դաստակերտս» (ՄԽ, II, գլ. Է, էջ 104—105): Բայց թե ի՞նչ տարբերություն կար ագարակի ու դաստակերտի միջև, հայ մատենագիրները չեն բացատրում: Պետք է ենթադրել, որ նրանք յերկուսն էլ նույն նշանակությունն ունեյին բուն էության, թերևս այն զանազանությամբ միայն, որ դաստակերտն ավելի մեծ էր յուր տարածությամբ ու տնտեսության ծավալով, որտեղ շատ անգամ բնակություն ուներ կալվածատեր իշխանը, նման գուցե ռուսական կալվածատիրական усадьба-յին կամ գերմանական Frohnhof-ին, իսկ «ագարակն» իբրև տերմին ավելի հին ծագում ունի և իր էությամբ սահմանափակ տնտեսություն էր ներկայացնում, թերևս նման արդի «ֆերմա»-յին:

Դաստակերտ բառի ծագումը հայ լեզվագիտության մեջ ընդունված է բացատրել հին պարսկական dasta—ձեռք և կերտ—շինել, կառուցել բառերի բարդումով: Հետևապես դաստակերտ նշանակում է այն վայրը, որ շինված է կալվածատեր ֆեոդալի ձեռքով և ուրեմն վաղեմի հինավուրց գյուղը չէ: Հայ հին մատենագրության մեջ շատ հաճախ դաստակերտ բառի փոխարեն նույն առումով գործածվում է ձեռակերտ տերմինը: Սակայն մեզ ավելի ճիշտ է թվում վերջերս հայագետ Յ. Կարստի տված վերլուծումը, որի համաձայն դաստակերտի առաջին վանկը ոչ թե dasta— ձեռք, այլ հայ-իրանական dašt — դաշտ բառից[164]: Ուրեմն «դաստակերտը» (դաշտակերտ) նույն իմաստավորումն է պարունակում, ինչ որ «ագարակ» հա-

յերեն տերմինը, վորի առաջին մասը, արմատը՝ «ագար»—նույնանիշ է հունարեն agros ու լատիներեն ager—դաշտ բառին։

Դաստակերտներն իրենց էությամբ գյուղավաններ էին, վորոնք, կառուցված լինելով գյուղերին կից, գտնվում էին ֆեոդալ կալվածատիրոջ անմիջական տնօրինության, անձնական սեփականության ներքո, իբրև իշխանական մեծ տնտեսություններ։ Դաստակերտների գյուղավան լինելու մասին վկայում են Զենոբ Գլակի խոսքերը. «Երկոտասան դաստակերտս ետ նմա...» և այնուհետև մի փոքր սորև, հաջորդ պարբերության մեջ այդ դաստակերտները նա անվանում է «աւան», «գիւղաւան», «աւանագեղք». «Եւ ընդարձակեալ ունէին սոքա իւրեանց խաշանց արօտականս զգաւառն Հաշտենից։ Արդ այս առանձնագեղք, ի բնէ տուեալ էին կռոցն ի ծառայութիւն, զոր և իշխանք դարձեալ հաստատեցին ի սէր եկեղեցւոյն յամս երեսուն և յերկու թուով» (Զգ, էջ 37)։

Այս ցիտատից կարելի յե կռահել, վոր հիշյալ դաստակերտներն անասնապահական տնտեսություններ էին, վորոնք պատկանում էին հեթանոսական տաճարներին և շահագործվում էին հողատեր ֆեոդալների անմիջական տնօրինությամբ, ինչպես այդ պետք է հետևցնել «ընդարձակեալ ունէին» և «ի ծառայութիւն» խոսքերից։ Այդ շահագործումը, վոր տվյալ դեպքում բնորոշվում է իբրև ծառայություն, կարող էր լինել միայն սորուկների աշխատանքը, վորով խսկապես հնարավորություն էր ստեղծվում ընդարձակելու տաճարական տնտեսությունը։ Այստեղ խոսքը չի կարող վերաբերվել շինականներին, վորոնք, ունենալով գյուղացիական տնտեսություն, կարող էին «ընդարձակել» միայն իրենց տնտեսությունը, բայց վոչ ուրիշինը, և վորոնց ֆեոդալական շահագործումը Զենոբ Գլակը պետք է վոր բակեր հին հայ մատենագրության մեջ սովորաբար հիշատակվող «ի հարկի ծառայութիւն» բառերով, ուր «հարկը» շինականների նկատմամբ հասկացվում է Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական պայմաններում վորպես ֆեոդալին վճարվող ռենտա։

Վոր իրոք դաստակերտները բնակեցվում էին սորուկներով՝ այդ բացահայտ է Մովսես Խորենացու խոսքերից, թե ինչպես Սմբատ Սպարապետը Ցերվակից գերի վերցրած 500 ծառանե-

րին, որ նա նվեր ստացավ Արտաշես Թագավորից, «տարեալ բնակեցուցանէ 'ի Թիկանց Մասեաց, 'ի նոյն անուն Բագարան կոչելով զձեռակերտսն» (ՄԽ, II, գլ. ԽԸ, էջ 172)։

Բնորոշ է Արշակավան քաղաքի հիմնարկումը, որ Արշակ Բ. կառուցել էր սկզբում իբրև դաստակերտ, հետևապես իր անմիջական տնօրինության ներքո գտնվող կալվածական բնակավայր. «Զայնու ժամանակաւ շինեաց իւր արքայն դաստակերտ մի ի հովիտն անուանեալ ի Կող գաւառի»... Ապա այդ դաստակերտը, բնակչության բազմացումով դառնում է ավան, իսկ այնուհետև քաղաք. «իսկ տեղին աւանանայր, քաղաքանայր. մեծանայր, բազմանայր և լնոյր զհովիտն ամենայն...» (ՓԲ, IV, գլ. ԺԲ, էջ 109, 110)։

Դաստակերտների անմիջական կախումը ֆեոդալ կալվածատիրոջից և սրա անձնական տնօրինման ու իրավունքի տարածումը դաստակերտի վրա՝ բացահայտ են Աղվանից Վաչագան արքայի կանոնների ԺԹ հոդվածից. «ազատ արանց՝ որչափ իւրեանց դաստակերտք են, գերէց տուանց եպիսկոպոսի մի՛ իշխեսցեն հանել, և մի՛ եպիսկոպոսն իշխեսցէ հանել առանց նոցա և տանել...»[165]։

Կալվածատեր իշխանները կարող էին դաստակերտը վաճառել կամ նվիրաբերել, բայց այս դեպքում վաճառվում և նվիրաբերվում էին նաև այդ տնտեսության ամրացած իսկական արտադրողները, այն է՝ ստրուկները։ Այդ առթիվ հիշատակենք, բացի Զենոբ Գլակի վերևում բերված վկայության վերջին մասից, նաև մի յերկու այլ օրինակներ։

«Զդաստակերտսն և զսպասաւորսն քրմօքն հանդերձ և նոցին գետնովքն եւ զսահմանօքն ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեան» (Ագ., գլ. ԾԸ, 781, էջ 397)։ Ներկա դեպքում «զսպասաւորսն» հասկանալու չէ դաստակերտի ծառաներ, որոնք, ոչ այլ ինչ էին, յեթե ոչ ստրուկներ, բայց ոչ շինականներ, մանավանդ որ նույն պարբերության մեջ այնուհետև ասվում է, թե նվիրաբերվել են «ի ծառայութիւն սպասաւորութեան». մինչդեռ շինականներն իրենց հողերով հանդերձ ոչ թե «սպասավորներ» էին, այլ հարկատուներ՝

ռենտա (թե՛ աշխատապարտ և թե՛ արդյունավճար) հատուցանողներ:

«Եւ զգեօղն (Թորգան) ամենայն դաստակերտօքն հանդերձ և սահմանօքն յանուն եկեղեցւոյն նուիրէին» (Աշ., դլ. ԾԹ, 784 էջ 398):

«Յայնմ ժամու և ազգային նոցա կամսար մկրտի իւրայովքն հանդերձ՝ ի ձեռն մեծին Գրիգորի, արքայի ընդունելով ի ջրոյն, տայ նմա ժառանգութիւն զմեծ դաստակերտն Արտաշիսի, որ այժմ ասի Դրասխանակերտ» (ՄԽ, գլ. Ղ, էջ 242):

Վերոհիշյալ վերջին խոսքերի հիման վրա համոզված ենք դառնում, որ դաստակերտը սկզբներում, երբ նա սոսկ կալվածական տնտեսություն էր, հատուկ անուն չէր կրում: Հետագայում, երբ վայրը բնակչության ավելացումով ու սահմանների ծավալումով ստանում է այլ տնտեսական նշանակություն և կորցնում իր նախկին բնույթը, նա դառնում է ավան, ամբողջական քաղաք և ընդամին յուրացնում է հատուկ անուն, ինչպես օրինակ՝ Դրասխանակերտը, Արշակավանը և այլպես մի ամբողջ շարք դաստակերտներ, որոնք հիշատակվում են Հայ պատմագրության մեջ:

Վերևում բերված գրառումներից ակներև է, որ դաստակերտները հանդիսանում էին ֆեոդալ իշխանների անձնական կալվածներ և նրանց «ծառայության» ներքո գտնվող տնտեսություններ, ուստի և ստրուկներին, գլխավորապես գերիներին և այլ ծառաներին, առաջին հերթին բնակեցնում էին իրենց պատկանող դաստակերտներում: Այդ են վկայում հետևյալ փաստերը:

«Յայնժամ Սմբատայ զծառայսն Երուազայ, զոր գերեացն ի Բագարանէ, տարեալ բնակեցուցանէ ի Թիկանց Մասեաց, ի նորին անուն Բագարան կոչելով զդաստակերտն» (ՄԽ, II, գլ. ԽԹ, էջ 172):

«Իսկ զԱնոյշ զառաջին կինն Աժդահակայ եւ զբազումս ի սերմանէ Աժդահակայ աղջկունս՝ հանդերձ պատանեօք եւ այլ բազում գերեօք, որչափ թէ աւելի քան զբիւր մի, բնակեցուցանէ յարեւելեայ ուսոց մեծի լերինն՝ մինչեւ ի սահմանս Գողթանն, որ են Տամբատ, Ոսկիհայ, Դաժգոյնք եւ որ այլք առ եզերբ գետոյն դաստակերտք» (ՄԽ, I, գլ. Լ, էջ 84—85):

Սակայն հայ մատենագրական տվյալներից չերևում է, որ թագավորներն, ինչպես Տիգրան Մեծը կամ Վաղարշակը (ՄԽ, II գր․ Ը, էջ 105) և նախարարները գերիներին վորոշ դեպքերում բնակեցնում էին նաև գյուղերում ու շենքերում: Հին Հայաստանի գյուղերն ու շեներն այն վայրերն էին, ուր նստած էին սկզբում, տոհմային հասարակության շրջանում, ազատ համայնքները, իսկ այնուհետև, ֆեոդալական շրջանում, ճորտացած գյուղական համայնքները, շինական դասակարգը: Հետևապես ֆեոդալ իշխանները, բնակեցնելով այդտեղ գերիներին ու ամրացնելով հողին իբրև ճորտացած ստրուկներ, չէին նայում նրանց իբրև իրենցից անմիջորեն կախված ստրուկների վրա, քանի որ վերջինները չէին դառնում «արտադրական գործիքներ», չէին աշխատում անմիջորեն կալվածատիրոջ պատկանող տնտեսություններում, այլ աշխատում էին իրենց անձնական տնտեսության մեջ: Այս դեպքում պետք է ենթադրել, որ այդ ճորտ ստրուկներն, ունենալով արտադրության սեփական վորոշ միջոցներ, ժամանակի ընթացքում միաձուլվում էին համագյուղացի ճորտերի հետ և դառնում շինականներ, իսպառ դուրս գալով ստրկական վիճակից:

Թե ինչպես էր արտահայտվում ճորտացած ստրուկների, Հին Հայաստանի այդ servi casati-ների, կախումն իրենց ֆեոդալ տերերից կամ ինչ հարաբերություններով էին նրանք կապված իրենց շահագործող կալվածատերերի հետ, հայ մատենագրական աղբյուրները մեզ տեղեկություններ չեն տալիս: Սակայն ուշադրության առնելով արտադրության ֆեոդալական եղանակի ունիվերսալ բնույթը ստրուկների և ճորտերի վերաբերմամբ գրեթե բոլոր երկրներում, դժվար չէ կռահել, որ այդ ճորտացած ստրուկները, գոնե սկզբնական շրջանում, ենթակա էին բացառապես կոռային կարգի շահագործմանը: Համենայն դեպս նրանք միանգամայն տարբերվում էին իրենց տնտեսական ու սոցիալական դրությամբ շինականներից, ենթակա լինելով, շնորհիվ իրենց անազատ վիճակի ու անձնական անմիջական կախմանը տիրոջից, ավելի դաժան աշխատանքի և ավելի անգութ շահագործման:

Ըստ յերևույթին, ճորտացած ստրուկները շարունակում էյին գոյություն ունենալ նաև միջնադարյան Հայաստանում, մասնավորապես Կիլիկյան թագավորության մեջ, ուր ստրկության ինստիտուտը, նայած մեզ հասած պատմական տվյալներին, զարգացած էր բավականին մեծ չափերով։ Այդ բացահայտ է Սմբատ Գունդստաբլի (Սպարապետի) Դատաստանագրքից, ուր նա ստրուկների (ծառաների) և ճորտերի հետ միասին հիշատակում է նաև այսպես կոչված պարիկոսներ[166]։ Այս տերմինը Կիլիկյան Հայ Դատաստանագրքի մեջ մտել է Բյուզանդական իրավունքից, վորտեղ այդ տերմինը հորջորջվում է paroikos։ Վերոհիշյալ հոդվածից պետք է այն հետևությունն անել, վոր պարիկոսը վո՛չ ստրուկ է իր իսկական առումով և վո՛չ շինական, այլ իր սոցիալական նշանակությամբ բռնում է այդ յերկուսի միջին տեղը։

Պրոֆ. Ց. Կարստը Սմբատի Դատաստանագրքի վերոհիշյալ ուսումնասիրության մեջ, նմանապես հին հայ իրավունքի պատմության նվիրած իր մի այլ աշխատության մեջ[167] պարիկոսներին համարում է հողին ամրացված ստրուկներ— Grundsklaven։ Հետևապես նրանք վորոշ չափով համանիշ են մեր ակնարկած ճորտացած ստրուկներին։

Ճորտացած ստրուկների յերբեմնի գոյությամբ պետք է բացատրել, վոր շատ հաճախ մեր միջնադարյան մատենագրության մեջ ստրուկ և ճորտ բառերը խառնում են, նույնանիշ իմաստ տալով այդ յերկու տերմիններին։ Նույնիսկ XVIII և XIX դարի սկզբի արխիվային վավերագրերում, ինչպես և Թբիլիսիի ու Յերևանի նախկին նահանգների հայ հոգևոր կոնսիստորիաների գործերում, շատ անգամ ստրուկ բառը գործածվում և ճորտի իմաստով, յերբ խոսվում է վանքապատկան ու յեկեղեցական կալվածքներում նստած ճորտերի մասին։ Այս հանգամանքը վկայում է, թե ինչպես յերկար ու ձիգ դարեր անցնելուց հետո, յերբ այլևս վերացվել էր ստրկությունը, այնուամենայնիվ «ճորտ» տերմինն իմաստավորվում էր «ստրուկ» սոցիալական առումով, վոր հնավանդ մի մնացուկ է այն ստրուկների իրական դրությունից, վորոնք ճորտացած էյին։

5. ՏՆԱՅԻՆ ՍՏՐՈՒԿՆԵՐ.—Թեև ֆեոդալական կալվածքներում ու հողերում գյուղատնտեսության մեջ շահագործվում էր ստրկական աշխատանքը, սակայն առավել օգտագործվում էին ստրուկները կալվածատեր ֆեոդալի տնային տնտեսության մեջ. դրանք տնային ստրուկներ էին: Հին Հունաստանում այդ տեսակ ստրուկները կոչվում էին οἰκῆται կամ οἰκῆες, հին Հռոմում famulus, իսկ միջնադարյան ֆեոդալական Եվրոպայում՝ servi manentes: Այս ստրուկները կազմում էին առանձին մի կատեգորիա, իհարկե հողազուրկ, բայց անձնապես կախված ֆեոդալից, որի տանը նրանք աշխատում էին, կատարելով այն ամենը, ինչ որ առնչություն ուներ տնային տնտեսության հետ: Կային զանազան տեսակ սպասավորներ, նաժիշտներ, դայակներ, անհեստավորներ, կարողներ (դերձակներ), մանածագործներ, ջուլհակներ, կառապաններ, պարտիզպաններ, տավարածներ, վերակացուներ, գործակատարներ և այլն և այլն: Բազմակողմանի տնային տնտեսության կարիքները, կենցաղային բոլոր սպառողական պահանջները բավարարվում էին տիրող բնատնտեսության պայմաններում տնային ինքնամփոփ տնտեսության արտադրանքներով, որոնք ստեղծվում էին տնային ստրուկների աշխատանքի շահագործմամբ: Այս կարգի ստրուկների մեջ շահագործվում էին թե՛ այր-մարդիկ և թե՛ ավելի մեծ չափերով՝ կանայք, որոնք, բացի այդ, պետք է բավարարեին նաև ֆեոդալների սեռական պահանջները, հանդես գալով հարճերի դերում:

Ահա այս տնային ստրուկներն էին, որ հայ ֆեոդալական տնտեսության մեջ իրենց իսկական իմաստով կոչվում էին «ծառա» և «աղախին»:

Առաջ բերենք հայ մատենագրությունից մի քանի օրինակներ, որոնք վկայում են տնային ստրկության մասին:

Աբրահամ Խոստովանողի «Վկայք արևելից» պատմության մեջ նկարագրվում է, թե ինչպես մոգպետը, կամենալով հրապուրել քրիստոնյա Յազդանդուխտին, կարգադրում է՝ «Զի զերանելին Եզանդուխտ տայփիկ անցուցանիցեն առ դրաւք ապարանից իւրոց և ցուցցեն նմա զամենայն արարս նորա և զպատմութիւն ծառայից նորա և զաղախնեաց, զի հանցեն առաջի նորա, զի տեսանելով

զբաղմութիւն ստացուածոց նորա, համաձայնեցի լինել նմա կնութեան»[168ա]:

Ապուսեթի վորդի Հովսեփը «բնակիչս աշխարհին [Հայոց] վարեաց ի գերութիւն, վաճառականս տանել ի կողմանս Ասորոց և յամենայն սահմանս տէրութեանն տաճկաց. և զկէս գերւոյն ընդ իւրեանց ունելով ի քաղաքն, լինել իւրեանց ջրկիրս և փայտակոտորս» (ԹԱ, գլ. Ջ, էջ 199—200):

«Եթէ կին ոք արար և ամուլ պատահեաց, և այրն հանգէ զնա վասն ամլութեան, որ ինչ կնոջն կարասի բերեալ է ի տուն, թէ՛ աղախին, թէ՛ անասուն, թէ՛ հանդերձ, թէ՛ արծաթ, առնուլ իշխան է և գնալ» (Կանոնք Շահապիվանի ժողովոյն. ԿՀ, էջ 64):

«Քահանայք մի՛ արբեցողք և մի՛ հանդգնածողք և մի՛ արծաթագին աղախնայս ստանալ և կամ ի կայենաց պոռնկաց 'ի տունս տանել զգարշելիսն, զոր ոչ հրամայեն օրէնք» (Կանոնք Ներսիսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի. ԿՀ, հոդ. ԼԲ, էջ 115):

«Իսկ զայլն Մամիկոնեան զՎարդ ո՛չ միայն լոկ անձամբ, այլև ծառայիւք, դրամբ և կազմածով, յամուր տեղեաց չուհատանին ի բարձրաբերձ պարսպացն և յապարափակ բաղմութենէ պահապանացն, ընկալեալ իբրև զարծուի ի թեւս իւր և ընդ բազում անցուցեալ օթեւանս՝ ածեալ հասուցանէր խաղաղութեամբ ի յերկիրս Հայոց» (ՂՓ, III. գլ. ՀԲ, էջ 289):

Տնային ստրկության զարգացումը նկատվում է գլխավորապես Արևելքում՝ Փոքր ու Առաջավոր Ասիայում, վորտեղ բարահատուկ սոցիալ-տնտեսական պայմաններում նա շատ ավելի համարվում եր տիրոջ ընտանիքի հավատարիմ մարդ, ընտանիքի անդամին հավասար անձ և կամ հնարավորություն եր ստանում իր սեփական ընտանիքն ունենալու[168բ]:

Բացի այդ՝ տնային ստրուկների վիճակը, մյուս կատեգորիայի ստրուկների համեմատությամբ, ավելի տանելի եր ու ավելի մեղմ: Այդ հասկանալի յե. տնային ստրկությունն իր զարգացմամբ իսկապես շարունակությունն է նահապետական ստրկության, վոր սկսել եր գոյանալ տոհմային հասարակության մեջ և ապա տոհմի քայքայումով նոր սոցիալ-տնտեսական

պայմաններում շահագործման համապատասխան ձևեր էր ստացել: Այդպես էր նաև ֆեոդալական հասարակության մեջ, որտեղ տոհմային հասարակակարգի տրադիցիաների վերապրուկներով կայուն էր մնում տնային ստրկությունն ստրուկների այլ կատեգորիաներին առընթեր:

6. ՏԱՃԱՐԱԿԱՆ ՍՏՐՈՒԿՆԵՐ.— Ինչպես հայտնի է, հասարակության ֆեոդալականացումով՝ կրոնական հաստատություններն էլ համապատասխան բնույթ ստացան: Առաջացավ կրոնահոգևոր իշխանություն իր առանձին ապարատով, իր հիերարխիայով, իր հողային և նյութական այլ հարստություններով, որոնք միանգամայն համապատասխանում էին արտադրական նոր ձևերին, դասակարգային տիրող հարաբերություններին: Տակավին Հայաստանի հեթանոսության շրջանում յեկեղեցին ու նրա սպասավորությունը ներկայացնում էին ֆեոդալ-կալվածատիրական կազմ, որ հետագայում քրիստոնեության մուտքով՝ դարձավ հեթանոսական մեհյաններին ու քրմական դասին հաջորդող քրիստոնեական վանքերի ու յեկեղեցիների և քրիստոնյա հոգևոր դասի ժառանգություն:

Լինելով իր սոցիալական էությամբ ֆեոդալական և իր տնտեսական կառուցմամբ կալվածատիրական, թե՛ հեթանոսական և թե՛ նրա ժառանգ քրիստոնեական կրոնավորությունն իրենց նյութական գոյությունը խարսխում էին արտադրության ֆեոդալական յեղանակի վրա: Այստեղ էլ մնում էր ստրկությունը, որը, յեթե աշխարհիկ ֆեոդալական դասակարգը պահպանում էր միայն արտատնտեսական ճնշումով, ապա հոգևոր ֆեոդալական դասակարգի մեջ վավերացվում էր նաև կրոնաստվածաբանական գաղափարախոսությամբ ու սրբագործվում յեկեղեցու «որհնությամբ»: Գոյություն ունեին հատուկ տաճարական ստրուկներ՝ ἱερόδουλοι, որոնք շահագործվում էին հոգևոր դասի ձեռքում կենտրոնացած լայնածավալ կալվածքներում ու տաճարական տնտեսություններում թե՛ իբրև ճորտացած ստրուկներ և թե՛ իբրև տնային ստրուկներ:

Հույն պատմագիր Ստրաբոնի ասելով՝ հայերը նվիրաբերում էին Անահիտ դիցուհուն այր ու կին գերիներ, որպիսի ստրուկների թիվն ահագին չափերի յեր հասնում[169]: Ագաթանգեղոսը,

պատմելով Անահտի մեհյանի կործանումը Գրիգոր Լուսավորչի ձեռքով, ավելացնում է՝ «և դղատակերտսն և պարսպատորսն քրմօք համագերձ և նոցին գանձօքն և սահմանօքն ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեան» (գլ. ԾԸ, էջ 781):

Տրդատ Թագավորը պատերազմում ձեռք բերած ավարից, սրա թվում նաև գերիներից, մասն էր հանում և նվիրում տաճարներին. «նաև հինգերորդ ևս հանէր յամենայն մեծամեծ աւարացն ածելոց, և մեծամեծ պարգևս քրմացն շնորհէր» (Ագ. էջ 24):

Քրիստոնեության շրջանումն էլ շարունակվում էր ստրուկների նվիրաբերումը եկեղեցիներին: Ներսես Կամսարականը, պատերազմից ավար վերցնելով գերիներ, «եկեալ ի Վաղարշապատ՝ տայ ի սուրբ եկեղեցին զվեշտասաներորդ մասն գերւոյն»[170]:

Բնորոշ է, որ մինչև վերջին ժամանակ հայ ժողովրդական հավատալիքներում պահպանվել էր սովորություն՝ ուխտ անելու, իրեն նվիրելով այս կամ այն սրբին. այդպիսիները կոչվում են «սրբի ղուլ», այսինքն սրբի ստրուկ, ծառա: Տաճարական ստրուկների վերաբերմամբ հիշողություններ են պահպանվել հայ ժողովրդական ավանդությունների մեջ, որտեղ պատմվում է տաճարներին սպասարկող «կաղ դևերի» մասին Մուշի ս. Կարապետ վանքում, Վասպուրականի Հոգվոց վանքում և այլն, որոնք կառուցված են նախկին հեթանոսական տաճարների ավերակների վրա:

«Անձևացյաց գավառի Հոգվոց վանքում գտնվում է Կուզրաթ անունով մի դև. Գրիգոր Լուսավորիչն այստեղ դևերին հալածելիս՝ զիջավ սրա խնդրին ու չհալածեց սրան այն պայմանով, որ շարունակ ծառայեր այս վանքին ու սրա թոնիրների մոխիրը տաներ ածեր Տիգրիս գետը: Նույնիսկ Տիգրիսի ափին ցույց են տալիս մի տեղ, որտեղից այս դևը վանքի մոխիրները հանում, լցնում է գետը: Վանքի տնտեսուհին ամեն օր մի գունդ խմոր է շաղախում և դնում թոնրի ականի մեջ, որպես Կուզրաթի բաժին»[171]: Նույնանման ավանդություն պատմվում է ժողովրդի մեջ ս. Կարապետ վանքի մասին, որն առաջ է բերել Գ. Սրվանձտյանն իր «Գրոց—բրոց» երկասիրության մեջ:

7. ՍՏՐՈՒԿՆԵՐԻ ԹԻՎԸ — Ստրկության զարգացման աստիճանը կարելի յե չափել մասամբ նաև ստրուկների քանակի առկայությամբ: Ինչպես կարելի յե կռահել հայ մատենագրության տվյալների հիման վրա, ստրուկների քանակը՝ հին Հայաստանում չեղել է բազմաթիվ: Հայ մատենագիրները հաճախ հիշատակում են «ծառայս անձինս բազումս», բայց չեն տալիս թիվը: Սակայն և այնպես յերբեմն հայ մատենագրության մեջ առաջ են բերված նաև թվեր: Անանիա Շիրակացու ասելով՝ Ներսեհ Կամսարականը «ի յաղթել պատերազմաւ բռնդլծացն առեալ գերի առաքել յայժ», և տալը այդ ստրուկներից մասն հանելով վանական նվիրաբերությունների համար, իրեն անձնապես թողնում է 570 ստրուկ (ԻԱ հարցումն): Մովսես Խորենացին ավանդում է Սմբատ Սպարապետի մասին. «Եւ ապա առաք առեալ զգանձսն Երուանդայ և ծառայս անձինս հինգհարիւր, նաև զընտիր ինչս գանձուցն մեհենից՝ բերէ յԱրտաշատ: Եւ Արտաշէս պարգևէ Սմբատայ զծառայսն Երուանդայ» (ՄԽ, II, գլ. ԽԸ, էջ 171):

Այս թվերը ներկայացնում են միայն մեկ անգամվա ձեռք բերված ստրուկները: Սակայն հայ թագավորներն ու նախարարները զբաղված էյին անվերջ պատերազմներով ու ասպատակումներով, վորոնց ժամանակ, անտարակույս, քանի-քանի անգամ այդպիսի 500-ներով էյին ստրուկներ ձեռք բերվում:

8. ՍՏՐՈՒԿՆԵՐԻ ՍՈՑԻԱԼ-ԻՐԱՎԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ — Ստրուկները, լինելով անմիջական արտադրողներ, վորոնց շահագործումը կատարվում էր արտատնտեսական ճնշումով, անտարակույս, ըստ այնմ էլ պետք է դրված լինեյին առանձնահատուկ սոցիալ-իրավական պայմաններում, վորպեսզի հնարավոր լիներ շահագործումը տերերի կողմից: Այդ պայմանները գոյացել էյին հենց ստրկության ծագման առաջին մոմենտից, այսինքն տոհմային հասարակության քայքայման սկզբնական օրից, և ձևավորվել դասակարգային հասարակարգում, յերբ համաձայն զարգացող արտադրական հարաբերությունների՝ հետզհետե կազմակերպվում էյին արտատնտեսական ճնշման միջոցները: Հետագայում, դարերի ընթացքում, ստրուկների սոցիալ-իրավական պայմանները օրինականացվեցին այն իրավա-

քանական նորմերում, վորոնք սահմանում էր տիրապետող դասակարգն իր դիրքերն ապահովելու և իր շահագործման յեղանակներն արդարացնելու նպատակով: Սկզբնական շրջանում այդ որինականացումը հենվում էր սովորութական իրավունքի վրա, վոր դարերով մշակվել ու կոփվել էր հասարակական հարաբերություններում, իսկ հետագայում պետական կենտրոնական իշխանության յերևումով՝ այդ որինականացումն արտացոլեց պետության կործող իրավունքի մեջ գրավոր նորմերով:

Ահա այդ ենք տեսնում նաև Հին Հայաստանում, վորտեղ ստրուկների շահագործման պայմաններն արտացոլել են հայ իրավաբանական նորմերում, վորոնց մեզ հասած գրավոր որինակներն առայժմ միակ աղբյուրներն են ստրուկների սոցիալ-իրավական դրությունը պատկերացնելու համար: Այդ տեսակետից շատ սուղ նյութ է պահպանվել Հայաստանի հին դարերի պատմությունից, վորովհետև այդ շրջանում բացակայել է պետական աշխարհիկ որենսդրությունը:

Հայ յեկեղեցական ժողովներում սահմանված կանոններից մի քանիսներում արձագանք է գտել նաև ստրուկների, ծառաների ու աղախինների սոցիալ-իրավական վիճակը: Այդ տվյալները խիստ թերի յեն ու բնավ չեն ներկայացնում ստրկության բովանդակությունը, վոր առավելին շարունակում էր կարգավորվել սովորութական իրավունքի նորմերով:

Նմանապես Մխիթար Գոշի ու Սմբատ Գունդստաբլի դատաստանագրքերում հորինված են հատուկ հոդվածներ, վորոնք իրավական կարգավորման ներքո յեն առել ստրուկների ու ստրկատերերի փոխադարձ հարաբերությունները: Սակայն այդ յերկու հեղինակները տարբեր յելակետներով են մոտենում ստրկատիրական իրավունքին: Մխիթար Գոշը ստրուկների իրավական դրության հատկացված հոդվածները հորինելիս՝ ամբողջովին յենթարկվել է Մովսիսական որենքներին, այն համարեցնելով Հայաստանի իրականության ու տեղական ֆեոդալական պայմաններում վերապրվող ստրկատիրությանը: Իսկ Սմբատ Գունդստաբլը, միանգամայն այլ բնույթ է տվել ստրկատիրական իրավունքին, չնայած վոր նրա ամբողջ Դատաստանագիրքը կազմված է, հիմք ունենալով Մխիթար Գոշի

Դատաստանագիրքը: Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում չափազանց նկատելի է Մովսիսական օրենքների ազդեցությունը. ընդհակառակը, ստրկության վերաբերյալ օրենքները գլխավորապես տոգորված են հունա-հռոմեական (բյուզանդական) և մասամբ տեղական ֆեոդալական իրավունքի սկզբունքներով: Ուստի Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքի հոդվածները, որոնք վերաբերում են ստրուկներին, կրում են ավելի խիստ ու դաժան բնույթ Մխիթար Գոշի Դատաստանագրքի համեմատությամբ. այս մի ակնբախ հանգամանք է, որից պետք է կռահել, որ Կիլիկիայում ստրկությունը կայուն մի ինստիտուտ էր տակավին և ստրուկների վիճակը համեմատաբար ավելի ծանր ու չարքաշ էր:

Արդ, տեսնենք, թե վերոհիշյալ աղբյուրներն ի՞նչպես են ներկայացնում ստրուկների սոցիալ-իրավական դրությունը Հայաստանում:

9. ՏԻՐՈՋ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԸ ՍՏՐՈՒԿՆԵՐԻ ՎՐԱ.— Հին հայոց իրավունքի բոլոր սահմանումները տոգորված են մի հանուր իմաստով, որ ստրուկն ազատ մարդ չէ. նա անձնապես պատկանում է ո՛չ թե իրեն, այլ տիրոջը. նա իրավանց անձն չէ, այլ սոսկ իրավանց առարկա: Հայ մատենագրական աղբյուրներում ստրուկներն, այսինքն ծառաներն ու աղախինները, սովորաբար հիշատակվում են սեփականության նյութեղեն իրերի հետ միասին: Աբրահամ Խոստովանողի՝ «Վկայք Արևելից»-ի մեջ սովորական գույքի հետ, որն այնտեղ արտահայտված է «արար» բառով, թվում է նաև «զբազմութիւն ծառայից նորա [Մոգպետի] և աղախնաց». իսկ մի փոքր հետո այդ բոլորն, այսինքն «արարը», ծառաների ու աղախինների բազմությունը համարում է ստացվածք, սեփականություն. «զի տեսանելով զբազմութիւն ստացուածոց նորա» (էջ 337): Կանոնագրքի ու Դատաստանագրքի հոդվածներում կանանց օժիտի մասին հիշատակելիս՝ սովորաբար անասուններին ու անշունչ առարկաների հետ միասին, իբրև սեփականության իր, թվում են նաև «աղախիններին»:

Մեր հին մատենագրության մեջ ստրուկը՝ ծառան միշտ համարվում է տիրոջը: Օրինակ՝ Եզնիկն ասում է. «Ոչ երևէր

այնուհետև առնուլ զուէր քան զծառայս» (III, էջ 115), կամ ինչպես շեշտված է Ասորա-Հռոմեական Դատաստանագրքում․ «Զի ծառայն և տէր չեն հաւասար յանձն իշխանութեան» (հոդ. ԻԳ, էջ 14)։ Եթե Հին Հայաստանում տիրապետող դասակարգը՝ ազատանին արհամարհանքով էր վերաբերվում դեպի շինականները, ինչպես այդ ակներև է Եղիշեի վկայությունից՝ «Զի ի մէջ շինական մարդկան կեցեալ էր և ոգխառդոյն ևս էր ի վրոց մխիթարութենէ» (գլ. Ը, էջ 171), ապա ևս առավել արհամարհանք էր տածվելու դեպի ստրուկները՝ ծառաներն ու աղախինները։ Զուր չէր կանոնադրում Աշտիշատի եկեղեցական ժողովը (365 թ.), որ «ծառայից պատուիրէր կալ բարդանս հնազանդութեան իւրեանց տէրանց» (կանոն Զ.)։

Տիրոջ սեփականության իրավունքը տարածվում էր նաև ստրկի ընտանիքի անդամների՝ կնոջ ու զավակների վրա։ Այդ մասին վկայում է Մխիթար Գոշի Դատաստանագիրքը․ «Եթէ պատահի քրիստոնէի գնել ծառայ քրիստոնեայ ըստ օրինացն վեց ամ ծառայել և ելանել յեօթներորդ ամին․ եղիցի մեզ—յորժամ ըստ գնոյ իւր ծառայեսցէ՝ ելցէ ազատ։ Եթէ ինքն միայն մտեալ իցէ միայն ելցէ, և եթէ կնաւ համդերձ մտեալ իցէ, ելցէ և կինն ընդ նմա։ Ապա թէ տէր իւր տացէ նմա կին և ծնանիցի նմա որդիս և դստերս, կինն և որդիքն տեառն նորա եղիցին, և նա միայն ելցէ․ փրկանօք ելցեն և նոքա» (ՄԳ, II, հոդ. Ի, էջ 335)։

Ստրուկը, զուրկ լինելով անձնական իրավունքից, չէր կարող վորևէ հասարակական պաշտոն վարել կամ կոչումն ստանալ, վոր վերապահված էր միայն ազատ դասակարգին։ Այդ բացահայտ է նրանից, վոր ստրկին արգելված էր, համաձայն կանոնական իրավունքի, հոգևոր կոչումն ընդունել։ Այս որենքը մտել է նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքի (II, հոդ. ԺԵ) և Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքի մեջ (հոդ. ԺԸ, ՃԺԵ), վորոնք թույլատրում են ստրկին հոգևոր կոչումն ընդունել միայն այն դեպքում, յերբ նրանք իրենց տիրոջ համաձայնությամբ նախապես լիակատար ազատություն են ստանում։ Նմանապես ստրկատերն իրավունք չունեին ստրկին իրեն ժառանգ դարձնել (ՍԴ, հոդ. ԺԸ։ ԱՀԳ, հոդ. ՃԺԷ)։

Այդ նույն հիմունքներով ստրուկն իրավունք չուներ գալ դատական ատյանում խոսելու և կամ իր տիրոջ փոխարեն երբև անձնափոխանորդ ներկայանալու: Այդ արգելքը է Ասորա–Հռոմեական Դատաստանագրքից. «Եթէ ոք հրամայէ իւրում յատենի փոխան իւր խօսել և առնել իրաւունս ինչ, չունի հրաման ծառայս օրինացս խօսել վասն նորա, զի ծառայն և տէրն չեն հաւասար յանձնիշխանութեան» (ԱՀԴ, հոդ. ԻԹ, էջ 14):

Տիրոջ սեփականության իրավունքն իր ստրկի վրա ոչ մի բանով չէր տարբերվում այն իրավունքից, որ ուներ տերն իրեն պատկանող անասունների ու այլ անշարժ առարկաների վերաբերմամբ: Այդ սեփականատիրական իրավունքը արտահայտվում էր նրանով, որ տերը կարող էր իր ստրուկներին, մյուս սեփական իրերի հետ համահավասար, նվիրաբերել ուրիշին կամ վաճառքի ու գնման առարկա դարձնել:

Տերերը կարող էին իրենց ստրուկներին նվիրաբերել՝ զանազան անձերի ու կրոնական հաստատությունների: Մովսես Խորենացին պատմում է, թե ինչպես Գեղամ Նահապետն ընծայում է ստրուկներ և իր ստացվածքի մեծ մասն իր որդի Սիսակին. «Սմա զմեծ մասն ինչից իւրոց տուեալ, և ծառայս՝ անձինս բազումս» (ՄԽ, I, գլ. ԺԲ, էջ 44), կամ ինչպես Արտաշես թագավորը նվիրում է Սմբատ Սպարապետին Երվանդից դերված ստրուկներին. «Եւ ապա աւար առեալ զպանձան Երուազայ, և ծառայս անձինս հինգարիւր... բերէ Արտաշիսի: Եւ Արտաշէս պարգևէ Սմբատայ զծառայսն Երուազայ» (ՄԽ, II, գլ. ԽԸ, էջ 171): Ըստ նույն Մովսես Խորենացու Պատմության՝ Ռշտունյաց Նահապետ Պակարասը խոստանում է Բագրատունին ընծայել ստրկուհիներ. «խոստանայ հինգ հարիւր կին դեղեցիկ և հազար քանքար ոսկւոյ՝ զի օգնեսցէ նոցա» (ՄԽ, II, գլ. ԺԹ, էջ 127): Ագաթանգեղոսը պատմելով Անահտի մեհյանի կործանումը, ավելացնում է. «Եւ զդաստակերտսն և զպաշտաւորսն քրմօքն հանդերձ և նոցին գետնովքն և սահմանօքն ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեան» (Ագ., գլ. ԾԸ, 781, էջ 397):

Ավելի ցայտուն օրինակ է ներկայացնում Անանիա Շիրակա-

Ստրուկներ նվիրաբերելու շարքին է դասվելու նաև այն սովորույթը, որ ամուսնու տանը կնոջ բերած օժիտի մեջ զանազան իրերի ու անասունների հետ մտնում էին նաև ստրուկներ, որոնք կազմում էին կնոջ սեփականությունը. «Եթէ կին ոք արար և ոմնոյ պատահեալ, և այրն հանցէ զնա վասն ամլութեան, որ ինչ կնոջն կարասի բերեալ է ի տուն, թէ՛ աղախին, թէ՛ անասուն, թէ՛ հանդերձ, թէ՛ արծաթ, տանել իշխան է և կնայ» (ԿՀ, Կանոնք Շահապիվանի ժողովոյն, հոդ. Ե, էջ 64):

Նույն պարագան հիշատակվում է նաև Ասորա-Հռոմեական Դատաստանագրքում. «Թէ առնու այր կին և բերէ զկին իւր ընդունել, ծառայս. ոչխար, երամակս, յուծս եզանց և այլ զինչ և իցէ տուրս և տոացուածս...» (հոդ. ՁԱ, էջ 34):

Վերջապես իբրև սեփականատիրական առարկա, ստրուկը ժառանգաբար կարող էր անցնել մեռածի ժառանգներին, եթե, իհարկե, ստրկատերը կտակով ազատություն չէր շնորհել ստրուկներին: Այդ միտքը կարելի է հետևցնել Ասորա-Հռոմեական Դատաստանագրքի ԺԶ հոդվածից. «Եթէ ոք առնէ կտակ, եթէ, առողջ և եթէ հիւանդ, և կամի ազատել զծառայս իւր, թէ մի և թէ երկուս, կարող է ազատել և թէ Գ. են, զերկուսն, պարտի ազատել և ի հնգէն ցտասն՝ զկէսն պարտի թողուլ և ի տասէն ցերեսունն՝ զմին յերիցն թողուլ և յերեսունէն ցհարիւրն զմին ի չորից կարող է թողուլ: Այս թէ աւելի ազատ է, քան զոր հրամայէ նոմոսն, աւելին մնայ ժառանգաւորացն: Իսկ եթէ ոք առնէ կտակ և գրէ ազատ զամենայն ծառայս իւր, մնան ամենեքեան ծառայ ժառանգացն» (ԱՀԴ, էջ 12):

Ինչպես ամեն մի իր, այնպես էլ ստրուկը դառնում էր առևտրի առարկա: Ստրուկը ներկայացնում էր փոխանակական արժեք այն ժամանակվա առևտրական հարաբերություններում: Թեպետ այդ հանգամանքը խթան էր հանդիսանում բազմաթիվ և անդադար պատերազմների ու հարձակումների, որոնք հարուստ ավարառումների աղբյուրներ էին այն ժամանակվա ստրկական շուկաներին գերիներ մատակարարելու համար: Հին դարերում Բաբելոնը, Փյունիկիան, Հունաստանը, Փոքր Ասիայի Միջերկրական եզրամասի հունական քաղաքները, Հռոմը, Ալեքսանդրիան, իսկ միջին դարերում՝ Բաղդադը, Բյուզանդիոնը, Վե-

նետիկը, Ջենովան այնպիսի հսկայական միջազգային շուկաներ էին, որ ընդունակ էին կլանելու անսահման քանակով կենդանի ապրանք, որ հարաճուն ալիքներով հեղեղվում էր Ասիայի ու Եվրոպայի բոլոր ծայրերից։ Այդ ստրկական շուկաները անհրաժեշտ էին աշխատավոր ձեռքեր գնելու համար, քանի որ այդ դարերում արտադրության մեջ շահագործվում էր տակավին ստրկական աշխատանքը։

Հայաստանում էլ ստրուկներն առևտրի առարկա էին. նրանք գնվում էին իբրև աշխատող ձեռքեր կամ վաճառվում էին իրենց տերերի կողմից ուրիշներին և կամ վերջապես դառնում էին արտածման շահավետ ապրանք դեպի օտարերկրյա շուկաները։ Ստրուկը փոխանակական արժեք լինելու գաղափարն արտացոլել է նաև հայ ժողովրդական վիպասանության՝ «Սասնա Ծռեր» մեջ, որտեղ գերին ներկայացվում է արժեքավոր ապրանքի նշանակությամբ. «Գերին գին ունի, տիրուն կհանի»[173]։

Բազմաթիվ պատմական վկայություններից այստեղ հիշատակենք մի քանի կարևորագույն օրինակներ։ Հին Հայաստանում գնված ստրկուհիները կոչվում էին «արծաթագին աղախին», ինչպես այդ ակներև է Ներսես Կաթողիկոսի ու Ներշապուհ Մամիկոնեցից եպիսկոպոսի սահմանած կանոններից՝ «Քահանայք մի՛ արբեցող և մի՛ արծաթագին աղախնայս ստանալ...» (ԿՀ, հոդ. ԼԲ, էջ 115), նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքից և այլ կանոններից։

Միջին դարերի վերաբերմամբ ունենք Մխիթար Գոշի Դատաստանագրքի վկայությունը, որի մեջ մի քանի հոդվածներում նշված է. «Եթէ պատահի քրիստոնէի գնել ծառայ քրիստոնեայ» (II, Ի, էջ 335), կամ «Եթէ գնիցէ ոք ծառայ այլազգի և կամ աղախին» (II, հոդ. ԻԲ, էջ 337)։ Ավելի բնորոշ է այն փաստը, որ ցույց է տալիս, թե որչափ զարգացած էր ստրկավաճառությունը Կիլիկիայում, որտեղ հայ թագավորները հատուկ դաշնագիր էին կնքում Ջենովայի վաճառականների հետ ստրուկների վաճառքի մասին։ Հիշենք այդ տեսակ դաշնագրերից մեկը, որը կնքվել է 1288 թ. դեկտեմբերի 23-ին, և որով Հայոց թագավոր Լևոն III-ը, ի միջի այլոց, ստրկավաճառության

մենաշնորհ և տալիս Ջենովացիներին. «Եւ ի ծառայքն, որ կու գնեն ու ի յերկրէն հանեն, նայ իրաւունք կուտան, նայ չտան իրաւունք. ապա թէ քրիստոնէյ ծառայք գնեն, նայ երդնուն, որ տաճկի չծախեն ու ոչ հայնց մարդոյ, որ կամենայն տաճկի ծախել» (I. Karst-Sempad'scher Kodex, B. II): Այսպես էր օրինականացնել հիշյալ դաշնագրերը ստրուկների տարածման վաճառքը:

Ստրկատիրոջ սեփականության իրավունքը նմանապես յերևում է այն դեպքում, յերբ ստրուկը նրանից փախչում է: Ինչպես բացահայտ է զանազան ժողովուրդների մեջ տիրող ստրկական իրավունքից, փախստական ստրուկը պետք է անպայման վերադարձվի իր տիրոջն ըստ պատկանելիության: Այդ սկզբունքով են առաջնորդված Ասորա-հռոմեյական Դատաստանագրքի համապատասխան որենքները, վորոնցից ԻԴ հոդվածն այնքան հեռու յե գնում, վոր խստագույն պատժով պատասխանատու յե դարձնում նույնիսկ այն անձին, վորը թաքցնում է իր մոտ ապաստանած փախստական ստրկին. «Եթէ այր ոք ընդունի առ ինքն զփախուցեալ ծառայ և գիտէր, որ ծառայ էր, հրամայէ օրէնքս, զի որ ընդունեցաւ, որպէս ծառայ քարշեսցեն տեարք ծառային ամ-մեկ ի դատաստան» (ԱՀԴ, հոդ. ԻԴ, էջ 14):

Սակայն Մխիթար Գոշի Դատաստանագրքի մեջ միանգամայն հակառակ սկզբունք ենք նկատում. «Մ'ի մատնեսցես զծառայ տեառն իւրում, որ յաւելուցու ի քեզ ի տեառնէ իւրմէ. ընդ քեզ բնակեսցէ և ընդ քեզ զետեղեսցի յամենայն տեղւոջ ուր և հաճոյ իցէ նմա, և մի' նեղիցէք զնա: Ոչ միայն զայլազգեաց ասէ, այլ և զեբրայեցւոց՝ որ թէ յանդգնեալ ոչ կամի եօթն ամին թողուլ զնա, և յաղագս այնր փախիցէ, զոր ասէ՝ ընդ քեզ բնակեսցէ, և թէ այլուր հաճոյ իցէ՝ անդ, և թէ այլ ազգ ինչ, հաշտեցուցանել և ոչ վայրապար տալ ի ձեռս: Զայս և մեզ պահել իրաւացի դատաստան է» (ՄԳ, II, հոդ. Հէ, էջ 391): Բայց այդ հակասությունը վերաբերում է միայն առանձնահատուկ ժամանակի յերևույթին: Բանը նրանումն է, վոր Մխիթար Գոշը վերոհիշյալ օրենքն ամբողջովին յուրացրել է Մովսիսական իրավունքից, վորի համաձայն ստրուկը 7 տարի աշխատելուց հետո անպայման ազատագրվում է: Հիրավի, ինչպես տեսնում ենք վերևում բերված որենքից, խոսքը վերաբերում է այն ստրկին, վորը 7 տա-

բուց հետո իր տիրոջ կողմից, չարամիտ բռնադատությամբ, չի ստանում որինական ազատություն և ստիպված է լինում փախչել և, ապաստանելով վորևէ մեկի մոտ, ձեռք բերել որենքով սահմանված ազատությունը: Հետևապես հիշյալ որենքը չէր տարածվում այնպիսի փախստական ստրուկների վրա, վորոնք դեռ չեյին կարող ոժտվել ազատության որենքով, այսինքն դեռ չեյին լրացրել իրենց յոթամյա ստրկական ծառայությունը:

Վոր իրոք փախստական ստրուկը պետք է վերադարձվեր իր տիրոջը, այդ կտեսնում ենք Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքի ԾԺԵ հոդվածից, վորի վերջում ասված է. «Եւ թէ ծառայ ի տաճկաց փախչի՝ նա մի՛ մասնէր գինք. քանց հանդոյ և կէլցոյ, որ ազատի ծառայութենէն»: Այստեղ, ինչպես նկատում ենք, փախստական ստրուկը չվերադարձնելու հանգամանքը կապված է այն պարագայի հետ, յեթե ստրուկը փախչում է մահմեդական տիրոջից. Հետևապես յեթե ստրուկը փախել է քրիստոնյա, այսինքն հայ տիրոջից, Կիլիկիայի հայ որենքը վոչինչ չի ասում այդպիսի ստրուկի պաշտպանության մասին: Ուստի յեզրակացնելու յենք, վոր հայից փախած ստրուկը վերադարձվելու յեր տիրոջը: Այս մեր յենթադրությունն ավելի ամուր հիմք է ստանում նույն Դատաստանագրքի մի այլ որենքի իմաստից, վորը վերաբերում է փախստական «պարիկոսին», վորին պետք է ճորտացած ստրուկ համարել: Ըստ այդ որենքի՝ փախստական պարիկոսը պետք է վերադարձվի իր անմիջական տիրոջը. «Կու հրամայէ աւրէնքս՝ որ թէ պառիկոս փախչի յիւր պարոնէն՝ նա քանի այն պառիկոսն ապրի, նա կարէ առնել գինք պարոնն. ապա թէ մեռնի ի դուրս՝ նա զորդիքն չկարէ ի կահրա առնել, քաւել թէ իր կամօք երթայ» (ՍԴ, հոդ. ՃԻԳ):

Վոր իրոք Հին Հայաստանում, հենց Արշակունյաց հարստության շրջանում, փախստական ստրուկները չեյին կարող ազատվել կամ մնալ ապաստանողի մոտ, այլ վերադարձվելու եյին իրենց իսկական տերերին, այդ բացահայտ է Արշակավան քաղաքի պատմությունից: Դեպի Արշակավան եյին փախչում, ի միջի այլոց, նաև ստրուկներն ու ճորտերը: Մովսես Խորենացու Պատմությունից տեսնում ենք, վոր հայ նախարարները այդ դեպքից զայրացած հարձակվում են զործում Արշակավանի վրա. «Եւ հա-

յին զնա սրով ուսերի յառնէ մինչև ցկին, բայց 'ի սպայից սանդխացաց. քանզի զառնացեալք էին իւրաքանչիւր ի վերայ ծառայից իւրոց և յանցաւորաց» (ՄԽ., III, ԻԵ, էջ 289: ՓԲ, IV, ԺԲ, էջ 110, ԺԳ, էջ 115):

10. ՍՏՐԿԻ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ.— Չնայած որ ստրուկները ստրկատիրոջ սեփականությունն էին համարվում և ամբողջովին ենթակա էին նրա իրավունքներին, այնուամենայնիվ օրենքը նրանց վերապահել էր, թեև սահմանափակ, բայց և այնպես որոշ իրավունքներ:

Առաջին հարցը, որ ծագում է, այդ այն է, թե արդյոք ստրուկներն ունեին՞ որևէ գույքային սեփականության իրավունք: Դժբախտաբար մեր մատենագրական աղբյուրները, նմանապես Հայ կանոնական իրավունքն և Մխիթար Գոշի ու Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքերն այդ մասին որոշ բան չեն ասում: Սակայն ճորտացած ստրուկների, այն է՝ Servi casati (խրճիթավոր ստրուկների) խնամատարը, կարող էր գույքություն ունենալ միայն այն դեպքում, եթե ստրուկը օժտված էր որոշ չափի սեփականության իրավունքով: Ուստի պետք է կռահել, որ այդ կատեգորիայի ստրուկները, բնակություն հաստատելով կալվածատիրոջ կողմից հատկացված հողաբաժիններում, ունեին իրենց սեփական խրճիթը, թերևս և ամենաանհրաժեշտ գյուղատնտեսական արտադրական միջոցները՝ գործիքներ, զույգ և անասուններ: Համենայն դեպս, կարելի է ենթադրել, որ ըստ սովորութական իրավունքի, ստրուկները Հին Հայաստանում կարող էին անհատորեն, իհարկե, իրենց տիրոջ թույլտվությամբ կամ համաձայնությամբ, ձեռք բերել անձնական սեփականության համար անհրաժեշտ իրեր, ինչպես այդ գոյություն ուներ հին հռոմեյական ստրկատիրական պայմաններում peculium— կոչված գույքային սեփականությամբ: Այդպիսի ենթադրության հիմք է տալիս Հայաստանում մի ժամանակ կիրառվող Ասորա-Հռոմեյական Դատաստանագիրքը. «Եթէ ծառայ ոք ինչս կամի գնել, տեառն իւրոյ հրամանաւ իշխան է առնել»: (Իէ, էջ 15): Ավելի ցայտուն երևան է գալիս ստրկի գույքային իրավունքը նույն դատաստանագրքի ԺԸ հոդվածում. «Յորժամ ոք զծառայ իւր ազատէ, պարտ է զստացուածս և զինչս

իւր ապառել ընդ նմին ի նոյն գիրն, զի թէ ոչ գրէ յանուանս զատուցուածս իւր, զոր ագահեաց, յորժամ վախճանի ոէր ծառային, անուն զամենայն ինչս ազատ ծառային՝ ժառանգի չէ ազատողին» (ԱՀԴ, էջ 13):

Վերջին հոդվածի իրավաբանական իմաստն իր նմանությամբ հիշեցնում է միջնադարյան եվրոպական ֆեոդալիզմում գոյություն ունեցող manus mortua, main morte «մեռյալ ձեռք» երևույթը:

Թեև Հին Հայաստանի ստրուկների պաշտպանության մասին իրենց տերերի խոշտանգումներից՝ վրեժից չեն ավանդում մատենագրական աղբյուրները, բայց միջին դարերում այդ պաշտպանությունն արդեն օրինականացված ենք տեսնում հայ դատաստանագրքերում: Նրանց օրենքն իր պաշտպանության տակ է առնում ստրուկներին յերկու դեպքում, երբ ստրկատերը խեղում էր ստրկի վորևէ անդամը կամ երբ նրան մահ էր պատճառում:

Եթե ստրուկը մեռնում է տիրոջ հարվածներից, վերջինս պատասխանատու է, թե՛ ըստ Մխիթար Գոշի (II, հոդ. Դէ) և թե՛ ըստ Սմբատի Դատաստանագրքի (հոդ. ՃԺԵ)՝ հատուցանել «արյան գինը»: Իսկ յեթե ստրկի մահը տեղի չէ ունենում հարվածներից մի քանի օր անց, այն ժամանակ ստրկատերն ազատվում է «արյան գինը» վճարելուց, յենթարկվելով միայն յեկեղեցական ապաշխարանքի:

Ինչ վերաբերում է ստրկին պատճառած խեղումներին, հայ Դատաստանագրքերը տիրոջ պատասխանատվության հարցում խտրություն են դնում, նայած, թե ստրուկը քրիստոնյա է, թե «այլազգի»: Մարմնական խեղումների դեպքում քրիստոնյա ստրուկն ազատություն է ստանում, իսկ այլազգին կարող է ազատվել, յեթե վճարի իր անձի գինը: Մխիթար Գոշի Դատաստանագրքում այդ հարցն այսպես է վորոշվում. «Իսկ եթէ ոք հարցէ զակն ծառայի իւրոյ կամ զակն աղախնոյ իւրոյ և կուրացուցէ, արձակեսցէ զնոսա ազատս փոխանակ ական նոցա: Եւ եթէ զատամն իւրոյ և կամ զատամն աղախնոյ իւրոյ թափեսցէ, արձակեսցէ զնոսա ազատս փոխանակ ատաման նոցա... Իսկ եթէ այլազգեաց իցէ ծառայն և աղախինն, վաճառեսցէ որքան արժան է՝ պակաս և կամ ընդ կէս գնոյ, ըստ որում ի դէպ իցէ զա-

տասանանի բռատամբք, սակայն իշխան լիցի թէ՛ և ոչ կամի՝ վաճառել» (Ա Հոդ. Լ, էջ 343)։ Գրեթե նույն իմաստն է պարունակում նաև Սմբատ Գունդստաբլի Դատաստանագիրքը (Հոդ. ճԺԷ)։

Հայ օրենքը ստրուկներին վերապահում էր ազատվելու իրավունք։ Թեև հին հայ մատենագրական աղբյուրներն այդ մասին վոչինչ չեն ավանդում, սակայն միջնադարյան հայ դատաստանագրքերը հիմք են տալիս կարծելու, վոր նախարարական շրջանումն էլ գոյություն է ունեցել ստրուկների ազատագրման իրավունքը, մանավանդ, յեթե նկատի առնենք, վոր հարևան յերկրներում, ինչպես օրինակ, Բյուզանդիոնում, այդ առթիվ կիրարկվում էյին հատուկ օրենքներ։

**Մխիթար Գոշի Դատաստանագիրքը**, հետևելով Մովսիսական օրենքներին, ստրկությունը ճանաչում է վոչ իբրև մշտնջենական դրություն։ Վեց լրիվ տարիներից հետո յոթերորդ տարում յուրաքանչյուր ստրուկ ստանում է ազատվելու իրավունք և կարող է հեռանալ տիրոջից. յեթե ամուսնացած է, կինն էլ նրա հետ է ազատվում (ՄԳ, II, հոդ. Ի)։ Բացի ազատության այդ օրինական ժամկետից՝ Դատաստանագիրքը սահմանում է, վոր ստրուկը ամեն ժամանակ կարող է ազատվել, «յորժամ լաւ, գնով իւր ծառայեսցէ» կամ յեթե նրան հետ են գնում ծնողները. «Ապա թէ կանխաւ հայր իւր փրկել գնա կարիցէ, փրկեսցէ» (ՄԳ, II, հոդ. ԻԱ)։ Վերջապես այլազգի ստրուկը կարող է ազատվել քրիստոնեություն ընդունելու դեպքում, փրկանք վճարելով. «Եթէ գնիցէ ոք ծառայ այլազգի և կամ աղախին, եթէ յանձն առնուն մկրտել՝ ըստ փրկանօք լիցին-գնոյ չափ ծառայեալք՝ ազատք լիցին...» (ՄԳ, II, հոդ. ԻԲ, էջ 337)։

Ստրուկներն իրավունք ունեյին վերջնականորեն ազատվել, յերբ հոգևոր կոչում էյին ընդունում. սակայն այս դեպքում անհրաժեշտ էր և ստրկատիրոջ վարդոյք համաձայնությունը. «Ծառայս ի ժառանգութիւն անել առանց կամաց տէրանցն ոչ հրամայեմք ի տրամութիւն ստացողացն, քանզի տանց կործանումն այս գործէ։ Ապա թէ երբէք արժանի երևեսցի ծառայն առ ի ձեռնադրութիւն սարկաւագի... և թողացուսցեն տեարք իւր և ազատեսցեն և ի տանէն ի բաց առաքեսցեն, եղիցին» (ՄԳ, II, հոդ.

սունս և մարդիկ առանց արքունի հրամանաց, ի նոցանէ ձգեն յաքսորս յօտար աշխարհ...» (ԱՀԴ, հոդ. ՃԻԱ, եջ 47)։

Հայաստանի նախարարները սովորություն են ունեցել, ինչպես ակներև է «Դունա ժողովոյն կանոնք»-ից, բռնի միջոցներով ստրկացնել ազատ մարդկանց. «Ցորժամ ազատք զիւրեանց երդ և զմարդ բաժանեն՝ յոլովք չարակնութեան առնեն, զժառանգաւորս եկեղեցւոյ ջանան ի ծառայութիւն և ի ստրկութիւն արկանել»[173]։

Ստրկից ծնվածը համարվում էր ժառանգաբար ստրուկ։ Այդ սկզբունքն օրինականացվել էր Մխիթար Գոշի ու Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքերում։ Մխիթար Գոշի Դատաստանագրքում այդ օրենքն այսպես է ձևակերպված. «Ապա թէ տէր տացէ նմա կին եւ ծնանիցի նմա որդիս եւ դստերս, կինն և որդիքն տեառն նորա եղիցին եւ նա միայն ելցէ. փրկանօք ելցեն եւ նորա» (ՄԳ, II, հոդ. Ի)։ Նույն իմաստն է սպրդում նաև Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքի ՃԺԵ հոդվածը։ Նույնն ենք գտնում Ասորա-Հռոմեյական Դատաստանագրքում. «Եթէ ծառայ ազատի եւ մնայ ընդ իշխանութեամբ տեառն իւրոյ անձնիշխան, եւ առնու կին յաղախնեաց տեառն զկնի ազատութեանն, եւ ծնանին ի նմանէ որդիս, ոչ ժառանգին զնա որդիք աղախնոյն, այլ ժառանգ լիցի նմա, որ ազատեացն զնա» (ԱՀԴ, հոդ. ԼԵ, եջ 17)։ Նմանապես կարող էին ստրկացվել ընկեցիկ ու որբ երեխաները. «Եթէ առնու ոք տղայ որբ, արու կամ էգ, որ ոչ գիտէ զծնողսն, կամ լինի ի չնութենէ, զորս ձգեն ի դրունս՝ յեկեղեցւոյ եւ յայլ տեղիս եւ սնուցանէ զնա կամօք, հարցանէ զօրէնս, թէ յորժամ աճէ, զի՞նչ է համարելոյ, ծառայ, թէ ազատ։ Հրամայէ նոմոս, թէ որպէս կամ է սնուցիչն՝ եղիցի, թէ մեռանի եւ թող զնա ծառայութեան անուամբ, ծառայ կոչի, և թէ ազատ՝ որպէս զորդի ազատի սնոյց, ազատութեան որդի է» (ԱՀԴ, հոդ. ՃԼ, եջ 49)։

Ամեն մի ազատված ստրուկ կարող էր հրաժարվել օրենքով իրեն վերապահված ազատությունից։ Այս դեպքում արդեն նրա ստրկությունը դառնում էր մշտնջենական. «Ապա թէ պատասխանի տուեալ ասիցէ ծառայն— սիրեցի զտէր իմ եւ զկին իմ եւ զորդիս իմ եւ ոչ գնացից յազատութիւն, տարցի զնա տէր իւր յա–

կեղեցի Աստուծոյ և քահանայիւք և հաւատարիմ վկայիւք եւ գրով առցէ զնա ծառայ յաւիտեան» (ՄԳ, հոդ. Ի)։ Նույնն է ասված Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքում (հոդ. ՃԺԵ) և Ասորա-Հռոմեյական Դատաստանագրքում (հոդ. ԼԲ, ԼԳ)։

Մի քանի դեպքերում ստրկացումը կիրառվում էր նաև իբրև պատժական միջոց վորոշ հանցագործությունների նկատմամբ։ Այդ պատժին սովորաբար յենթակա էյին վո՛չ թե ազատները, այլ միայն շինական դասին պատկանողները։ Այս տեսակ ստրկության հետ կապված էյին ամենածանր ու վտանգավոր աշխատանքները։ Հայ մատենագրական աղբյուրները հաղորդում են այդ տեսակ ստրկության մասին միայն կանանց վերաբերմամբ, վորոնք իբրև ստրուկներ աշխատեցվում էյին ուրկանոցներում կամ գողենոցներում։

«Ցայտ եղեւ եթէ զառաջին կինն նա՛ եա թողուլ, կալցեն զկինն եւ յուրկանոց տարի մի աղասցէ գողեացն, եթէ ազատ է, յուրկանոց չերթայ Ճ [100] գրամ տացէ ի գողխն» (ԿՀ, հոդ. Դ, էջ 64)։

«Ապա եթէ մինչդեռ 'ի դատին եւ 'ի տուգանսն իցեն, եւ ամ մի ի վերայ չիցէ անցեալ, եւ ոք 'ի կանանց յանդգնեսցի եւ առն կին լինիցի, կոչցեն զկինն եւ յուրկանոց տացեն. քանզի յայտ եղեւ, եթէ հանելոյ կնոջն նա եղեւ պատճառ, եւ տարի մի աղասցէ գողեացն եւ յաղախնութեան կացցէ» (Անդ, հոդ. Ե, էջ 65)։

Թեև մատենագրական աղբյուրները չեն հաղորդում տվյալներ այր մարդկանց մասին, վորոնք պատժական կարգով ստրկացվում էյին, բայց պետք է յենթադրել, վոր տղամարդիկ էլ վորոշ հանցանքների դեպքում պետք է յենթարկվեյին ստրկության, ինչպես այդ սովորական էր հին Հունաստանում, Հռոմում և այլ ստրկատիրական յերկրներում, ուր այդ տեսակ ստրուկներն աշխատեցվում էյին գլխավորապես հանքահորերում և նավերի վրա իբրև թիավարներ, այսինքն ամենադաժան ու վտանգավոր աշխատանքներում։ Բայց և այնպես Մովսես Կաղանկատվացու մոտ գտնում ենք հետաքրքիր տեղեկություն, թե ինչպես Աղվանից Վաչագան թագավորը քրիստոնեյության դեմ ըմբոստացողներին

«պատժէր՝ զոմանս խեղդելով, զոմանս չկօթակս առնելով և զոմանս 'ի ստրկութիւն արկանելով»[174]:

Մենք արդեն առիթ ունեցանք վերը նշելու, վոր ստրուկները տուր և առի առարկա յեն լինում: Ուր դերեվարություն կար, այնտեղ էլ նրա հետևանքն էր լինում գերեվաճառությունը: Իսկ գերեվաճառությունն էլ իր հերթին դառնում էր ստրուկներ մատակարարելու միջոց: Ավելորդ ենք համարում այստեղ կրկնել արդեն միանգամ նախորդ գլխում առաջ բերված օրինակները: Սակայն ստրուկ եյին դարձվում վո՛չ միայն ռազմագերիները, վաճառքի հանելով, այլ և ազատ մարդիկ, վորոնք անկարող եյին լինում իրենց պարտքերը հատուցանելու:

Ներսես կաթողիկոսի և Ներշապուհ Մամիկոնեյից յեպիսկոպոսի կանոններում գրված է. «Եղին ոմանք եւ զվաշխս դահեկանաց իւրեանց, կէսք վաճառեցին ընկերաց իւրեանց որպէս ծառայս» (ԿՀ, հոդ. Գ, էջ 108):

Նմանապես Հովհան Մանդակունու «Վասն փոխոց եւ վաշխից» ճառի մեջ գտնում ենք հետևյալ բնորոշ խոսքերը. «Ի ժամ 'փոխոցն տալոյ զուարթերես կեղծաւորի եւ յորժամ ժամադրութիւն վաշխիցն հասանիցէ, տեսանելով զչքաւորութիւն և զտարակուսութիւն պարտապանին, ո՛չ ողորմի եւ ո՛չ երդմանն հաւատայ մաղթողին, ո՛չ խոնարհի յաղաչանս վարանեցելոյն, այլ դժոխեալ անխոնարհելի եւ անհաշտ, եւ իր ծառայ փոխառուն համարի փոխառուն»:[175]

Այդ սովորությունն արձագանք է գտել նաև հայ միջնադարյան օրենսգրքերում: Մխիթար Գոշի Դատաստանագրքի համաձայն՝ յեթե մարդասպանն անկարող լինի ըստ դատավճռի հատուցանել արյան գինը, «ապա թէ աղքատ իցէ, վաճառեսցի իւրովքն յազգատոհմ եւ հատուսցէ» (ՄԳ., II, հոդ. Ա, էջ 311): Նմանապես աղքատության և այլ նյութական կարիքների, թերևս պարտքերը վճարելու անկարողության հետևանքով, ծնողները ստիպված են լինում վաճառել իրենց զավակներին՝ «յաղախնութեան» և «ծառայութեան»: Մխիթար Գոշը փորձում է իր Դատաստանագրքի մեջ սահմանափակել այդօրինակ վաճառքի սովորությունը. «Իսկ եթէ պատահի ումեք վաճառել զդուստր իւր

ըստ որում և իցէ պատճառի առնն հաւատացելոյ, մի' իբրև զաղախին վճռաւ վաճառիցէ. զի թէ ոչ իցէ յաչս տեառն իւրոյ հաճոյ որում հաստատեցաւն, փրկեսցէ զնա հայր իւր: Բայց յազգ օտար չէ իշխան վաճառել տէր իւր...» (ՄԳ, II, հոդ. ԻԱ., էջ 336):

Նույնն ենք տեսնում Սմբատ Գունդստաբլի Դատաստանագըրքում, ուր գրված է. «Եթէ ոք զիւր դուստրն վասն աղքատութեան ծախէ քրիստոնէի մի, նա կարէ զէդ ծառայ մի այլ ունալ զինք, բայց չկարէ յանուրէնք ծախել. եւ յորժամ կարենան ծնաւղքն կամ ազգքն վճարել զպարտքն՝ նա ազատէ» (Karst, հոդ. ճԺԶ):

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Ֆ. Էնգելս—Անտի-Դյուրինգ. հայ. թարգմ. 1932 թ., էջ 31։*

2 *Կարլ Մարքս — Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, 1932 թ., էջ 62—63։*

3 *Անդ՝ էջ 27։*

4 A. Brosset—Notice sur la Code Géorgien, manuscrit de la Bibl. Royale. „Nouveau Journal Asiatique“, I, III, 1829, Paris.

A. Brosset—Rapports sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Armenie. St.-Petersbourg, 1851.

5 Biener—Vorläufige Nachricht über einige noch jetzt geltende georgische und armenische Rechtssammlungen. „Krit. Zeitschrift für Rechtskunde und Gesetzgebung des Auslandes“. Bd. II, 1830.

6 Aug. Haxthausen—Transkaukasien, I—II Bände, Leipzig, 1856. II *հատորին կցված է առանձին հավելված՝* „Zur Jurisprudenz in Transkaukasien“.

7 *Տպագրված է* „Wiener Zeitung“*-ի հավելված* „Oesterreichische Blätter für Literatur und Kunst“, 1857. №№ 28, 33,37, 39. *Թարգմանված է հայերեն՝ «Ուսումնասիրութիւնք Լեհահայոց Դատաստանագրոյն», Վիեննա, 1890։*

8 *Տպագրված է՝* „Sitzungsberichte d. Kais. Akademie d. Wissenschaften. Philolog.-historische Klasse, 40. Wien, 1862.

9 *Լատիներեն բնագիրը.* „Statuta iuris Armenici per Sigismundum primum Regem Poloniae pietissimum approbate et confirmata iussuque ac mandato eiusdem Regiae Majestatis ex lingua illorum nativa et latinum sermonem translata et hic fideliter ex exemplari descripta“.

10 *Վ. Բաստամեան—Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք հայոց. հառաջաբանութիւն հեղինակի, էջ 27—37. Վաղարշապատ, 1880.*

11 Das mosaische Receptionsrecht im armenischen Recht. 1906, Wien.

12 Beiträge zur mosaischen Reception im armenischen Recht. 1906, Wien.

13 *Լեո—Խոջայական կապիտալ. Երևան, 1934 թ., էջ 140—141։*

14 *«Մուրճ» ամսագիր, Թիֆլիս, 1905 թ., № 10։*

15 *Ֆ. Էնգելս—Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը. 1932 թ., Երևան, էջ 112—113։*

16 *Անդ՝ էջ 192—193։*

17 *Տոհմային հասարակության հարաբերությունների պատկերն ու բա-*

ցատրությունը ցայտուն կերպով տալիս է Ֆ. Էնգելսն իր «Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը» կլասիկ աշխատության էջերում, մանավորապես կանգ առնելով իրոկեզների տոհմի վրա. տես III գլուխ, էջ 97—115 և այլն։

18 Անդ՝ էջ 191—192։

19 В. Сергеевич—Лекции и исследования по древней истории русского права, 1894, էջ 14։

20 Первый черновик письма К. Маркса к В. Засулич. Архив, т. I, стр. 27.

К. Маркс и Ф. Энгельс.—Сочинения, т. XXI, стр. 500. К. Маркс—Капитал, т. I, стр. 270—271, 1930 г.

21 Հ. Գ. Զարբհանալյան—Հայկական հին դպրության պատմություն, Վենետիկ, 1897 թ., էջ 183։

22 «Գիտասցէ, զի անդ սովորութիւնն զայնոսիկ յառաջ տանի, այլ ըստ գրոց դատաստանի զայդոսիկ հաստատուն կարծեմ» (ՄԳ, II, գլ. Ա., էջ 302). «Զի ամենայն գիրք (Հին և Նոր Կտակարան) զի՞նչ այլ ինչ են, եթէ ոչ խրատք և օրէնք հոգևոր և մարմնաւոր դատաստանի» (Նախադրութիւն, գլ. Ժ., էջ 66)։

23 «Զայս ըստ սովորութեան ասացաք» (ՄԳ, II, հոդ. Ա., էջ 313)։

24 Մ. Աբեղյան—Հայ միջնադարյան տաղերն և սոցիալական հարաբերությունները նրանց մեջ։ «Նյութեր հին Հայաստանի պատմության», Երևան, 1935։

25 В. Сергеевич—Лекции и исследования по древней истории русского права, СПБ. 1894, стр. 14.

26 Աբել Մխիթարյան—Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ հանդերձ կանոնադրութեամբք. Վաղարշապատ, 1874 թ.։

27 Ներսես Շնորհալի—Թուղթ ընդհանրական. Վենետիկ, 1833 թ., էջ 253։

28 Նախանիկիական կանոնները, որոնք յեկեղեցական մատենագրության մեջ հայտնի չեն և մուծվել են հայ կանոնագրքի մեջ, հետևյալներն են

1. Վարդապետութիւն առաքելոց.
2. Առաքելական կանոնք Կղեմայ.
3. Առաքելական կանոնք հարանցն հետևողաց և առաքելոց։

29 Երեք տիեզերական ժողովների կանոններն են.

1. I Նիկիայի ժողովի—325 թ.
2. II Կոստանդնուպոլսի ժողովի—381 թ.
3. III Եփեսոսի ժողովի—431 թ.։

30 Արտաքին տեղական ժողովների կանոններն են.

1. Անկյուրիայի ժողովի—314 թ.
2. Կեսարիայի » —314 թ.
3. Նեոկեսարիայի » —315 թ.
4. Գանգրայի » —340 թ. (350 թ.)
5. Անտիոքի » —341 թ.

*6. Լաոդիկեայի ժողովի*—IV *դարի 2-րդ կեսը.*

*7. Սարդիկիայի » —343 թ.*

31 *Ազգային կանոնները հետևյալներն են.*

*Ա) Առանձին հոգևոր անձերի կողմից հորինված կամ նրանց վերագրված—1) Կանոնք Ս. Թադէոսի*—I *դար. 2) Փիլիպոս առաքելոյն կանոններ (*I *դար). 3) Կանոնք Գրիգորի Լուսաւորչի (302—325 թ.թ.). 4) Ներսիսի հայոց Հայրապետի (353—363 թ.թ.). 5) Սահակայ Մեծի (387—439 թ.թ.)։ 6) Ներսիսի կաթողիկոսի և Ներշապուհ Մամիկոնէից եպիսկոպոսի (548—557 թ.թ.). 7) Հովհաննու Մանդակունւոյ (478—490 թ.թ.). 8) Ներսիսի Շնորհալւոյ (1166—1173 թ.թ.)։*

*Բ) Եկեղեցական ժողովների — 1) Շահապիվանի — 443 թ., 2) Դվինի—554 թ., 3) Կարինի (Թեոդոսիոպոլի)—629 թ., 4) Դվինի—648 թ., 5) Կարինի—685 թ., 6) Դվինի (Կաթողիկոս Հովհան Օձնեցի)—719 թ., 7) Պարտավի—768 թ.։*

*Գ) Բացի վերոհիշյալներից՝ մեզ հասել են Աշտիշատի (354 թ.), Մանազկերտի (726 թ.), Սիսի (1243 թ.) և Ջագամանի (1270 թ.) յեկեղեցական ժողովների կանոնական վորոշումները, վորոնք, սակայն, Կանոնագրքի վոչ մի օրինակի մեջ չեն մուծված։*

32 Das mosaische Receptionsrecht im armenischen Recht. „Sitzungsberichte der Kaiserl. Akademie der Wissenschaften in Wien. „Philosoph.-historische Klasse, B. CLIV, III, Semitica, II. H. 1906.

33 Beiträge zur mosaischen Reception im armenischen Recht. Ibid. B. CLIII, III. Semitica, I. H. 1906, Wien.

34 *Հ. Գ. Զարբհանալյան—Թարգմանութիւնք նախնեաց, էջ 755։*

35 K. Bruns und E. Sachau—Syrisch-römisches Rechtsbuch, *էջ 163։*

36 I. Karst—Grundriss der Geschichte des armenischen Rechts. „Zeitschr. f. vergleichende Rechtswissenschaft“, B. XIX, 1906, Stuttgart, *էջ 328։*

37 *Հ. Գ. Զարբհանալեան—Թարգմանութիւնք նախնեաց, էջ 755։*

38 K. Gütterbock—Römisch-Armenien und die römischen Sàtrapien in 4 bis 6. Jahrh., Berlin, 1906, *էջ 25։*

39 *Հրատարակված է «Բանասեր» ամսագրում. Փարիզ, 1907 թ., էջ 14—18։*

40 *Հայերեն բնագիրը հրատարակված է «Բանասեր» ամսագրում. Փարիզ, 1902 թ., էջ 321—328։*

41 Grundriss der Geschichte d. armenischen Rechts. Ibid, *էջ 341։*

42 *Հ. Գ. Զարբհանալեան—Թարգմանութիւնք նախնեաց, էջ 754—755։*

43 *Կ. Կոստանյան—Դավիթ Ալավկա վորդի. «Ազգագրական Հանդէս», հատ.* XIV, *Թիֆլիս, էջ 106։*

44 *Անդ, հատ.* XV, *էջ 64—66։*

45 *Հ. Գ. Զարբհանալեան—Թարգմանութիւնք նախնեաց, էջ 755։*

46 Судебная книга Мхитара Гоша и Книга канонов. „Известия

Кавказск. Историко-Археологич. Института", т. III, стр. 65—70, Тбилиси, 1925 г.

[47] *Հետաքրքրական է, որ «Ասսիզք Անտիոքայ» Ֆրանկ բնագիրը մեզ չի հասել և միայն պահպանված հայերեն ձեռագրի հիման վրա, որ հրատարակվել է հայերեն ու թարգմանվել ֆրանսերեն (Վենետիկի Մխիթարյանների ձեռքով), յեվրոպական պատմագրությունը հնարավորություն է ստացել վերականգնելու այդ ֆեոդալական օրենսգիրքը։*

[48] *«Հույս», ամսագիր Արմաշի վանքի. Զմյուռնիա, 1870 թ., № 52։*

[49] М. Эмин—История Моисея Хоренского. *Գ. Ալիշան—Այրարատ, էջ 430—431.* Н. Адонц—Армения в эпоху Юстиниана, стр. 248—272. Г. Халатянц—Армянские аршакиды, стр. 294.

[50] *Սոփերք հայկականք, Զ գիրք, էջ 32. նաև* Н. Адонц—Ibid.

[51] М. Ростовцев—Апаранская надпись царя Тиридата. Анийск. серия, № 6, СПБ, 1911.

[52] Lehmann-Haupt—Armenien einst und jetzt, B. II, *էջ 410—429։*

[53] М. Ростовцев—О римских гарнизонах в Армении. „Известия Археологическ. Комисии", вып. 33.

[54ա] *Կ. Կոստանեան—Ցուցակ ժողովածոյ արձանագրութեանց հայոց. Ս. Պետերբուրգ, 1913 թ.։*

[54բ] *Նորագույն պատմագիտական տվյալներով պետք է ապացուցված համարել, որ Մովսես Խորենացու նկարագրած Վաղարշակ հայոց թագավորն իսկապես Տրդատ I-ն է։ Մովսես Խորենացին, հետևելով ժողովրդական ավանդություններին, Հայաստանի Արշակունի դինաստիայի հիմնադիր համարում է Վաղարշակին, որ իրականում յեղել է Տրդատ I-ի ավագ յեղբայրն ու Պարթևների թագավոր։*

[55] C. I. 1, 29, 5—Imp. Iustinianus A. Zetae viro illustri magistro militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentes.

[56] *Շահապիվանը գտնվում էր Բագրևանդ գավառում, այժմյան Բայազետի (Թյուրքիա) շրջակայքում։*

[57] *Ղևոնդեայ մեծի վարդապետի՝ Պատմութիւն հայոց. ՍՊԲ. 1887 թ., գլ.* VI, VIII։

[58] *Յակուբի. «Հանդէս ամսօրյա», 1906 թ., էջ 359, 361, Բալաձուրի, Իբն-ալ-Ֆակիհ և այլն։*—Сведения арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане, перев. Н. А. Караулова. „Сборник материалов по описанию местностей и племен Кавказа", т. XXXI, *էջ 15—17։*

[59] *«Արարատ» ամսագիր, Վաղարշապատ, 1912 թ., № 12, էջ 1122։*

[60] *Ստեփաննոսի Տարոնեցւոյ Ասողկան՝ Պատմութիւն տիեզերական.* II, *էջ 108։*

[61] *և* [62] *Այստեղ ի նկատի յեն առնված Մովսես Խորենացու Պատմության մեջ հիշատակվող օրենքները, վորոնք վերագրվում են Վաղարշակ թագավորին, օրինակ՝* II, *գլ. գլ. 8 և 56,* III, *գլ. 77։*

[63] К. Маркс и Ф. Энгельс—Сочинения, т. IX, стр. 348.

[64] *Վարդանայ՝ Պատմութիւն հայոց. Վենետիկ, 1862 թ., էջ 103։*

[65] *Անդ։*

66 *Մաղաքիա Աբեղայ՝ Պատմութիւն ազգին նետողաց. Մոսկվա, 1870 թ. էջ 32—33։*

67 *ԿԳ, էջ 146, 208, 217, 229—230։ ՍՕ., էջ 299։ Մաղաքիա Աբեղայ—Պատմութիւն ազգին նետողաց, էջ 22—23։*

68 *Դունայ* IV *ժողովի, 648 թ., հոդվածներ Թ, Ժ, ԺԱ, ԺԲ, էջ 126—128, ՀԿ.։*

69 К. Маркс—Капитал, т. III, ч. 2, стр. 270, 1930 г.

70 Plut. Luc. 21.

71 К. Маркс—Капитал, т. III, ч. 3, стр. 570.

72 *ՓԲ. դպր.* III, *գլ. ԺԱ, էջ 28, գլ. Ի, էջ 51, 54. դպր.* IV, *գլ. ԻԴ, էջ 147, գլ. ԾԱ, էջ 166, 170, 171 և այլն։*

73 *ՍՕ, էջ 37, 40, 50, 193, 800, 319 և այլն։*

74 *Բ. Խալաթյանց—Արաբական գրողները հայերի մասին, «Հանդես Ամսօրյա», 1904 թ., էջ 179։*

75 *Ֆարանգիան գտնվում էր Հայաստանում՝ ճորոխ գետի վերին հոսանքում և Ն. Ադոնցի կարծիքով՝ հայկական Սպերն էր կամ դասական Սիսպիրիս* (ААЮ, *էջ 25)։*

76 Arthur Christensen—L'empire des Sassanides, p. 58.

77 *Ղ. Ալիշան—Այրարատ. Վենետիկ, էջ 121։*

78 А. Мюллер—История ислама, т. I, стр. 302—303.

79 М. Ростовцев—Апаранская греческая надпись царя Тиридата. Анийская серия, № 6, 1911, С. Петербург.

80 Fr. Turnebize—Histoire politique et religieuse de L'Armenie. Paris, 1900.

81 I. Laurent - L'Armenie entre Buzance et l'Islam. Paris. 1919.

82 *Հ. Մանանդյան—Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 325։*

83 *ՎՏ—76, 77, 79, 85, 97, 104, 111, 112, 124, 147, 162 և այլն։*

84 Н. Я. Марр—Ани, *էջ 12, նաև ՎՏ, էջ 134 և այլն։*

85 *Ղ. Ալիշան—Շիրակ, էջ 119. նաև ՎՏ, էջ 171։*

86 *Հ. Մանանդյան—Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 104—117։*

87 *Մովսէսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի. հրատ. Մ. Էմինի, Մոսկվա, գլ. ԻՉ, էջ 66-67։*

88 И. Вебер—История хозяйства, пер. с немецк. под редакцией Гревса. 1924, *էջ 50։*

89 Ф. Энгельс—Анти-Дюринг, стр. 129, изд. 1934 г.

90 Ф. Энгельс—Анти-Дюринг, 1934 г., *էջ 128։*

91 Н. Я. Марр и Я. И. Смирнов—Вишапы. Труды ГАИМК, т. I, Ленинград, 1931.

92 *ՍՕ, էջ 253—255, 262—263. ՎՏ, էջ 28, 39, 46։*

93 *ՍՕ, էջ 176, 178, 179, 182, 204, 217, 218, 229, 232, 253—255, 262—263, 270, 295, 325, 328, 357, 366 և այլն։*

94 *ՎՏ, էջ 37, 43, 47, 50, 51, 74 (1231 թ.6 և 1231 թ.c), 242 (№ 149 արձ.), 141, 146, 156, 157, 158։*

95 *ՎՏ, էջ 20 (2 արձանագրություններ), 40 (1200 թ.a)։*

[96] *Մխիթար Գոշի հրատարակված Դատաստանագրքի Ժ հոդվածում խակալես գրված է՝ «այլ գետք յորոց հուին սահմանաց ոչ է, բայց առ որ հասանեն»։ Դատաստանագրքի հրատարակիչ Վահան Վ. Բաստամյանն այդ պարբերությունը վերաբերյալ ԺԲ ծանոթության մեջ (էջ 327) առաջ է բերում մի այլ վարիանտ, որ վերցրել է Էջմիածնի №№ 488 և 749 ձեռագրերից և որին մենք գերադասում ենք ներկա տեսության համար, ընդունելով այն ավելի ճիշտ ու հարազատ, մանավանդ որ Սմբատ Գունդստաբլի Դատաստանագիրքը, կազմված լինելով Մխիթար Գոշի Դատաստանագրքից, յուրացրել է հենց այդ վերջին վարիանտով, որ անշուշտ ավելի հին է ու հարազատ։ Տպագրված օրինակի իմաստը միանգամայն հակառակ է №№ 488 և 749 ձեռագրերին և ամենայն հավանականությամբ հետնագույն ժամանակի դիտավորյալ փոփոխություն է, կամ թե արտագրող գրիչների անգիտակ աղավաղումն։*

[97] И. Зелинский—Материалы по иссл. экономическ. положения гос. крестьян Закавк. т. IV, ч. I, *էջ 45։*

[98] С. Егиазаров—Сельская община, *էջ 245–246։*

[99] Ф. Энгельс—Происхождение семьи, собственности и государства, *1932, էջ 174։*

[100] К. Маркс и Ф. Энгельс—Немецкая идеология, *1935, էջ 157։*

[101] *Ագ, գլ. ՃԻԶ, էջ 440. ՓԲ,* III, *գլ. Թ, էջ 21,* IV, *գլ. Ծ, էջ 163.* V, *գլ. ԺԶ, էջ 216։*

[102] Marquart—Eranschahr, 172.

[103] И. Джавахов—Государственный строй древней Грузии и древней Армении, СПБ, 1905 г., *էջ 110.*

[104] *«Բազումք են յայս երից աշխարհաց յազատորերոյ, որք են աւագ քան զիս և զահու և աւուրբք» (ՂՓ, գլ. ԻԶ, էջ 40)։*

[105] *Հ. Մանանդյան—Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 42։*

[106] Revue des études armeniennes, II, fasc. 1, p. 1–3.

[107] „Записки Восточного отделения Русского Археологического общества“, 1891 г., т. V, стр. 286—289; 1899 г., т. XI, стр. 165–174.

[108] H. Hübschmann—Armeniaca, „Zeitschr. der Morgenländischen Gesellschaft“, 1892, p. 324 ff.

[109] *Պեհլ.* azat, *պարսկ.* azad, azat-an, *հոգն. թիվ* azat *բառի, անցյալ դերբայ* â-zan, â-zâ *բառից, որ նշանակում է ծնել* (ААЮ, *444*)։

[110] A. Christensen—L'empire des Sassanides, p. 44.

[111] *«Զայնու ժամանակաւ ապստամբեաց յարքայէն Հայոց մի 'ի ծառայից նորա մեծ իշխանն Աղձնեաց, որ անուանեալ կոչէր բդեշխն, որ էր մի 'ի չորից գահերէց բարձերէց տաճարին արքունի» (ՓԲ,* III, *գլ. Թ., էջ 21)։*

[112] *«Զպատիւ մարզպանութեան գահակալութեան հաւատացեալ, ըստ կարգի բարձաբերձութեան թագաւորացն հայոց» (ԹԱ)։*

[113] *Եւ սպարապետին Մանուէլի նոյնպէս ետ տանել զթագաւորական պատմուճանն, սամոյր մի և զգլխոյ պատիւ զարգմանակ ոսկի արծաթ» (ՓԲ,* V, *գլ. ԼԸ, էջ 252)։*

114 ААЮ, 236—297, М. Эмин—История Моисея Хоренского, стр. 295.

115 *Անդ, վերոհիշյալները, նաև Ղ. Ալիշան—Այրարատ, էջ 424—425. Յովհաննէս Շահխաթունեան—Ստորագրութիւն կաթուղիկէ Էջմիածնի և հինգ գաւառաց Արարատայ. 1842 թ., Վաղարշապատ,* II *հատ., էջ 59։*

116 *Ն. Ադոնցի բավականին հաջող համեմատական յեզրակացության համաձայն՝ հին Հայաստանի «գործ», «գործակալ» և «գործակալություն» տերմինները համապատասխանում են արևմտյան միջնադարյան ֆեոդալիզմի* office *և* officier-*ին* (ААЮ, *էջ 467*)։

117 *Հայագետների մեծամասնությունն* aspet *բառին տալիս է այն սովորական նշանակությունը, որ ընդունված է մեր գրական լեզվում, այն է՝ ազնվական տոհմի ձիավոր, համանիշ յեվրոպական միջնադարյան ֆեոդալականության* chevalier *կամ* Ritter։ *Հայագետ Հյուբշմանի բացատրությամբ հայկական* aspet-*ը ծագում է իրանական* aspapati *բառից, որ նշանակում է ձիատեր* (Armenische Grammatik, 109)։

118 Hazara-pati=*հազարի պետ, համանիշ հունական* χιλίαρχος-*ին կամ հին ռուսական* тысяцкий-*ին, որ սկզբներում զինվորական տերմին է յեղել, իբրև 1000 զինվորների գլխապետ, հրամանատար, սակայն այդ տերմինը հայկական կենցաղում փոխադրվել է քաղաքացիական ծառայության բնագավառը։*

119 *ՓԲ,* IV, *գլ. ԺԴ, էջ 117.* V, *գլ. Գ, էջ 195.* III, *գլ. ԺԸ, էջ 46—47. Ագ, գլ. ՃԺԲ, էջ 414։*

120 *Նաև ՓԲ,* IV, *գլ. Դ, էջ 72.* V, *գլ. Գ, էջ 196. ՄԽ,* III, *գլ. ԺԵ, էջ 271, 272.*

121 Agathangelus, v. Paul de Lagarde, c. 135, p. 68.

122 A. Christensen,—L'empire des Sassanides, p. 44.

123 *Ըստ Ց. Կարստի՝ հատ.* I, *հոդ. 70, էջ 104—105. ըստ Ա. Ղլտճյանի՝ հրատ. հոդ. ՀԴ, էջ 47։*

124 *Ինճիճյան—Հնախոսություն Հայաստանի, հրատ.* II, *էջ 132—133, 160—162։* Н. Адонц—Армения в эпоху Юстиниана, *էջ 463, 476—479։ Հ. Մանանդյան—Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 95—105։*

125 H. Hübschmann—Armenische Grammatik, 215.

126 Cod. TH. XII, B, 6. Caddanae satrapae Sophanenae.

127 Secundum consuetudinem moris antiqui omnes satrapae pro devotione, quae Romano debetur imperio, coronam ex propriis facultatibus faciant.

128 *ԹԱ, էջ 221, 222, 387, 426, 448 և այլն*

129 *Կատապան տերմինի նշանակությունը տակավին պարզաբանված չէ։ Ղևոնդ Ալիշանն այդ մասին գրում է հետևյալը. «Կատապան—*κατεπάν *կամ* καθ' ἅπαν *ըստ ոմանց ի լատին բառէ* capitaneus *եղեալ, նշանակէ գլխաւոր կամ զօրավար, այլ հաւանօրէն 'ի յունականէն, ընդհանրական կամ ամենապետ նշանակելով և լաւ ես ըստ հայում համակար, որպէս կոչէին պաշտօնեայք ոմանք Սասանեանց 'ի Հայս, իսկ կատապան անուանէին տեղակալք, մարզպանք կայսերաց 'ի հեռաւոր նահանգս կամ 'ի գաղթականս (Ալիշան—Շիրակ, էջ 97, ծանոթություն)։ Տես նաև* С. Егиазаров—Исследования по истории армянского права, *էջ 23։*

Այլ բացատրություն է տալիս կ ա տ ա պ ա ն տերմինին բյուզանդագետ պրոֆ. Բենեշևիչը. «պետք է տարբերել մի կողմից՝ ὁ κατεπάνω (κατέπανος, κατεπάνος) κατ'έπανω-ից, բյուզանդական ադմինիստրացիայի բարձրագույն պաշտոնյաներից մեկը վարոշելու համար, իսկ մյուս կողմից՝ պա զուտ իրանական բառ է, որ յերևում է կենդանի հայ լեզվում կ ա տ ե պ ա ն ձևով խաղողի այգու կառավարչի հատուկ նշանակությամբ (H. Hübschmann—Armenische Grammatik, I, 355, 177), պարսկ. kadebân (katepan), որ պետք է նշանակեր տան, գյուղի (մշակված վայրի) կառավարիչ»։ — В. Бенешевич—Три анийские ладписи. Анийская серия, VII, 1921, стр. 3—4, примечание.

130 В. Бенешевич—Три анийские надписи, Ibid.

131 Դ. Ալիշան—Շիրակ, եջ 43, 49։

132 С. Егиазаров, проф.—Исследования по истории армянского права, стр. 26.

133 Խաղրակյանք կամ Գողյանք. եջ 15, 22։

134 Դ. Ալիշան—Այրարատ, եջ 263։

135 Դ. Ալիշան—Շիրակ, եջ 113։

136 Դ. Ալիշան—Շիրակ, եջ 43. МА, եջ 41։

137 К. Маркс—Капитал, т. III, ч. 2, стр. 570.

138 К. Маркс—Ibid, стр. 569.

139 К. Маркс—Ibid, стр. 572.

140 Ibid, 572—573.

141 H. Hübschmann—Armenische Grammatik, 233.

142ա Հ. Մանանդյան—Ֆեոդալիզմը հին Հայաստանում. եջ 149։

142բ Н. Марр—Батум, Ардаган, Карс, стр. 31—33.

143 «Եւ զգաւառս իշխանութեան նորա սրով դատի (Մանաճիհր իշխանը) յանխնայ, ոչ միայն զմարտիկս, այլ և զռամիկ շինականս» (ՄԽ, III, գլ. Է, եջ 260)։

«Ապա առաւել ժողովեցան... նախարարք մեծամեծք, աւագք... բայց ի զօրավարացն, այլ և 'ի շինականաց անզամ ռամիկ մարդկանն» (ՓԲ, III, գլ. ԻԱ, եջ 54)։

144 «Սաստելով և հաւանեցուցանելով զմեծամեծս նախարարսն և զամենայն բազմութիւն ռամկին» (ՄԽ, II, գլ. ԴԲ, եջ 248)։

«Եւ առեալ ընդ իւր զնախարարսն և զազատս և զայլ ամենայն ռամիկն» (ՂՓ, III, գլ. ՀԱ, եջ 282)։

«Եւ լուեալ զայս մարդկանն որ ի քաղաքին էին, զրոհ տուեալ առ համարակ ամենայն մարդոյ, նախարարաց և ազատաց, ոստանկաց և ռամկաց» (ՂՓ, III, գլ. ԴԹ, եջ 394)։

145 H. Hübschmann—Armenische Grammatik, 213.

146 H. Hübschmann—Die altarmenischen Ortsnamen, 282.

147 «Հիծախել արարեալ զգեղեցկայարմար աւանս շինից, գիւղից և ագարակաց» (ՍՕ, գլ. ԺԱ, եջ 41)։

148 ՑԴ, եջ 139, 146, 259, 326։

149 Ակադեմիկոս Ն. Մառը շինական տերմինը բացատրում է ագարա-

կան ծագումով. „В бассейне Куры при грузинах-иверах народ шинов был классом и земледельцев и воинов. При грузинах-картвелах в том же бассейне, как при haйко-hайях в бассейне Аракса и Вана, те же шины или шинаканы составляли класс лишь земледельцев, в Армении местами сохранившийся, а в Картвельской Грузии поголовно обращенный в нисшее сословие. Слово „строить" в природной для этого народа—сословия форме, перевалившее и за Кавказский хребет, у древних армян и у древних грузин звучал шэин (šeyn) и шэн (šen), у позднейших армян и позднейших грузин шин (šin), (Марр, Н.—Батум, Ардаган, Карс, стр. 33).

150 М. Ростовцев—Апаранская греческая надпись царя Тиридата. Анийская серия, № 6, стр. 30—31, С.-Петербург.

151 ՎՏ. էջ 53—1221ա թվ., էջ 65—1222 թ., էջ 68—1224 թ., էջ 140—1300 թ., էջ 144—1214 թ., էջ 248—№ 150, էջ 249—№ 152, էջ 85—1243ա թ., էջ 87—1244ա թ. և այլն։

152ա «Չէքուչէք» ժողովրդական բառ է և նշանակում է՝ խլել, կորզել ինչքը. կեղեքել, հարստահարել։

152բ Dagbaschian—Gründung des Bagratidenreiches, Berlin, 1893, էջ 54։

153 Չորրորդ Հայք էր կոչվում պատմական Հայաստանի այն մասը, որ տարածվում էր Վանի լճից դեպի արևմուտք և համապատասխանում էր հին հայկական Ծոփաց աշխարհին։

154 Մի շարք բանասերներ մինչև վերջին ժամանակները սխալ էյին մեկնաբանում «փախչողք 'ի ժառանգութենէ» արտահայտությունը, հասկանալով «ժառանգութիւն» բառը «հոգևոր կոչում»։ Այդ տեսակ իմաստն ինքնին զուրկ է տրամաբանությունից, քանի որ հոգևոր կոչումը, լինելով արտոնյալ և սոցիալ-իրավական տեսակետից տիրապետող ազատ դասակարգին վերապահված դրություն, հիմք չէր տալիս փախուստի։ Մինչդեռ մեր մատենագրության ու իրավաբանական աղբյուրներում «ժառանգութիւն» նշանակում է հողային ժառանգական սեփականատիրություն և նույնանիշ է «հայրենիք» տերմինին. Մովսես Խորենացու «Ողբի» մեջ հիշատակված այդ խոսքերի ճիշտ մեկնաբանությունն առաջին անգամ տվել է բանասեր Միաբանը (Գալուստ Տեր-Մկրտչյան), թարգմանելով «ժառանգութիւն»-ը «հող» բառով, ուստի և փախստականները լինելու էյին շինականներ։ Նույնպիսի ճիշտ տեսակետի վրա յե կանգնած պրոֆ. Հ. Մանանդյանը (Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 168—169)։

155 Ленин—Лекции о государстве. Сочинения, т. XXIV, стр. 366.

156 Կ. Մարքս—Կապիտալ, հատ. I, էջ 324—325։

157 Третий черновик письма К. Маркса к В. Засулич. Архив, т. I, էջ 278, 285։

158 Ed. Meyer—Geschichte des Altertums. B. II, s. 437.

159 Յե. Լալայան—Դամբարանների պեղումներ Խորհրդային Հայաստանում. Յերևան, 1931 թ., էջ 70—94։

160 Lehmann-Haupt—Armenien einst und jetzt. II, B. 2. H.

[161] О. Крюгер—Рабские восстания II и I в. в. до н. э. „Сборник к 50-летию со дня смерти К.-Маркса". 1934 г., стр. 391—392.

[162] Հ. Մանանդյան—Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 157—158։

[163] Անդ, էջ 177—178։

[164] Ioseph Karst—Geschichte d. armenischen Philologie nach historischer Beleuchtung. 1930, էջ 55 և 56, ծանոթություն

[165] «Կանոնք ս. Ժողովոյ և հարց եկեղեցւոյ», պրակ Ա., խմբ. Արիստակես արքեպ. Դավթյան. Թիֆլիս, 1904 թ., էջ 110։

[166] Ioseph Karst—Sempad'scher Kodex aus d. 13. Iahrhundert. հոդվ. ՃԺԸ, էջ 248։

[167] Ioseph Karst—Grundriss der Geschichte des armenischen Rechts, „Zeitschrift f. vergleichende Rehtswissenschaft", B. XX, Heft, 1907, էջ 57։

[168ա] «Աբրահամու Խոստովանողի վկայք արևելից. Թարգմանութիւնք յասորականէն». Էջմիածին, 1921 թ.։

[168բ] Вебер—Аграрная история Древнего Мира; пер. с немецкого, էջ 22։

[169] Strabo, գիրք XII, գլ. 3։

[170] Անանիա Շիրակացի—Յաղագս հարցման և լուծման.—ԻԱ հարցումն։

[171] «Ազգագրական հանդես», հատ. XXV, էջ 204։

[172] Անդ, հատ. XV, էջ 27։

[173] Հրատ. Մխիթար վարդապետի՝ հոդ. Կ., Վաղարշապատ, 1905 թ., էջ 19—21։

[174] Մովսէսի Կաղանկատուացւոյ՝ Պատմութիւն Աղուանից աշխարհի. Թիֆլիս, 1912 թ., գլ. ԺԷ, էջ 60։

[175] Յովհաննու Մանդակունւոյ ճառք, էջ 65—66։

---

## I. ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

1. *Ագաթանգեղայ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1914. «Ղուկասյան Մատենադարան»։*

2. *Անանիայի վարդապետի Շիրակացւոյ՝ Ցաղագս հարցման և լուծման. հրատ. Գալուստ Տեր-Մկրտչյանի. Վաղարշապատ, 1896 թ., «Արարատ» №№ 2 և 4։*

3. *Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ՝ Պատմութիւն. Թիֆլիս, 1912 թ.։*

4. *Եղիշէի՝ Պատմութիւն Վարդանանց. Թիֆլիս, 1913 թ.։*

5. *Զենոբ Գլակ՝ Պատմութիւն Տարօնոյ. Վենետիկ, 1899 թ.։*

6. *Թովմայի վարդապետի Արծրունւոյ՝ Պատմութիւն տանն Արծրունեաց. Թիֆլիս, 1917 թ.։*

7. *Կանոնգիրք հայոց. հրատ. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս, 1913 թ.։*

8. *Կիրակոս վարդապետի Գանձակեցւոյ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1909 թ.։*

9. *Ղազարայ Փարպեցւոյ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1917 թ.։*

10. *Ղևոնդեայ մեծի վարդապետի՝ Պատմութիւն հայոց. Ս. Պետերբուրգ, 1887 թ.։*

11. *Մխիթարայ Գօշի՝ Դատաստանագիրք հայոց. հրատ. Վահան Վ. Բաստամյանցի, Վաղարշապատ, 1880 թ.։*

12. *Մովսէսի Խորենացւոյ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1913 թ.։*

13. *Մովսէսի Կաղանկատուացւոյ՝ Պատմութիւն Աղուանից աշխարհի. Թիֆլիս, 1912 թ.։*

14. *Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ՝ Պատմութիւն հայոց. Թիֆլիս, 1912 թ.։*

15. *Մաղաքիա աբեղայ՝ Պատմութիւն ազգին նետողաց. Ս. Պետերբուրգ, 1870 թ.։*

16. *Մատթէոս Ուռհայեցի՝ Ժամանակագրութիւն. Վաղարշապատ, 1898 թ.։*

17. *Սմբատ իշխանի (Գունդստաբլի)՝ Դատաստանագիրք. հրատ. Ա. Ղլտճյան, Վաղարշապատ, 1918 թ.։*

18. *Սեբէոսի եպիսկոպոսի՝ Պատմութիւն ի Հերակլն. Թիֆլիս, 1912 թ.։*

19. *Վարդանայ՝ Պատմութիւն հայոց. Վենետիկ, 1863 թ.։*

20. *Վիմական Տարեգիր. Ցուցակ ժողովածոյ արձանագրութեանց հայոց. կազմ. Կ. Կոստանյանց. Ս. Պետերբուրգ, 1913 թ.։*

21. *Ստեփանոսի Օրբելեան արքեպիսկոպոսի Սիւնեաց՝ Պատմութիւն նահանգին Սիսական. Թիֆլիս, 1910 թ.։*

22. *Փաւստոսի Բուզանդացւոյ՝ Պատմութիւն հայոց. Վենետիկ, 1889 թ.։*

23 *Ասորա—Հռոմեյական Դատաստանագիրք. հրատ. Ա. Ղլտճյան. Վաղարշապատ, 19 8 թ.։*

24. Баладзори—Книга завоеваний стран, пер. П. Жузе. Баку, 1927 г.

25. Византийские историки, пер. Спир. Дестуниса, С. Петербург, 1860 г.

26. Н. А. Караулов—Сведения арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане. „Сборн. материалов для описания местностей и племен Кавказа", т.т. XXIX, XXXI, XXXII, Тифлис.

27. В. Латышев—Известия древних писателей греческих и латинских о Скифии и Кавказе, ч. I. С. Петербург, 1890 г.

28. Сборник законов грузинского царя Вахтанга VI. Изд. А. С. Френкеля, под редакцией Д. Бакрадзе. Тифлис, 1887 г.

29. Якубий—История. Пер. П. К. Жузе, Баку, 1927 г.

30. Tabari—Geschichte der Perser und Araber zur Zeit der Sassaniden, übers. von Th. Noeldeke. Leyden, 1879.

## II. ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

### Ա. ՀԱՅ ԻՐԱՎՈՒՆՔ

1. *Ալիշան Ղևոնդ—Մարաշու վանքին դատաստանագիրքը (Մխիթար Գոշի Դատաստանագրքի մասին), «Բազմավեպ» ամսագիր, Վենետիկ, 1848 թիվ, եջ 40—44։*

2. *Նույնի—Յաղագս իսկագիր և նախագաղափար օրինակի գրոցն Մխիթարայ Գօշի. անդ, եջ 117—122։*

3. *Նույնի—Ձեռագիր Մխիթարայ Գօշի. Անդ, եջ 154—155։*

4. *Նույնի—Անսիզք Անտիոքայ, Վենետիկ, 1876 թ.։*

5. *«Անսիզք Անտիոքայ», նորագյուտ օրենսգրքի մասին հառաջաբան և ցանկ. «Հույս» հանդես, Արմաշ, 1870 թ., եջ 226—233։*

6. *Աղաբեկյան Մ.—Հայ կանոնագիրքը—«Ծիլ Ավարայրի». Կ. Պոլիս, 1867 թ., եջ 126—136, 153—167, 193—206, 249—265, Մնացել է անավարտ։*

7. *Աղանյան Գ.—Հայաստանյայց յեկեղեցու կանոնագիրքը. «Լումա», Թիֆլիս, 1897 թ., գիրք Ա., եջ 282—291։*

8. *Ակինյան Հ. Ն.—Ակնարկ մը հայ իրավանց պատմության վրա և Յ. Կարստի նոր յերկասիրությունները. «Հանդես Ամսօրյա», Վիեննա, 1907 թ., եջ 339. 1908 թ., եջ 37, 215։*

9. *Բահաթրյան Ս.—Հողային ու անձնական իրավունքը հին Հայաստանում. Թիֆլիս, 1894 թ.։*

10. *Բասմաջյան Կ.—Հայկական հին իրավունքը ի սկզբանե մինչև մեր օրերը. «Բանասեր», Փարիզ, 1901 թ., №№ 2, 3 և 4. (Թարգմ. հեղինակի ֆրանսերեն նույնանուն աշխատությունից. տես ստոր գրականություն № 43)։*

11. *Բաստամյան Վ.—Ամուսնությունն ըստ հայոց յեկեղեցական իրավաբանության. «Փորձ» ամսագիր, Թիֆլիս, 1880 թ.. № 6—7, եջ 148—107, № 8—9, եջ 51—90, № 10, եջ 84—73, № 11—12, եջ 137—164. 1881 թ. № 4, եջ 51—78, № 8—9, եջ 19—45։*

